


# ՊԵՏՐՈՍ ՄԵԾ

ԵՒ ԻՐ

# ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆՆԵՐԸ

# ՊԵՏՐՈՍ ՄԵԾ

ԵՒ ԻՐ

# ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ԱՇԽԱՏԱՍԻՐԵՑ

Հ. ՄԵՍՐՈՊ Վ. ԾԱՂԻԿԵԱՆ

*Մխիթ. Ուխտէն*



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆՑ ՏՊԱՐԱՆԷ

1856

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԱՒԵԼՈՐԴ բան կը համարինք կարճառօտ յառաջաբանիս մէջ Պատմութեան ինչ օգտակար եւ որչափ հարկաւոր գիտութիւն ըլլալուն վրայ ճառել: Որովհետեւ հազիւ հազիւ կրնայ մէկը գտնուիլ, որ նոյն զուարճալի ու կարեւոր գիտութեան օգուտն ուրանալ կարենայ: Ցիրաւի ըսաւ իմաստունը թէ «Պատմութիւնն աշխարհքիս թատրն է»: Որովհետեւ այսու կարեւոր գիտութեամբ, սահած անցած հազարաւոր տարիներու մէջ պատահած դէպքերը քիչ ատենուան մէջ ներկայ եղածի պէս կենդանի գոյներով ընթերցողին աչքին առջին կը նկարուին: Որով եթէ ընթերցողը խոհեմ ու իմաստուն է, նոյն թատրին մէջ տեսած չարիքէն պէտք է զգուշիլ, խորշիլ ու խրատուիլ եւ ժրաջան ու գործունեայ մեղուի մը պէս բարի բարի գործոց ծաղիկներուն հիւթն ու ծուծը քամել ու ծծել եւ անոնց նմանող ըլլալ:

Պատմելիքներիս թէպէտ մի միայն անձի մը կենսագրութիւն է, բայց նոյն մեծ անձին եւ իր գործոցը նուազ տեղեկութիւն մ'ալ ունեցողը, անմիջապէս վերը ըսածներնուս տեղի ունենալը կը հաստատէ, ինչու որ նոյն կենսագրութիւնը ամէն աստիճանի մարդկանց, ստորին գործավարէն սկսեալ մինչեւ նոյն իսկ Թագաւորներու, Ինքնակալներու եւ Աշխարհականներու ալ խրատուելու եւ օրինակ առնլու աղէկ ու առատ նիւթ կը մատակարարէ:

Առաջինկայ գրուածքը 53 տարուան (1672—1725) պատմութիւն է, որն որ որչափ որ ալ կարճ երեւայ,

սակայն ռուսական պատմութեան հիմն ու սկիզբը կրնայ ըսուիլ: Որովհետեւ վերոյիշեալ Թուականէն յառաջ եղած ռուսական պատմութիւնը՝ զոր որ համառօտիւ վերջէն պիտի տեսնենք, հետաքրքիր եւ մանաւանդ թէ կէս մ'ալ մթութենէ բոլորովին ազատ չըլլալուն ընդհանուր պատմութեան մտադրութեան արժանի մաս մը չիկազմեր, ու անոր հակառակ Մեծին Պետրոսի՝ իր տէրութիւնը զարմանալի եւ անհաւատալի գործունէութեամբ ու երկաթեայ հաստատութեամբ մը, քաղաքական ու բարոյական յեղափոխութիւն մը յարուցանելով, վերստին ծնանելովը, չէ թէ միայն Ռուսաստանի Պատմութեան նոր ժամանակ մը (Ère) սկսաւ, այլ նաեւ բոլոր տիեզերք զարմացուց ու դեռ կը զարմացընէ եւ պիտի զարմացընէ:

Ասով չենք ուզեր իմացընել որ Պետրոս Մեծէն ետքը 131 տարուան մէջ (1725—1856) իրար յաջորդող գործունեայ ու քաջասիրտ Ինքնակալներն ու Ինքնակալուհիները անգործունեայ կեանք մ'անցուցած ըլլան. քաւ լիցի: Սակայն բնականաբար նոյն Մեծ Զարին ատենին եղած հսկայաքայլ ու սխրալի յառաջադիմութիւն ու նորոգութիւնները մէյ մը գլուխ ելած ըլլալով, նոյները չէին կրնար կրկնուիլ: Եւ Մեծին Պետրոսի տաժանելի ու քրտնալից աշխատութեամբ յառաջ բերած պտուղը ողջ ու անարատ պահելը եւ մանաւանդ քաղաքականապէս նոյնին սահմաններն ընդարձակելը ու բարոյապէս ազգին կրթութեան բարձրագոյն թռիչ մը տալը նոյն Մեծ մարդուն արքայազն ու քաջասիրտ պայազատացը մշտնջենաւոր փառք ու պարծանք կը մնայ. եւ իրենց քաջութիւնները մեզի համարձակութիւն կու տան ըսելու, թէ նոյն իսկ Մեծին Պետրոսի ամօթ ու պատկառանք մը բերին, որ իր

կենացը վերջի ատենները տխուր երեւակայութիւններով կը տանջուէր թէ իր դեռաբողբոջ ու ձեռասուն տէրութիւնն ալ, Մակեդոնիայի ու Հռոմայ՝ Աղեքսանդրին ու Կեսարին վախճանելէն ետքն եղածին պէտի դառնայ։

Առաջիկայ գործքիս մէջ մեզի օգնական գիրքերն էին, Հալէմ, կենագրութիւն Մեծին Պետրոսի 3 հատ.։ Պերկման, Պետրոս Մեծ իբրեւ սոսկական ու իշխող 6 հատ.։ Սեկիւռ, Պատմութիւն Ռուսիոյ ու Մեծին Պետրոսի։ Պենտեր, Պետրոս Մեծ եւ իր ժամանակը։ Ասոնցմէ զատ Կորտոնին, Վոլթերին, Պաւերին, Պաքմայսթրին կենագրութիւններն եւ ուրիշ քանի մը պատմագիրք՝ որոնք պատմութեան ընթացքին մէջ պիտի յիշուին։

Նոյնպէս Մեծին Պետրոսի վրայ պատմուած քանի մը մանր դէպքերն ու իրեն կառավարութեան ատեն դրոշմուած յիշատակագրամներն ու հաստատուած շքանշանները զգուշաւոր քննութեամբ որոնելով ու գտնելով ու տեղիս տեղիս լուսաւորութեան համար ընդհանուր պատմութենէ քաղուած քանի մը հատածները իբրեւ տեղեկութիւն ընթերցասիրաց աւանդելու չզանդաղեցանք։

Մեծին Պետրոսի կենագրութիւնը ռուսական բարձր կառավարութեաններքեւն եղող Հայկազանց աւելի եւս հետաքրքիր պիտ՝ ըլլայ, որոնց ուսումնական յառաջադիմութիւնը օրըստօրէ աւելի եւս ծաղկելու ու պայծառանալու վրայ է, որուն՝ Ղազարեանց ազնուազարմ գերդաստանը իր հիմնած ճեմարանովն արագասլաց թռիչ մը տուաւ. առաջիկայ առթիւս աս ազնուատոհմ գերդաստանին վրայ կարճ տեղեկութիւն մը տալը կամք ու յօժարութիւննիս է։

Յովհաննէս Ղազարեան՝ որուն նախնիքը Պարսից Աբբաս Բ. Շահին գանձապետ էին, այնպիսի մեկու մը որդի էր, որուն Ռուսաստան ինքզինք երախտագէտ կը համարի։ Յիշեալ անձը Մոսկուա գալով իր կերպասի գործարանովը այնչափ անուն հանեց, որ չէ թէ միայն Կատարինէ Բ. ու Պաւղոս Ա.ին մտադրութիւնն իրեն ձգեց ու անոնցմէ մեծամեծ շնորհքներ ընդունեցաւ, այլ նաեւ (1785) Գերմանիայ Յովսէփ Կայսրէն պարոնութեան պատիւն առաւ ու 1788ին նոյն Կայսրէն հռոմէական տէրութեան ժառանգական կոմս անուանուեցաւ։ Ասոնցմէ զատ տէրութեան խորհրդական ու Մալթայի կարգին հրամանատար ըլլալէն ետքը մեծամեծ հարստութիւններ թողլով վախճանեցաւ։ Իր կտակին մէջ ազգային դպրոց մը հաստատելու բաղձանքն յայտնելով նոյնին կատարումը Յովակիմ Ղազարեան եղբօրն ու ժառանգին կը յանձնէ։

Իրօք վախճանելոյն բաղձանքը 1815ին հիմնովին կատարուեցաւ ու անանկ յառաջադիմութեան մէջ էր որ 1835ին Նոյեմբերի սկիզբը արքայական հրովարտակաւ մը դպրոցը տէրութեան ճեմարանի կարգն անցաւ, որով ուսման կարգն ալ աւելի եւս բարձրացաւ ու հետեւեալ կարգն սկսաւ։ Ս. Գրոց պատմութիւն, Քրիստոնէական, ռուսերէն քերականութիւն, Պատմութիւն, Աշխարհագրութիւն, Գիտութիւն տէրութեանց, Գրագիտութիւն, Տրամաբանութիւն, Թուաբանութիւն, Ալկեպրա, Երկրաչափութիւն, Երեքանկիւնաչափութիւն, Ֆիզիգա, ու լեզուաց կողմանէ Լատիներէն, Գերմաներէն, Գաղղիերէն, Հայերէն, Տաճկերէն, Արաբերէն, Պարսկերէն։

Դպրոցն այսչափ բարձրանալէն ետքը նոյնին

համար սահմանուած դրամագլուխը պէտք էր որ քիչ դար, սակայն Ղազարեան ազնիւ գերդաստանն աս ալ հոգաց: Ղազարեան երեք եղբարց մեծանձնութիւնը՝ որոնցմէ առջի երկուքը տէրութեան իրական խորհրդական ու Մեծ. Ինքնակալին սենեկապահ են ու երրորդը արքունի Թիկնապահաց պաշտօնակալ էր ու 1828ին 40,000 Հայ Ռուսաստան բերաւ, քիչ ատենուան մէջ դրամագլուխը 100,000 ռուպլիի բարձրացուց: Հիմակ դպրոցին հսկողութիւնը Յովհաննէս Ղազարեան ու կառավարութիւնը Քրիստափոր Ղազարեան մեծաշուք իշխանաց ձեռքն է, որոնք նաեւ բոլոր ազգին ուսումնականութիւնն ալ օր ըստ օրէ աճեցընելու ու ծաղկեցընելու փութոյն մէջն են:

Անանկ թէ առջեւի գրուածքին ու թէ Ռուսաստանի ազգայնոց ազնուազարմ գերդաստանի մ'ու անկից հաստատուած ազգային դպրոցին վրայ փոքր ի շատէ տեղեկութիւն մը տալէն ետքը, աս մեր դպրոց աշխատասիրութիւնը բոլոր ազգին ընթերցասիրութեանը կը յանձնենք:

# ՑԱՆԿ

# ՊԵՏՐՈՍ ՄԵԾ

## ու իր

# ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆՆԵՐԸ



## Հատուած առաջին

*Պետրոսի ծնունդէն մինչեւ Սոփիա Զարուհւոյն կառավարութեան վերջը: 1672—1698.*

Մուտք: Ռուսական նախաւոր պատմութիւն: Պետրոսի ծնունդն ու Սոփիա: Պետրոս Զար կը կոչուի: Ստրելցներու ապստամբութիւնը: Իվան Պետրոսին գահակից կ'ըլլայ: Ստրելցներու երկրորդ ապստամբութիւնը: Սոփիա խնամակալ: Պետրոս պատերազմական գունդ մը կը կազմէ: Փրանկիսկոս Լըֆոռ: Պետրոսի ամուսնութիւնը: Սոփիա վանք կը քշուի:

### 1.

ԻՐԱՒԱՄԲ կ'ըսէ մատենագիր մը թէ Ամերիկայի գիւտէն ետքը, պատմութիւնը՝ Ռուսիայի բարոյական ու քաղաքական փոփոխութենէ ու նորոգութենէ աւելի կարեւոր ու մտադրութեան արժանի դէպք մը չունի: Ազգ մը՝ որ դար մը յառաջ Ասիայի ուրիշ ազգաց մէջ խառնուած ու կորսուած կը համարուէր, իբրեւ թէ մոգիչ խօսքէ մը դրդուած ու յափշտակուած զգաց իր որոշումը: Շուտով մը եւրոպական արուեստներու եւ սովորութեանց վարժելով հսկայական քայլերով ելաւ եւրոպական տէրութեանց առաջին կարգն անցաւ. Հիւսիսի դատաւոր ու տէրութեանց կարեւոր գործոցը մէջ իրօք գործակից եղաւ: Այո, նոյն իսկ տէրութիւնները սկսան ահ ու դողու մէջ մտնել, որ չըլլայ թէ Ռուսիա իրենց նկատմամբ այնպէս ըլլայ

ինչպէս երբեմն Մակեդոնիա Յունաստանի նկատմամբ եղած էր։

Ո՞վ էր աս երագընթաց թռիչը տուողը. ինչպէս աս զօրութեան, աս կերպարանաց բարձրացաւ Ռուսաստան։ Ուրիշ ազգաց դիւցազունքը՝ առասպելական հնութեան մէջ թաղուեցան կորսուեցան. Ռուսաստանի գոյութիւն ու կերպարանք տուող դիւցազին յիշատակը դեռ կենդանի է, դեռ ամենուն աչքին առջեւն է։ Ան զարմանալի մարդն է մեր նկարագրութեան առարկան որն որ անկիրթ ու վայրենի ժողովրդեան մը իշխան ծնած, հաստատուն քաջասրտութեամբ զինքը պատող մութը պատռեց անցաւ ու դէպ ի լոյս փութաց։ Յաղթեց իր նպատակին հասնելու զանազան դժուարին արգելքներուն, թէպէտ եւ պատերազմի ու տիրապետութեան վտանգները միշտ իրեն դէմ պակաս չէին։ Անշարժ ու հաստատուն, միշտ իր նպատակն իր աչքին առջեւն ունենալով իր ճամբան յառաջ տարաւ աս դիւցազնը։ "Պետրոսի ոտքը կը դնեմ իմ փառքս, որովհետեւ իրեն պարտական եմ„. այսպէս խօսեցաւ հարիւր տարի ետքը իր յաջորդներէն մէկը։

## 2.

Ռուսաստան՝ որ յառաջուան ատեն մերձակայ ջրերուն ստէպ ողողելովն ու բնակչաց անհոգութեամբը խիստ, անբեր ու անապատ երկիր մ՚էր, աս մեր պատմութեան ժամանակները հիմակուան եւրոպական Ռուսաստանին մեծ մասն իր մէջը կը պարունակէր։ Աս երկրին սկզբնական պատմութիւնն ու իր բնակչացը ուսկից յառաջ գալը խորին մթութեամբ ծածկուած է, աս մինակ կրնայ ըսուիլ որ Ռուսաստանի բնակիչներն ալ ան բազմամարդ Սկանտինաւեան ժողովրդենէ են, որոնք Ասիայէն գաղթելով բոլոր Եւրոպա տարածուեցան։ Իններորդ դարէն

ետքը ռուսական պատմութեան հազիւ հաւանականութիւն մը կրնայ ընծայուիլ, ու հազիւ նոյն ատենները Ռուրիկի ցեղի իշխանները կրցան ռուսական պետութեան հիմը դնել։ Անկէ յառաջ երկիրը զանազան ցեղերու տակ կտոր կտոր իշխանութիւններու բաժնուած էր. աս իշխանները ուզածնուն պէս երկիրներ կը գրաւէին, ստէպ իրարու դէմ կը կռուէին ու մէկզմէկ կը կործանէին որով եւ տեղւոյն բնակիչներն ալ չէին կրնար մէկ մասնաւոր ժողովուրդ մ'ըսուիլ։ Վերջապէս Ռուրիկ իշխանին ինչպէս նաեւ իր Սինաւս ու Թրուվոր եղբարցը քաջութիւնն ու իրենց թէ ներքին ու թէ արտաքին փառաւորութիւններն ու հարստութիւնները ամենուն յաղթեց։ Սինաւս Ճերմակ ծովուն կողմերն առաւ, Թրուվոր Բլէսքովի իշխանութիւնը եւ Ռուրիք նախ Նովկորոտի կողմերն առաւ ու եղբարցը մահուընէն ետքը բոլորին վրայ իշխեց։ Քիէվ գլխաւոր քաղաք եղաւ եւ Ռուրիկի ցեղն ու ընտանիքը կառավարութեան սանձն իր ձեռքն առաւ։ Ռուրիքի Իկար անուն տկար որդւոյն որբեւարին Սուրբն Ոլկա (Օլկա) 954ին Կոստանդնուպոլիս երթալով քրիստոնեայ եղաւ ու պետութիւնը աս Ռուս Շամիրամին ատենը նոր կերպարանք ու նոր նկարագիր մը (Caractère) ստացաւ։ Քրիստոնէութիւնը Ռուսաստանի վրայ ալ տարածեց իր լոյսը. բայց ափսոս որ Թաթարներու եւ Մոնկոլներու աս երկիրս ասպատակելովն ու զանազան կողմ տիրելովը աս լոյսը շուտով մարեցաւ։ Ռուրիկի ցեղին իշխանները հետզհետէ մէկզմէկու յաջորդեցին ու ժողովուրդը աս պատերազմասէր իշխաններու տակ դարձեալ իր իշխանին սեպհական ստացուած համարուելով անհնարին խստութեանց տակ կ'ընկճէր ու չէր կրնար կրթութիւն մը ստանալ։

Ռուսաստան 15երորդ դարուն այնպիսի վիճակի

մը մէջ էր՝ որ երկու դար վերջը այսպիսի բարձրութեան ելլելն ամենեւին չէր յուսացուեր, թէպէտ եւ Ռուրիկի ցեղին վերջի իշխաններուն փոյթը բոլոր աս էր։ Իվան Վասիլեւիչ Մեծն եղաւ որ (1462էն վեր) ասիական բարբարոսութեան՝ գրեթէ 200 տարուան երկայնժամանակեայ, ամօթալից ու խիստ լուծը թօթուեց (1480), նոյնպէս ներքին մէկզմէկէ անկախ իշխաններն ու քաղաքները, մանաւանդ ան հզօր Նովկորոտը (1478) հնազանդեցուց եւ անանկով տէրութեան միութեան ու բուն ռուսական պետութեան հիմը դրաւ։ Իվան Վասիլեւիչ († 1505)[1] զինքն իշխան ամենայն Ռուսաց անուանեց։

Օ Իվան Մեծը շատ աւելի գերազանցեց իր թոռը, ու ինքն Իվան գրեթէ նախապատկեր մ՚էր անոր. որն որ երբեմն տէրութեան ձեւ ու կերպարանք պիտի տար, որովհետեւ չէ թէ միայն յաղթող, այլ նաեւ օրէնսդիր, արուեստախնդիր եւ ուսումնական էր։ Իվան դեռ 14ամեայ հասակովը ինքզինք մեծամեծ ու ծանր բռնաւորութենէ ազատեց ու անոր տեղ իր խիստ, բայց զօրաւոր ու խոհեմ միապետութիւնը հաստատեց (1544)։ Լիֆլանտի պատերազմին մէջ (1558) այնչափ յաջողութիւն չունեցաւ. թէպէտ 1570էն Դանիացւոց Մագնոս իշխանն իր վերագունութեամբը նոյն երկրին ժառանգական իշխան անուանեց ու պատերազմը յառաջ կը տանէր, բայց Մագնոս ինքզինքը Լեհաց Ստեփան Թագաւորին յանձնեց ու Իվան ամէն կողմանէ նեղ մնած Սոփոլեան խաղաղութեան պարտաւորեցաւ (1582) ու իր Լիֆլանտի ու Լեհաստանի վրայ ունեցած իրաւունքէն հրաժա-

[1] Եւրոպացւոց բայց մանաւանդ Գերմանացւոց մէջ առ հասարակ աղէկ սովորութիւն մը կայ, որ գրքի մը մէջ երեւելի դէպք կամ մարդ մը յիշելու ատեն, անոր ո՛ր ատեն հանդիպած կամ ապրած ըլլալը քովը կը նշանակեն. ու երբոր մարդու մը մեռած տարին կ՚ուզեն նշանակել նէ, տարւոյն թուականին քով, վերը դրածնուս պէս, խաչ մը կը դնեն։

ընելով Շվետի հետ զինադադար ըրաւ (1583)։ Ասոր հակառակ հիւսիսային Ասիայի կողմանէ Իվան իր տէրութիւնը կը տարածէր, 1552ին Խազանի Թաթարաց հզօր տէրութեանը յաղթեց. 1554ին Աժտերխան ու բոլոր Խապարտա, մինչեւ Կովկաս իր վերին իշխանութիւնն ընդունեցան։ Արդէն 1563ին Սիպիրիա գտնուած էր. ասոր մէկ մասն ալ Թաթարները վռնտելով իր տէրութեանը հետ միացուց (1584)։

Իվան Բ. Անգղիացւոց հետ վաճառականութեան դաշինք մը դրաւ, որոնք իրեն տակ (1553) Արխանկելի ծովական ճամբան գտան. Պարսկաստանի հետ ալ վաճառականութիւն հաստատելու ետեւէ էր։ Քաղաքական օրինաց ժողովածոյք մը կազմեց, իր տէրութեան մէջ արուեստաւորներ, գործավարներ, ստակ կտրողներ ու բժիշկներ ժողվեց ու Մոսկուայի մէջ առջի տպարանը դրաւ 1564ին։ Ինքն էր Սթռելցներու (պահապան, անձնապահ զօրաց) գունդն հնարողը, որոնք կամաց կամաց մեծնալով վտանգաւոր ու կասկածելի զօրութիւն մը ստացան։ Ասիկայ ինքզինք Զար (կեսար, Տէր,) անուանեց ու Ահաւոր կոչուեցաւ ու 1584ին, 54 տարեկան մեռաւ։ Իրմով ու իր երկու նախորդներովը կատարեալ միապետութիւն հաստատուեցաւ, որովհետեւ ամէն բան Զարին կամքէն կախուած էր։ Իվան Բ. սաստիկ բարկութեան ատեն՝ իր Իվան երէց որդին սպաննած էր, անոր համար երկրորդ որդին Ֆէոտոր Ա. 1584ին գահն ելաւ, բայց տկարամիտ, անգործ իշխան մ'ըլլալուն՝ հայրը մեծամեծներէն մէկն իրեն խորհրդական տուած էր, որոնք իրարու հետ աւրուելով, կառավարութիւնը եղանակաւ մը քաղաքականութեան վարժ բայց վրէժխնդիր, անխիղճ ու անզգայ Պորիս Կոտունով Զարին աներորդւոյն անցաւ։ Ասիկա Ֆէոտորին անուամբ

տիրելու սկսաւ, մեծամեծներն արքունիքէն հեռացուց. Ֆէոտորին՝ Դեմետրիոս պզտիկ եղբայրը Ուկլիչ խաւրելով հոն սպաննել տուաւ ու նենգութեամբ նոյն քաղաքը՝ իբրեւ ան սպանութեան պարտական, հիմնայատակ փլցընելով պատժեց (1588)։ Նոյնպէս Կոստանդնուպոլսոյ Երեմիա պատրիարքէն Ռուսիոյ առանձինն պատրիարքութեան իրաւունք գնեց ու Մոսկուայի մէջ պատրիարք մը հաստատեց, որն որ 1589ին Կոստանդնուպոլսի մէկ ժողովքէն ընդունուեցաւ։ Սիպիրիան բոլորովին իր տակն առաւ, անոր հակառակ 1595ին բոլոր Էստլանտ, Ռեվալ ու Նարվա՝ Շվետին տուաւ։ Ֆէոտոր Ա. անզաւակ մեռաւ (1598), որով եւ Ռուրիքի ցեղն ալ լմընցաւ։

Թէպէտ Պորիս Կոտունով Զար եղաւ, բայց չկրցաւ երկայն ատեն իշխել. ինչու որ Կրիսքա Օթրէփիէվ կրօնաւորը ինքզինք իբրեւ Ֆէոտոր Ա.ին եղբայրը՝ Դեմետրիոս ձեւացընելով, իրեն դէմ ելաւ. Պորիս երբոր տեսաւ որ Օթրէփիէվին կողմնակիցները շատցան, յուսահատած ինքզինք թունաւորելով մեռցուց (1605 Ապր.)։ Ֆէոտոր Բ. անոր որդին թէպէտ Զար անուանեցաւ, բայց երեսը նայող չեղաւ ու քիչ մը ետքը իր թշնամեացն հրամանաւը մեռցուեցաւ (1605, Ապր.)։ Անկէ ետքը 7 տարի ռուսական թագը բռնաբարութեան մէջ էր, զանազան իշխաններ, Լեհաստան ու Շվէտ հետզհետէ նոյնին վրայ կը կռուէին. վերջապէս 1612ին կղերը, բարձր ու ստորին աստիճանի ժողովուրդը միաբան հաւանութեամբ Ֆիլարէթ նոր պատրիարքին որդին Միքայէլ Ռոմանով պատանին, նախորդ Զարերուն լիուլի իշխանութեամբն անկոպար ու առանց մէկ վերապահութեան ժառանգական Զար անուանեցին (1613)։

Միքայէլ Ռոմանով ներքուստ խախտելու մօտ

տէրութեան մ՚աթոռն ըլալ, եւ մեծամեծ վնասներով արտաքուստ ալ խաղաղութիւն գնելու պարտաւորեցաւ. Ստոլպովայի խաղաղութեամբը (1617) Ինկերմանի երկիրը, Քարելիա ու Քէքսհոլմ Շվետին տուաւ: Տվիլինայի խաղաղութեամբը (1619) ու անկից վերջը Վիասմայի խաղաղութեամբը (1634) Սմոլենսք, Չեռնիկով ու Սեվերիա Լեհաստանի տուաւ ու Լիֆլանտի իրաւունքներէն բոլոր հրաժարեցաւ: Ասկէ ետքը բովանդակ փոյթն ան եղաւ որ խաղաղութիւնն ու բարեկարգութիւնը Ռուսաստանի մէջ հաստատէ, եւ իրօք ալ տէրութիւնն իր խաղաղ կառավարութեան ատեն հանդարտեցաւ. ասոր ատենը Պարսկաստանի ու Ճենաստանի հետ վաճառականութեան դաշինքներ ալ դրուեցան: Աս վիճակիս մէջ թող տուաւ տէրութիւնը իր 50ամեայ հասակէն մէջ († 1645) իր Ալեքսի որդւոյն, որն որ գործունեայ եւ իմաստուն իշխան մըն էր ու հօրը սկսածը գլուխ հանեց: Ներքուստ արուեստից փոյթը, վաճառականութիւնն ու նաւագնացութիւնը նոր յառաջադիմութիւն մ՚առին, արտաքուստ թէպէտ Շվետաց հետ եղած պատերազմը անօգուտ վերջ մ՚ունեցաւ (1657—61), բայց Լեհերուն առած երկիրներն ետ առաւ. իր Տաճկաց հետ ըրած պատերազմէն ետքը ալ չապրեցաւ, ու 31 տարի տիրելէն ետքը 46 տարւան մեռաւ (1676:)

Ֆէոտոր Գ. անոր որդին թէպէտ քիչ ատեն տիրեց († 1682), բայց իր կառավարութիւնը երեւելի գործքով մը նշանաւոր ըրաւ: Ջնջեց, վերցուց այն ամենայն արտօնութիւնները, զորոնք մեծամեծք կը վայելէին, ու գահ հանեց ան ճշմարտութիւնը թէ, Չէ թէ ծնունդն, այլ հայրենեաց արդիւնքը մարդ պատուոյ արժանի կ՚ընէ[1]: Ֆէո-

[1] Ռուսաց պէս ազգ մը չկայ որ իր ցեղին պահպանութեանը փոյթ տանի ու նոյն ցեղը երեւելի ընող գործքերը քննէ ու

տորին այսպէս շուտ մեռնելովը տէրութեան մէջ հին խռովութեանց նորէն երեւան ելլելուն վտանգ կար. որովհետեւ իր ետեւէն թողուց տիրապետելու սէր ունեցող քոյր մը, մարմնով ու մտօք անգործունեայ հարազատ եղբայր մը ու մէկ խորթ եղբայր մը որ

տեղեկանայ: Ցեղ մը որչափ որ իր սկիզբը դէպի Հին ատեն-
ները յառաջ կը տանէր այնչափ երեւելի կ'ըլլար ու միւս
ցեղերուն առջեւ մեծ առաւելութիւն կ'ունենար: Շատ նա-
խանձախնդիր էին Ռուսերը աս բանիս մէջ, ամենեւին չէր
կրնար մէկը տանիլ որ ուրիշ իրմէ ստորին ցեղ մը կամ ան
ցած ցեղէն մէկն իր վրայ իշխէ կամ իրեն հրամայէ. աս նա-
խանձախնդրութիւնը ան աստիճանի հասաւ որ շատ անգամ
նաեւ ի վնաս տէրութեան, ցեղերու մէջ մեծ կռիւներ կը բա-
ցուէր ու խաղաղութիւնը ստէպ վտանգի մէջ էր: — Ֆեո-
տոր Ալեքսիէվիչ Զարն աղէկ իմացաւ որ ասանկ ցեղական
կռիւներն ինչ աստիճանի վնաս են հասարակաց բարւոյն ու
նոյն իսկ տէրութեան եւ որոշեց որ աս ցեղական զանազա-
նութիւնը բոլորովին ջնջէ վերցընէ ու ան ատենը մէկն ու-
րիշէն աւելի պատիւ ունենայ երբոր տէրութեան ծառայու-
թեան մէջ արդիւնք մը ստանայ եւ կամ հայրենեաց հա-
մար քաջութեան գործք մը ընէ: Աս սկզբամբ ամէն մէկ
ցեղին հատորաւոր ցեղաբանական գիրքերը իր պալատը բե-
րել տուաւ ու մեծ ժողով մ'ընելէն ետքը ամենն ալ այրեց:
— Աս հին ազնուականները զանազան աստիճաններու կը
բաժնուէին. Առջի աստիճանի ազնուականներն էին Պոյար-
ները որ ի ծննդենէ իրենց իշխաններուն գաղտնի խորհըր-
դական էին. ամէն Պոյար ազատ էր ուզած ատենը իր իշխա-
նին ներքին խուցերը մտնելու ու հոն ամէն խորհուրդներու
ներկայ կը գտնուէր. Զօրաց ամէն մէկ բաժնին հրամա-
նատարը Պոյար մը կ'ըլլար: 2. Երկրորդ աստիճանի ազ-
նուականներն էին Սահմանակալները (Օքոլնիչի), որոնք
ինչպէս անուններնէն յայտնի է, պէտք էր որ սահմաննե-
րուն վրայ հսկէին ու ամէն պատահած կռիւներն ընկճէին:
Ասոնք զօրաց հրամանատար ալ կ'ըլլային ու գաղտնի խոր-
հրդականաց ժողովքին ալ կրնային ներկայ գտնուիլ: 3. Եր-
րորդ կարգի տակ կ'երթային Տումնայա Տվորանա, (որ հիմա-
կուան կարգին նայելով Տէրութեան իրական խորհրդա-
կանները կրնան ըսուիլ) ըսուածները, որն որ այնպիսի պա-
տիւ մըն էր որ միայն ստորին ազնուականներու կը տրու-
էր, ասոնք կրնային Պոյարներու ու Օքոլնիչներու հետ խոր-
հրդի նստիլ ու պատերազմական ծառայութեանց շատ քիչ
կը գործածուէին: 4. Չորրորդ կարգի տակ կ'երթային
Սթոլնիքները որոնք արքունեաց մէջ կը ծառայէին: 5. Հին-
գերորդ կարգէ են Սթրիափչի ըսուածները: — Ազնուա-
կանութեան բարձր աստիճան մը Քնեզ ըսուածները կը կազ-
մեն, որոնք իրենց մէջ դարձեալ զանազան աստիճաններու
կը բաժնուին:

հազիւ 10 տարեկան կար ։ Ժողովրդեան բոլոր յոյսն աս 10ամեայ տղուն վրան էր, որն որ Պետրոս էր ։

## 3.

Ալեքսի Միքայելովիչ առջի անգամ Իլիի Իանիլովիչ Միլոսլաւսքի Օքոլնիչին դստերը Մարիամ Միլոսլաւսքիին հետ կարգուած ըլլալով (1648) 5 որդի եւ 8 դուստր ունեցած էր որոնց մէջէն Ֆէոտոր Ալեքսիէվիչ ու Իվան Զարերը, Եւթոքսիա եւ Սոփիա իշխանուհիները մեր պատմութեան երեւելի անձինքներէն են ։ Բայց Մարիամ 1667ին մեռնելով Զարը Քիրիլլ Բոլուեկթովիչ Նարիշքին Պոյարին դուստրը՝ Նատալիա Քիրիլովնան, տէրութեան խորհրդական Արթեմոն Սերկէյէվիչ Մաթվէյէվին քովը տեսնելով՝ որն որ զինքը, հայրը պատերազմի մէջ գերի իյնկած ըլլալուն, հոգեզաւակ առած էր, շատ հաւնեցաւ ու 1671ին իրեն հետ ամուսնացաւ ։ Ալեքսի Միքայելովիչ աս ամուսնութենէ միայն մանչ մը ու երկու աղջիկ ունեցաւ որոնք էին Պետրոս որն որ 1672ին Մայիս 30ին Մոսկուա քաղաքը ծնաւ, Նատալիա (ծն. 1673) ու Ֆէոտորա (ծն. 1674, † 1677) ։ Պետրոս աս ամուսնութեան առջին պտուղն էր. իշխանին ծնունդը իր հօրը ու բոլոր երկրին մեծ ուրախութիւն եւ ցնծութիւն պատճառեց, որովհետեւ Զարին առջի ամուսնութենէն ունեցած երկու որդիքն իշխանութեան անընդունակ էին ։ Ըստ սովորութեան ժամանակին, աս առթիս մէջ ալ աստեղագէտները ժողովրդեան բաղձանացը թարգման եղան ։ Ծանուցին հօրը թէ նորածինը պատերազմական իշխան ու իր թշնամեացը ահրելի պիտի ըլլայ[1] ։ Զէ

[1] Նոյն ատենուան Եւրոպայի մէջ տիրած նորաձեւութեան համեմատ մեծամեծներու ծննդեան ատեն աստղները խորհրդի կը կանչուէին ու անոնց մէկզմէկու նկատմամբ ունեցած դիրքովը նորածնի մը բախտաւոր կամ նշանաւոր մարդ ըլլալը կը գուշակուէր ։ Կը պատմուի որ Պետրոսին ծնանե-

Թէ միայն երկնաւոր աստեղաց ընթացքն այսպէս կը ցուցընէ, կ'ըսէին, այլ եւ նոյն իսկ երկրիս վրայ նոյն օրը յաղթութեամբ նշանաւոր է։ Որովհետեւ Պետրոսին լոյս տեսած օրը, մեծին Լուդովիկոսի գունդը Ռենոսի վրայ եւ Տաճկաց գունդը Տնեսթերի վրայ յաղթութեամբ յառաջ կ'երթային։ Արդէն Պետրոսի վրայ երեւցած ձիրքերն իր մեծութեան վիճակը կը ցուցընէին։ Ալեքսի իր հայրը՝ տղան աղէկ ճանչցաւ, ու միշտ ան մտաց վրայ էր որ իր երիցա-

լու տունն ալ Մոսկուա քաղքին մէջ անուանի աստղաբաշխ մ'եղած ըլլայ, որն որ նոյն միջոցին երկնքի վրայ զննութիւններ ընելու տեն Արէս մոլորակ աստեղ քով ուրիշ նոր փայլուն աստղ մը տեսնելով գուշակած ըլլայ թէ նորածինը մեծ գիւցազն ու աշխարհակալ պիտի ըլլայ ու հօրը մահուընէ վերջը անմիջապէս գահ պիտի ելլէ։ Հիմակուան ժամանակս ռամկաց չէ նէ, գոնէ քիչ մը բան հասկըցող մարդիկներուն առջեւ հասարակ աստղներու կամ գիսաւորներու երեւնալէն դժբախտութիւն կամ յաջողութիւն գուշակելը տգիտական ու ծաղրելի բան է եւ նոյն իսկ աստղաբաշխական գիտութիւնն ալ իր մէջը աս տեսակ գուշակութեանց սկիզբ չունի։ Թէպէտ Պետրոսի ծննդեան ատեններն ալ աս տեսակ աստղաբաշխական գուշակութիւնները բոլորովին իրենց յարգը կորսընցուցած էին, բայց որովհետեւ աս կայսեր վրայ բովանդակ Եւրոպայի մէջ մեծ համբաւ մը կը տիրէր, Բեթերսպուրկի ուսումնական ճեմարանին անդամ Պ. Լեքսէլ ուսուցիչը մեծ հետաքրքրութեամբ սկսաւ քննել թէ արդեօք Պետրոսի ծննդեան ատենը ըսուածին համաձայն աստղ մը երեւցա՞ծ է։ Նոյն ատենուան Մոլորակաց ըրած ընթացքը քննեց ու ճիշդ հաշիւներով ու աստղաբաշխական կանոններուն համաձայն ցուցուց որ համբաւին համեմատ նոյն ժամանակը Արէս մոլորակին քով չէր կրնար լուսաւոր աստղ մը երեւցած ըլլալ։ — Պետրոսի ծննդեանը ատեն ելած համբաւին համաձայն յիշատակագրամ մ'ալ տպուած է որուն առջի երեսը Ալեքսի Միքայելովիչին ու իր ամուսնոյն Նատաղիայի, Պետրոսի ծնողացը, պատկերները կոխուած են աս բոլորագրով ,,Ալեքսիոս Միքայելը Որդի Շ. Ա. Զար Եւ Մեծ Զօրավար Ամենայն Ռուսիայ,,։ (Alexius Michaelis Filius D. G. Tzar. Et Magnus DuxTotius Rusiae.) Միւս երեսը կնոջ կերպարանքով Ռուսաստան նկարուած է, որն որ ձեռքերը Ռուսաստանի երկնաւոր ոգւոյն երկնցուցած տէրութեան երջանկութիւն ու բախտ բերող մանուկն անոր ձեռքէն առնուլ կ'ուզէ։ Աս երեսին վերնագիրն է ,,Յոյս մեծ հանդերձելոց,, (Spes Magna Futuri) ու Ստորնագիրն է ‚‚Պետրոս Ալեքսեայ որդի, ծնեալ յ30 Մայիսի 1672, (Petrus Alexii Filius Natus 30 Maii. MDCLXXII)։

գոյն երկու որդիները մէկդի թողլով Պետրոսը Չար անուանէ. տղուն մայրը՝ որ կրնար Չարին խօսք ան-ցընել, ստուգիւ կրնար նոյն ատենէն իր որդին ժա-ռանգ որոշել եթէ Չարին առաջին ամուսնութենէն ունեցած դուստրը, Սոփիան իրեն արգելք չըլլար:

Սոփիա մեծամեծ տաղանդներով զարդարուած բարեկշան օրիորդ մըն էր. խօսելու մէջ ճարտար ու նաեւ բանաստեղծ: Բայց իր անյաղթելի փառա-սիրութիւնը՝ ապագայ աշխարհքիս առջին իր անունը շատ աղարտեց: Իր խորթ մայրը՝ որն որ անոր աս մոլութիւնը կը ճանչնար, զինքը զսպելու ջանա-լովը աւելի եւս գրգռեց: Սոփիային սիրտը նախա-ղիային ու իր որդւոյն դէմ անշիջանելի վրէժխնդ-րութիւն մը բորբոքած էր: Սոփիային թելադրու-թեամբն ու դրդելովը Ալեքսին Պետրոսին նկատմամբ ամենեւին տրամադրութիւն մը չէր ըրած: Նաեւ իր յաջորդը Ֆէոտոր Գ. մահուանը ատեն յաջորդու-թեան նկատմամբ Պետրոսին համար ամենեւին բան մը չէր ըսած. թէպէտ անոր կրթութեանը աղէկ փոյթ տարած էր: Պետրոս զանազան ուսմամբ կըր-թուեցաւ. ազգային պատմութեան, ուսողութեան (մաթեմաթիկայի) ու պատերազմական արուեստ-ներու մասնաւոր ուսուցիչներ ունէր:

## 4

Պետրոսին՝ իր մեծ, կարճատես ու թոթովախօս Իվան եղբօրմէն ունեցած առաւելութիւններն այն-պէս ծանօթ էին ամենուն, որ դժուարին բան մը չէր ժառանգութեան մէջ ալ զինքն անկից վեր դասել տալը: Ֆէոտորին մահուընէն անմիջապէս ետքը Պետ-րոսին մօրմէն որոշուած ու Մոսկուաի մէջ գտնուած տէրութեան պաշտօնեաներն ու հրամանատարները, թէ եկեղեցական ու թէ աշխարհական վիճակէ մարդիկ Քրէմլ Չարին պալատը ժողվեցան: Հար-

ցուց պատրիարքը թէ Երկու իշխաններէ ո՞ր Զար պիտ'որ ըլլայ։ Թնդաց ընդհանրապէս Պետրոս անունը, քանի մը Սոփիային կողմնակից հակառակորդաց դէմ։ Հաստատուեցաւ Պետրոս իշխանութեան մէջ, ու Սթռելցներու անհանգիստ գունդը, որոնց ձայնը Մոսկուայի մէջ, Կոստանդնուպոլսոյ Ենիչէրիներուն պէս ամէն բան կ'որոշէր, հաւատարմութեան երդում ըրաւ իրեն, ու մայրն ալ խնամակալ անուանուեցաւ։ Աս դէպքիս համար յիշատակարան մ'ալ կոխուեցաւ [1]։

Բայց Սոփիա որուն աս ընտրութեան վրայ ինչ աստիճանի նեղացած ըլլալն արդէն կրնայ մակաբերուիլ, իմացաւ որ իր բաղձանքին ուրիշ կերպ չիկրնար հասնիլ՝ բայց եթէ որբեւարի Զարուհին, բոլոր Նարիշքինի ընտանիքն ու Պետրոսի կողմնակիցները եղանակաւ մը փճացընելով։ Աս մտադրութեամբ իր կողմնակիցներովը մեծ գործունէութեան մէջ էր. վերջապէս Սթռելցներն իր կողմը վաստըկեցաւ ու համբաւ մը հանեց թէ Ֆէոտոր Գ. բնական մահուամբ մեռած չէ, այլ Նարիշքինէն թունաւորուած է, ու անոր ձեռքովն Իվան աթոռէն մերժուած է, որուն կեանքը՝ եթէ մեռած չէ նէ, վտանգի մէջ է. Ֆէոտորն սպաննողներն հայրենեաց ամէն ճշմարիտ որդւոցը ու նոյն իսկ Սթռելցներուն մեծ վտանգ կը սպառնան. ամենուն պարտքն է Իվանն ազատելը ու անոր իրաւունքը պաշտպանելն ու զինքը ճնշող թշնամիները, Նարիշքին, ու իր կողմնակիցները ջնջելը։ Երբոր աս համբաւը ժողովրդեան մէջ գրգռութիւն պատճառեց, Սոփիա՝ որ միշտ ձեռքի տակէն գործելու վրայ էր, զօրաց մեծերը, պատրիարքը, եպիսկո-

[1] Աս գրամիս վրայ Պետրոս պատանին հռոմայեցի պճղնաւորով (Toga)՝ կին ձեւացած Ռուսաստանի հետ փառաց տաճարը կ'ելլէ, որն որ դժուարելանելի լերան մը գագաթը կանգնուած է։ Իմս ես, կ'աղաղակէ կնոջ պատանին, իզմով պէտք է որ փառաց գագաթն ելլեմ։

պոսներն ու մեծամեծ վաճառականներն իր քովը ժողվելով՝ ցուցուց իրենց թէ անդրանկութեան իրաւամբ տէրութիւնն Իվանին կ'իյնայ, ու անձնապահաց (Սթռելցներուն) շատ ոսկիի ու մեծամեծ պարգեւներ խոստանալով զիրենք Պետրոսի ընտանեաց (Նարիշքինի) դէմ գրգռեց ըսելով ալ որ արդէն Իվանը խղդած են ու Հոլանտացի Դանիէլ կամ բժիշկն ալ Ֆէտոր Գ. Թունաւորողն է: Վերջապէս 40 անուանց ցանկ մ'ալ տուաւ իրենց, զորոնք տէրութեան թշնամի կը կոչէր:

Գրգռութիւնն ան աստիճանի զօրացաւ որ 1682ին Մայիսի 15ին անագորոյն տեսարան մըն է բացուեցաւ: Առտու կանուխ բոլոր թմբուկները զարնուելու սկսան. Սթռելցները ժողվեցան ու "Վրէժխնդրութեան ժամն հասաւ„ խօսքը բոլոր օդը կը թնդացընէր: Ամենուն բերանն ան էր թէ Իվան Ձարորդին սպաննուած է, Նարիշքին Ռուսիայի տիրել կ'ուզէ. ամենուն քաջալերութիւն կու տային ու կը յորդորէին ըսելով, թէ խնդրենք մեռելոյն վրէժը, մեռնինք հայրենեաց համար: Այսպէս բոլոր Քրէմլ զէնք առաւ ու վայրենի գազանի կատաղութեամբ մատնիչները, Չարն ու սպաննողները փնտռելու սկսաւ: Կատաղաբար մերձեցան ան բերդին, որուն մէջ իշխանները, Պետրոսի մայրն, անոր ազգականներն ու բարեկամները ապաւինած էին: Կ'ուզէին այնպիսի իշխանի մը մահուան վրէժն առնուլ, որն որ դեռ կ'ապրէր, կ'ուզէին անոր գլուխն այնպիսի թագ մը կապել՝ զորն որ կրելու կարողութիւն չունէր, ու իրաւունք տալ այնպիսի մէկու մը, որն որ անոր յարգը չէր ճանչնար: Արդէն զանգակներու հնչմամբ զինուորաց վայնասունը բրդած էր թէ Դո՛ւրս մատնիչները, դո՛ւրս մատնիչները. փուճ տեղ զիրենք համոզցընելու կը ջանային թէ բանը ծուռ իմացուած է, Իվան դեռ կենդանի է, իրեն վնաս մ'ընող չկայ:

"Ցուցուցէք„ էր ասոր պատասխանը․ վերջապէս Իւան երեւցաւ Նատաղիայի ընկերութեամբը․ Դուն ես մեր Զարը պոռացին, մեռնին ամէնքը որ քու կենացդ դարանակալ են„։ Աս միջոցին Մաթվէյէվ Պոյարը ապստամբները հանդարտեցընելու համար եկաւ մէջերնին մտաւ, ու գրեթէ բանն յաջողցընելու վրայ էր, երբոր մէկէն Տոլկորուքի իշխանն երեւցաւ ու ամէն բան նորէն խռովեց։ Միքայէլ Տոլկորուքի իշխանն իբրեւ Սթռելցներու առաջին հրամանատար փութացած եկած էր, որպէս զի իր ներկայութեամբը խռովութիւնն հանդարտեցընէ, ու ապստամբներու բազմութիւնը ցրուէ։ Ասիկա գուցէ յաջողութիւն կրնար գտնել, եթէ հանդարտութեամբ ըլլար․ բայց որովհետեւ Քրեմլի պալատին աստիճաններէն իջնալու ատեն իշխանական կերպով մը խօսելու ու պատիժներ սպառնալու սկսաւ, կատաղութեամբ յարձակեցան վրան, առին զինքն աստիճաններէն վար նետեցին ու իրենց պատերազմական սակրներովը կտոր կտոր ըրին զինքը։ Աս արիւնհեղութիւնը ուրիշ շատ արիւնհեղութեանց ալ ճամբայ բացաւ։ Մտան Քրեմլի պալատն, ահն ու սարսափը չորս դին պատեց, կոտրեցին ձարական խցին դռներն ու Նատաղիայի սիրելին Մաթվէյէվը բռնուեցաւ․ փուճ տեղ աղաչանքներ պաղատանքներ եղան իրեն ազատութեանը համար, Տոլկորուքիին պէս զանիկակ ալ սպաննեցին։ Ասկէ ետքը ցանկի մէջինները փնտռելու սկսան, որոնք երբոր ձեռք չտրուեցան՝ իրենք անձամբ պալատին ամէն կողմը մտան, եկեղեցւոյն մէջն ալ խուզարկելով փնտռածներնէն 3 հոգի հոն գտան, ու խորանէն, որուն ապաւինած էին, բաժնելով՝ անմիջապէս սպաննեցին․ շատ արքունի ծառաներ ալ, որոնց անունը ցանկի մէջ չկար, նոյն վախճանն ունեցան։

## 5

‘Նարիշքիններն՝ որոնց վրայ էր գլխաւոր մտադրութիւնը՝ պէտք էր որ ամենէն յառաջ ջընջուէին։ Իվան Նարիշքին՝ Զարուհւոյն եղբայրը չէր գտնուած․ ապստամբութեան երրորդ օրն ալ սկսաւ, դեռ չկրցան գտնել․ կատաղիներուն վրէժխնդրութիւնը դեռ յագած չէր։ Աս միջոցիս Ֆէոտոր Գ․ին բժիշկ՝ Դանիէլ Կտոնը բռնեցին, ամբաստանելով որ տէրը թիւնաւորած է․ ու քովէն գտնուած օձի մը չորցած կաշին ու ծովային խեցիներն ու ժժմունքը զինքն նաեւ իբրեւ դիւթ սպաննելու բաւական պատճառներ էին։ Դանիէլն առին քաշկռտելով ձարական խուցին առջին տարին եւ սկսան պոռալ, թէ Թիւնաւորողը գտանք, Իվան Նարիշքինն ալ տուէք մեզի, որպէս զի երկու չարագործներն ալ սպաննենք ու տեղերնիս քաշուինք։

‘Նատաղիա Զարուհին իր եղբօրը համար ահուդողու մէջ էր, նոյն իսկ Սոփիա, որն որ թէպէտ ապստամբութեան կրակը վառած էր, բայց չէր կրնար մարել, Նատաղիայի աղաչանքովը իշխանն ազատելու եկաւ։ Երկուքն ալ Իվանը մէջերնին առած, մանաւանդ Նատաղիա ծնկան վրայ իջած Իվանին կեանքը կը խնդրէին, բայց մէկէն արիւնարբու անզգամ մը վրանին յարձակեցաւ, Իվանին մազերէն քաշեց մէկդի առաւ։ Իվան ու Կտոն չարաչար սպաննուեցան, պէտք էին անանկ յանցանք մը խոստովանիլ, զորն որ չէին գործած։ — Վրէժխնդրութեան հոգին յագեցաւ․ սկսան բոլոր օդն իրենց աղաղակներովը թնդացընել, թէ կեցցէ Իվան մեր Զարը, մեր Զարին համար միայն ապրինք ու մեռնինք։ Աս միջոցիս երեւցաւ Իվան․ զինքն առին ու իրենց արիւնլուայ ձեռքերովն իր բաղձանացը դէմ գահ հանեցին։ Իվան իրենց յայտնեց թէ խնդիրքնին կատարելու պատրաստ է, բայց ուզեց որ Պետրոս ալ

իրեն գործակից ըլլայ։ Որովհետեւ Սթրելցներն ասոր դէմ չդրին, Սոփիա ալ պէտք էր որ ասիկա յանձն առնուր. երկու Ջարերն ալ Թագ առին ու իրենց խնամակալութիւնը Սոփիային յանձնուեցաւ։

Թագադրութիւնը ջարական պատուոյն արտաքին փառքն ու յարգը աւելցընելու համար, հին սովորութեանց համաձայն, մեծ հանդիսութեամբ կատարուեցաւ 1682ին (Յուն. 23 կամ Մայ. 18)[1]։

Փառասէր Սոփիա այսպէս արեան հեղեղներով հասաւ իր բաղձացած իշխանութեանը ու նոյնը միշտ անիրաւութեամբ գործածեց։

Այս եղանակաւ գոնէ ըստ մասին Սոփիային բաղձանքը կատարուեցաւ, որուն յոյսն ան էր որ իր

[1] Աս երկու Ջարերուն Թագադրութիւնը հին սովորութեանց համաձայն եղած Թագադրութեանց վերջինն եղաւ, ինչպէս երկու Ջարի մէկտեղ պսակուիլն ալ բոլոր Ռուսաստանի մէջ առջինն էր։ Աս հանդիսութեան հին զարդերը արդէն յառաջագոյն Իվան Ջարին որոշուած ըլլալով Պետրոսին համար նոյն զարդերն ըստ ամենայնի հիներուն նման բոլորովին նոր շինուեցան, որոնք ցայսօր Քրեմլ կը պահուին ու տեսնողներուն մեծ զարմանք կը պատճառեն։ Եղած հանդիսութեանց նկարագրութիւնը արտաքին գործոց պաշտօնատարաց ժողովոյն դիւանին մէջ պահուած է, որմէ ընթերցողաց տեղեկութիւն մը տալու համար քանի մը բան յառաջ կը բերենք։ — Ջարական զգեստները շատ հարուստ ու շատ գեղեցիկ էին։ Եկեղեցի տանող ճամբան օրհնած ջրով սրսկուեցաւ. ճամբուն երկու դին պաշտօնակալներ ու զօրավարներ շարուած էին, որոնց ետեւէն անթիւ անհամար ժողովուրդը մեծ յարգութեամբ Ջարերուն գալուստեանը կը սպասէր։ Ջարերը եկեղեցի մտնելուն պէս յաջող կառավարութեան մը համար հանդիսական երգը երգուեցաւ։ Ջարերը սուրբ դռներուն երեք անգամ ու վերջէն պատրիարքին երկրպագութիւն ըրին, որն որ իր տեղէն զիրենք երկու ձեռքովն օրհնեց։ Ջարերը սուրբ պատկերներն ու սրբոց մասունքները պագնելով իրենց տեղը մերձեցան. ուր որ պատրիարքը զիրենք դիմաւորեց ու խաչով, օրհնած ջրով ու դարձեալ երկու ձեռօք զիրենք օրհնելէն վերջը մէկզմէկ համբուրեցին ու տեղերնին գացին։ Բոլոր եկեղեցականները պատրիարքին քով ու արքունիքը Ջարերուն քով կեցած էին։ Ասանկ ամենայն ոք իր տեղն առնլէն ետքը բոլոր ժողովուրդը խորին լռութեամբ նախ Ջարերուն ու վերջէն Պատրիարքին ճառերը լսեցին, որմէ ետքը Ջարերն հաւատոյ դաւանութիւն մը տալով Պատրիարքը զիրենք օրհնեց ու պսակեց։

հիւանդոտ եղբօրը մահուընէ ետքը ինք գահ կ'ելլէ։ Իր իշխանութեանը առջի գործքը եղածներն ու գործուածները հաստատել եղաւ։ Մեռնողներուն ինչքը յարքունիս գրաւեց, հրաման ալ տուաւ որ հասարակաց հրապարակին մէջ չորեքանկիւն սիւն մը կանգնուի ու վրան Սթռելցներէ սպաննուողներուն անունները գրուին ու իբրեւ մատնիչ հայրենեաց համարուին։ Վերջապէս իբրեւ պսակ ամենուն հրովարտակ մ'ալ հանեց, որուն մէջ այսչափ չարեաց գործակցացը նախանձին ու փութոյն շնորհակալ կ'ըլլար։ Ընտրեց իրեն խմաստուն ու գիտուն օգնական մ'ալ Վասիլ Կոլիցին իշխանը, որ իր խոհեմութեամբը ամէն բանի մէջ կ'առաջնորդէր իրեն։

Բայց խոհեմութեան գործք էր միանգամայն որ ան թաւան զօրութիւնը զոր որ իշխանութեան հասնելու գործածեց, տկարանայ, որովհետեւ նոյն զօրութիւնը կրնար զինքը նոյն իշխանութենէ ձգել։ Սակայն ասի դիւրին բան չէր, ծանրաքայլ գործողութեամբ մը աս վախճանիս կրնար հասնիլ, որուն արդէն ձեռք զարնուած էր։ Ցարին անձնապահութիւնն ազնուականաց տրուեցաւ ու զանազան պատճառներով Սթռելցներու գունդեր տէրութեան այլեւայլ կողմերը խաւրուեցան ու անոնց տեղ ուրիշ պատերազմական զօրք Մոսկուա բերուեցաւ։ Երկու տարի էր որ աս եղանակաւ Սթռելցներու զօրութիւնը կը տկարանար, երբոր իրենք մէկէն բանը կռահեցին։ Զէնքի վազեցին, ապստամբութեան լուրն անմիջապէս Քրեմլ հասաւ. անցելոյ յիշատակն այնպէս ազդեցութիւն մ'ըրաւ արքունեաց վրայ, որ թողուցին ամրոցն ու Մոսկուայէն 6 ժամ հեռու Երրորդութեան մենաստանն ապաւինեցան։ Սթռելցներու գլուխը որ երբեմն օգնական ու բարեկամ էր Սոփիային իբր աս խռովութեանց պատաս-

խանատու՝ որդւոյը մէկտեղ դատի կանչուեցաւ, ու երկուքն ալ իբրեւ քրէական յանցանաց պարտական՝ մահուան դատապարտուեցան, որով Սթուելլեցբու խռովութիւնն աւելի եւս բորբոքեցաւ։ Պէտք էր որ իրենց գլխուն մահուանը վրէժն առնուին. կատղութեամբ մենաստան մտան, Պետրոսը սպանել կ'ուզէին. երկայն ատեն փնտռելէն ետքը մտան եկեղեցին, ուր որ Նատաղիան խորանին ապաւինած թեւերումն իր որդին կը ծածկէր։ Չարագործներէն մէկը ձեռքը դաշոյն Պետրոսին վրան յարձակեցաւ ու սիրտը խոթելու վրայ էր, երբոր ընկերներէն մէկը պոռալով թէ "կեցիր եղբայր, հոս խորանին քովը չէ" զինքն արգելեց։ Աս միջոցիս արքունի ձիաւորաց գունդ մը հասաւ եկեղեցւոյն մէջ ու շփոթութիւն շփոթութեան վրայ ծագեցաւ, Սթուելեցները փախչելու սկսան, այսպէս Պետրոս ալ ազատեցաւ։

Երբոր միւս խռովարարները եղածն իմացան, ու ան համբաւը, թէ դրսէն շատ զօրք կու գայ երկիւղ մըն է տիրեց վրանին. արքունիքն աս վայրկեանս իր օգտին գործածելով ապստամբներուն՝ բաց ի գլխաւորներէն, ընդհանուր թողութիւն շնորհեց։ Մեծ հաճութիւն եւ ընդունելութիւն գտաւ աս ընթացքը ու 3400 հոգւոյ գունդ մը, բոլորովին տարբեր կերպարանքով պալատ մերձեցաւ։ Ասոնք ամէն մէկ գնդին տասներորդ մարդն իբրեւ յանցաւոր սեպած, ու վիզը չուան անցուցած ձեռքերնին զէնքերով եկան Չարերուն բնակութեանը պատուհանին առջին կեցան ու կ'աղաղակէին թէ մենք ամենքս ալ յանցաւոր ենք, Չարն զմեզ դատէ, ու ինչ որ կ'ուզէ ընէ։ Արքունիքն աս տեսարանին վրայ զարմացած ինչ ընելիքը չէր գիտէր, վերջապէս երբոր Սթուելեցները նոյն մտաց վրայ դեռ հոն կը կենային,

հրաման ելաւ թէ միայն գլխաւոր յանցաւորները մեռցուին, որով 30 հոգի գլխատեցան:

## 6.

Այսպէս կառավարութիւնը վախցընող թշնամիները խոնարհեցան, բայց անդիէն պալատական կողմնակցութիւնը նորէն սկսաւ: Մէկ կողմանէ Սոփիային միտքն իր Իվան եղբօրը վրան էր, ու Պետրոսը եղանակաւ մը մէկ դի առնուլ կ'ուզէր. անոր համար Իվանն ամուսնացուց (1684) յուսալով որ ժառանգ մը ծնանելուն պէս՝ ժողովրդեան սիրտն աւելի Իվանին կը հակի ու Պետրոս մէկ դի կ'ելլէ: Մէկալ կողմանէ Նատաղիան ալ պարապ չէր կենար, իր ջանքն ան էր, որ Սոփիային քովէն Կոլիցին իմաստուն խորհրդատուն հեռացընէ, որն որ Տաճկաց դէմ եղած պատերազմով իրօք ալ յաջողեցաւ: Արդէն երկայն ժամանակէ վեր Գերմանիայի կայսրը Տաճկաց հետ պատերազմի մէջ ըլլալով ռուսական կառավարութենէ կը խնդրէր որ իրեն նիզակակից ու օգնական ըլլայ: Ռուսաստան մինչեւ որ Լեհաստանի հետ մշտնջենաւոր խաղաղութեան դաշինք մը չդնէր նէ, աս բանս չէր կրնար յանձն առնուլ: Աս մշտնջենաւոր խաղաղութիւնը 1686ին կատարեցաւ, որուն անմիջական հետեւութիւնն եղաւ Տաճկաց դէմ պատերազմ հրատարակել. աս առթով Նատաղիայի կողմը կը ջանար որ Կոլիցին խաւրուելու բանակին հրամանատար ըլլայ, որն որ յաջողեցաւ ալ, ինչու որ Կոլիցին զօրաց գլուխն անցած դէպ ի Խրըմ ճամբայ ելաւ:

Խանը Ռուսաց գալն իմանալով Փերեքօփի ճամբուն վրայ եղած կերակրեղէնները բոլոր փճացուց ու մարգերուն բոլոր կրակ տուաւ, այնպէս որ Կոլիցին պաշար չգտնելով, անօթութենէ, ծարաւէ, յոգնութենէ իր զօրաց ու անասնոց մեծ մասը կորսըն-

ցուց։ Աս արշաւանքին պտուղը մի միայն ան եղաւ որ 30 հազար հոգւոյ աշխատութեամբ Սամարայի եզերքը քաղաք մը շինուեցաւ, որպէս զի երկրորդ պատերազմին զէնք ու պաշար պահուելու տեղ ըլլայ։ Առջի փորձն ասանկ անպատիւ վախճան մ'ունենալէն ետքը Կոլիցին Մոսկուա դարձած ատեն Սոփիա բոլոր ժողովրդեան ուրախութիւն ընել տուաւ, զօրապետներն առատութեամբ վարձատրեց, բոլոր զօրաց ստակ բաշխեց, իբր թէ բովանդակ Խրըմի տիրած ըլլային։ Ասկէ ետքը բանակը զօրացընելու համար ուրիշ փոյթ մը չտանելէն զատ՝ տէրութեան գրուածներուն եւ հրամանագիրներուն (Ուքասներուն) մէջ Զարերուն անուանց քով իր անունն ալ կը ստորագրէր. ու ասանկ Սոփիա իր յանդգնութեանը պտուղն յաղթանակաւ վայելելու սկսաւ, եւ իր երկու եղբարցն անուամբը տիրելու ատեն, բացարձակ իշխանութիւնն ալ ձեռք բերելու կաշխատէր։

Արտաքնոց հետ եղած յարաբերութիւններն ալ յառաջ տարաւ ու Ռուսաստանի ալ քիչ պատիւ չեղաւ։

Իմերէթի Արչիլ Խանը ռուսական պաշտպանութեան տակ առնուեցաւ ու իրեն՝ արքունի հրամանագրով մը, Թերէք քաղաքը բնակութիւն տրուեցաւ, որով եւ ինքն ալ Ռուսաստանի հաւատարիմ հպատակ եղաւ (1683)։

Շվետի թագաւորը ռուս դեսպանի մ'առջեւ յաւիտենական խաղաղութեան դաշինքը նորոգեց ու երդում ըրաւ (1683)։

Մոլտաւիան պաշտպանութիւն խնդրեց ու ընդունեցաւ (1684)։

Քալմուքներու Այուքա Խանը թշնամութիւնները դադրեցուց եւ Ռուսաց դաշնակից եղաւ (1684)։

Ասկէ զատ Լեհի հասարակապետութենէ ղանա-

զան ստացումներ եղան (1683)․ Աւստրիայի, Լեհաստանի ու իրեն դաշնակցացը հետ Տաճկաց դէմ դաշինք մը դրուեցաւ, ու Սոփիա իր փառաց ու արժանեացը մեծութիւնը տեսնելով (1887) ինքզինք Մեծ եւ Փոքր Ռուսիոյ Ինքնակալուհի անուանեց ու տէրութեան շքանշաններովը կը զարդարուէր ու դրամներու վրայ իր եղբարցը քով իր պսակազարդ կերպարանքն ալ կոխել կու տար։

## 7.

Սոփիան սանկ ինքզինքը իր ձեռք ձգած իշխանութեան մէջ հաստատելու վրայ էր, երբոր Պետրոս օր ըստ օրէ հասակը կ՚առնուր ու խելքը կը բացուէր։ Փրէօպրաշէնսք գեղն իր մեծութեանը օրրոցն եղաւ։ Աս գեղն իր առողջ օդովն ու զուարճալի դիրքովը, ինչպէս նաեւ որսի յարմարութեամբը Պետրոսին հօրը շատ սիրելի էր, որն որ հոն թէատրոն մը շինել տուած էր, ուր ամէն տեսակ թատերական խաղեր կը խաղացուէին։ Բայց բոլորովին տարբեր խաղ սկսաւ հոս 15ամեայ Պետրոսը․ իրեն տարեկիցները ժողվելով 50 հոգիէ բաղկացած պզտիկ գունդ մը շինեց, ու Ֆէոտոր Չարին ան սկզբանը համեմատ թէ Արդիւնքն եւ ոչ թէ ցեղի առաւելութիւնը պէտք է որ մարդը մեծցընէ, Պետրոս ալ իրենցմէ հասարակ մէկուն պէս կը վարուէր։ Ո՞վ կը կարծէր որ աս ոչինչ բազմութիւնը ատենօք մեծ մեծ գունդեր պիտի կազմէ, Սթռելցները խորտակէ, Սոփիային հպարտութիւնը կոխէ եւ Ռուսաստանի փառացը հիմ դնէ։ Աս պատերազմական նախապատրաստութեանց համբաւը շուտով մը չորս դի տարածուեցաւ, ամէն պատանիք կը բաղձային Չարին խաղակից ըլլալ, ու գունդագունդ աս գեղը կը վազէին։

Աս գնդին առաջին զօրապետը Փրանկ․ Լըֆոռն

էր ։ Լըֆորին ծնանելուն ու մեծնալուն միտ դնելու որ ըլլանք, չենք կրնար կարծել թէ այսպիսի մեծ նպատակի մը կոչում ունեցած ըլլայ ։ Ասիկա ժընեւրացի վաճառականի մը որդի էր· թէպէտ արուեստը վաճառական էր, սակայն միշտ կ'երեւար որ ինք նոյն արուեստին համար ծնած չէր ։ Տաքարիւն երիտասարդը իր ճամբէն խոտորեցաւ, պարտքեր ըրաւ ու փախաւ Մարսիլիա գնաց ու գրեթէ 14 տարեկան էր երբ գաղղիական պատերազմական դպրոցի մը մէջ մտաւ ։ Աս վառվռուն բախտախնդիրն ուր որ բախտի նշան մը կը տեսնէր հոն կը վազէր ։ Նոյն դպրոցէն ելլելով նախ հոլանտական ու ետքը (1675) ռուսական ծառայութեան մէջ մտաւ ։ Մոսկուա երթալով Դանիացւոց դեսպանին ատենադպիրն եղաւ ու շատ ռուս ընտանեաց հետ բարեկամութեան մէջ էր ։ Լըֆորին՝ դժուարին բան չեղաւ Պետրոսին հետ ալ բարեկամութիւն խառնել ։ Իր ազնուականութեամբը, ճարպկութեամբը, խորագիտութեամբն ու ընդարձակ տեղեկութիւններովը պատանի ինքնակալին սիրտն իրեն քաշեց, որուն՝ իր խորհուրդները մեծ շահ եղան ։ Այսպէս գրեթէ Պետրոսին վրայ տիրած՝ իրեն հոլանտերէն, օրէնսդրութեան գիտութիւն ու իշխելու կերպ սորվեցուց ։ Եթէ Լըֆոռ Ռուսաստանի մինակ աս ծառայութիւնն ըրած ըլլար, իբրեւ աս ընդարձակ տէրութեան նորոգութեանը գործակից՝ մեծ պատուոյ ու յարգանաց արժանի էր ։ Լըֆորին խորհրդովը Պետրոս միտքը դրաւ արեւմտեան Եւրոպայի կրթեալ ու մարզեալ զօրութեամբը Ռուսիայի վայրենի պատերազմողները (Ստրելիցները) ջնջելու, որոնք ամէն անգամ Զար մը գահ ելած ատեն մեծ խռովութեանց պատճառ կ'ըլլային ։ Լըֆոռն էր Պետրոսին առջի անգամ եւրոպական տէրութեանց նման գունդեր կազմելու

գաղափար տուողը: Իր փութովն ու ջանքովը Փոթեէշնիէ (վասն հաճոյից) անուամբ Չարին հասակակիցներէն ու ազնուականաց զաւկըներէն զօրաց դասակ մը կազմուեցաւ, որոնցմէ ուրիշ երկու գունդ ալ ելաւ (1694), որոնք միշտ կրթութեան մէջ էին: Աս էր Ռուսաց զինուորականութեան առջի դպրոցը: Աս գունդին տեսքը մեծ տպաւորութիւն ըրաւ պատանի ինքնակալին վրայ. Լըֆոռ զօրապետ անուանուեցաւ, ու Չարն ըստ արժանեաց բարձրանալ ուզելով թմբկահար եղաւ. Լըֆոռին խորհրդովը նաեւ ամէն աստիճանի պատանիներ՝ արուեստներ ու գիտութիւններ սորվելու համար Եւրոպայի զանազան կողմերը խրկուեցան: Աս եղանակաւ ի՞նչ երեւելի մարդիկներով չհարստացաւ Ռուսաստան: Նոյնպէս Լըֆոռին խորհրդովը Չարը նոյն տարին մեծ պարգեւներով ու խոստումներով Հոլանտայէն, Անգղիայէն ու Գենուայէն օտարական զօրապետներ կանչեց, որոնց հանճարաշատ ձիրքերն իր ընդարձակ յատակագծին մեծապէս օգնեցին: 12 հազարի հասաւ ան գունդին բազմութիւնը, որուն Լըֆոռ զօրապետ ու Չարը թմբկահար էր: Մի եւ նոյն ատեն Կորտոն սկովտիացի զօրապետը 5000 օտարականներով գունդ մը կազմեց, որոնք մշտնջենաւոր կրթութեանց մէջ էին: Չարն ասոնց քաջասրտութիւնը տեսնելու եռանդով դղեակ մը կանգնել տուաւ, որուն վրայ զօրաց կէսը պիտի յարձակէր, իսկ մէկալ կէսը դէմ պիտի կենար. աս պատերազմի նմանութիւնն իրօք պատերազմի փոխուեցաւ, որովհետեւ մեռնող ու վիրաւորող շատ եղաւ: Լըֆոռ հրամանատարն աս յարձակման մէջ մեծ քաջութիւն ըրաւ ու յաղթութիւնը վաստըկեցաւ, որուն վրայ Չարն ուրախանալով իր երախտագիտութիւնն ու շնորհակալութիւնը պարգեւով մը իրեն յայտնեց:

## 8.

Սոփիա Լըֆօռին՝ Պետրոսին հետ ունեցած բարեկամութեանը ամենեւին արգելք չէր դրած, Փոթեէշնիէ խաղերն ալ իր աչքին անմեղ բաներ կ'երեւային. բայց աչքն ան ատեն բացուեցաւ, երբոր Պետրոս 1688ին առջի անգամ տէրութեան գաղտնի խորհրդեանը մէջ մտնելով, իր վարմունքովը Սոփիային ապագայ խնամակալութիւնը կասկածի տակ ձգեց, ու Եւթոքսիա օրիորդին հետ ամուսնացաւ (1689), որով ժողովրդեան սիրտն իրեն քաշեց, Ա՛լ Չարին զինուորական խաղերն իրական կերպարանք մ'առին, որուն դէմ դնելու ատենն անցած էր. արդէն ան շատցած ու զօրացած Փոթեէշնիէ գունդը նոյն իսկ Սթռելիցներուն սարսափ կը բերէր: Աս միջոցիս Սոփիային զՊետրոս ա՛լ տէրութեան խորհրդոցը մէջ չխոթելու փոյթը պարապի ելաւ ու յափշտակելով ձեռքն անցուցած իշխանութիւնը կործանման մօտ էր: Անոր հակառակ Պետրոս միշտ տէրութեան խորհուրդներուն մէջն էր, ու տէրութեան գործոց մէջ մեծ գործունէութիւն կը ցուցընէր. սակայն եւ այնպէս չկրցաւ զԿոլիցին Տաճկաց երկրորդ պատերազմին հրամանատարութենէն արգելել: Աս անգամ ալ պատերազմը առջինէն աւելի մեծ յաջողութիւն մը չունեցաւ, որովհետեւ արիւնահեղ պատերազմէ մը ետքը յաղթութիւնն անորոշ մնաց ու Կոլիցին ետ քաշուեցաւ: Ի վերայ այսր ամենայնի Իվան ու Սոփիա զինքը յաղթողի մը պէս Մոսկուա ընդունեցան: Բայց Պետրոս այսպէս չըրաւ, Կոլիցինին եւ ոչ երեսը կ'ուզէր տեսնել: Պետրոս իր աս գործքովը, մանաւանդ իր ցուցըրած գործունէութեամբը փառախնդիր իշխանուհին այնչափ բարկացուց, որ վերջապէս ասիկա որոշեց որ Սթռելիցները ոտք հանելով Պետրոսին կենացը վերջ մը տայ:

Իւանն աս ատրիճանի հասնելէն ետքը փոքր առիթ մ'ալ բաւական էր թշնամութիւնները սկսել տալու, որոնք 1689ին եկեղեցական հանդիսութեան մը պատճառաւ իրօք ալ սկսան: Յունիսի մէջ Քազանի Ս. Աստուածածնայ պատկերին պատուոյն համար թափոր մը որոշուած էր, որուն արքունիքն ալ ներկայ պիտի գտնուէր: Արդէն երկայն ատեն էր որ ասանկ հանդիսութեանց մէջ Սոփիային ամենէն պատուաւոր տեղ կենալը Պետրոսին աչքին փուշ եղած էր. աս անգամ Պետրոս բաղձաց որ աս հասարակաց հանդիսութեան ատեն Սոփիա, չէ թէ իբրեւ խնամակալ ու ինքնակալուհի, այլ իբրեւ իշխանուհի երեւայ ու Զարերէն վար կենայ: Սոփիան իր իրաւունքէն չուզեց հրաժարիլ. Պետրոս ալ ասանկ հանդիսութեան ատեն շփոթութիւն մը հանել չուզելով, մայրն ու կինն առաւ ու թէ եկեղեցին թէ քաղաքը թողլով, Բրէոպրաշէնսք գեղը քաշուեցաւ: Յայտնի էր Պետրոսին որ Սոփիա աս գործքս առանց վրէժխնդրութեան պիտ'որ չթողու ու իրօք ալ քանի մ'օր ետքը այնպիսի դաւակցութիւն մը յայտնուեցաւ, որուն վախճանը զՊետրոս, իր ամուսինը, մայրն ու քոյրը սպաննել էր. տեսաւ Պետրոս որ ապահով վիճակի մէջ չէ ու Մոսկուայէն 6 ժամ հեռու Երրորդութեան վանքը ապաւինեցաւ: Պետրոսին աւելի քաջասրտութիւն տուողն ան էր որ Կորտոն զօրապետը ազդեց իրեն թէ Սոփիա արգելած է որ Մոսկուայէն դուրս մարդ չելլայ, բայց, կ'ըսէր Կորտոն, թէ որ զիս կ'ուզես՝ գալու պատրաստ եմ: Պետրոս աս իմանալուն պէս զօրաց հրովարտակ մը խաւրեց, որով իմացուց անոնց թէ իր կենացը դէմ դաւակցութիւն կայ, զինքն ու իրեններն սպաննել կ'ուզեն, ու անոնցմէ պաշտպանութիւն ուզեց: Կորտոն՝ որուն որ հրովարտակը խաւրուած էր, բոլոր զօրաց առջեւ զանիկա կարդաց: Մեծ ընդունելու-

թիւն գտաւ Հրովարտակն ու որոշուեցաւ որ նոյն Հրովարտակը վերին Հրամանատար Կոլէջինին տրուի եւ ըսուի թէ մէջինները կատարելը իրեն պարտքն է, եւ նոյն իսկ Կորատն յանձն առաւ աս վտանգաւոր պաշտօնը։ Հարցուց Կոլէջին թէ երթալու համար Սոփիային ու Իվանին Հրամանին պիտի սպասե՞ն։ «Չէ, ըսաւ Կորատն, դաւակցութեան մասնակից եղած կ՚ըլլանք եթէ Պետրոս Չարին Հրամանացը շուտով չհնազանդինք»։ Աս ըսաւ ու թողուց Երբորդութեան ամբոխը քաշուեցաւ․ քանի մ՚օր ետքը Հազարներով մարդ հոն ժողվեցան, որոնց ամէնն ալ Պետրոսին համար կեանքերնին տալու պատրաստ էին։

Աս միջոցիս Սոփիային՝ իր եղբօրը հետ հաշտուելու բաղձանքը շատ մեծ էր, եւ ուստի եւ հաշտութեան դեսպաններ կը խաւրէր, բայց զուր․ իր երկրորդ դեսպանը՝ պատրիարքն ալ գնաց ու բան մը չկրցաւ յաջողցընել եւ վախնալով որ ետ դառնալու ըլլայ նէ պատրիարքութիւնը ձեռքէն կ՚առնուի, Պետրոսին քովը մնաց․ վերջապէս որոշեց Սոփիա որ ինքն անձամբ երթայ, բայց ճամբան լուր առաւ որ Պետրոս իրեն հետ խօսակցիլ չ՚ուզեր․ շուտով ետ դառնայ ու եթէ շնորհք գտնել ալ կ՚ուզէ, դաւակցութեան (Ստրելցներու) գլխաւորը ձեռք տայ։ Սոփիա յոյս ունէր որ իր Իվան եղբօրմէն կրնայ օգնութիւն մը գտնել, բայց անկէց ալ պատասխան առաւ թէ Պետրոսին Հրամանացը դէմ չկենայ։ Բռնուեցան դաւակիցները ու նոյն ատենուան սովորութեանը համաձայն չարաչար պատիժներով պատժուեցան․ միայն Կոլէջին Պետրոսի կողմնակից բարեկամի մը ձեռքով ազատեցաւ ու կենդանին ու որդիքներովը Քարկարայ, եւ կամ ըստ ոմանց ատուցեալ ծովուն մօտերը Բուսերայ քաղաքն աքսորքի խրկուեցաւ

ու 20 տարի ետքը մեռաւ[1]։ Այսպէս նաեւ փառասէր Սոփիան ալ իշխանութենէ վար առնուելով վանքի մը մէջ փակուեցաւ, զորն որ ինքը Մոսկուայի մօտերը շինել տուած էր։ Ամէն բան խաղաղելէն ետքը Պետրոս 1800 Սթռելցիներու ուղեկցութեամբ ձիու վրայ մեծ հանդիսութեամբ Մոսկուա մտաւ։ Իվան Զարը պալատին արտաքին դրան առջին իր եղբայրն ընդունեցաւ. երկու եղբարք սիրով պագտըւեցան եւ Իվան միայն Զար պատուանուամբ գոհ ըլլալով ուրիշ բան չէր ուզեր, որով իշխանութիւնը միայն Պետրոսին մնաց։ Աս ատենէս սկսաւ Պետրոս Ա.ին տէրութիւնը, եւ Իվան տէրութեան գործքերու մէջ ուրիշ բան չունէր, բայց եթէ մուրհակներու մէջ իր անունն ալ տեսնել։ Այսպէս Իվան առանձնացեալ կեանք մ'անցընելով 1696ին մեռաւ։

Պետրոս Ա. զգաց հիմակ իր մեծ կոչումը, որ էր ազգն իր վայրենութեան վիճակէն հանել, Ռուսաստանի ընդարձակ սահմանները տալ, տէրութիւնը՝ եւրոպական ու ասիական տէրութեանց առջին ապահովցընել։ Աս իր հաստատուն ու անդրդուելի կամքը կատարելն իր կենացը մէկ հատիկ գործքն եղաւ։

[1] Հոնկից ալ Արխանկէլի մօտերը Բինեկա բերդը բերուեցաւ ու ըստ Վեպերի, վերջապէս իրեն հրաման տրուեցաւ որ Մոսկուայի մօտերը բնակի։



# Հատուած երկրորդ

## *Պետրոսի կառավարութեան սկիզբէն մինչեւ Շվետաց դէմ պատերազմ հրատարակուիլը*

## *1689—1700*



*Ռուսական ծովական զօրութեան սկիզբը։ Պետրոս Արխանկէլ կ'երթայ․ Ազովի պաշարումն ու չյաջողիլը․ զօրաց անհաւատալի քաջութիւնը։ Պետրոս Մոսկուա կը դառնայ ու նորէն պատերազմի պատրաստութեան ձեռք կը զարնէ։ Ազովի երկրորդ արշաւանքը, քաղքին առնուիլն ու փառաւոր ձաղանքը։ — Գիտութեանց համար օտար երկիր մարդ կը խաւրուի։ Դաւակցութիւն մը։ Պետրոսի առջի ճամբորդութիւնը։ Պրանտենպուրկ թագաւորական պատուով կ'ընդունուի ու անկից Ամսթերտամ կ'երթայ։ Պետրոս գործաւոր կ'ըլլայ․ Անգլիա կ'երթայ․ նորէն Հոլանտա կը դառնայ ու անկից ալ Վիեննա կ'երթայ։ Մոսկուա ապստամբութիւն կ'ելլէ։ Կորտոնին ու Լըֆորին մահերը։ Մենչիքով իշխանը։ Պետրոսի ներքին նորոգութիւնները։ Տաճկաց հետ 30ամեայ զինադադար կ'ըլլայ։*

### 9.

ՀԻՄԱԿ ահաւասիկ հասանք այն զարմանալի ու մեծ մարդուն գործքերը պատմելու, որն որ ստուգիւ տիեզերական պատմութեան մէջ քիչերն իրեն նման ունի։ Հիմակ Պետրոս իր ընդարձակ տէրութեանը մէջ ինքզինք ազատ տեսաւ․ ալ ազատեցան իր հզօր ձեռքերը, եւ իր տեսութեանց ու դիտաւորութեանց առջեւ ամենեւին արգելք մը չկար։ Տեսաւ իր ժողովրդեանը մեղկ ու տգէտ կեանքը, ու հաստատուն կամօք զանիկա աս մեղկութենէն ու տգիտութենէն ազատել ուզեց։ Ռուսիա ամէն գիտութիւններէ, ամէն արուեստներէ եւ ամէն քաղաքականութենէ զուրկ, ան պատերազմալից ատենները մեծ նորոգչի մը հարկաւորութիւն ունէր, որն որ իրեն նոր օրէնք, նոր կերպարանք տալով, ուրիշ ընդարձակ ու հաստատուն տէրութեանց քով զօրութիւն ու պայծա-

ռութիւն տար։ Պետրոս ի բնէ փոյթ, հաստատութիւն, զարմանալի գործունէութիւն ու դատաստան ընելու եւ մարդ ճանչնալու կարողութիւն ունէր։ Իր միակ մոլութիւնը, որն որ այս ամենայն յաջող յատկութեանց հետ ընդդիմապատկեր մը կը կազմէր, իր բնութեան խստութիւնն էր, որուն ճոթը երբեմն մինչեւ անգթութեանց ալ կ՚երթար։ Ասիկա իր զօրաւոր ու յաղթ կազմուածքին եւ մանաւանդ ունեցած բարբարոսական դաստիարակութեան ու այնպիսի վիճակի մը սովորական եղած չափազանց թշուառութեան բնական հետեւութիւն մը կրնայ սեպուիլ։

Տէրութիւնը ներքուստ հանդարտած ըլլալով, պէտք էր որ արտաքին ապահովութեանց հաստատութիւնը Պետրոսի միակ նպատակն ըլլար։ Արդէն Չենաստանի հետ եղած վէճերն, որոնց համար որ 1686ին Կոլովին կոմսը հոն խաւրուած էր, 1689ին դաշամբ մ՚իրենց վախճանն առած էին[1]։

Քաջասիրտ ու ճարպիկ գունդեր պատրաստելը, որն որ յառաջ Պետրոսի առանձին հոգն էր, հիմակ տէրութեան փոյթն եղաւ։ Լըֆոռ եւ Կորտոն իրենց ընդարձակ շրջահայեցութեամբն ու տեղեկութեամբը աս բանիս մէջ Պետրոսի թեւ թիկունք եղան։ Ան գունդը, որն որ յառաջագոյն կազմուած էր, խիստ կրթութիւններով մարզուելու սկսաւ. եղած կրթութիւնները ա՛լ տղայական խաղալիկ չէին, այլ արիւնահեղ ցոյցեր ու փոքր պատերազմներ, որոնք՝ այն հին բարբարոսական գաղափարով թէ

[1] Սիպիրեայի գտնուիլն եւ ռուսական տէրութեան հետ միանալը Չենաստանի հետ հաղորդակցութիւն ընելու գաղափարը տուաւ։ Արդէն 17երորդ դարուն սկիզբները Ռուս վաճառականներ տուրեւառի պատճառաւ Փեքինկի հետ երթեւեկի մէջ էին։ Ռուսաստանէն Չենաստան խաւրուած առջի հրեշտակութիւնն 1653ին եղաւ, որուն վախճանն աս երկու ազգաց իրարու մէջ երթեւեկութիւն հաստատել էր, բայց յուսացուած հետեւութիւնը չունեցաւ։

Հզօր իշխանին կամացը առջեւ մարդու կեանքը բան մը չէ, գրեթէ ամէն օր կը կատարուէին։ Շատ չանցաւ աս կրթեալ զօրաց թիւը 12,000ի հասաւ ու օր ըստ օրէ կը զօրանար։ Լըֆօռ՝ որն որ ամենայն ճգամբ զօրաց կրթութեան վրայ կ'աշխատէր, Չարին ներքին ու մտերիմ բարեկամն եղաւ, որովհետեւ Պետրոսի միակ յոյսն ու ապաստանարանը զօրքն էր։

Ցամաքային զօրութիւնն ասանկ աղէկ մը կարգաւորելէն ետքը Պետրոսին խելքը միտքը ծովական զօրութեան վրայ ուղղուած էր, զորն որ պէտք էր որ բոլորովին ինքն ստեղծէր [1]։ Քոզաքներու մա-

[1] Կ'ըսեն թէ Պետրոս պզտիկութեան ատենը ջրէն արտաքոյ կարգի վախ ու սոսկում մ'ունէր ու մեծ ջանքով հազիւ իր 14ամեայ հասակին մէջ աս հիւանդութենէ կրցաւ ազատիլ ու անկէ ետքը ըստ ամենայնի առջինին հակառակ բնութիւն մը ստացաւ. ջրերն իր զուարճութիւնն էին ու մասնաւորապէս նաւագնացութիւնը իր մէկ հատիկ զբօսանքն էր։ Շատերը եւ ի մասնաւորի Միւլլէր ու Պոլթին պատմագիրները կը համարին թէ աս Պետրոսին ջրէն ունեցած սոսկումը չինծու բան ու Շթրալէնպերկի բանաստեղծութիւնն ըլլայ. սակայն Կոլիքով յիշեալ անուանի մատենագրաց կարծեացը վրայ զարմանալէն ետեւ կը զրուցէ թէ աս պատմութիւնն ինքը Քրէքշին ստորիկանին գրուածոցը մէջ կարդացեր է որն որ Բոլթավայի պատերազմի ատենն արդէն գրուած լմնցած էր, որ ատենն որ Շթրալէնպերկի գործքը դեռ երեւան ելած չէր։ Քրէքշին, կ'ըսէ, իր գրուածները հաւատարիմ ու վաւերական աղբիւրներէ ժողված է ու շատ յարգելի ծերեր նոյն գրուածքը իբրեւ ճշմարիտ գրութիւն գովեցին եւ նոյն ինքն Քրէքշին իր անկողմնակալութիւնը երդմամբ կը հաստատէ։ — Մենք հոս տեղս աս երկու հակառակ կարծեաց ոչ մէկուն եւ ոչ միւսին ստուգութեան վճիռ մը չտուած համառօտիւ մը յառաջ բերենք ան դէպքը որն որ ոմանց պատմածին համաձայն Պետրոսին աս ախտին պատճառ եղած է։

Նատալիա Քիրիլովնա Պետրոս Ա.ին մայրը 5ամեայ որդւովը ուխտագնացութեան երթալու ատեն կառքով գետակի մը մէջէն անցնելու ստիպուեցան։ Ժամանակը գարուն ըլլալով գետակը մեծցած էր, եւ մայր եւ որդի կառքի մէջ կը մրափէին։ Երբոր ջուրը մէկէն կառքի մէջ մտնելու սկսաւ, մայրը սարսափելով մը արթնցաւ ու իր աղաղակներովը պզտի տղան ալ արթնցուց, որն որ ինքզինքը սաստիկ վտանգի մը մէջ տեսնելով անանկ այլայլեցաւ որ նոյն ատենը մէկէն վրան սաստիկ տենդ մ'եկաւ։

Աս զարհուրելի տեսարանը անանկ սոսկում մը տպաւորեց մանուկ իշխանին վրայ որ 4 տարի միօրինակ ոչ գետ ոչ լիճ

կոյկներն, որանցմով հինութիւն կ'ընէին, ծառե-նաւ կոծղներ էին։ Ցերութեան ներքին կողմերը նաւագնացութիւնն ու նաւն ան աստիճանի անծա-նօթ բաներ էին, որ Ռուս նկարիչ մը դժուարաւ կրնար նաւու մը պատկեր ձեւացընել։ Թէպէտ եւ Պետրոսի հայրն՝ Ալեքսի Կասպից ծովով Պարսկաց հետ վաճառականութիւն ընելու ու նաւու մը շինու-թեան համար արդէն Հոլանտայէն նաւագործ ու նաւաստիներ կանչած էր եւ արդէն Արծիւ անուամբ նաւ մը շինուած ու Տեռենովէն Վոլկա իջած եւ Աժտէրխան հասած էր, բայց Տոնի քով բնակող Քազաքներու ապստամբութեամբ մը ամէն բան տակն ու վրայ եղաւ։ Ապստամբները նորաշէն նաւն այրե-

եւ ոչ աւազան անտարբերութեամբ չէր կրնար տեսնել ու մինչեւ 14ամեայ հասակը չէր կրնար լուացուիլ եւ ոչ ալ գետի վրայ ճամբորդութիւն ընել։

Պորիզ Ալեքսիեվիչ Կոլիցին պզտի իշխանին խնամակալը հետեւեալ միջոցով աս ջրի ասկուամն իշխանին վրայէն փա-րատեց։ Օր մը ամենայն պատրաստութեամբ որսի ելաւ ու աղաչեց իշխանին որ ինքն ալ նոյն որսին ներկայ գտնուի։ Կոլիցին Քնեզը ամենայն ինչ անանկ պատրաստած էր որ բո-լոր ընկերութիւնը գետակի մը քով պիտի գտնուէր։ Պետ-րոս իմանալուն պէս որ գետի առջեւ պիտի ելլեն ձին կե-ցուց։ Կոլիցին երբոր ասոր պատճառն որ հարցուց, պա-տանի իշխանը չուզեց իր վախն արտաքուստ յայտնել այլ միայն ուզեց իմանալ որ զինքն ո՞ւր կը տանին «Գետակի մը քով կ'երթանք, պատասխանեց Քնեզը, որսորդները բոլոր փոշւով ծածկուած ու ձիերը յոգնած են, հրաման չէ՞ք տար որ որսորդներն ու ձիերը քիչ մը հանգիստ առնուն։ Ձեր հայրը, կ'ըսէր դարձեալ Քնեզը, շատ անգամ ասանկ կ'ընէր ու նոյն իսկ ինքն ալ աս գետին մէջ լուացուած է։ Հրաման տուէք որ Ձեր որսորդներն ալ կարենան նոյնն ը-նել,, Աս խօսքերով ստիպուեցաւ Պետրոս ուզուած հրա-մանները տալու. երբոր որսորդները լուացուելու պատրաս-տութեանց մէջ էին, ցաթկեց Կոլիցին գետին մէջ նետուե-ցաւ ու սկսաւ ստիպել Պետրոսն որ ինքն ալ նոյնն ընէ։ Պետրոս որչափ որ աս բանիս տհաճութիւն ու հակառակու-կութիւնուններնէ, ունեցած վախն ալ յայտնելու կ'ամչնար։ Ինք իրեն մեծ բռնութիւն տալով վերջապէս ինքն ալ գետ մտաւ։ Ամէն ներկայ եղողները՝ որոնց արդէն Պետրոսին ու-նեցած վախը ծանօթ էր, սկսան ուրախութեան աղաղակ-ներով պոռալ որ Պետրոս ինքիրեն յաղթեց։ Նոյն իսկ Պետրոս ետքէն քանի որ եղածը կը յիշէր, մեծ զուարճու-թիւն կը զգար։

ցին, նաւապետը մեռցուցին, իսկ նաւաստիք Պարսկաստան փախչելով Արեւելեան ընկերութեան ծառայութեան մէջ մտան. ասոնցմէ երկուքը միայն, ամէն բան խաղաղելէն ետքը, Մոսկուա դարձան, որոնցմէ մէկուն անունը Պրանտ էր: Աս Պրանտն էր, որ Պետրոս մեծին ծովական զօրութեան թուիչ մը տալուն գործիք եղաւ:

## 10.

Երբոր անգամ մը Պետրոս Մոսկուայի քով խամայիլով գեղը գացած էր, հոն հին նաւ մը աչքն ինկաւ, որն որ իբրեւ անգործածելի մէկ դի ձգուած էր. Պետրոս նաւն աղէկ մը զննելէն ետքը, հարցուց թէ “Նաւագործ մը չկա՞յ”: Շուտ մը նաւագործ մը գտան ու բերին, որն որ Պրանտն էր. ասիկա նաւն աղէկ մը նորոգելէն ետեւ, Չարին աչքին առջեւ, Եաւզա գետին վրայ, որն որ Մոսկուայի արուարձանին առջեւէն կ'անցնի, թէ ջրին ընթացքին ու թէ ջրին դէմ սկսաւ նաւը վարել: Պետրոս աս տեսնելով ինքզինքն անմիջապէս նաւ նետեց ու անձամբ թիավարելու սկսաւ: Ասկէ ետքը Պրանտի գործունէութեամբը ուրիշ նաւեր ալ շինուեցան. անգղիացի ձեւով նաւ մ'ալ լմնցաւ (1691), որուն վրայ Պետրոս ճամբորդութիւններ ըրաւ: Աս ատենէս Պետրոս սաստիկ փութով ետեւէ ինկաւ նաւական բաներըհոգալու եւ ծովական զօրութիւն մը ստանալու: Անմիջապէս Հոլանտայի Սաարտամ քաղքէն, իրենց օգտակար պայմաններով նաւաշինութեան վարպետներ բերուեցան. Պետրոս գրեթէ ամէն բան, նաեւ իր առողջութիւնն ալ մոռցած, միշտ ասոնց մէջ անձամբ կ'աշխատէր. (որովհետեւ տէրութեանը մէջ նոր բան մ'ըլլալուն պէս՝ պէտք էր որ ինք նոյնը գիտնար ու սորվէր): 1692ին Մայիսի առաջին օրը իր շինած նաւը ջուր իջեցընելով յաղթանակաւ մը Բէրէսլա-

վեան լճին մէջ պտըտելու եւ նաւավարութեան արուեստը սորվելու սկսաւ։ Հետզհետէ խել մը նաւեր շինուելու վրայ էին, երբ Պետրոսի՝ Արխանկէլ քաղաքը տեսնելու բաղձանքը օր ըստ օրէ կը զօրանար։

16երորդ դարէն վեր, Սեբաստիանոս Գափոտ անգղիացւոյն ձեռօքը Ճերմակ ծովուն վաճառականութիւնը նորէն բացուելով (1553), երբոր (1584) Արխանկէլ քաղաքը շինուեցաւ, վաճառականութեան գլխաւոր տեղ մ՚եղաւ. ասիկա աւելի երեւելի եղաւ 17երորդ դարուն կէսէն վեր. ամէն ազգ հոս կը թափէին, մանաւանդ Հոլանտացիք ու Անգղիացիք։ Արխանկէլ դրսերը շատ գաղթականութիւններ ալ ունէր։ Ռուսաց ունեցած ամենէն ամուր եւ ծաղկեալ ծովական տեղն աս քաղաքն էր։ Ասոր համար էր որ Պետրոս Արխանկէլ տեսնելու այնչափ բաղձանք ունէր։

Պետրոս առջի անգամ (1693) Ճերմակ ծով մտաւ. տեսաւ նաւերն ու նաւահանգիստները, եւ հոլանտացի նաւավարի անուամբ չորս դին պտըտեցաւ։ Սառուցեալ ծովն առջի անգամ իր վրան ինքնակալ մը տեսաւ։ Երկրորդ տարին երբոր Պետրոս երկրորդ անգամ Արխանկէլ գնաց, շատ Ռուսի նաւեր գործածեց ու ան ուրախութեան մէջ դեռ կազմուելու նաւատորմղին՝ Ֆէոտոր Եուրէվիչ իշխանը ծովապետ անուանեց։ Իր ծովու վրայ ըրած ճամբորդութիւններն ալ անվտանգ չէին. ի մէջ այլոց անգամ մ՚ալ դարձեալ Ճերմակ ծովուն վրայ (1694) դէպ ի Սոլովքա կղզին ճամբորդութիւն ըրած ատեն անանկ ալէկոծութիւն մը կրեց որ բոլոր ընկերները զարհուրեցան. ամէն մարդ աղօթքի հետ էին, ալէկոծութիւնը ապրելու յոյս չէր ձգեր։ Միայն աներկիւղ ղեկավարին անխոնջ աշխատանքը կրցաւ նաւը ազատել։ Պետրոս աս վտանգալից ա-

տենք չէ թէ միայն ղեկավարը կը քաջալերէր, այլ նաեւ զանազան հրամաններ ալ կու տար, ու անձամբ անոր օգնել կ՚ուզէր: “Թող զիս, պոռաց անհամբեր ղեկավարը, ես ընելիքս քեզմէ աղէկ գիտեմ„. Իրօք ալ այնպիսի քաջութեամբ նաւն ուղղեց որ կրցաւ եզերք հասնիլ: Հոն ղեկավարը Պետրոսի ոտքն ինկած տուած անքաղաքավար պատասխանին համար թողութիւն խնդրեց: Պետրոս աս պատասխանին չէ թէ միայն չէր բարկացած, այլ նաեւ զինքը գրկելով երեք անգամ ճակատը պագաւ, մեծ պարգեւներով վարձատրեց ու իրեն տարեկան մուտք կապեց: Ցամաք ելած տեղերնին բուն Պետրոսի ձեռքովը շինուած փայտէ խաչ մը կանգնուեցաւ[1]:

Աս վաճառականական քաղաքը թէպէտ Պետրոսին շատ հեռու կ՚իյնար, սակայն ինքն աս քաղքով եւրոպական տէրութեանց հետ աւելի եւս մերձաւորագոյն հաղորդութիւն մ՚ունենալ կուզէր: Իմացած էր ու աղէկ գիտէր որ չէր կրնար ճարտարութիւնը իր ժողովրդեան մէջ յառաջանալ՝ քանի որ Ռուսաստանի մեծ գետերուն բերանները դրացի տէրութեանց տակն էին: Իր միակ բաղձանքը Սեւ ծովուն վրայ նաւահանգիստ մ՚ունենալ, ու նոյն ծովին վրայ Տոն գետին բերանը Ազով քաղաքը գրաւել էր: Թէ որ մարդ եւրոպական աշխարհացոյց թղթին վրայ հայեցուած մ՚արձակելու ըլլայ՝ ասոր ինչպիսի կարեւոր տեղ ըլլալն անմիջապէս կ՚իմանայ, ինչու որ Սեւ ծովուն բանալին է: Պետրոս Ա. աղէկ նաւական զօրութիւն մ՚ունենալու ու իր տէրութեան կարօտութիւնները լեցնելու համար աս տեղը գրաւելն իրեն անհրաժեշտ սեպած էր: Չորս կողմանէ թշնամիներէ պատած էր, որովհետեւ Սեւ ծովուն՝ Տաճիկները ու Պալթիկ ծովուն՝ Շուէտ-

[1] Քորպ պատմագիրը կը պատմէ (եր. 179) որ Պետրոս աս ալէկոծութեան ատեն Հռոմ Ս. Պետրոսի գերեզմանին այցելութեան երթալու ուխտ դրած ըլլայ:

ները կը տիրէին։ Ատենոք երկու ծովերն ալ Ռուսաց առջին բաց էին։ Նոյն ատենը Տաճկի տէրութիւնը աշխարհքիս ամենէն զօրաւոր տէրութիւններէն մէկն էր. ան ատեններն (1683) էր, որ Գարա Մուստաֆան 200,000 հոգւով Վիէննա պաշարեց, ու արքունիքը նախ Լինց ու անկից ալ Փասսաւ փախաւ։ Նոյնպէս Շուէտ ալ իր կրթեալ ու պատերազմասէր զօրքովը Կարոլոս ԺԲ. թագաւորն ունէր։

## 11.

Ժամանակին պարագաները իր աչքը Սեւ ծով դարձուցին։ Տաճկաց պատերազմը թէպէտ տէրութեան ներքին գործքերովն ընդմիջած, սակայն ոչ խաղաղութեամբ եւ ոչ ալ զինադադարով վախճան մ'առած էր։ Պետրոս միտքը դրաւ որ նոյն պատերազմին յառաջ տանելով ոչ միայն իր վտանգաւոր դրացիները՝ Խրըմի Թաթարները զսպէ, այլ նաեւ Տոնին Ազախու ծով (Սեւ ծով) թափած բերանը ազատէ, ծովու քով վաճառականական քաղաք մը ստանայ, ու ասով իր տէրութեան հարաւային կողմը, զորն որ Տոն գետը կը թրջէ, նոր կենդանութիւն մը տայ։

Արդէն երկայն ժամանակէ վեր Տոնին բերանն Ազով քաղաքը Ռուսք ու Տաճիկք ձեռքէ ձեռք կը յափշտակէին։ Ռուսք կը պնդէին թէ իրենց կը վերաբերի։ Բայց արդէն 50 տարիէ վեր քաղաքը Տաճկաց ձեռքն էր, որոնք աս բնականապէս զօրաւոր տեղն իրենց արուեստովը արտաքոյ կարգի ամրացուցած էին։

Քանի որ Տաճիկները տէր էին ծովու եւ անարգել ամէն տեսակ բաներով քաղաքը կրնային հոգալ, տեղւոյն առումը սաստիկ դժուար էր Ռուսաց։ Ի վերայ այսր ամենայնի Պետրոս իր նորակազմ զօրացը վրայ վստահացած՝ որոշեց որ առանց նաւա-

տորմղի՝ բերդին վրայ յարձակում մ՚ընէ (1695)։ Մէկ կողմանէ Շերեմէթէվ իշխանը Մասեբբա Քոզաքներու հրամանատարին հետ մէկտեղ զօրքով Տնիեփերի քով Թաթարները բռնելու գնաց, միւս կողմանէ հարիւր հազար ալ Կորտոնի, Լըֆոռի եւ Կոլովինի զօրավարութեամբը շիտակ Ազովի առջեւ քալեցին. Պետրոս՝ Լըֆոռին գունդին մէջն էր։ Տէրութեան Ներքին կառավարութիւնն ալ Պոյարի մը ձեռքը յանձնուեցաւ։

Ազով՝ Սեւ ծովէն գերմանական մղոն մը հեռու, բլրի մը վրայ էր, որուն զառիվայրը Տոն գետին վրան կը նայէր։ Գրեթէ չորեքկուսի էր, պզտի պարիսպներով ու բաւական զօրաւոր պատով, ու առջեւը գրեթէ եօթը ձողաչափ լայն խրամ ունէր։ Ներքին կողմերը գրեթէ երեք ու կէս ձողաչափ բարձրութեամբ եռեւէ եռեւ երկու պատ ունէր։ Տեղւոյն պաշտպանութիւնը 4000 ընտիր զօրաց ձեռքն էր։

Պաշարումն Յուլիսի մէջ սկսելով, խկզբան յաջող հետեւութիւն մը կը յուսացուէր։ Տոնին երկու եզերքները գտնուած փայտեայ ամրոցները՝ որոնք շղթաներով Տոնին բերանը գոց կը բռնէին, նուաճեցան, ու Տաճկի կողմանէ եղած յարձակման մ՚ալ դէմ կեցան ու ետ վռնտեցին։ Սակայն Գերմանացի փախստականի մը մատնութիւնը Ռուսաց առջի վնասին պատճառ եղաւ։ Որովհետեւ Տաճիկներն աս մարդէն իմացան որ խրամները՝ զորոնք Կորտոն ձախ կողմանէ Լըֆոռին բանակին հետ հաղորդակցելու համար փորել կու տար, ոչ լմնցած եւ ոչ ալ գոցուած են, եւ թէ Ռուսները սաստիկ տաքի առեն հասարակօրէն կը քնանան. ան միջոցին՝ Կորտոնին արտաքին պատնէշներուն վրայ՝ ուր որ Սթռելըցները կը կենային, յարձակում մըն է ըրին, զարկին զիրենք ու նոյն իսկ Կորտոնին որդին փախչե-

լու վրայ էր երբոր զօրապետն անձամբ գալով թշնամին ետ քշեց։ Այս դէպքիս վրայ պաշարումը մինչեւ Օգոստոս ուշացաւ. ամէն մարդ անհամբերութեամբ որոշիչ յարձակման կը սպասէր։ Կորտոնին հանած դժուարութեանցը բազմութեան ձայնն յաղթեց, ու 2500 Քօզաք, ու կամաց կամաց 4—5 հազար մարդ կամաւոր զինուոր գրուեցաւ։

## 12.

Օգոստոսի 5ին արեւուն ծագած ատեն յարձակման նշանն ալ տրուեցաւ, զինուորները հրաշալի քաջութիւն կը գործէին, թշնամւոյն կրակը դադրեցընելով առանց սանդղի պատերէն վեր ելլելու սկսան, բայց իրենց ետեւի օգնականներն ուշ հասնելով ու ամէն կողմէն մի եւ նոյն ժամանակ յարձակում չըլլալուն ետ վռնտուեցան։ Նոյն միջոցին նաեւ Քօզաքներն ալ նաւերով քաղաքը գետին կողմէն պաշարելու համար եկած էին, բայց անոնք ալ ետ վռնտուեցան. աս աճապարեալ գործքին 1500 Ռուս զոհ եղաւ։ Պետրոս աս անյաջող դէպքին վրայ շատ նեղացած պատերազմական ժողովք մը կոչեց, սկսուածը թողուլ՝ չըլլալու բան կ'երեւար իրեն, պէտք էր որ պաշարումը շարունակուէր, աս էր իր կարծիքը. ամէնն ալ իրեն հաւանեցան։

Խրամները նորէն սկսան, ու ականներ կը բացուէին, բայց գործքը Անգղիացի Ադամ Ճարտարապետին անտեղեկութեամբը ապականեցաւ. աս երիտասարդը, որն որ ական փորուելուն գլուխ կեցած էր, կարծելով որ արդէն բերդին տակն հասած են, ամէն բան պատրաստելով կրակ տուաւ. ան ատեն իմացուեցաւ թէ դեռ բերդէն հեռու է ականը, աս պատճառաւ գրեթէ 30 հոգի մեռան ու 100 հոգի վիրաւորեցան։ Այս դժբախտութիւնը մեծ խռովու-

թիւն հանեց Ռուսաց մէջ, ամէնն ալ օտարականաց վրայ կը տրտնջէին։ Բայց նոյն դժբախտութիւններով ամենեւին չէր յուսահատեր Պետրոս, նոր յարձակում մ'ալ որոշուեցաւ, 600 հոգի նաւակներով ծովու կողմանէ բերդին վրայ յարձակելու համար խաւրուեցան. հոս Կորտոն նորէն աս գործքիս մէջ գտնուած դժուարութիւններն ամենուն ցուցուց, բայց իր կողմանէ ուրիշ ընդդիմութիւն մը չհանելով՝ ամէն բան մեծ փութով պատրաստելու վրայ էր։ Օգոստոսի 23ին կէսօրէն ետքը երեք թընդանօթով յարձակման նշան ու ականներուն կրակ տրուեցաւ. կատաղաբար յարձակեցան Ռուսերը քաղքին վրայ ու պատերէն վեր ելլելու վրայ էին, երբոր Ցաճիկներն իրենց բոլոր զօրութեամբը յարձակողաց վրան ինկան ու մէկուկէս ժամ պատերազմելէն ետքը Ռուսերը ետ վռնտեցին։

Չարն՝ որ գետին անդիի կողմէն ամէն բան կը դիտէր՝ Կոլովինի գնդին հրաման խաւրեց որ նորէն յարձակին. ատոնք ու Քոզաքները կրակներու մէջ յառաջ երթալու սկսան. Կորտոն աս տեսնալով իր գնդին նորէն յարձակման նշան տուաւ, ու նորէն պատերէն վեր ելլելու սկսան, սակայն առջի եռանդը չէր մնացած։ Բերդին մէջիններն ստէպ կրակ տալու վրայ էին, Ռուսաց վրայ հրալից գնդակներ ու քարեր կը նետէին ու թնդանօթներէն շղթաներով իրարու կապուած գնդեր կ'արձակէին։ Շատ մարդ մեռաւ, շատ մարդ վիրաւորեցաւ։ Կորտոն տեսնելով որ փուճ տեղ իր զօրքերը կը կորսուին, ետ քաշուելու նշան տուաւ։

Հազիւ թէ ասիկա լմնցած էր, մէյ մ'ալ Չարէն նորէն յարձակման ու ստորին քաղաքը մտնողներուն օգնութեան հասնելու հրաման եկաւ։ Կորտոն երրորդ անգամ յարձակման նշան տուաւ եւ երկու գունդ քաղաք մտնողներուն օգնութեան խաւրեց. բայց

աս անգամ ալ յաջողութիւն մը չունեցաւ, յարձակողներն հազիւ պատին առջեւն հասան, ու օգնութեան գացողներն ալ այնչափ ուշացան, որ քաղաք մտնողներն արդէն դուրս ելլելու ստիպուած էին։ Վերջապէս գիշերն եղաւ աս յարձակման վերջ տուողը։ Ռուսք 5000 մարդ կորսնցուցին, Ազով անյաղթելի մնաց, ու Տաճիկները ցնծութեամբ իրենց Ալլա՜հը կը հնչեցընէին, ու ձայն մը կը գոչէր Ռուսաց "Տուն գացէք, Մոսկուացիք, Ճամբանիդ բաւական երկայն է եւ ուտելու բան չունիք. տուն գացէք,,։

Օգաց Պետրոս հակառակորդաց ձայնին ճշմարտութիւնը. քաղքին պաշարումը որ 20,000մարդ արժած էր իրեն, վերցուց. բայց փայտեայ պատնէշները, Տնիէփերի քովի խրամները, մինչեւ Սեւ ծով Ռուսաց ու Քոզաքներու ձեռք մնացին. զօրքին մեծ մասն ալ Սամարայի մօտերը ձմերելու որոշուեցաւ. զօրաց մնացած մասը սաստիկ յոգնած իր հայրենիքն հասաւ, որովհետեւ Ռուսաստանի սահմանն հասնելու համար գրեթէ 100 գերմ. մղոն ճամբայ ըրած էր։

## 13.

Պետրոս իմացաւ որ առանց ծովական զօրութեան՝ պատերազմի յաջողութեան յոյս չկայ, ու Մոսկուա դառնալէն ետքը սկսաւ իր Տաճկաց վրայ ընելու երկրորդ արշաւանքին վրայ մտածել։ Ա՛լ փորձով եւ ի մերձուստ տեսած էր Պետրոս թէ պակասածներն ինչ են։ Բանէ հասկցող ճարտարապետներ ու գնդաձիգ զօրք չունէր. վերին հրամանատարութեան միութիւն կը պակսէր, նաւատորմիղ չկար, որ ծովու տիրելով բերդին պաշարը կտրէ։ Կայսրը, Պրանտենպուրկի ընտրող իշխանն եւ Հոլանտա (կամ Ստորին Նահանգները)՝ Պետրոսին խնդրելովը ճարտարապետ ու գնդաձիգ զօրք

խրկեցին Ռուսաստան, որովհետեւ իրենց ուզածն ալ ան էր որ Տաճիկները, որոնք Ունկարիայի մէջ կայսեր հետ մշտնջենաւոր պատերազմի մէջ էին, բոլորովին Սեւ ծովուն վրայ պատաղին: Ասանկ բոլոր ձմեռ աղէկ մը զօրանալէն ու զօրաւոր նաւատորմիղ մը պատրաստելէն ետքը՝ 1696ին մեծ զօրութեամբ դարձեալ ասպարէզ ելաւ: Զօրաց մէջ մեծ քաջասրտութիւն ու եռանդ տիրած էր: Զօրաց հրամանատարներն էին Շայն Պոյարը, Կորտոն, Լըֆոռ եւ այլն: Նաւատորմղին շինութիւնը շատ դժուարութիւններ ունեցաւ. սակայն Պետրոսին փոյթն ու եռանդը ամէն դժուարութեանց յաղթեց: Տոն գետին քով Վորոնէժ քաղքին մէջ նաւ շինելու յարմար տեղ մը գտած էր: Վորոնա գետը կամ առուն մանաւանդ՝ որ գրեթէ անկից երկու մղոն անդին Տոն կը թափի, թէպէտ նեղ բայց եօթանասուն թնդանօթով նաւ կրելու համար բաւական խորութիւն ունի: Մերձակայ եղեւինի ու մայրի անտառները շինութեան փայտ, Թուլայի ու Ռոմանովի հանքերն ալ բաւական երկաթ կը մատակարարէին: Պետրոս որոշեց որ հոս նաւարան մը դրուի, ու նաւերու շինութիւնն այնչափ շուտով յառաջացաւ, որ 1696ին 23 ցռկանաւ, 2 մեծ ցռկանաւ ու 4 հրաձիգ նաւ (Brûlot) լմընցած էին. ասոնցմէ ետքը Պետրոսին ու Լըֆոռ ծովապետին համար առանձինն մէյ մէկ պատերազմական նաւ շինուեցաւ: Տէ Լիմա Վենետացին երկրորդ ծովապետի անուամբ նաւատորմղին առաջնորդութիւնը վրան առաւ, որուն մէջ 4000 մարդ կար, եւ Տոնէն վար իջնալով յաջողութեամբ գետին երկու եղերքը հասաւ ու հոն գըտնուած փայտեայ պատնէշներուն առջեւէն, որոնք դեռ Ռուսաց ձեռքն էին, գետին բերանն իջաւ ու հոն Տաճկի նաւատորմղին հետ պատաղելու ատեն՝ ասդիէն մեծամեծ յոյսերով քաղքին կերպաւո-

ըսեալ պաշարումն սկսաւ (1696 Մայ.)։ Ազովին դիմացը պատնէշ մը բարձրացաւ, որուն վրայի թընդանօթները Տաճկաց նաւատորմիղը պաշար տանելը կ՚արգելուին. վերջապէս երկու ամիս շարունակ թէ ներսէն թէ դրսէն զանազան քաջութիւններ ցուցուելէն ետքը՝ Կորտոնին վարպետ մէկ գիւտովը բերդը անձնատուր եղաւ։ Քաղաքը բոլորովին ապականած ու աւերակ դարձած էր։ Բերդին մէջի 3000 զինեալ պահապաններն ազատ թող տրուեցան, բայց ի Գերմանացի մատնչէն, որն որ այն յաղթութեան հանդիսին համար պահուեցաւ, զորն որ Պետրոս չէ թէ իրեն այլ իր զօրապետացը համար ընել պիտի տար, որովհետեւ աս պատերազմին յաջողութիւնը միայն անոնց կու տար։

Պետրոս՝ Ռուսաց սրտին մէջ փառասիրութիւնը գրգռելու եւ պատերազմական արուեստը իրենց աչքին առջեւ բարձրացընելու համար՝ այսպիսի պատերազմական հանդիսի մը հարկաւորութիւն կը տեսնէր։ Ոսկեզօծ կառքի մը մէջ՝ զորն որ վեց զարդարուած ձի կը քաշէին, Լըֆոռ մեծ ծովապետը, ու անոր քովը Շայն իբր ցամաքային զօրաց վերին հրամանատար, եւ ուրիշ երեւելի զօրավարներ, զինուորական երաժշտութեամբ ու երգերով քաղաք մտան (Յուլ. 29). հանդիսութիւնը մատնչին քաղքին մէջ սպաննուելովը լմընցաւ։ Աս Սեւ ծովու բանալւոյն առմանը յիշատակին համար երեք յիշատակադրամ կոխուեցաւ[1]։

[1] Առջի միտալին առջի երեսը Ցարին պսակաւոր պատկերը կայ աս բոլորագրով "Պետրոս. Ալեքսիոսի. Որդի. Ռուսաց. Մեծաց. Կեսար„ (Petrus. Alexii. Fil. Russor. Magn. Caesar.) Միւս կողմը Յաղթութեան չաստուածը, աջ ձեռքն արմաւենի ու ձախ ձեռքը՝ իբրեւ կրօնի նշան՝ խաչ մը, կէս լուսնի ու կոյտ մը տաճկական զինուց վրայ կեցած է։ Աս երեսին բոլորագիրն է, "Սոքօք. Աքսենոս. Եղիցի. Եւքսինոս„ (Hisce. Axenus. Fiat. Euxinus.)։ Պոնտոս յառաջագոյն իր անկիրթ ու վայրենի բնակչացը համար հիւրատեաց (ἄξενος) կը կոչուէր։

Պետրոսին իր պետութիւնը ուրիշ տէրութեանց հետ միացընելուն յատակագիծը տիեզերական պատմութենէ արդէն ամենուն յայտնի է ։ Մենք աս յատակագծին քննադատութիւնը տիեզերական պատմագրաց թողլով, հոս միայն պատմագրական տեսութեամբ մը հերոսեր պատմագրին խորհրդածու-

Կալեալ պահէին զնա ցուրտ ափունք եւքսինեան Պոնտոսի,
Որ ի հնոցն կոչեցաւ Աքսենոս ։

Կ'ըսէ Ովիտիոս ։ Բայց երբոր ժամանակին անցնելով փոփոխութեան յոյս մը ծագեցաւ, տեղւոյն բնակիչները շողոքորթելու համար Աքսենոսը (հիւրատեացը) Եւքսենոսի (εὔξενος հիւրասէրի) փոխեցին ։ Աս մետալին ստորնագիրն է, "Թաթարիստան նուաճեալ․ ԺԸ Յուլ․ ՌՈՂԶ․,, (Tar.[taria] Exp. [ugnata] XXVIII Jul. MDCXCVI)։

Երկրորդ մետալին առջի կողմը Պետրոսի պսակաւոր եւ ապառազէն պատկերը կայ ռուսերէն բոլորագրով, "Պետրոս Ալեքսիեւիչ, Իշխան Մոսկովիոյ Միշտ Աւգոստոս,,։ Երկրորդ երեսը Ազով՝ ծովու կողմանէ պաշարուած ցամաքէն կը դընդակոծուի․ ռուսերէն գրով, "Յաղթող ընդ բոց եւ ընդ ալիս,,։ Ստորնաբաժնոյն մէջն է տարւոյն թիւը 1696։

Երրորդ մետալին առջի երեսը Զարին պսակաւոր կիսարձանը կայ սա բոլորագրով, "Պետրոս Ալեքսիեւիչ Շ․ Ա․ Զար․ Եւ․ Մեծ․ Զօրավար․ Ռուսաստանի,, (Petrus. Alexievitz. D. G. Tzar. Et. Mag. Dux. Moscoviae.) անդիի դին Ռուսաստան ձեւացեալ Հերքուլէսի պատկերը կայ, որն որ հիդրա (բազմագլուխ օձ) մը կը ծեծէ ։ Յաղթութիւնը Ազով քաղաքին վրայ թռչտելով ձեռքն յաղթութեան պսակ քաղաքին կը մերձենայ ։ Ստորնագիրն է․ "Հաւասար են փառք նորա ի ծովու եւ ի ցամաքի,, (Aequatur. Terra. Marique. Gloria. 1696)։

Հոս կը յիշենք նաեւ ան երկու յիշատակագրամները, որոնցմէ առջինը ռուսական նաւատորմիղը կանգնուելու ատենն ու երկրորդը Քարլովիցի խաղաղութեան ատեն կոխուեցաւ ։

Առջի երեսը Զարին պատկերը կայ սա բոլորագրով․ "Պետրոս․ Ալեքսիոսի․ Որդի․ Շ․ Ա․ Զար․ Եւ․ Մեծ․ Զօրավար․ Ամենայն․ Ռուսիոյ,, (Petrus. Alexii. Fil. D. G. Tzar. Et. Magnus. Dux. Totius. Russiae.) Միւս կողմը Ռուսաստան ծովու քով թիոյ մը վրայ կանգնած, ալիքներու մէջէն դէպ ի իրեն եկող նաւատորմին հրամաններ կու տայ․ հեռուէն ալ նաւեր կը տեսնուին․ բոլորագիրն է, "Համարեա՛ զիր եղեալ զոր հրամայես,, (Facta. Puta. Quaecunque. Jubes. Ovid.) ։ Ստորնագիրն է, "Սկիզբն ռուսական նաւատորմղին 1696,, (Primordia. Russicae. Classis):

Երկրորդ մետալը նոյնպէս Զարին պատկերն ունի աս բոլորագրով․ Պետրոս Ալեքսիեւիչ Շ․ Ա․ Զար․ Մ․ Զ․ Մոսկով․ (Petrus Alexievitz. D. G. Tzar. M. D. Moscov.)․ Հակառակ կողմը Զարը ձիարական պատկով նստած է, ձախ ձեռօք

թիւնը յառաջ բերենք: «Ի՛նչ նոր կերպարանք առած կ՚ըլլար Ռուսաստան, կ՚ըսէ նոյն պատմագիրը, եթէ Պետրոս՝ Ազովն առնլէն ետքը, իր տէրութիւնն հոն հաստատէր ու հոնկից իր ծովու ու ցամաքի վրայ ունեցած յատակագիծերը դուրս տար: Ամենագեղեցիկ օդաբաժնի մէջ, Տոն գետին բերանը, ու տէրութեան միջավայրը մայրաքաղաք կ՚ունենար ու հոնկից աս Ինքնակալն իր եւրոպական ու ասիական գաւառները աջ ու ձախ բազուկներուն պէս կրնար գործածել, տաճկական տէրութեան ահարկու կ՚ըլլար ու աշխարհքին երեք հին մասերուն ինչպէս նաեւ չորրորդ մասին վաճառականութեանը կեդրոնը կրնար սեպուիլ: Որովհետեւ ի Հնաց, Յունաց, Կոստանդնուպոլսեցւոց, Գենուացւոց ինչպէս նաեւ Տաճկաց, Թաթարաց ու Քոզաքներու առեն աս կողմը վաճառականութեան մէջ միշտ ծաղկելու վրայ էր: Եթէ մէկն ասկից աջ ու ձախ դին եղած Ռուսաստանի գաւառներուն նայելու ըլլայ, կարծէ թէ մեծ պարտիզի մը մէջ է: Ազովի եզերքը կրնար իրեն բոլոր աշխարհքին բանալին ըլլալ ու վաճառքները դուրս հանելու ամենէն յարմար տեղն էր: Ասով Ռուսաստանի ահագին տէրութիւնը առանց վնաս մը կրելու Եւրոպայի ալ օգտակար կրնար ըլլալ»:

## 14.

Պետրոսի Ռուսաստան նորոգելու հոգին Սեւ ծովու եզերքներն ալ տարածուեցաւ, եւ Ազովը

ռուսական նշանով զարդարուած վահանի մը վրայ կաթնած, քովը՝ նուաճեալ քաղքին վրան կոխած զինուոր մը կայ: Ջարին աջ ձեռքը շնորհաբաշխութեանց թուղթ մ՚ունի ու քովի կեցած աղջկան ձեռքն ալ ամալթեղջիւր մը կայ: Բոլորագիրն ասէ, «Բազկաւն՝ որով յաղթեաց, պաշտպան կայ պարտելոց» (Quae. Vicit. Victos. Protegit. Ille. Manu.) : Ստորնագիրն է «Ազով՝ որ ի 1696 պարտեցաւ ի Ռուսաց, դաշամբ ամին 1700 շնորհեցաւ նոցա»․ (Victa. Asot. Mochis. 1696 Pacta. Concessaque. Pace. 1700) :

Ռուսաստանի միութեանը միջավայր ընելու փոյթը, իր միտքը գրաւած էր։ Իր վախճանին հասնելու համար բանի մը չխնայեց։ Սակայն առած տեղերն ապահովցընելու համար նաւատորմիղ մը պէտք էր, որ ծովու տիրէր ու Ազով պաշտպանէր։ Վորոնէժ, որ Վորոնա գետին քով ռուսական նաւարան էր, հետզհետէ Տոն գետէն դէպ ի Ազախու ծով նոր նոր նաւեր կ'իջեցընէր ու դէպ ի Պարսկաստան ու Հնդկաստան նաւող վաճառականները շատ արտօնութիւններով ու դիւրութեամբ երթեւեկութիւն կ'ընէին։

Սակայն աս նորոգիչը պէտք էր որ ի ներքուստ իր յատակագծին հակառակորդներուն հետ միշտ կռուոյ մէջ ըլլար։ Ժողովուրդը, կղերն ու մանաւանդ մեծամեծները Պետրոսի նորոգութեան հոգւոյն ու բաղձանացը շատ դէմ էին, սակայն շատ աւելի մեծ ցաւ կը զգար Պետրոս, երբոր կը տեսնէր որ իր սիրելի մայրն ալ († 1674) անոնց կողմանէ իրեն ազդեցութիւն կ'ընէր, ու խորհուրդ կու տար թէ վտանգաւոր նորոգութիւնները չափաւորէ։ Ռամիկը ստէպ աղաղակելու վրայ էր, թէ իր նախնեացը պէս Ռուս մնալ կ'ուզէ։ Փառասէր Սոփիան մենաստանի խաղաղ հանգստութեանը մէջ չէր կրնար իր աշխարհական փառաւորութիւնները մոռնալ ու միշտ առիթ մը կը սպասէր որ իր առջի փառքը նորէն ձեռք բերէ։ Տրտունջն ու տժգոհութիւնը ժողովրդեան մէջ սաստկացաւ, եւ ի մասնաւորի Սոկովին Օքոլնիչը, Ալեքսի Փուշքին Սթոլնիքը եւ Սթռելցներու հրամանատար Իվան Չիքլէր իրենց մէջ դաւակցութիւն մը կազմեցին։ Ամէն բան պատրաստուած էր ու 1697ին փետր. 13ին գիշերը Մոսկուայի մէջ կրակ մը պիտի ձգուէր, ու Զարն իր սովորութեանը համաձայն կրակի գալուն պէս, նոյն շփոթութեան մէջ զինքը պիտի մեռցընէին։ Բայց

նոյն դաւակցութեան մասնակից երկու Սթոելէց պաշտօնականներ մտքերնին դրածնուն վրայ զղջալով, բանը Պետրոսին ականջն հասուցին ։

Դաւակցութեան պայմանեալ իրիկունը Զարը Փրէոպրաշէնսք գեղն իր սիրելոյն Լըֆոռին քով երեկոյեան ակըմբի մէջ էր։ Կերակրոյ ատենը մերձեցած էր երբոր երկու մարդ գալով սաստիկ հարկաւոր գործքի մը համար Զարին հետ առանձին խօսիլ ուզեցին ։ Պետրոս զիրենք առանձին խուց մը տանել տալով, իրենց ներկայացաւ ։ Եկողներն երկու Սթոելէց պաշտօնականներ էին, որոնք առջենին նայելով խոստովանեցան թէ մահապարտ են. Անդամ ենք, ըսին, այնպիսի դաւակցութեան մը՝ որուն նպատակը քու մահդ է, բայց մենք զղջացած ենք, ահաւասիկ հիմակ զքեզ ալ կը զգուշացընենք. դաւակիցները Սոկովին խորհրդականին տունը ժողվուած են ու հոն կրակի մը կը սպասեն, որն որ գիշերը Մոսկուա պիտի ձգուի, զանգակներուն ձայնն ալ դաւակցացնշան պիտի ըլլայ, ու կրակի երթալու ատեննիդ զքեզ պիտի մեռցընեն ։

Պետրոս աս լսելուն՝ եկողներն անմիջապէս բանտարկել տուաւ, ու անձնապահ զօրաց Լաբուխին հրամանատարին հրաման խաւրեց որ լռութեամբ զօրքը ժողվէ ու կէսգիշերէն ժամ մը յառաջ դաւաճաններուն ժողվուած տունը պաշարէ ։ Եւ նորէն ակումբը մտնելով, մինչեւ ժամը 10ը կենալէն ետքը, առանց շփոթութեան ու այլայլութեան՝ Ձեր զուարճութեանը նայեցէք, ըսաւ, պէտք գործք մը քիչ մ'ատեն զիս ասկից հեռանալու կը ստիպէ ։ Ենթադրելով որ զօրապետը ժամը $10\frac{1}{2}$ին Սոկովինին տունն արդէն պաշարած ըլլայ՝ մինակ մէկ օգնականով մը նստաւ իր կառքին մէջ ու շիտակ Սոկովինին տունը գնաց ։ Քիչ չզարմացաւ երբոր հոն հասնելով ամենեւին մարդ չգտաւ. սակայն ամենեւին

տաանց շփոթելու շիտակ վեր ելլելով նոյն խուցը մտաւ ուր որ դաւաճանները ժողվուած էին, որոնք զէնքը տեսնելնուն պէս՝ իրենց յարգութիւնը ցուցըրցին ու գաւաթ մ'ալ անոր կենդանութեանը խմեցին. ինքն ալ իրենց հետ խմելու սկսաւ ու անհամբերութեամբ անձնապահներուն կը սպասէր: Աս միջոցիս Սթուելից մը նշան ըրաւ Սոկոլինին ըսելով թէ "Ատենն եկած է,,. Պատասխանեց Սոկոլին, թէ "Դեռ չէ,,: Իմացաւ Պետրոս որ ինչ վտանգի մէջ կը գըտնուի, սիրտ առաւ ցատքեց Սոկոլինին քթին բերնին բռնցի մը զարկաւ, պոռալով, "Ի՛նչ, ա՛նզգամ, քու ատենդ չէ եկած նէ, իմ ատենս եկած է,,: Աս միջոցիս, ժամացոյցին 11 զարնելովը դուռն ալ յանկարծ բացուեցաւ ու Լաբուխին իր անձնապահներովը ներս մտաւ: Նոյն բարկութեամբ դարձաւ Զարն հարուած մ'ալ զօրապետին երեսն իջեցուց ուշ գալուն համար, ինչպէս որ ինքը կը համարէր: Զօրապետն ինքզինք արդարացուց իրեն եկած հրամանին թուղթն իրեն ցուցընելով, եւ ըսաւ թէ միայն իր աճապարելը զինքը վտանգի մէջ ձգեր է: Ասոր վրայ ինքիրեն եկաւ Պետրոս ու զօրապետին ճակատը պագնելով թողութիւն խնդրեց ու յանցաւորներն իրեն յանձնեց որ Փրէօպրաշէնսք գեղը տանի: Դարձաւ Պետրոս նորէն իր զուարճութեան տեղը ու յայտնեց ամենուն թէ ինչ վտանգէ ազատեցաւ: Դաւակցութեան անդամները տանջուեցան, քննուեցան ու մահուան դատապարտուելով չարաչար սպաննուեցան, ու անհնազանդներու օրինակ ըլլալու համար՝ ասոնց դիակները օրերով սպաննուած տեղերնին մնացին:

## 15.

Բայց բան մը կար որ Պետրոսի ժողովրդեան կրթութեանը մեծ արգելք էր: Ծաղկեալ Եւրո-

պայի ու Ռուսաստանի մէջ վայրենի Ասիա մ'եղած էր, ու բարբարոսական Թումբի մը պէս՝ Եւրոպայէն Ռուսաստան մտնելու քաղաքականութեան առջեւը մեծ արգելք կը դնէր։ Ասով Ռուսաստան միշտ ասիական բռնութեան ազդեցութեանը տակ պիտի մնար, ուր որ անոր հակառակ Պետրոսի միտքը միշտ դէպ ի Եւրոպա կը հակէր։ Իր տէրութեան հիւսիսային արեւմտեան դին ուրիշ ծով մ'ալ կար (Արեւելեան ծով), որուն ափունքը եթէ իր ձեռքն ըլլալու ըլլար՝ ան ատեն բոլոր Եւրոպա իր առջեւը կը բացուէր, ու բոլոր կրթեալ ու քաղաքականացեալ աշխարհքը իր տէրութիւնը կը փոխադրուէր։ Բայց ճար չկար, ֆիննեան ու լիֆլանտեան ափունքները քաջ ժողովրդեան մը ձեռքն էին, ու աս ծովուն մուտքը իրեն համար բոլորովին գոց էր։ Իր նոր, դեռ ծլելու մօտ ժողովուրդովը այնպիսի հզօր ազգի մը դէմ պատերազմ բանալը խելք չէր։ Աս մտածմունքը թէպէտ մեծ յանդգնութիւն էր, սակայն վախճանը ամէն բան կ'արժէր։ Բայց պէտք էր որ Պետրոս մէյ մը Եւրոպային աս յառաջադիմութիւնը աչօք տեսնէր, ամէն բան անձամբ սորվէր ու փորձէր, որպէս զի ասանկ գործքի մը մեծ փութով ու քաջալերութեամբ ձեռք զարնէր։ Գիտէր Պետրոս իր ազգին ուրիշ ազգերէն որչափ վար ըլլալը ու միշտ կը մտածէր թէ իր ազգն անանկ վիճակի մը մէջ խոթէ, որ ատենօք օտարականի ամէնեւին հարկաւորութիւն չունենայ։ Աս մտօք 1697ին Լըֆորին գնդէն 60 հոգի պատերազմական նաւեր շինելու եւ նաւավարութիւն սորվելու համար Իտալիա ու գլխաւորաբար Վենետիկ ու Լիվոռնոյ խաւրեց. 40 հոգի ալ ղեկավարութիւն սորվելու համար Հոլանտա խաւրուեցաւ. Նաեւ Գերմանիա ալ մարդիկ խաւրուեցան, որպէս զի ան պատերազմալից ատենները

զինուորական կրթութիւն առնուն, որն որ հոն շատ ծաղկած էր։

Իր դուրս մարդ խաւրելու բաղձանքը գլուխ ելլելէն ետքը, կ'ուզէր իր Եւրոպա տեսնելու սեպհական բաղձանքն ալ յագեցընել. կ'ուզէր տեսնել ան հրաշալիքները, զորոնք Լըֆոռ եւ ուրիշ օտարականներ անդադար իրեն կը պատմէին։ Բայց գիտէր ալ որ ինքնակալի մը ճամբորդութիւն ընելէն աւելի ծանր բան չկայ. խել մը արարողութիւններէն փախուստ տալու համար, այն ռուսական պատգամաւորներուն կարգը մտաւ, որոնք ըստ սովորութեան Զարերուն անուամբը տէրութեան հին հաղորդակցութիւնները դրսի արքունեաց հետ հաստատելու համար երբեմն երբեմն կը խրկուէին։

Այս ճանապարհորդութեան հետեւութեանցը համար շատ հարկաւոր է գիտնալ, թէ նոյն ժամանակներն Եւրոպա ինչ վիճակի մէջ էր։ — Աս ատեններս Մուստաֆա Բ. Տաճկաստանի թագաւորն էր, որն որ իր նախնեացը քաջութիւնը չունենալով ո՛չ Լէոփոլտոսի դէմ, որուն զէնքերն Ունկարիա մեծ յաջողութիւն գտած էին, ո՛չ Ռուսաց դէմ, որոնք Ազովն առած Սեւ ծովուն կողմանէ միշտ իրեն կը սպառնային, եւ ո՛չ ալ Վենետացւոց դէմ որոնք Մորէայի վրայ տիրած էին, բան մը ընելու կարողութիւն ունէր։ Յովհաննէս Սոպիէսքի Լեհաստանի քաջ թագաւորն ու Վիէննայի ազատիչը[1] (1696)

[1] 1683ին վեննական պատերազմը հետաքրքիր դէպք մ'ըլլալուն, հոս նոյնը համառօտիւ մը յիշատակելը աւելորդ չենք սեպեր։ Սուլթանին մեծ Վեզիր՝ Գարա Մուստաֆան Մաճառի ապստամբաց հետ միանալով 200 հազարով շիտակ Վիէննայի վրայ քալեց։ Կայսերական բանակը՝ որն որ Կարոլոս Ե. Լոթարինգիայի դքսին հրամանատարութեանը տակ, 11,000 ձիաւոր, 22 հազար ոտանաւոր զօրքով Փրեզպուրկ կը կենար, չյանդգնեցաւ հզօր Տաճկաց վրայ յարձակելու եւ անոնց շարաշար ձիաններ ու երկիրն անապատ դարձուցած ատենը, Կարոլոս Վիէննայի պաշտպանութեան համար 12,000 զօրք խաւրեց ու ինք մնացած զօրքերով Վիէննայի անդիի կողմը զարկաւ ու հոն Գեր-

վախճանած էր, որուն թագին համար Սաքսոնիայի ընտրողն ու Քոնթի իշխանը մէջերնին կը կռուէին։ Շվետի մէջ Կարոլոս ԺԱ. մեռած ըլլալով 12ամեայ պատանի մը գահ ելած էր Կարոլոս ԺԲ. անուամբ,

մանիայէն ու Լեհաստանէն խոստացուած օգնութեանց կը սպասէր։ Աս միջոցիս Կայսերական արքունիքը ինչպէս նաեւ քաղքին բոլոր անզէն բնակիչները Լինց ու անկից ալ Փասսաւ փախան, իսկ Եռնեսթ Շթարեմպէրկ կոմսը՝ Վիեննայի աչալուրջ հրամանատարը, ամենայն կարելի միջոցներով քաղաքն ամրացընելու ետեւէ էր. քաղաքացւոց ու բարձրագոյն դպրոցներու ուսանողներն իրեն հաւատարիմ օգնական դրուեցան, որով զօրաց թիւը 20,000ի ելաւ։ Յուլիսի 14ին Վեզիրը իր հարուստ բանակովը երեւնալով քաղաքը 6 ժամ հեռուանց պատեց։ — Այնչափ քաջասիրտ ընդդիմութեանց հակառակ, Թշնամին քաղքին խրամներուն մերձեցաւ ու Սեպտ. 4ին բերդին մէկ մասը խախտելով, նոյն ու երկրորդ օրն ետեւէ ետեւ յարձակելու վրայ էին, բայց ամէն անգամ ալ ետ կը վանտուէին։ Սակայն 11ին բերդին խախտած մասն այն աստիճանի ընդարձակած էր, որ Թշնամին կրնար մէկէն ներս մտնել, մէջի հիւանդութենէ ու աշխատութենէ ուժեւալ բնակիչը ահ ու դողու մէջ յարձակման կը սպասէր։ — Աս միջոցիս Թշնամւոյ բանակին շարժումէն իմացան թէ բաղձացուած օգնութիւնը մերձ է, եւ իրիկուան դէմ երեք Թնդանօթի ու խել մը հրագունդերու նշաններով նոյնին վրայ ստուգուեցան։

Օգնականներն էին Յովհաննէս Գ. Սոպիեսքի Լեհաց թագաւորը (1673էն վեր) 12,000 ձիաւոր ու քանի մը հազար ոտանաւոր զօրքով։ Մաքս. Էմմանուէլ Պաւիերայի ընտրող իշխանը (1679էն վեր) 12,000 Պաւիերացի ու 9000 Փրանկ ու Սուաբացի զօրքով, Փրեդերիկոս, Վալտէքի կոմսին տակ։ Յովհաննէս Գէորգ Գ. (1680էն վեր) Սաքսոնիայի ընտրող իշխանը 12,000 Սաքսոնիացիներով, եւ ուրիշ Գերմանիայի զանազան իշխաններ, որոնք Աւստրիայի, Կարոլոս Լոթարինկացւոյն հետ միանալով քրիստոնէից բանակը 64,000ի ելաւ։ — Սեպտ. 12ին առտուն ուղղափառ զօրապետները Վիեննայէն 1½ ժամ հեռու Ս. Լէոփոլտոսի լերան վրայ պատարագ տեսան, ու Լեհաց Թագաւորն՝ որն որ վերին հրամանատար ընտրուած էր, հաղորդութիւն առաւ։ Գարա Մուստաֆան չորս կողմանէ քրիստոնէից յարձակումը տեսնելուն պէս՝ քաջասրտութիւնը երկչոտութեան փոխելով, անմիջապէս քովը գտնուած 30,000 քրիստոնեայ գերիները, առանց սեռի ու հասակի նայելու, ջարդել տուաւ, ու գրեթէ ատիպուած Եէնիչէրիներուն գլուխն անցաւ, ու ընելիքը չէր գիտեր թէ արդեօք քաղքին թէ քրիստոնէից վրայ յարձակի, չէ նէ ետ քաշուի։

Բայց արդէն Քալենպէրկի զարհուրելի պատերազմը սկսած էր։ Կայսերականք, որ Լոթարինգիայի դքսին տակ, պատերազմին մէջ տեղն էին, իսկզբան ետ քաշուելու սկսան,

տրն որ Չարլն անկասկած թողուց եւ. մանաւանդ հաւատարմութիւն ալ կը ցուցընէր ։ Գերմանիան զԱնգղիա ու զՀոլանտա իր կողմն ունենալով՝ Գաղղիացւոց դէմ, որոնց թագաւոր էր Լուդովիկոս ԺԴ. միշտ պատերազմի մէջ էր ։

## 16.

Հիմակ նորէն մեր պատմութեանը դառնանք ։ Վերոյիշեալ պատգամաւորութեան գլուխն ան մարդն էր՝ որն որ Պետրոսին գիտութեան եռանդն այնչափ վառած էր ։ Բոլոր հրեշտակութիւնը 200 հոգի էր ։ Տէրութեան կառավարութիւնը Ֆէտոր Եուրեէվիչ Ռոմոտանովսքի իշխանին յանձնուեցաւ ու Զարը զինքն իր գահը նստեցուց եւ Աթուէշնէվ Պոյարն ալ իրեն օգնական տուաւ ։ Ռոմոտանովսքի նոյն ատենուան համաձայն մարդ էր, ու Պետրոս իր համարումն աւելցընելու, ու մեծամեծաց հնազանդութեան օրինակ տալու համար՝ շատոնցուընէ սկսած էր զինքն Իշխան, Կեսար անուամբ պատուելու, անոր առջեւը ծառայի պէս կը կենար, ծառայութիւններ կը խնդրէր ու հրամաններու կը սպասէր ։ Աթուելլցներն ալ ցրուելով, անոնց վտանգէն ալ ազատե-

րայց վերջէն ձախ կողման Սաքսոնիացիներէն օգնութիւն գտնելով (ուր որ էին նաեւ Պաւիերացիք) աղէկ դէմ կեցան ու Տաճկաց կարգը շփոթեցին, եւ մի եւ նոյն ալ կողմն ալ Լեհերը Սփահիներուն (Տաճկաց ձիաւորաց) կամակոր գիմադրութիւնը խորտակելով բանակին մէջ տեղն յարձակեցան ։ Արդէն բանակին երկու թեւերն ու նոյն իսկ Վէզիրը Մահմէտի դրօշովը յաղթող Գերմանացւոց առջեւէն փախած էին, ասոնցմէ ետքը Ենիչէրիներն ալ անհնարին կորուստով փախչելու սկսան ու իրիկուան ժամը դէպ ի 6ին բանակն յաղթողներուն ձեռքը թողուցին ։ — Աս պատերազմիս մէջ 20,000էն աւելի ու պաշարման ատեն 30,000 Տաճիկ ինկած էր ։ Բանակին աւարը արտաքոյ կարգի բան, 10 միլիոն կը համարուի ։ Այսպիսի զարմանալի եղանակաւ մը ազատեցաւ կայսերանիստ քաղաքը ։ Շթարհեմպէրկ 1701ին մեռաւ ։ Ասկէ ետքը տաճկական պատերազմներու անյաջողութեանը պատճառաւ Գարա Մուստաֆային գլուխն ալ կտրուեցաւ ։

պեց ինքզինքը։ Ասոնցմէ կէսը Լեհաստանի թագաւորի ընտրութեան կուսոյն պատճառաւը Լիթուեան սահմանները, կէս մ՚ալ Տաճկաց դէմ սահմանները պաշտպանելու խաւրեց, ու Կորտոնն ալ խաղաղութեան պահպանութեան համար Նոր գունդերով Մոսկուա կենալու որոշուեցաւ։ — Այսպէս ամէն բան աղէկ կարգաւորելէն ետքը 1697ին պատգամաւորութիւնը ճամբայ ելաւ։

Աս հրեշտակութեան մէջ Լըֆորէն զատ միւսներն ալ բոլոր ազնուական եւ նշանաւոր անձինք էին, որոնք պարզապէս իրենց գիտութիւններն ընդարձակելու համար աս ճամբորդութեան ձեռք կը զարնէին։ Ռուսաստանէն ելած աս ճամբորդներու բազմութիւնը՝ փոքր գունդ մը կրնայ ըսուիլ, որն որ ի դարձին բնականապէս բոլոր տէրութեան վրայ մեծ ազդեցութիւն կրնար ունենալ։ Աս ճամբորդութեան առջի վախճանը ան կողմն էր, ուստի որ՝ դեռ անյայտ ու միայն Պետրոսի մտացը մէջ ծածկուած գաղափարով, քաղաքականութիւնն ու լուսաւորութիւնը Ռուսաստան պիտի մտնէր։ Լիֆլանտան էր աս կողմը։ Ռիկա հասնելուն պէս՝ որուն բերդը դեռ Պետրոս չէր տեսած, հետաքրքրական զննութիւններով ու արտաքոյ կարգի մտադրութեամբ չորս կողմը դիտելու սկսաւ։ Շվետացի քաղաքապետ՝ Տալպերկ կոմսը բանին էութիւնը իմացաւ, եւ ո՞վ կրնայ մեղադրել որ աս պատգամաւորութեան վրայ աղէկ մտադրութիւն եղաւ ու պահապանը Պետրոս Միքայելով՝ վերին հրամանատարին, պարիսպները քննելն ու խրամները չափելն արգելեց[1]։ Թէ աս

[1] Աս դէպքիս վրայ Տալպերկ աստանկ կը գրէ "Որովհետեւ կ՚ըսէ, քաղաքին մէջ քանի մը հոգի ձանձրանալով համարձակեցան քաղաքին բոլորտիքը ձիավարելու եւ զանազան բարձրաւանդակներէ քաղաքին դիրքը ճիշդ զննութեանց տակ կը ձգէին եւ մինչեւ ամրոցները թղթերու վրայ գծագրելու սկսան, խրամներուն խորութիւնը կը չափէին եւ ասկէ զատ շատ անգամ անդադար պատնէշներուն վրայ կ՚իջնային կ՚ել-

վարմունքը ինչ ազդեցութիւն ըրած է Պետրոսին վրայ՝ իր Լըֆորին ըսած խօսքերէն յայտնապէս կ'երեւայ. “Հիմակ չեն թողուր, ըսաւ, որ Ռիկայի ամրութիւնները քննեմ, բայց ես կը յուսամ որ ատենօք զանոնք դիւրաւ կարենամ պիտի տեսնել ու Տալպերկին ինծի զլացածը, ես ալ Շվետի թագաւորին զլանամ„: Աս պատգամաւորութիւնը Ռիկայի մէջ անկոչ հիւր սեպուեցաւ, ու անմիջապէս Տիւնա գետին վրայէն դէպ ի Քէօնիկսպէրկ ճամբայ ելաւ: Պետրոս կ'ուզէր որ Պրուսը, որ շատ կը յառաջանար, աղէկ մը ճանչնայ ու անոր ընտրող իշխանին հետ բարեկամանայ, որ ատենօք իր յատակագիծը կատարելու մեծ օգնութիւն կրնար ըլլալ:

Քէօնիկսպէրկ Պրանտենպուրկի ընտրող իշխանէն թագաւորական փառաւորութեամբ ու հանդէսով ընդունուեցաւ աս պատգամաւորութիւնը: Իշխանն ու Զարը առեւտրական դաշինքներ դրին ու Զարը հանդիսական ունկնդրութեան մը ատեն՝ սամոյր, սպիտակ աքիս (կնգում) ու պարսկական զգեստներ պարգեւեց իշխանին: Իշխանը Զարին շատ սէր ցուցուց, իրեն համար ամէն ուրախութիւն ընել կու տար: Թատր, որս, կաքաւ ու հրախաղութիւն հետզհետէ մէկզմէկ կը յաջորդէին, որոնք մեծ ուրախութեան պատճառ կ'ըլլային պատանի Զարին. բայց սեղանի ատեն չէր կրնար ինքզինքը չափաւորել: Ուրախութեան մը ատեն ըմպելեաց

լէին, որպէս զի ամենայն ինչ աղէկ տեսնեն, անոր համար ինծի պարտք մը սեպեցի ամենայն քաղաքավարութեամբ Պ. Լըֆորին ծանուցանելու որ իր մարդիկներուն աս տեսակ գործքերն արգելու եւ յիշեցուցի իրեն որ ինքն ալ երբ փորձառու զօրական աղէկ գիտէ որ Եւրոպայի մէջ ամրոց եղած տեղը ճամբորդներու սաստիկ հետաքրքրութիւն ամենեւին թող չտրուիր . . .„:

Աստ հակառակ Պետրոս 1703ին Լեհաստանի հասարակապետութեան սաստիկ կը գրէ “Ռիկայի մէջ անանկ անարժան վարմունք մ'ընդունեցայ զորն որ դաւանութեամբ լեզուն թշնամի մը ամենանարգ բարբարոսի մը չ'ընէր„:

մէջ չափէն անցուցած ըլլալով, քիչ մնաց որ իր սի-
րելի բարեկամն ալ պիտի զոհէր։ Լըֆոռին քանի
մը խօսքէն նեղանալով, անոր դաշոյն քաշեց ու կը
պահանջէր որ մենամարտութեամբ հատուցում ընէ
իրեն։ Քաւ լիցի, պատասխանեց Լըֆոռ, աւելի
կ'ուզեմ իմ տիրոջս ձեռքէն մեռնիլ, քան թէ անոր
հետ մենամարտութիւն ընել. աս պատասխանով ալ
չշատանալով Պետրոս, արդէն ձեռքը վերցուցած
էր զարնելու՝ երբոր մէկէն իշխանին ծառաներէն մէկը
վազեց ու զինքն արգելեց։ Շուտով ինքիրեն եկաւ
Պետրոս ու եղածն իմացաւ եւ Լըֆոռէն թողու-
թիւն խնդրեց ըսելով "իմ ժողովուրդս կ'ուզեմ
կրթել, ու ինքզինքս չեմ կրնար զսպել"։ — Իր
քովինններէն շատերը հոս թողուց, որպէս զի կէս
մը արքունի երաժշտականաց քով երաժշտութիւն
սորվին, ու կէս մ'ալ իրենց թնդանօթաձգութեան
արուեստը կատարելագործեն։

## 17.

Ասկէ անընդհատ դէպ ի ան երկիրն յառաջ եր-
թալու սկսաւ, ուր որ բոլոր իր բաղձանքն ուղղուած
էր, ուր որ իր ուսուցիչներուն հայրենիքն էր, եւ
որն որ իր ժողովուրդը կրթելու եւ քաղաքականա-
ցընելու ձեռք ու միջոց պիտի տար իրեն, որն որ ան-
խոնջ աշխատութեան ու գործունէութեան երկիր
էր, վերջապէս ան երկիրը, որուն հետ արեւե-
լեան ծովով կապուիլը սրտանց կը բաղձար. աս եր-
կիրն Հոլանտա էր, ուր որ նաւաշինութիւնն ու վա-
ճառականութիւնը վերջի աստիճանի կենդանութեան
մէջ էին։ Պետրոսի դէպ ի աս երկիրն ըրած ան-
ընդհատ ճամբորդութիւնը մինակ նկարագեղ ու
զուարճալի Թիւրինգիան կրցաւ արգելուլ։ Հոս Հանո-
վերէն քիչ մը հեռու Քօբբէնպրիւքէ դաստակերտին
մէջ քիչ մ'ատեն Սոֆիա Շարլոթ ընտրող իշխա-

նուհւոյն ընկերակցութեան մէջ զինքը կը գտնենք ։ Պետրոսին հոս ըրածները իր վարքը գրող անուանի պատմագրէ մը առնլով բառ առ բառ հոս կը դնենք ։ “Որբեւայրի ընտրող Իշխանուհին բոլոր իր ընտանեօքը Հեռնհաւզնէն 5 մղոն հեռու Քօրբենպրիւքէ գնաց ու հոն նոր հիւրը իրեն հրաւիրեց ։ Զարը կը բաղձար որ ընտրող իշխանական ընտանիքը հատարակ գտնէն մտնելու ատեն ինք ծածուկ սանդղէ մը վեր ելլէ ։ — Զարին կերպարանքն անանկ սիրալից , հասակն անանկ վայելչայարմար , տուած պատասխաններն անանկ շուտ ու հաստատ երեւցան , որ տիկնայք առանց ձանձրութեան մը սեղանին սովորական ժամանակը շատ երկնցուցին , ուր որ զուարթացեալ Զարը երկու ընտրող Իշխանուհիներու մէջ նստած էր ։ Զարը փոքր իշխանուհւոյն քթախոտի ամանը բարեկամութեամբ մը իրենինին հետ փոխեց ։ Մնացած հիւրերը գինիին ամենեւին չէին խնայեր , որոնց մէջէն երեւելի էր ընտրող իշխանական սպարապետը , որն որ ձարական աքիսի մշտակով մը միւսներէն կը զանազանուէր ։ — Սեղանէն ետքը Իշխանուհին Զարին ուզելովը իտալական եղանակ մ'երգեց , թէպէտ (Զարին խօսքերովն ըսելու համար) ինքը երաժշտութեան մասնաւոր սէր մը չունէր ։ Ասոր վրայ երբոր հարցուեցաւ իրեն թէ գուցէ որսի աւելի սէր ունենայ , պատասխանեց թէ Որսը հօրը շատ սիրելի էր , սակայն ինքը նաւաշինութիւնն ու հրախաղութիւնը ամէն բանէ վեր կը դասէ ու ի մասնաւորի 14 արուեստի մէջ վարժ է ։ Ըսածին իբրեւ ապացոյց ձեռքերուն փապարածները շօշափել տուաւ ։ Սեղանը լմննալէն ետքը Իշխանուհւոյն աղաչելովը Պետրոս իր երաժիշտները բերել տուաւ ու երկայն ատեն իր կորսուած ձեռքնոցները փընտռուելէն ետքը խաթուններուն հետ ռուսական կաքաւի սկսաւ„ ։

"Մ՝եծ զարմացմամբ տեսան իշխանուհիները թէ Պետրոս իր ուղեկցացը մէջի չորս գաւաթները երբեմն կը պագնէր, երբեմն մազերնէն կը քաշէր ու իր ծաղրածուն աւելով մը կը խաղցընէր եւ 10ամեայ Սոփիա Ցորոթէա իշխանուհւոյն ականջներէն բռնեց վեր վերցուց ու գլխուն զարդերն աւրըշըրկեց: "Բարեսիրտ իշխան մըն է, ըսաւ մեծ իշխանուհին, բայց իր երկրին սովորութեանը համաձայն արտաքոյ կարգի չափազանց: Եթէ աղէկ կրթուած ըլլար, մեծ առաւելութիւններ կրնար ունենալ, որովհետեւ վրան շատ աղէկ բաներ ու շատ խելք կը տեսնուի,,: Թագաժառանգ Գէորգ իշխանը, որ վերջէն Անգղիայի թագաւոր եղաւ, Զարին այնչափ հաճոյ չեղաւ,,:

Պետրոս Ա․ին նկարագրութիւնը կատարելագործելու ու իր օտար երկիրներու մէջ ունեցած գաղափարները ցուցունելու, եւ իմանալու համար որ աս ճամբորդութիւնը իր վրայ ինչ ազդեցութիւն ըրաւ՝ հարկ է իր ըրած գործքերէն քանի մը զուարճալի դէպքեր պատմել: — Աւելորդ բաներ էին Պետրոսին ամէն տեսակ չափազանց փառաւորութիւններն ու աւելորդ արարողութիւնները: Ընտրող իշխանին առջի անգամ այցելութեան գացած ատենը՝ իշխանին վերին արարողապետը ամենայն փառաւորութեամբ կ'ուզէր Զարը իշխանին տանիլ, անոր համար տուաւ կանուխ ամենափառաւոր կառքերը Պետրոսին պալատին առջին կը սպասէին, որպէս զի զինքն առնուն ու իշխանին պալատը տանին. սակայն փուճ տեղ. արդէն Պետրոս երկայն ատեն էր որ պզտի դրանց մէկէն ելած ու իշխանին քովն էր: Աս արարողապետը՝ որուն կեղծծամին վրայ զարմանալով անգամ մը գլխէն առած ու աղէկ զննելէն ետքը ծիծաղելով անկիւն մը նետած էր, աւելորդ պաշտօնատէր մը կ'երեւար Պետրոսին:

Շատ անգամ քաղքին մէջ մինակ թարգմանով մը կը պտըտէր, ու ամէն իրեն նոր երեւցած բաները մեծ մտադրութեամբ ու զարմացմամբ կը քննէր։ Անգամ մ'ալ ճամբան կնոջ մը, կեցի՛ր, պոռաց. կինը սարսափած կեցաւ ու Ցարն իրեն մօտենալով անոր փառաւոր ժամացոյցը քաշեց առաւ ու բանալով աղէկ մը զննելէն ետքը դարձեալ իրեն տուաւ։

Սվիկայի մէջ չկրցաւ ազատութեամբ ամէն բան զննել, բայց հոս այսպէս չէր. վաճառանոցներ ու արուեստանոցներ կ'երթար ու ամէն բան ձեռօք կը շօշափէր. գրատուններն եւ ուսումնական դպրոցները տեսնելու կ'երթար ու միօրինակ ուսուցիչներու հետ կը խօսէր։

## 18.

Վերջապէս Պետրոս, իր զննութիւններն հանգիստ ընելու համար քիչ մ'ատեն իր ուղեկցացը մեծ մասէն բաժնուելով, զիրենք արուեստներ ու գիտութիւններ սորվելու համար անդին ասդին խաւրելէն ետքը՝ վախճանին հասաւ։ 1697ին Օգոստոս ամսոյն մէջ Ամսթերտամ հասաւ, բայց իր նաւաշինութեան արուեստին ունեցած բաղձանքը չթողուց որ երկայն ատեն հոս կենայ, պէտք էր որ Սաարտամի հռչակաւոր նաւարանն երթար, եւ կը յուսար որ հոն գործավարաց մէջ իր հին ճանչւորները կը գտնէ։ Դեռ ճամբու վրայ էին երբոր իր առաջնորդներէն մէկը ձկնորսի նաւի մը բան մը պոռալով Պետրոսի մտադրութիւնը զարթոյց։ Պետրոս աս Հոլանտացի ձկնորսներուն մէջն ան երկաթագործը տեսաւ՝ որուն հետ որ ինքն Ռուսաստան յաճախ գործք ունեցած էր ու աղաչեց անոր, որ իր բնակարանէն քիչ մը տեղ ալ իրեն տայ. որովհետեւ Ցարն անանկ կ'ուզէր ձեւացընել, որ ինքն իբրեւ սովական Ռուս մը, միայն նաւաշինու-

թիւն սորվելու համար հոս եկած է։ Պետրոս Մի-
խայելով, որովհետեւ հոս ան անուամբ ամենուն
ծանօթ էր, իրեն համար գործիքներ գնեց, նոյն ա-
րուեստին գործավարներուն զգեստն հագաւ ու
ամնչէքով վարպետի մը քով մտաւ։ Աս գործա-
վարներուն պէս, որոնցմէ շատն իր բարեկամներն
էին, կ՚ապրէր ու կը գործէր, իրենց հետ կ՚ուտէր
կը խմէր, փառաւոր ու հանգիստ բնակութիւնները
կ՚անարգէր, ինք իր կերակուրը կը պատրաստէր ու
իր "Վարպետ Պետրոս" անուանը վրայ գոհ եւ ու-
րախ էր, զորն որ իր ժրութովն ու ճարտարութեամբը
ստացած էր։ Ամէն բանի ձեռք կը զարնէր, կը հիւ-
սէր, կը կռանէր, կը ճախարակէր . . . վերջապէս
ամէն բան կը փորձէր ու ամենեւին աշխատութենէ
մը չէր փախչէր։ Աս սիրական գործքերուն մէջ իր
մի միայն տժգոհութիւնն ան էր որ ասչափ ծանօթ-
ներու մէջ իր վիճակին գաղտնութիւնը չէր կրնար
երկայն ատեն ծածուկ մնալ. աս խեղճ գործավարը
միշտ կը տեսնէր որ իր բոլորտիքն առեր են, զինքը
կը զննեն ու իր վրայ կը խօսին. չէր կրնար գործք
մը տեսնել, որուն վրայ դատաստան մը չըլլար. ո-
րովհետեւ Ձարի մ՚անանկ տեղ գտնուիլը արդէն
նոր բան մըն էր, ուր մնաց Ձարի մ՚անանկ գործքեր
տեսնելը։ Շատ անգամ իր քովէն զինքը կը վռըն-
տէր ու կամակորներուն գաւազանով խօսք կը հաս-
կըցընէր։ Այսպէս ան մարդն որ ինքնակալ ու աշ-
խարհքիս մէկ մասին իշխանն էր, հոս ողորմելի տնա-
կի մը մէջ ինք իր ձեռօքը կրակը կը վառէր ու կե-
րակուրը կ՚եփէր։ Երբեմն իր Ուքրանիայի մէջ Տաճ-
կաց հետ պատերազմող գունդերուն հրամաններ կը
խաւրէր ու կը հրամայէր որ Օգոստոս Լեհաստանի
թագաւորը պաշտպանուի, ու երկրորդ րոպէն կացի-
նը ձեռքն առած Նաւարանի մէջ ամէն մէկ ծակե-
րուն ու քամերուն վրայ տեղեկութիւններ կ՚առնուր

ու ամէնքն իր հմտութեանն ու արուեստին վրայ կը զարմացընէր։

Ես միջոցիս Պետրոսի ուղեկիցներուն Ամսթեր-տամ հասնելովը Պետրոսի Սաարտամ կենալն ալ ընդմիջեցաւ։ Սակայն հոս ալ իր ժամանակը ունայն հանդիսութիւններով չանցուց, այլ քաղաքապե-տին հետ, բնապատումներուն, անդամազննիններ-ուն, աստղաբաշխներուն, բժիշկներուն եւ ուրիշ գիտնական ու երեւելի անձանց հետ հետ այցելու-թիւններ ընելով հմտութիւն ու տեղեկութիւն ստա-նալու ետեւէ էր։ Երբոր բժիշկ մը մարդկային մարմնոյն արուեստաւոր կազմուածքը ցուցընելու համար մորթազերծ դի մը Պետրոսին ցուցուց, քո-վերները փոխանակ Չարին պէս զարմանալու ու քննելու, զանելու սկսան. Պետրոս իրենց աս փա-փուկ զգածումը՝ որն որ զիրենք ասանկ բարձր բան մը քննելէն ու իմանալէն ետ կը կեցընէր՝ կուրցընե-լու համար, հրամայեց որ ամէնն ալ իրենց ատա-ներովը դիակէն մէյ մէկ ջիղ փրցընեն։ Շատ վա-ճառականներ ու արուեստաւորներ ու գիտնական մարդիկներ մեծ վարձքեր ու ազատութիւններ տա-լով Ռուսաստան խաւրեց։ Մինչեւ Հրեաներն ալ, որոնք Իվան Վասիլեվիչէն ատենը Ռուսաստանէն վռնտուած էին՝ քաղաքապետին ձեռօքը Չարին ա-ղաչեցին, որ իրենք ալ կարենան Ռուսաստան եր-թալ։ Պետրոս աս նշանաւոր պատասխանը տուաւ իրենց "Ցէրութեանս մէջ Հրէից բնակութիւն տա-լու ժամանակը դեռ եկած չէ, ով որ զիրենք ու իմ ժողովուրդս կը ճանչնայ նէ՝ աս բանս կը տեսնէ։ Ըսէ իրենց, տէր քաղաքապետ, շնորհակալ կ'ըլ-լամ եւ կը ցաւիմ որ աս իրենց անձնանուիրութիւնը չեմ կրնար գործածել։ Արդէն ծանօթ է ամենուն որ Հրեաները իրենց վաճառականութեամբն ու վար-մունքովը բոլոր աշխարհք կը խաբեն, բայց Ռուսաց

մէջ չեն կրնար մեծ շահ մ՚ունենալ,,: Նոյնպէս հոս ալ Պետրոս ծովակալութեան նաւարանին քով պզտիկ տան մը մէջ կը բնակէր. այս է նաեւ ան տեղը, ուր որ նաւարանին գլխաւորը երեւելի Անգղիացւոյ մը առջեւ, միւս գործաւորներուն ծառի ծանր կոճղ մը տեղէն շարժելու աշխատած ատեննին, Պետրոսին պոռաց "Պետրոս Սարտամցի գործաւոր, ինչո՞ւ համար դուն ալ ասոնց չես օգներ,,: Ճեպով մը ցատկեց Չարը ու իր անդամայաղթ մարմնոյն լայն ուսերը կոճղին տակը խոթեց: Ասանկ փութով ու եռանդեամբ աշխատած ատենը շատ դժուարը կու գար, երբոր կը տեսնէր որ իր ուղեկցաց մէջէն քանի կը փափուկ երիտասարդներ աս տեսակ գործքերուն ծանրութեանը վրայ կը տըրտընջային ու ազատելու համար իրենց ձեռացը վէրքերը կը ցուցընէին: Չարն ալ իր վիրաւոր ձեռքերն անոնց ցուցընելով արտնեղութեամբ ու բարկութեամբ պոռալու կը սկսէր, "Յառա՜ջ, յառա՜ջ, աշխատինք,,:

## 19.

Աս միջոցին ռուսական զէնքերը Ասիայի ազգաց փոքր ցեղերուն ու տիրապետներուն դէմ շատ յաջողութիւն կը գտնէին: Մուստաֆա Բ. Լէոփոլտոս կայսրէն յաղթուած էր ու Պետրոս Լեհաստանի վրայ ունեցած բաղձանացն հասաւ, այսինքն Սոպիեսքիին մահուընէն ետքը Քոնթի իշխանին տեղ՝ որն որ իր գաղղիական ազդեցութեամբը նոյնը գրաւել կ՚ուզէր, Սաքսոնիայի Աւգոստոս իշխանը Լեհաստանի գահն ելաւ: Ռուսական պետութիւնը Թէ՛ ներքուստ ու Թէ արտաքուստ մեծ հանդարտութեան մէջ էր:

Չարն Հոլանտա իր ժողված նիւթերովը 60 թընդանօթնոց պատերազմական նաւ մը շինել տալով՝ որն որ պատերազմական շինուածոց հրաշակերտը կը կոչուէր, Արխանկել խաւրեց, որովհետեւ դեռ

Պալթիկ ծովուն վրայ նաւահանգիստ չունէր։ Նոյնպէս ամէն տեսակ արուեստաւորներ իր տէրութիւնը խաւրելէն ետքը Անգղիա անցաւ, ուր որ Գուլիելմոս Գ. զինքը շատ պատուով ընդունեցաւ. Հոս միշտ գործքի վրայ էր ու ճարտարապետներու հետ միայն տեսութիւն կ'ընէր եւ գիտէր թէ որ ազգ ինչ տեսակ նաւ կը շինէ ու կը գործածէ. Հոս իր գիտութիւնները կատարելագործեց ու Ռուսիա խաւրելու մարդիկներ գտաւ որպէս զի հոն ամէն արուեստից ու գիտութեանց հիմ դրուի։ Գուլիելմոս իր աչքին հանդիսութիւն մը կատարեց, որ ամէն բանէ աւելի հաճելի եղաւ իրեն. աս հանդիսութիւնն էր նաւական պատերազմի փորձ մը, որմէ ետքը 120 թնդանօթնոց նաւ մ'ալ պարգեւեց իրեն, ուրիշ պզտի նաւով մը, որուն վրայ ինքն իր ճամբորդութիւնները կ'ընէր։ Գուլիելմոսէն բաժնուելու եւ նորէն Հոլանտա երթալու ատենը՝ թագաւորը գրպանէն մոխրագոյն թղթի մէջ պլլուած 10,000 սթեռ. ոսկի հանելով Պետրոսին պարգեւ տուաւ, որն որ թէպէտ թագաւորաբար չտրուեցաւ, բայց թագաւորական պարգեւ էր։ Անգղիացի վաճառականներ Զարէն Ռուսաստան քթախոտ ու ծխախոտ խոթելու հրաման ուզեցին։ Աս տունկին գործածութիւնը մինչեւ նոյն ատեն իբր պիղծ ու սատանայական արգելուած էր. Պետրոս իր սիրելոյն Քարմաթն ծովապետին սիրոյն համար ան թէութեամբ հրաման տուաւ որ ամէն մէկ տակառաչափին Քարմաթնին մէյմէկ Շիլլինկ վճարուի։ Անկից աղէկ մուտք մ'ունեցած պիտի ըլլայ Քարմաթն, որովհետեւ Անգղիայի ընկերութիւն մը աս նկատմամբ 15,000 սթեռլին վճարած է։

Թէպէտ քիչ ատեն կեցաւ Պետրոս Անգղիա, բայց այնչափ բաներու տեղեակ եղաւ որ մինչեւ կարող եղաւ ըսել "Առանց Անգղիայի տխմար կը մնայի„։

Ու նոյն տէրութեան ծովական զօրութեան վրայ զմայլած՝ "Ձար չըլլայի նէ՝ Անգղիայի ծովապետ կ'ըլլայի,, կ'ըսէր :

Անգղիայէն դառնալու ատեն վտանգաւոր ալէկոծութեան մը հանդիպեցաւ, ու հազիւ կրցաւ Հոլանտայի եզերքըն հանիլ, ուր որ շատ չկենալով դէպ ի Վիէննա ճամբայ ելլել կ'ուզէր, երբոր իմացաւ որ Սթռելցներու մէջ նորէն խռովութիւն մը ծագեր է, բայց նոյն խռովութեան նուաճման լուրն ալ մէկտեղ հասնելով՝ հանդարտ սրտով կրցաւ Պետրոս իր ճամբորդութիւնը յառաջ տանիլ : Ան նամակը՝ զորն որ ինք նոյն ատեն աս դէպքիս նկատմամբ իբեն տեղապահին Ռոմոտանովսքիին կը գրէ, աս հզօր ինքնակալին անոր ունեցած ինքնակամ հնազանդութիւնը կը յայտնէ : "Տէր իմ Թագաւոր, կը գրէ, Ձեր մեծափառութեան Ապրիլի 8ին գրած նամակը Մայիսի 8ին առի : Շնորհակալ եմ Ձեր ըրած շնորհքին ու կ'աղաչեմ որ ասկէ ետքն ալ զիս չմոռնաք : Բոլոր գնուած բաները, ինչպէս նաեւ գործքի համար բռնած մարդիկներս Արխանկէլ խաւրուեցան, մենք ալ աս շաբաթ, հինգշաբթին օրը, դէպ ի Վիէննա ճամբայ կ'ելլենք : Շնորհք ըրէք, Աստուծոյ սիրոյն համար գործադրեցէք ան ամէն բաները զորոնք Թիխոր Նիքիթիչը Ձեզի պիտի ըսէ : Նամակներնուդ մէջ Սթռելցներու յեղափոխութեան յիշատակութիւն մը կայ, որն որ Ձեր առաջնորդութեամբը ու զինուորաց ջանքովը խաղաղցեր է : Ասոր վրայ շատ ուրախացայ : Միայն ցաւս ան է որ բաները պատժական դատաստանաւ չէք քննած : Աս ըրածներնուդ դատաստանն Աստուծմէ գտնէք : Խորհրդանոցին նախասենեկին մէջ ասանկ չորոշեցինք ու Կոլովինն ալ պարզ ասոր համար չգնա՞ց : Բայց Դուք կարծելով որ աս քննութիւնը մեզի կորուստ կրնայ ըլլալ՝ վախցեր էք ու աս գործքիս

մէջ չէք մտեր : Սուրհանդակը շատ յառաջ կրնար աս լուրը մեզի բերել թէ՝ "Փառք Աստուծոյ ամէնեւին արիւն չեղաւ, ամէն մարդ ողջ է,,: Չեմ գիտեր, ինչպէս աս հասակի մէջ անանկ կանացի երկիւղ ստացեր էք: Աս թուլութենէ ամէնեւին բան մը չյուսացուիր: Կ'աղաչեմ, մի նեղանաք. ըսածներս սրտցաւով ըսած եմ,,:

Ասկէ ետքը Զարը իր ճամբորդութիւնն յառաջ տանելով, Քլեւէ, Հիլտեսհայմ, Լայփցիկ, Տրեզտէն քաղաքներուն վրայէն 1698ին Յունիսի մէջ Վիէննա հասաւ: Լէոփոլտոս կայսրը զինքը մեծ փառաւորութեամբ ընդունեցաւ ու Պետրոսին անուան օրը մեծ հանդիսութիւններ եղան: Զարը քաղքին երեւելի տեղերը բոլոր պտըտեցաւ, ու իր երեւելի գործքն ան եղաւ որ Կայսեր հետ Տաճկաց պատերազմին ու խաղաղութեան վրայ խօսեցաւ, եւ որոշուեցաւ որ իբրեւ դաշնակից իրար չմոռնան ու Աւստրիան չկարենայ առանձին ինք իրմէ Օսմանեան տէրութեան հետ դաշինք դնել:

## 20.

Պետրոս Շերեմեթեւ[1] իր ուղեկցաց մէկ մասովը Իտալիա խաւրելէն ետքը՝ ինքն ալ Իտալիա երթալու վրայ էր, երբոր նորէն լուր առաւ թէ Սթռելցիներու դաւակցութիւն մ'ելեր է: Թողուց Իտալիայի ճամբորդութիւնն ու որոշեց որ շուտ մը հայրենիք դառնայ: "Եղածները նամակներնէդ իմացայ,

[1] Շերեմեթեւին ճամբորդութիւնը 1697ին եւ 98ին եղաւ: Լէոփոլտոս Կայսր յանձնարարական թղթով մը զինքը Քահանայապետին ու Մալթայի ասպետաց յանձնեց: 1698ին Հռոմ Քահանայապետին ներկայացաւ ու անկից Մալթա գնաց: Հոն ծովու վրայ հեռուանց քանի մը Տաճկի նաւ տեսնելով ասպետները իրենց նաւատորմղին հրամանատարութիւնը Շերեմեթեւին յանձնելով երեւցած նաւերուն վրան խաւրեցին, բայց առիկա հետեւութիւն մը չունենալով Շերեմեթեւ նաւատորմիղն առած Մալթա դարձաւ: Իբրեւ երեւելի ու քաջ մարդ ասպետները զինքը

պատասխանեց Ռոտոմանովկքիին, . . . Կ'աղաչեմ հաստատուն կեցէք, ապա թէ ոչ՝ կրակը չենք կրնար մարել: Ես Ձեր կարծածէն շուտ հոն կ'ըլլամ,,:

Կարելի եղածին չափ աճապարեց ու Ցունիսի մէջ Վիէննայէն ճամբայ ելաւ ու անընդհատ իր ճամբան յառաջ տանելու վրայ էր, երբոր Սթուե-լիցներու նուաճման լուրն առաւ. սակայն այս լուրն իր յառաջադրութիւնը չփոխեց, կ'ուզէր ինք իր երկիրն երթալ ու աս մշտնջենաւոր ապստամբները բոլորովին ջնջել վերցընել: Ճամբան Լեհաստանի նոր թագաւորին հետ տեսնուեցաւ: Քաղաքականացեալ Եւրոպային փառաւորութիւններն իր յատակագծին կատարմանը մեծ գրգիռ եղան. պէտք էր որ անանկ տեղ մը ձեռք ձգէր՝ որն որ զինքն անմիջապէս Հոլանտայի ու Անգղիայի հետ միացընէր: Աս տեղը Լիֆլանտն էր: Շուետի Կարոլոս ԺԲ. թագաւորին հետ ըլլալու հիւսիսային պատերազմը որոշուեցաւ, որուն Լեհաստան բոլոր զօրութեամբը օգնութիւն խոստացաւ:

շատ յարգեցին եւ մինչեւ զինքն իրենց կարգին անդամ ըրին ու երթալէն յառաջ իրեն մեծ սեղան մը տուին. սեղանէն յառաջ կարգին Գլխաւորը ոսկի, ադամանդեայ խաչ մ'առնելով ազգու խօսքերով նոյն նշանին զօրութիւնն ու ազդեցութիւնը ցուցուց եւ աղաչեց որ ինքն ալ հաճի աս խաչն իր ձեռքէն առնուլ, իրենց եղբայր ու Քրիստոսի ասպետ ըլլալ ու աս նշանն միշտ իր զգեստուցն ու զինուցը վրայ կրել, աս թէութեամբ որ իր մահուընէ վերջը իր ընտանիքէն ոչ ոք նոյն նշանը կարող ըլլայ կրել, յայտնելով որ ասի միայն իր անձնական արժանեացը համար կը տրուի: Աս խօսքերէն ետքը քաշըլերեց զինքը որ ասկէ ետքը կրկին զօրութեամբ քրիստոնէութեան թշնամեացը դէմ պատերազմի: Աս խօսքերէն ետքը ինքն անձամբ խաչն անոր վրայ կախեց ու երեք անգամ զինքը ողջագուրեց ու ընդունած ասպետութեան պատուոյն համար զանազան բարեմաղթութիւններ ըրաւ. ասոր վրայ միւս ասպետներն ալ զինքը ողջագուրեցին ու զինքն իրենց եղբայր անուանեցին: Շերեմեթեվ նոյն կարգին կանոնացը համաձայն ամուրի չէր, եւ 20 տարուան որդի մ'ալ ունէր, բայց Ինոկենտիոս ԺԲ. Քահանայապետը տնօրինելով առաջարկած էր կարգին որ նոյն անձն իրեն անդամ ընդունի:

Ռուանց պատճառի չէր որ Պետրոսի սիրելի մայրը իրեն ազդեցութիւններ կ'ընէր, որ այնչափ շուտ իր նորոգութեանցը ձեռք չզարնէ. սակայն Պետրոս մարդկային սակաւօրեայ կեանքն ու ընելու նորոգութեանց շատութիւնն աչքին առջին ունենալով միշտ փութալու վրայ էր։ Սթրելիցներն իրենց ժառանգական իրաւունքներովը ու հնացեալ սովորութիւններովը, մինչեւ հիմակ Պետրոսին յառաջագծին առջեւ ահագին ժայռեր էին։ Պետրոս ասոնց զօրութիւնը՝ որ շատ անգամ նոյն իսկ իրեն վտանգաւոր եղաւ, կոտրելու համար, զիրենք երկրին ներքին կողմերը ցրուած ու զանազան գունդերու մէջ բաժնած էր։ Սակայն իրենք տեսնելով որ ազդեցութիւննին ու զօրութիւննին կորսընցուցին, ու իրենց հայրենիքէն ու ընտանիքներնէն բաժնուած հասարակ զինուորի մը պէս կը գործածուին՝ մեծ ցաւոց ու հոգոց մէջ էին։ Զօրապետէն մինչեւ ստորին զինուորին բերանը տրտունջ պակաս չէր։ Համբաւ մ'ալ ելաւ որ Զարն օտար զօրքով հայրենիք գալով՝ բոլոր սովորութիւնները պիտի փոխէ, մօրուքները պիտի ածիլել տայ ու պիտի ստիպէ որ մուխ քաշուի ու խելքէ մտքէ դուրս՝ խղճի դէմ բաներ պիտի ընէ։ Աս համբաւը Սթրելիցներու աժգոհութիւնն աւելի եւս գրգռեց, ու դեռ Մոսկուայի մէջ բան չիմացուած ու իրենց գալուստն արգելելու համար բան մը չորոշուած, բոլոր Սթրելիցները ոտք ելան ու 20,000 մղոն հեռու տեղերէն մայրաքաղաքին վրայ գալու սկսան։ Վերջապէս Շայն ու Կորտոն զօրավարները իրենց գունդերովը ասոնց դէմ խաւրուեցան, որոնք Վոսքրէսէնսքեան վանքին մօտերը, Մոսկուայէն 46 ռուսական մղոն (Verste) հեռու երկու բանակները մէկզմէկ դիմաւորեցին։ Իսթրա գետը երկու գունդերը իրարմէ կը բաժնէր։ Սթրելիցները իրենց ընտանիքը տես-

նելու համար Մոսկուա երթալ կ'ուզէին։ Փուճ տեղ Կորտոն ու Շայն զօրապետները զիրենք հնազանդութեան կը յորդորէին։ Մոլեռանդներն ու նոյն իսկ աւելորդապաշտ կղերը Սթոելիցները կատղեցուցին, որոնք գետէն անցնելով չարաչար պատերազմելու սկսան, սակայն իրենց զօրութիւնը Կորտոնին կրթեալ զօրացը պաշարին կարգաւորութեանը չկրցաւ դէմ դնել։ Ձիաւորները զարնուեցան, ոտանաւորաց կարգը շփոթեցաւ ու փուճ տեղ ամէն դիաց փախչելու կը ջանային, շատերը զարնուեցան ու 4000էն աւելի մարդ ալ յաղթողներուն ձեռքն ինկաւ։ Քննութիւնն սկսաւ ու զիրենք խոստովանցընելու համար ամենախիստ տանջանքներ ի գործ դրուեցան։ Անագորոյն եղանակաւ, խարազաններով ծեծուեցան ու կտոր կտոր եղած արիւնոտ մարմինները կրակի վրայ կը բռնուէին։ "Զարհուրելի տեսարան մը բացուեցաւ, կ'ըսէ Քորպ պատմագիրը, զորն որ մարդ լսելով իսկ կը սոսկայ. բաց դաշտի վրայ 30էն աւելի փայտակոյտ խարոյկներ կը վառէին, որոնց վրայ աս դժբախտները սրտառուչ աղաղակներով կը տանջուէին, ուրիշ կողմ մը բազմաթիւ մարդիկ ծեծերու տակ սրտաշարժ ձայներով օդը կը լեցընէին, ու աս զուարճալի տեղերը զարհուրելի տանջանարաններ դարձած էին,,։ Քննութենէն աս իմացուեցաւ որ, միտքերնին Մոսկուա երթալ է եղեր, որպէս զի հոն բոլոր Պետրոսի կողմակիցներն ու ի մասնաւորի օտարականները մեռցընեն ու Սոփիայի խնամակալութեամբը Ալեքսի Զարորդին գահ հանեն։ 165 հոգի սպաննուեցան ու մնացածները ինչպէս նաեւ իրենց գլխաւորը՝ Պետրոսի տրամադրութեանը թողուցին։

## 21.

Պետրոս Օգոստոսի 25ին իր տէրութեան մայրաքաղաքն հասաւ, ուր որ ամէն մարդ ահ ու դողու մէջ կը սպասէր թէ եղած բաները Պետրոս ինչպէս պիտի տեսնէ ու մնացած յանցաւորներուն ինչ պիտի ընէ ։ Սակայն Պետրոս առջի մարդն էր, մանաւանդ թէ քիչ մ՚ալ առջինէն աւելի. իր չափազանց զուարթասրտութիւնն աւելի եւս աճած էր, որովհետեւ աս ճամբորդութեամբ իր երջանկութիւնն ալ նոր նոր գաղափարներով աճած էր ։ Իր բարեկամացը վրայ ունեցած սէրը աս հեռաւորութեան ատեն աւելի եւս մեծցած, ու իր հին, ծիծաղական ու անգործածելի բաները ջնջելու բաղձանքը՝ վերջի աստիճանի հասած էր ։ Աս ըսուածները քիչ մ՚ետքը փորձով ալ կը տեսնենք ։ Մտերիմ բարեկամները մեծ սիրով ընդունելութիւն գտան ։ Երկայն մօրուքներու դէմ պատերազմ հրատարակուեցաւ, ու արքունի ծաղրածուին հրաման տրուեցաւ որ ձարական սեղանի ատեն իր ածելիովը այտերն ողորկէ ։

Պետրոս հոս դառնալէն ետքը արդէն չորս շաբաթ անցած էր, երբոր Սթռելիցներու յեղափոխութեան քննութիւնը նորէն սկսաւ ։ Ինք կ՚ուզէր որ ամէն բան հիմնովին քննուի ու իմացուի որ արդեօք Սոփիան ալ ասոր մասնակից էր, ու թէ բուն իրենց վախճանն ի՞նչ էր ։ Աս քննութիւնը պէտք էր որ հեռաւոր գունդերու մէջն ալ ըլլար ։ Պետրոսին բարկութիւնը դեռ իջած չէր, ներքին դառնութեամբ մը կը տեսնէր որ Եւրոպայէն՝ որուն փառաւորութիւնները ա՛լ աչօք տեսած էր, դեռ ո՛րչափ վար է Ռուսաստան. դառնակսկիծ ցաւերով կը յիշէր որ աս ապստամբութիւններն իրեն ո՛րչափ արգելք եղան ։ Ճանապարհորդութեան ատեն միտքը դրածը պէտք էր որ կատարեր. պէտք էր որ բո-

լոր իր հակառակորդները մեռնէին, կատաղութեամբ կը պնդէր որ բոլոր ձեռքերնին զէնքով քանուողները սպաննուին ու մինչեւ որ խոստովանին չարաչար տանջուին։ Պատրիարքն անոր բարկութիւնն իջեցընելու համար Աստուածամօր պատկերը ձեռքն առած Ձարին առջեւն ելաւ, ու յանցաւորներուն համար թողութիւն կը խնդրէր։ "Աս պատկերն ի՞նչ է, ըսաւ Ձարը, ես քեզմէ աւելի կը պատուեմ սուրբ Մայրը, բայց իմ պարտքերս ալ կը ճանչնամ ու Աստուծոյ ինծի տուած պաշտօնը գիտեմ, որով պէտք է որ ժողովուրդս պաշտպանեմ ու ապստամբները պատժեմ,,։ Հոկտեմբերի սկիզբէն մինչեւ վերջը Մոսկուա ու անոր շրջակայքը պատերազմի դաշտ ու սպանդանոց դարձած ու բոլոր երկիրն արեամբ ներկուած էր։ Վոսքրէսէնսքի վանքին քովը պատերազմող 18 տարեկանէն վեր Սթռելիցներուն ամէնն ալ սպաննուեցան. օրը 200 հոգիէն աւելի կը սպաննուէին։ Միայն 500 հոգի խարանաւ դրոշմեալ Սիպիրիա աքսորուեցան։ — Անողոքելի Պետրոսը նոյն իսկ անձամբ իր Սոփիա քրոջմէն, որն որ այսչափ արեան պատճառն էր, վրէժ կ՚առնուր, եթէ Լըֆոռ մեծ աշխատութեամբ Պետրոսին հոգին չհանդարտեցընէր։ Սոփիային պատիժն ալ ան եղաւ որ իր վանքին մէջ ունեցած բնակութեան առջեւ 30 կախաղան կանգնուեցաւ՝ ուստի որ 230 Սթռելից կախուեցաւ։ Ասոնցմէ առջինը պատուհանին անանկ մօտ էր, որ Սոփիային՝ կառավարութիւնը նորէն ձեռք առնելու համար տրուած աղերսագիրը կրնար կարդացուիլ, զորն որ նոյն Սթռելիցին ձեռքը տուած էին։ Աս արիւնալից գործքն ու պատժելոց յանցանքները քարեղէն սիւներու վրայ քանդակուեցան։ — Նաեւ Եւթոքսիա Ֆէտորէվնա, Պետրոսի ամուսինն ու անոր քոյրը Ձարին բարկութեանը հանդիպեցան ու վանք մը աքսորուեցան։

Ասոնց յանցանքն ալ իրեն նորոգութեանց դէմ ունեցած հակակրութիւնն ու կասկածելի մարդիկներու հետ ունեցած բարեկամութիւնն եղած կ'երեւայ։

## 22.

Զարին արիւնը սաստիկ տաքցած էր ու ալէկոծութենէ մը ետքը դեռ շարժման մէջ եղող ծովու մը պէս, դեռ իր սիրտն ալ շարժման մէջ էր, աչքերը շանթի պէս կը փայլէին ու պզտի պատճառ մ'ալ բաւական էր զինքը նորէն գրգռելու։ Պետրոս անգամ մը սեղան տուաւ, ու խօսքի մէջ պատմեց թէ Լեհ թնդանօթաձգի մը բերանը հատաքարի կտոր մը ցատկելով կռնակի կողմէն ելեր է ու անոր վրայ վիրաւորեալը 9 օր ապրեր է։ Ասիկա Դանիայի դեսպանին անհաւատալի բան մ'երեւցաւ։ Զարը նեղսրտութեամբ մը Լեհ սպարապետը կանչեց, որպէս զի ըսածին վկայէ. երբոր սպարապետը ըսուածն հաստատեց “Հաւտացիր հիմակ, ըսաւ Զարը Դանիացւոյն, չէ նէ Լեհաց թագաւորին գրեմ որ պատմածս հաստատէ„։ Ասկէ ետքը զանազան տէրութեանց առաւելութեանցը ու պակասութեանցը վրայ խօսք բացուեցաւ։ Դեսպանը ռուսական պետութեան վրայ այնչափ գովութեամբ չխօսելուն համար, Զարը տաքութեամբ մ'ըսաւ։ “Աղօթք ըրէ որ իմ հպատակներէս չես„։ Սակայն միայն աս խօսքով գոհ չեղաւ ու փոքր վրէժ մ'ալ առնելու մտօք իրիկունը խաղի ու զուարճութեան մէջ կատակով մը զօրաւոր ապտակ մը հանեց երեսին։ — Զարն իր նորոգութեանցը զբաղելով կ'ուզէր աս տժգոհութիւնները մտքէն ցրուել. Վորոնէժ գնաց ու Սաարտամ ըրածին պէս՝ աշխատելու սկսաւ, ասկէ ետքը Ազով գնաց, բայց հոս չհանդարտելէն զատ աւելի եւս կատղեցաւ, ինչու որ ամրոցներն իր ուզա-

ծրին պէս եղած չէին, պաշտօնական ճարտարապետը զինուորներով Մոսկուա խաւրուեցաւ։ Անկէ նորէն ետ դարձաւ. Հետաւոր Սթռելիցներու մէջ եղած քննութիւնները զինքը հանդարտ չէին թողուր, պէտք էր որ ինքն ալ քննութեանց ներկայ գտնուէր։ Խեղճերն իմացան որ ինչ որ ըսելու ըլլան՝ վախճաննին մահ է. շատերն իրենց յանցանքը խոստովանեցան, ու շատերն ալ մեռնելու ատեն կը պոռային թէ ամէն յանցանքէ ազատ ու անմեղ են, որոնց ասանկ պատասխան կու տար Պետրոս, "Մեռիր թշուառական, թէ որ անմեղ ես նէ՝ արիւնդ վրաս ըլլայ,,. ու շատ անգամ դահճին ձեռքէն սուրն առնելով անձամբ զանոնք կը մեռցընէր։ Աս եղանակաւ Պետրոս Սթռելիցները ջնջեց ու բոլորովին վերցուց, անանկ որ 1705ին ամենեւին Սթռելից մը մնացած չէր։ Պետրոսի աս խստութիւնը թէպէտ արտաքոյ կարգի բան էր, սակայն իր հաւատարիմ հպատակաց ցուցըցած առատաձեռնութիւնն ալ շատ մեծ էր։ Զանոնք վարձատրելու համար Ս. Անդրէասի ասպետաց կարգի նշանն հաստատեց [1], որով նախ Կոլովին կոմսը ու ետքէն Ազովի Ցաճկաց ու

[1] Աս կարգը Ռուսաստանի շքանշանաց կարգերուն ամենէն բարձր կարգն է եւ Ս. Անդրէաս առաքելոյն պատուոյն համար հաստատուած է. աս նշանը միայն կայսրական գերդաստանին անդամները, իշխանական անձինք ու մեծ զօրավարները կրնան առնուլ։ Նշանին վրայի զարդերն ասոնք են։ Ռուսական տէրութեան թեւատարած ու երկգլուխ արծուին վրայ երկնագոյն արծնեալ խաչ կայ, որուն վրայ Ս. Անդրէաս խաչեալ կը տեսնուի. ատոր վրայ կայսերական թագը կայ ու խաչին չորս ծագերը աս գիրերը կան Ս. Ա. Պ. Թ. (S. A. P. R. sanctus Andreas protector regni. Ս. Անդրէաս պաշտպան թագաւորութեան)։ Շքանշանին երկրորդ երեսը արծուին ետի դին կը տեսնուի, որուն վրայ, նեղ, ճերմակ ու ոլորած կապ մը կայ աս խօսքերով "Վասն հաւատոյ եւ հաւատարմութեան,, ռուսերէն)։ Աս շքանշանը լայն ու երկնագոյն կապով մը աջ ուսէն դէպ ի ձախ կողը ու ասոր կուրծքին ձախ դին կը կախուի։ Աս կարգին ասպետները Աղեքսանդր Նեվսքիին ու Ս. Աննայի առաջին կարգի նշաններն ալ մէկտեղ կ'ընդունին։

Թամարաց պատերազմներուն մէջ երեւելի եղող զօրապետները վարձատրուեցան։

Այս գործքերէն ետքը Պետրոս իր բոլոր մտադրութիւնը զօրաց վրայ դարձուց. պէտք էր որ զօրաց մէջ մեծ փոփոխութիւն ու կարգ մտնէր, պէտք էր որ բոլոր զօրքը մէկ մարմին ըլլար ու մէկ կամաց հնազանդէր։ 1699ին զօրաժողովն աս դիտաւորութեամբ եղաւ. սակայն տէրութեան պարտքն ալ երթալով կ'աւելնար, ասիկա ծածկելու համար ուրիշ օգնութեանց կարօտութիւն կար։ Աս պատճառաւ ճարտարութեան ու երկրագործութեան վրայ մեծ մտադրութիւն ընելու սկսաւ։ Չէ թէ միայն նոր զօրաժողովի մը, այլ նաեւ նոր նաւատորմիղ մը կազմելու համար շատ դրամ պէտք էր։ Զարն աճապարեց նորէն Վորոնէժ գնաց ու իր խօսքերովը՝ Երեսին քրտինքովն աշխատելու սկսաւ։ Աս յաջող գործողութեանցատեն քանի մը տխուր եւ զգալի հարուածներով Զարին սիրտը կոտրեցաւ ու սէրը մարեցաւ։ Իր մտերիմ քաջ զօրավարաց դժբախտ մահը իրեն մեծ ցաւ պատճառեց։

Կորտոն՝ որ գրեթէ Սթռելիցները բուն նուաճողն էր, Պետրոսին դարձէն ետքը հիւանդացած էր. Պետրոս ստէպ այցելութեան կ'երթար իր բարեկամին ու պատերազմական բաներու վրայ կը խօսէր։ Չկրցաւ Կորտոն իր հիւանդութեան անկողնէն ելլել, ու նոյն իսկ Պետրոս իր ձեռքովն անոր աչքերը գոցեց ու իր արցունքներովն եւ յուղարկաւորութեան ներկայ գտնուելովը ցուցուց թէ ինչ արդիւնաւոր ու տէրութեան հարկաւոր մարդ էր Կորտոն։ — Նաեւ նոյն տարին (1699) իր միւս սիրելոյն, Լըֆորին աչքերն ալ գոցեց։ Աս մարդս մինչեւ իր վերջի շունչը սիրելի մնացած էր Պետրոսին. միայն իր անկարգ կեանք վարելովը, շատ անգամ Պետրոսին ալ կը վնասէր, եւ անոր ու ամուսնոյն մէջ եղած

հակառակութիւնն այնչափ աճեցուց՝ որ վերջապէս իրարմէ բաժնուելու պատճառ եղաւ անոնց ։ Կրնայ ըսուիլ որ իր անկարգութիւններն էին որ իր կեանքն այնպէս շուտով 43 տարուան վերջացուցին ։ Մերժեց ողորմելին ամէն կրօնական մխիթարութիւններն ու այնպէս յաւիտենականութեան անցաւ, մահուան սարսափը արտաքին մխիթարութիւններով ու երաժշտութեամբ փարատելու կը ջանար. այնպէս աղքատ մեռաւ որ մեռնելէն ետքը թաղման ստակ չկար ։

Աս մահը որչափ որ անակնունելի՝ այնչափ ալ ցաւալի եղաւ Պետրոսին ։ Լըֆոռին հիւանդութեան ատենը՝ ինք Վորոնէժ էր, ուսկից որ ամէն օր անոր հիւանդութեան վիճակն իմանալու համար սուրհանդակներ կը հանէր ։ Բայց Լըֆոռ զինք չտրտմեցընելու համար մինչեւ վերջին րոպէն իր վտանգալից վիճակը կը ծածկէր ։ Պետրոս, ան անսասան իշխանը, անոր մահը մէկէն իմանալով արտասուաց հեղեղ մը սկսաւ իջեցընել աչքերէն ։ Ըրած հառաչանքներն իր բնակութիւնը կը թնդացընէին ու իր հեծկլտանաց մէջ անդադար կ՚աղաղակէր "Իմ ամենալաւ բարեկամս կորսնցուցի ։ . . . Ափսո՜ս, դեռ ինծի հարկաւոր էր. ասկէ ետքը ո՛ւր տեղէն ուրիշ մ՚ալ պիտի գտնեմ„ ։ Զինքն ընկճող ցաւը ասկէ աւելի բան մը չէր թողուր իրեն ըսելու ։ Բոլոր գործքերը թող տալով Մոսկուա գնաց, ուր որ իր հաւատարիմ ծառային ունեցած շնորհակալութեան պարտականութիւնը փառաւոր յուղարկաւորութեամբ մը ամենուն յայտնեց ։ Այնչափ մեծ եղաւ ան տրտմութիւնն ու նեղութիւնը, զորն որ աս մեծ մարդուն մահը Ցարին պատճառեց, որ հազիւ հինգ տարի վերջը, ինչպէս որ ինք իր մէկ բարեկամին կը գրէ, "Յաղթութեան մը աւթով տրտմութենէ անխառն ճշմարիտ ուրախութիւն մը զգաց„ ։

— Լըֆոռին՝ Մեծին Պետրոսի բարեկամին յիշատակը երախտապարտ Ռուսի մը սիրտը անջինջ պէտք է մնայ։

## 23.

Լըֆոռին մահը Պետրոսին բոլոր միապետութիւնը Մենչիքովին[1] վրան ձգեց, որով Պետրոս իր նորոգութեանցը ձեռք զարկաւ։ Պետրոսի մեծատարած տէրութեանը ու ընդարձակ խորհրդոցը 20 գունդ բաւական չըլլալուն գերմանական կրթութեամբ նոր գունդեր ալ կազմուեցան։ Ելեւմուտքի ընթացքը շտկուեցաւ, զանազան լեզուներու եւ նաւավարութեան դպրոցներ հաստատուեցան, տպա-

[1] Դժուարին բան է աս իշխանին ցեղը որոշելը. իր վրայ գրողներէն ոմանք կ'ըսեն թէ Մոսկուա ռամիկ մըն էր, ոմանք կ'ըսեն թէ Շլիացիչներու (Schliachitz, Լիթուանիայի ստորին ազնուականներու) սերնդէն էր։ Ռուսաստանի իշխաններէն Մենչիքովի տրուած հրովարտակներու մէջ նշանակուած է թէ Մենչիքով Լիթուանիայի ազնուական ցեղէ մըն է, եւ թէ իր հայրը ռուսական ստրկանութեան մէջ ծառայութիւն ըրած է։ Պր. Մանշթայն իր Ռուսաստանի յիշատակարան անուամբ գրուածքին մէջ կը հաստատէ թէ "Մենչիքով գեղացւոյ մը որդի էր ու հայրը զինքը ծաղարարի մը քով աշկերտութեան տուած էր. աս պզտի պատանին որ քաղքին չորս դին երգելով կարկանդակ կը ծախէր, իր ծաղրաշարժ պատմութիւններովը ու վառվռուն բնութեամբը Պետրոս Մեծին միադրութիւնն իրեն ձգեց„։ Պր. Մանշթայնին կարծիքն անկողմնակէ հաւանականութիւն ունի որ, աս արտաքոյ կարգի մարդուն վրայ պատմածը աւանդութեան հետ միաբան է։ Մենչիքով, կարկանդակ ծախող պատանին, կ'ըսեն, Լըֆոռին աչքը մտաւ, որ դեռ նոյն ատեն հասարակ դընդապետ մըն էր։ Լըֆոռ օր մ'իրեն հետ խօսելով իր իմաստնալից պատասխաններուն վրայ զարմացաւ ու տեսաւ որ իր արուեստէն վեր բաներ ալ ընելու կարողութիւն ու համեմատ կայ տղուն վրայ, առաջարկեց իրեն որ իր ծառայութիւնը մտնէ, զորն որ Մենչիքով սիրով յանձն առաւ (1672)։ Պետրոս Ա. ըստ պատահման զինքն իր սիրելւոյն քովը տեսնելով, իմացաւ իրեն ով եւ ուսկից ըլլալը ու իր պալատն առաւ։ Մենչիքով իր Պետրոսին ցուցըցած սիրովը ու հաւատարմութեամբը իր տիրոջը սիրտը վաստըկեցաւ, որով ինքնակալը զինքը ազնուականներէ կազմուած Բոթեչնիայի գունդը խառնեց։ 1696ին Ազովի առման ժամանակն արդէն յիսնապետ էր ու 1700ին ալ զօրապետի տեղապահ եղաւ։

րաններ դրուեցան այլեւայլ գիտութեանց եւ գըլ-
խաւորաբար Թնդանօթական ու մեքենական գիտու-
թեանց ու պատմական գիրքեր թարգմանուեցան
ու տպուեցան։ Հասարակ դպրոցներն ալ կարգի
մտան եւ ուր որ մինակ կարդալ ու գրել կը սոր-
վուէր, հարկ եղաւ որ ուրիշ ուսումներ ալ սորվուի։
Բոբերու որդիքներն եւ եկեղեցւոյ մէջ ծառայող-
ները պէտք էր որ կամ յունարէն եւ կամ լատինե-
րէն սորվէին եւ կամ զինուոր գրուէին։ Բոլոր եր-
կիրը դասատուն մ'եղաւ, երիտասարդ ու ծեր
պէտք էր որ գիտութեան ետեւէ ըլլար. ով որ ինք-
զինք կրթելու եւ նորակազմ տէրութեան օգտակար
ըլլալու փոյթ չէր տաներ, նոյն տէրութեան մէջ
մնալու ալ արժանի չէր սեպուեր եւ բոլոր ինչքերն
ու ստացուածները կը կորսնցընէր։ — Սակայն նոյն
ատենուան Ռուս ժողովրդեան մտաւոր վիճակն ըմ-
բռնելու համար Բուֆֆենտորֆ պատմագրին (ո-
րուն գիրքը Պետրոս բառ առ բառ ռուսերէն թարգ-
մանել տուած է) մէկ փոքրիկ հատուածը յառաջ
կը բերենք, ուստի որ ընթերցողը չէ թէ միայն նոյն
ատենուան ժողովրդեան վիճակին վրայ աղէկ գա-
ղափար մը կ'ունենայ, այլ նաեւ դիւրաւ կրնայ մա-
կաբերել, որ ասանկ ժողովուրդ մը քաղաքակա-
նացընելու ինչպիսի դժուարութեանց չէ յաղթած
Պետրոս։ Ասանկ կը գրէ աս պատմագիրը 1654ին
"Ռուս ազգին որպիսութեանը վրայ իրեն պատիւ
բերելու չափ գրելու բան մը չկայ, ան կրթութիւնը
որն որ Եւրոպայի ազգաց մեծ մասին վրայ կը տես-
նուի, իրենց մէջ չկայ եւ պարզ կարդալ ու գրել
գիտնալը իրենց ուսմանը ամենաբարձր աստիճանն է,
ինչպէս իրենց քահանաներն ալ ուրիշ բան չեն գի-
տեր՝ բայց եթէ Ս. Գիրքէն կամ քարոզագիրքէ մը
գլուխ մը բան։ Կասկածոտ, անագորոյն ու արիւնար-
բու են, յաջողութեան ատեն մեծամտութիւննին

անտանելի է ու դժբախտութեան ատեն փոքրոգի են ու կը յուսահատին։ Ինքզինքնին մեծ բանի տեղ կը դնեն եւ մարդ չի կրնար իրենց բաւական պատիւ ընել։ . . . Ծառայական զգածում ունին եւ խիստ կառավարութիւն կ'ուզեն։ Իրենց ամէն խաղերը հարուած ու բանցի են, խարազանն ու մտրակն ալ սիրով կը գործածեն։ Մարմիններնուն կազմուածքը զօրաւոր է, ամէն տեսակ գործքի եւ աշխատութեան կու գան, ցրտութեան եւ անօթիութեան ալ կը դիմանան։ Սակայն բաց դաշտի վրայ պատերազմելու եւ քաղաք պաշարելու ամենեւին յարմար չեն ու շուտով կը շփոթին, որովհետեւ կ'երեւակայեն որ դիմացի հակառակորդնին աս գործքիս մէջ իրենցմէ աւելի ճարտար է։ Բայց ի ներքուստ ամրոցները վերջի աստիճանի քաջութեամբ կը պաշտպանեն չէ թէ անոր համար որ աշխատութենէ ու նեղութենէ չեն փախչիր, այլ անոր համար որ հակառակն ընելու ըլլան կեանքերնին կը կորսնցընեն։ Սակայն հիմակ զօրքն օր ըստ օրէ կըրթելու եղեր են, ու շատ գերմանացի ու սկովտացի պաշտօնակալներ բերել կու տան, որպէս զի Եւրոպայի մէջ գործածուած պատերազմական արուեստին տեղեակ ըլլան։ Բայց Ռուսի մը ուրիշի ծառայութեան մտնելն արգելուած է, որովհետեւ Մեծ իշխանը կը վախնայ որ չըլլայ թէ աչքերնին բացուելով նորոգութեանց ձեռք զարնեն„։ Այսպիսի ժողովրդեան մը վրայ աշխատեցաւ Պետրոս, օտար երկիրներ ճամբորդութիւն ընելն որ ցայժմ մահուան պատժով արգելուած էր, ասկէ ետքն օրինաց պարտաւորութիւն եղաւ։ Կանայք որ մինչեւ հիմակ տան մէջ ծածկուած էին ու պէտք էր որ երեսնին գոց դուրս ելլէին, ա՛լ կապանքներնէն ազատեցան։ Քլթախոտ ու ծխախոտ խմելն որ մահացու մեղք կը սե- […]արին օրինակաւը սովորական բան եղաւ։

անտանելի է ու դժբախտութեան առէն փոքրոգի են ու կը յուսահատին։ Ինքզինքնին մեծ բանի տեղ կը դնեն եւ մարդ չի կրնար իրենց բաւական պատիւ ընել։... Ծառայական զգածում ունին եւ խիստ կառավարութիւն կ'ուզեն։ Իրենց ամէն խաղերը հարուած ու բռնցի են, խարազանն ու մտրակն ալ սիրով կը գործածեն։ Մարմիններնուն կազմուածքը զօրաւոր է, ամէն տեսակ գործքի եւ աշխատութեան կու գան, ցրտութեան եւ անօթիութեան ալ կը դիմանան։ Սակայն բաց դաշտի վրայ պատերազմելու եւ քաղաք պաշարելու ամենեւին յարմար չեն ու շուտով կը շփոթին, որովհետեւ կ'երեւակայեն որ դիմացի հակառակորդնին աս գործքիս մէջ իրենցմէ աւելի ճարտար է։ Բայց ի ներքուստ ամրոցները վերջի աստիճանի քաջութեամբ կը պաշտպանեն չէ թէ անոր համար որ աշխատութենէ ու նեղութենէ չեն փախչիր, այլ անոր համար որ հակառակն ընելու ըլլան կեանքերնին կը կորսնցընեն։ Սակայն հիմակ զօրքն օր ըստ օրէ կըրթելու եղեր են, ու շատ գերմանացի ու սկովտացի պաշտօնակալներ բերել կու տան, որպէս զի Եւրոպայի մէջ գործածուած պատերազմական արուեստին տեղեակ ըլլան։ Բայց Ռուսի մը ուրիշի ծառայութեան մտնելն արգելուած է, որովհետեւ Մեծ իշխանը կը վախնայ որ չըլլայ թէ աչքերնին բացուելով Նորոգութեանց ձեռք զարնեն,,։ Այսպիսի ժողովրդեան մը վրայ աշխատեցաւ Պետրոս, օտար երկիրներ ճամբորդութիւն ընելն որ ցայժմ մահուան պատժով արգելուած էր, ասկէ ետքն օրինաց պարտաւորութիւն եղաւ։ Կանայք որ մինչեւ հիմակ տան մէջ ծածկուած էին ու պէտք էր որ երեսնին գոց դուրս ելլէին, ա՛լ կապանքներնէն ազատեցան։ Քթախոտ ու ծխախոտ խմելն որ մահացու մեղք կը սեպուէր, Ձարին օրինակաւը սովորական բան եղաւ։

ժողովուրդին ազնուական զուարճութեանց վարժե-
ցընելու համար թէատրոն մ՚ալ բացուեցաւ, որուն
մէջ խաղացողները Գերմանիայէն եկած էին։ Որ-
չափ ժողովրդեան՝ աս ամէն նորոգութեանց դէմ
ունեցած զզուումն ու ընդդիմութիւնը արտաքոյ կար-
գի էր, այնչափ ալ Պետրոսին ռուսական հին ու
վայրենի սովորութիւնները ջնջելու ճիգը մեծ էր։
Ռուսերը իրենց տարին Սեպտեմբեր ամսոյն մէջ կը
սկսէին, Պետրոս եւրոպական սովորութեան համա-
ձայն տարւոյն սկիզբը Յունուարին բերաւ. աս փո-
փոխութիւնը Մոսկուա վերափոխման եկեղեցւոյն
մէջ հանդիսութեամբ հրատարակուեցաւ։ Համար-
ձակեցաւ նաեւ Ռուսաց ազգային զգեստն ալ փո-
խելու. հրամայեց որ ամէն իրեն հետ գործք ունե-
ցողները եւրոպական հագուստով իր առջին ելլեն։
Զգեստներուն օրինակը քաղքին ամէն դռներուն
առջին դնել տուաւ եւ թէ որ մէկը հին սովորու-
թեան համաձայն երկայն զգեստով քաղաք մտնել
ուզէր, կամ տուրք պիտի վճարէր եւ կամ պիտի
յանձն առնուր որ մինչեւ ծնկուընները զգեստը
կտրուի։ Եւ որովհետեւ աս շատ անգամ պատա-
հելով ծիծաղելի բան կ՚ըլլար, անոր համար առանց
դժուարութեան երկայն զգեստներն աներեւոյթ ե-
ղան։ Սակայն աս նորաձեւ զգեստներուն երկայն
մօրուք ամեներնին չէր վայլեր. ասոր ալ դիւրին
ճամբան գտնուեցաւ, քաղքին ամէն մէկ դրան առ-
ջին վարսավիրաներ դրուեցան, որոնք պէտք էր որ
ներս մտնողներուն մօրուքն ածիլէին։ Քիչ ատեննուան
մէջ մօրուքն ալ ծաղրելի բան եղաւ ու միայն եկե-
ղեցականաց ու գեղացւոց մօրուաց ազատութիւն
տրուեցաւ աս թէութեամբ որ ամէն տարի նորէն
հրաման առնուն ու ամէն մէկ հրամանն առնըլ-
նուն 100 ռուպլի վճարեն։ Աս տեսակ հրա-
մաններով Պետրոսին նորոգութիւնները կրցան

գլուխ ելլել։ Բայց աւելորդապաշտները երկայն ժամանակ մեծ հոգով իրենց մօրուքին մազերը պահեցին, որպէս զի իրենց դագաղին մէջ դնել տան։ Դժուարին եղաւ աս հրամանը տէրութեան ուրիշ կողմերը կատարել տալ։ Պետրոս չկրցաւ Վորոնէժի ատենակալները համոզել որ մօրուքնին ածիլեն։ Մենչիքով աս լսելով եւ ուզելով որ Զատկի տօնին աս ատենակալները բոլորովին կերպարանափոխ ըրած Պետրոսին ցուցընէ, Զատկին առջի օրը զիրենք կանչել տուաւ եւ ըսաւ, Չարէն հրաման ունիմ որ ամէնքնիդ ալ կամ զգեստնիդ փոխէք ու մօրուքնիդ ածիլէք եւ կամ Սիպիրիա երթալու պատրաստուիք։ Ատենակալներն երբոր աս լսեցին, լալով Մենչիքովին ոտքն ինկան "Աւելի կ'ուզենք, կ'ըսէին, մեր գլուխը տալ քան թէ մեր մօրուքները, որով Աստուծոյ պատկերն ալ կը կորսնցընենք,,։ Մենչիքով դառնացած զինուորներուն հրամայեց որ լացողները մէկ դի առնուն. ան ատենը մէջերնէն երիտասարդ մը պոռալու սկսաւ "Երկնից կամքն ըլլայ,, միւսներն ալ բոլոր առոր հետեւեցան. անմիջապէս մօրուքներն աներեւոյթ եղան ու երկրորդ օրը Չարին առջին ելած ատեննին Չարը զիրենք չկրցաւ ճանչնալ ու Մենչիքովէն բանն իմանալով շատ ուրախացաւ ու ամէն մէկը պագնելով Զատիկ շնորհաւորեց։

Անգամ մը Չարը մօրուքն ածիլած ծերու մը հանդիպելով, Մօրուքդ ածիլելէն ետքը երիտասարդ դարձեր ես, ըսաւ. ծերն աս որ լսեց արտասուալից աչքերով, ձեռքերը կրծոցը վրայ դրած կտրած մօրուքը դուրս հանեց ու Չարին ցուցուց ըսելով, Կը պահեմ ասիկա՝ որպէս զի դագաղիս մէջը դնել տամ ու անդիի աշխարհք Ս. Նիկողայոսին ցուցընեմ։

Այսպէս իր ներքին նորոգութիւնները գլուխ

հանելէն ետեւ, նորէն արտաքին պատերազմական գործքերու ըզբաղելու սկսաւ: Պետրոսի հեռաւորութեանը ատեն Շայն զօրավարը թէպէտ ոչ անյաջող, բայց անորոշ պատերազմներով հանդարտութիւն մը ստացած էր: Սակայն Թաթարները ծածուկ Սթռելէցներու հետ խօսք մէկ ըրած Ազովի վրայ կ՚ուզէին յարձակիլ: Վտանգն անմիջապէս Չարին ականջն հասաւ, որն որ պարզապէս իր ներկայութեամբը ամէն բան պարապի հանեց: Ապըստամբները պատժուեցան ու նոյն ծածուկ Սթռելէցներուն ալ իրենց ընկերաց վիճակն հասաւ: Ասկէ ետքը Պետրոս 30 թնդանօթնոց կրկնայարկ փառաւոր նաւով մը իր դեսպանը Կոստանդնուպոլիս խաւրեց, որն որ թնդանօթներու որոտմամբ արքունի պալատն ելաւ, 30ամեայ զինադադարի դաշինք դրուեցաւ, եւ Ազովն Ռուսաց ձեռքը մնաց, որով Սեւ ծովուն վրայ նաւարկութիւնը Ռուսաց համար ապահովցաւ ու դէպ ի Կոստանդնուպոլիս ճամբայ բացուեցաւ:

Աս խաղաղութեան համար մեծ ուրախութիւն կատարուեցաւ Մոսկուա, որուն երկրորդ օրը Պետրոս Շվետաց դէմ պատերազմ հրատարակեց:



# Հատուած երրորդ

## Շվետի դէմ պատերազմ հրատարակութենէն մինչեւ Բոլթավայի յաղթութիւնը: 1700—1709



Չարլ Աւգոստոս Սաքսոնիայի ընտրող իշխանին հետ դաշինք կը դնէ ու Ինկերմանլանտ կը մտնէ: Կարոլոս ԺԲ. ու Դանիայի Թագաւորին հետ ունեցած յարաբերութիւնը եւ 21ամեայ պատերազմին սկիզբը: Դանիայի Թագաւորը Չարլին ու Փրեդերիկոս Աւգոստոսին հետ դաշինք դնելով պատերազմի կը պատրաստուի: Կարոլոս ԺԲ. Դանիա կ'իջնայ. Թրավենդալի խաղաղութիւնը: Նարվայի պաշարումն եւ Ռուսաց յաղթուիլը: Պետրոս Աւգոստոսին հետ կը տեսնուի: Կարոլոս ԺԲ. նոր յաղթութիւն մը կը վաստըկի, Լեհաստան ու Սաքսոնիա կը մտնէ: Չարը նորէն պատերազմի պատրաստութիւններ կը տեսնէ: Շերեմեթեւ իշխանը Շվետները կը զարնէ: Պետրոս Արխանկել կ'երթայ: Մարիենպուրկի յաղթութիւնն ու Կատարինէ օրիորդը: Նէօթեպուրկ կը յաղթուի ու Նայենշանց բերդն անձնատուր կ'ըլլայ: Բեթերպուրկի եւ Քրոնշլոթի շինութիւնները: Ցէրութեան ներքին վիճակը: Չարն արեւելեան ծովուն վրայ: Տորբատ ու Նարվա քաղաքները կը պաշարուին: Մենչիքով Ինկերմանլանտի ընդհանուր կուսակալ կ'ըլլայ: Պետրոս Լեհաստանին հետ դաշինք կը դնէ ու փառաւորութեամբ Մոսկուա կը մտնէ: Գրոտշթատի քով յաղթութիւն մը: Աւգոստոս Լեհաստանի Թագէն կը հրաժարի: Կարոլոս ահագին բազմութեամբ Ռուսաստան կը քալէ: Մազեբբա: Բոլթավայի հռչակաւոր յաղթութիւնը:

### 23.

ՌՈՒՍԱՍՏԱՆ քանի որ Արեւելեան (Պալթիկ) ծովուն հետ հաղորդութիւն մը չունէր, աւելի ասիական քան թէ եւրոպական տէրութիւն կրնար ըսուիլ: Ֆիննեան ծովածոցին սահմանակից երկիրները Ինկերմանլանտ, Քարելիա, Լիֆլանտ, կրնային իր երկիրները Եւրոպայի հետ կապել, բայց ասոնք ալ իրեն չէին: Ան բախտը՝ որն որ Սեւ ծովն իր առջեւը բացաւ, սիրտ տուաւ՝ իրեն աչքերը նաեւ դէպ Արեւելեան ծով ուղղելու: Պետրոս իմացաւ որ Սեւ ծովու եզերքն ու Ազովէ դիրքը իր ժողովրդեանը քաղաքականութեան ու կրթութեանը այնչափ չէին

օգներ ու նոյն իսկ վաճառականութիւնն ալ չէր կրնար աղէկ ծաղկիլ ։ Անոր համար բովանդակ փոյթն ան էր որ Տաճկաց հետ շահաւոր խաղաղութիւն մ'ընէ, որոնք արդէն Զենթայի քով (1696, Եւգինէոս իշխանէն) յաղթուելէն ետքը խաղաղութեան միտում կը ցուցընէին ։ Արդէն Աւստրիայի ու Տաճկի մէջ խաղաղութեան բանակցութիւններ սկսած էին, սակայն Զարը աս խաղաղութեան մէջ իրեն շահաւոր բան մը չտեսնելով՝ իր Կոստանդնուպոլսոյ Վոսնիցին դեսպանին ձեռօքը Տաճիկները միշտ գրգռելու ետեւէ էր, որ Աւստրիայի հետ պատերազմը յառաջ տանին. բայց Տաճիկը պատերազմ չուզելուն՝ նոյն խաղաղութեան առիթը չէր ուզեր կորսընցընել ։ Վոսնիցինին ջանքն աս պտուղն ունեցաւ որ Ազով բոլորովին Ռուսաց ձեռքը մնաց ու իրենց Սեւ ծովու վրայ առեւտրական ազատ նաւագնացութիւն տրուեցաւ. թէպէտ Զարն իր ուրիշ պահանջմունքներէն ալ ետ կենալ չէր ուզեր, բայց 1689ին բոլոր տէրութիւնները զինադադարի մը դաշանց ստորագրելով, ինքն ալ նոյնը յանձն առնլու ստիպուեցաւ. ասով քիչ մը ետքը (1700) 30ամեայ զինադադար եղաւ, որուն թէութեանցը համեմատ Ազով իրեն վերաբերեալ երկիրներովը Ռուսաց ձեռքը մնաց ու միւս ամէն Ռուսաց ձեռքն անցած երկիրները՝ Ռուսերը կահ կարասեօք մէջէն ելլելէն ետքը, Դռան ետ տրուեցան ։

Ռուսն ասանկ մէկ կողմանէ խաղաղելէն ետքը, արեւելեան ծովու եզերքը պատերազմ բանալու ժամանակն հասած էր, բաւական որ Շվետական գահը նստող պատանի թագաւորին դէմ զէնք առնլու պատճառ մը գտնուէր ։ Բայց կամք ըլլալէն ետքը ի հարկէ պատճառ մ'ալ կը գտնուի ։ Երկու դրացի տէրութիւնները աս պատերազմին մէջ Պետրոսին հետ գաղտնի դաշնակից եղած էին ։ Նոյն դրացի

## ՀԱՏՈՒԱԾ ԵՐՐՈՐԴ

### Շվէտի դէմ պատերազմ հրատարակուելէն մինչեւ Բուլթավայի յաղթութիւնը: 1700—1709

Չարն Աւգոստոս Սաքսոնիայի ընտրող իշխանին հետ դաշինք կը դնէ ու Ինկերմանլանտ կը մտնէ: Կարոլոս ԺԲ. ու Դանիայի թագաւորին հետ ունեցած յարաբերութիւնը եւ 21ամեայ պատերազմին սկիզբը: Դանիայի թագաւորը Չարին ու Ֆրէդերիկոս Աւգոստոսին հետ դաշինք դնելով պատերազմի կը պատրաստուի: Կարոլոս ԺԲ. Դանիա կ'իջնայ. Թրավենթալի խաղաղութիւնը: Նարվայի պաշարումն եւ Ռուսաց յաղթուիլը: Պետրոս Աւգոստոսին հետ կը տեսնուի: Կարոլոս ԺԲ. նոր յաղթութիւն մը կը վաստըկի, Լեհաստան ու Սաքսոնիա կը մտնէ: Չարը նորէն պատերազմի պատրաստութիւններ կը տեսնէ: Շերեմեթեւ իշխանը Շվէտները կը զարնէ: Պետրոս Արխանկէլ կ'երթայ: Մարիենպուրկի յաղթութիւնն ու Կատարինէ օրիորդը: Նէօթեպուրկ կը յաղթուի ու Նայենշանց բերդն անձնատուր կ'ըլլայ: Բեթերսպուրկի եւ Քրոնշլոթի շինութիւնները: Տէրութեան ներքին վիճակը: Չարն արեւելեան ծովուն վրայ: Տորբատ ու Նարվա քաղաքները կը պաշարուին: Մենչիքով Ինկերմանլանտի ընդհանուր կուսակալ կ'ըլլայ: Պետրոս Լեհաստանին հետ դաշինք կը դնէ ու փառաւորութեամբ Մոսկուա կը մտնէ: Ֆրաուշթատի քով յաղթութիւն մը: Աւգոստոս Լեհաստանի թագէն կը հրաժարի: Կարոլոս ահագին բազմութեամբ Ռուսաստան կը քալէ: Մազեբբա: Բուլթավայի հռչակաւոր յաղթութիւնը:

## 23.

ՌՈՒՍԱՍՏԱՆ քանի որ Արեւելեան (Պալթիկ) ծովուն հետ հաղորդութիւն մը չունէր, աւելի ասիական քան թէ եւրոպական տէրութիւն կրնար ըսուիլ: Ֆիննեան ծոցին սահմանակից երկիրները Ինկերմանլանտ, Քարելիա, Լիֆլանտ, կրնային իր երկիրները Եւրոպայի հետ կապել, բայց ասոնք ալ իրեն չէին: Ան բախտը՝ որն որ Սեւ ծովն իր առջեւը բացաւ, սիրտ տուաւ՝ իրեն աչքերը նաեւ դէպ Արեւելեան ծով ուղղելու: Պետրոս իմացաւ որ Սեւ ծովու եզերքն ու Ազովի դիրքը իր ժողովրդեանը քաղաքականութեան ու կրթութեանը այնչափ չէին

օգներ ու նոյն իսկ վաճառականութիւնն ալ չէր կրնար աղէկ ծաղկիլ։ Անոր համար բովանդակ փոյթն ան էր որ Ցաճկաց հետ շահաւոր խաղաղութիւն մ՚ընէ, որոնք արդէն Զենթայի քով (1696, Եւգինէոս իշխանէն) յաղթուելէն ետքը խաղաղութեան միտում կը ցուցընէին։ Արդէն Աւստրիայի ու Ցաճկի մէջ խաղաղութեան բանագնացութիւններ սկսած էին, սակայն Զարը աս խաղաղութեան մէջ իրեն շահաւոր բան մը չտեսնելով՝ իր Կոստանդնուպոլսոյ Վոսնիցին դեսպանին ձեռօքը Ցաճիկները միշտ գրգռելու ետեւէ էր, որ Աւստրիայի հետ պատերազմը յառաջ տանին. բայց Ցաճիկը պատերազմ չուզելուն՝ նոյն խաղաղութեան առիթը չէր ուզեր կորսընցընել։ Վոսնիցինին ջանքն աս պտուղն ունեցաւ որ Ազով բոլորովին Ռուսաց ձեռքը մնաց ու իրենց Սեւ ծովու վրայ առեւտրական ազատ նաւագնացութիւն տրուեցաւ. Թէպէտ Զարն իր ուրիշ պահանջմունքներէն ալ ետ կենալ չէր ուզեր, բայց 1689ին բոլոր տէրութիւնները զինադադարի մը դաշանց ստորագրելով, ինքն ալ նոյնը յանձն առնլու ստիպուեցաւ. ասով քիչ մը ետքը (1700) 30ամեայ զինադադար եղաւ, որուն թէութեանցը համեմատ Ազով իրեն վերաբերեալ երկիրներովը Ռուսաց ձեռքը մնաց ու միւս ամէն Ռուսաց ձեռքն անցած երկիրները՝ Ռուսները կահ կարասեօք մէջէն ելլելէն ետքը, Դռան ետ տրուեցան։

Ռուսն ասանկ մէկ կողմանէ խաղաղելէն ետքը, արեւելեան ծովու եզերքը պատերազմ բանալու ժամանակն հա[illegible] էր, բաւական որ շվետական գահը նստող պա[illegible] գաւորին դէմ զէնք առնլու պատճառ [illegible]։ Բայց կամք ըլլալէն ետքը [illegible]ոկէ [illegible] ալ կը գտնուի։ Երկու դրացի [illegible]թի[illegible] պ[illegible]մին մէջ Պետրոսին [illegible] գա[illegible]կ[illegible] էին։ Նոյն դ[illegible]

Թաթարաց պատերազմներուն մէջ երեւելի եղող զօրապետները վարձատրուեցան։

Այս գործքերէն ետքը Պետրոս իր բոլոր մտադրութիւնը զօրաց վրայ դարձուց. պէտք էր որ զօրաց մէջ մեծ փոփոխութիւն ու կարգ մտնէր, պէտք էր որ բոլոր զօրքը մէկ մարմին ըլլար ու մէկ կամաց հնազանդէր։ 1699ին զօրաժողովն աս դիտաւորութեամբ եղաւ. սակայն տէրութեան պարտքն ալ երթալով կ'աւելնար, ասիկա ծածկելու համար ուրիշ օգնութեանց կարօտութիւն կար։ Աս պատճառաւ ճարտարութեան ու երկրագործութեան վրայ մեծ մտադրութիւն ընելու սկսաւ։ Չէ թէ միայն նոր զօրաժողովի մը, այլ նաեւ նոր նաւատորմիղ մը կազմելու համար շատ դրամ պէտք էր։ Չարն աճապարեց նորէն Վորոնէժ գնաց ու իր խօսքերովը՝ Երեսին քրտինքովն աշխատելու սկսաւ։ Աս յաջող գործողութեանց ատեն քանի մը տխուր եւ զգալի հարուածներով Չարին սիրտը կոտրեցաւ ու սէրը մարեցաւ։ Իր մտերիմ քաջ զօրավարաց դժբախտ մահը իրեն մեծ ցաւ պատճառեց։

Կորտոն՝ որ գրեթէ Սթռելիցները բուն նուաճողն էր, Պետրոսին դարձէն ետքը հիւանդացած էր. Պետրոս ստէպ այցելութեան կ'երթար իր բարեկամին ու պատերազմական բաներու վրայ կը խօսէր։ Չկրցաւ Կորտոն իր հիւանդութեան անկողնէն ելլել, ու նոյն իսկ Պետրոս իր ձեռքովն անոր աչքերը գոցեց ու իր արցունքներովն եւ յուղարկաւորութեան ներկայ գտնուելովը ցուցուց թէ ինչ արդիւնաւոր ու տէրութեան հարկաւոր մարդ էր Կորտոն։
— Նաեւ նոյն տարին (1699) իր միւս սիրելւոյն, Լըֆորին աչքերն ալ գոցեց։ Աս մարդս մինչեւ իր վերջի շունչը սիրելի մնացած էր Պետրոսին. միայն իր անկարգ կեանք վարելովը, շատ անգամ Պետրոսին ալ կը վնասէր, եւ անոր ու ամուսնոյն մէջ եղած

հակառակութիւնն այնչափ աճեցուց՝ որ վերջապէս իրարմէ բաժնուելու պատճառ եղաւ անոնց ։ Կրնայ ըսուիլ որ իր անկարգութիւններն էին որ իր կեանքն այնպէս շուտով 43 տարուան վերջացուցին ։ Մերժեց ողորմելին ամէն կրօնական մխիթարութիւններն ու այնպէս յաւիտենականութեան անցաւ, մահուան սարսափը արտաքին մխիթարութիւններով ու երաժշտութեամբ փարատելու կը ջանար. այնպէս աղքատ մեռաւ որ մեռնելէն ետքը թաղման ստակ չկար ։

Աս մահը որչափ որ անակնունելի՝ այնչափ ալ ցաւալի եղաւ Պետրոսին ։ Լեֆորին հիւանդութեան ատենը՝ ի՛նք Վորոնէժ էր, ուսկից որ ամէն օր անոր հիւանդութեան վիճակն իմանալու համար սուրհանդակներ կը հանէր ։ Բայց Լեֆոր զինք չտրտմեցընելու համար մինչեւ վերջի րոպէն իր վտանգալից վիճակը կը ծածկէր ։ Պետրոս, ան անսասան իշխանը, անոր մահը մէկէն իմանալով արտասուաց հեղեղ մը սկսաւ իջեցընել աչքերէն ։ Ըրած հառաչանքներն իր բնակութիւնը կը թնդացընէին ու իր հեծկլտանաց մէջ անդադար կ՚աղաղակէր "իմ ամենալաւ բարեկամս կորսնցուցի ։ . . . Ափսո՜ս, դեռ ինծի հարկաւոր էր. ասկէ ետքը ո՞ւր տեղէն ուրիշ մ՚ալ պիտի գտնեմ„ ։ Զինքն ընկճող ցաւը ասկէ աւելի բան մը չէր թողուր իրեն ըսելու ։ Բոլոր գործքերը թող տալով Մոսկուա գնաց, ուր որ իր հաւատարիմ ծառային ունեցած շնորհակալութեան պարտականութիւնը փառաւոր յուղարկաւորութեամբ մը ամենուն յայտնեց ։ Այնչափ մեծ եղաւ ան տրտմութիւնն ու նեղութիւնը, զորն որ աս մեծ մարդուն մահը Զարին պատճառեց, որ հազիւ հինգ տարի վերջը, ինչպէս որ ինք իր մէկ բարեկամին կը գրէ, "Յաղթութեան մը առթով տրտմութենէ անխառն ճշմարիտ ուրախութիւն մը զգաց„ ։

— Լըֆոռին՝ Մեծին Պետրոսի բարեկամին յիշատակը երախտապարտ Ռուսի մը սիրտը անջինջ պէտք է մնայ։

## 23.

Լըֆոռին մահը Պետրոսին բոլոր մտադրութիւնը Մենչիքովին[1] վրան ձգեց, որով Պետրոս իր նորոգութեանցը ձեռք զարկաւ։ Պետրոսի մեծատարած տէրութեանը ու ընդարձակ խորհրդոցը 20 գունդ բաւական չըլլալուն գերմանական կրթութեամբ նոր գունդեր ալ կազմուեցան։ Ելեւմուտքի ընթացքը շտկուեցաւ, զանազան լեզուներու եւ նաւավարութեան դպրոցներ հաստատուեցան, տպա-

[1] Դժուարին բան է աս իշխանին ցեղը որոշելը. իր վրայ գրողներէն ոմանք կ'ըսեն թէ Մոսկուա ռամիկ մըն էր, ոմանք կ'ըսեն թէ Շլիացիչներու (Schliachitz, Լիթուանիայի ստորին ազնուականներու) սերնդէն էր։ Ռուսաստանի իշխաններէն Մենչիքովի տրուած հրովարտակներու մէջ նշանակուած է թէ Մենչիքով Լիթուանիայի ազնուական ցեղէ մըն է, եւ թէ իր հայրը ռուսական ստրկանութեան մէջ ծառայութիւն ըրած է։ Պր. Մանշթայն իր Ռուսաստանի յիշատակարան անուամբ գրուածքին մէջ կը հաստատէ թէ «Մենչիքով գեղացւոյ մը որդի էր ու հայրը զինքը ծաղարարի մը քով աշկերտութեան տուած էր. աս պզտի պատանին որ քաղքին չորս դին երգելով կարկանդակ կը ծախէր, իր ծաղրաշարժ պատմութիւններովը ու վառվռուն բնութեամբը Պետրոս Մեծին մտադրութիւնն իրեն ձգեց»։ Պր. Մանշթայնին կարծիքն անկողմնակէ հաւանականութիւն ունի որ, աս արտաքոյ կարգի մարդուն վրայ պատմածը աւանդութեան հետ միաբան է։ Մենչիքով, կարկանդակ ծախող պատանին, կ'ըսեն, Լըֆոռին աչքը մտաւ, որ դեռ նոյն ատեն հասարակ գընդապետ մըն էր։ Լըֆոռ օր մ'իրեն հետ խօսելով իր իմաստնալից պատասխաններուն վրայ զարմացաւ ու տեսաւ որ իր արուեստէն վեր բաներ ալ ընելու կարողութիւն ու հանճար կայ տղուն վրայ, առաջարկեց իրեն որ իր ծառայութիւնը մտնէ, զորն որ Մենչիքով սիրով յանձն առաւ (1672)։ Պետրոս Ա. ըստ պատահման զինքն իր սիրելւոյն քովը տեսնելով, իմացաւ իրեն ո՞վ եւ ո՞ւսկից ըլլալը ու իր պալատն առաւ։ Մենչիքով իր Պետրոսին ցուցըրած սիրովը ու հաւատարմութեամբը իր տիրոջը սիրտը վաստըկեցաւ, որով ինքնակալը զինքը ազնուականներէ կազմուած Բոթեշնիայի գունդը խառնեց։ 1696ին Ազովի առման ժամանակն արդէն յիսնապետ էր ու 1700ին ալ զօրապետի տեղապահ եղաւ։

րաններ դրուեցան այլեւայլ գիտութեանց եւ գըլ-
խաւորաբար թնդանօթական ու մեքենական գիտու-
թեանց ու պատմական գիրքեր թարգմանուեցան
ու տպուեցան։ Հասարակ դպրոցներն ալ կարգի
մտան եւ ուր որ մինակ կարդալ ու գրել կը սոր-
վուէր, հարկ եղաւ որ ուրիշ ուսումներ ալ սորվուի։
Բոյերու որդիքներն եւ եկեղեցւոյ մէջ ծառայող-
ները պէտք էր որ կամ յունարէն եւ կամ լատինե-
րէն սորվէին եւ կամ զինուոր գրուէին։ Բոլոր եր-
կիրը դասատուն մ'եղաւ, երիտասարդ ու ծեր
պէտք էր որ գիտութեան ետեւէ ըլլար․ ով որ ինք-
զինք կրթելու եւ նորակազմ տէրութեան օգտակար
ըլլալու փոյթ չէր տաներ, նոյն տէրութեան մէջ
մնալու ալ արժանի չէր սեպուեր եւ բոլոր ինչքերն
ու ստացուածները կը կորսնցըներ։ — Սակայն նոյն
ատենուան Ռուս ժողովրդեան մտաւոր վիճակն ըմ-
բռնելու համար Բուֆֆենտորֆ պատմագրին (ո-
րուն գիրքը Պետրոս բառ առ բառ ռուսերէն թարգ-
մանել տուած է) մէկ փոքրիկ հատուածը յառաջ
կը բերենք, ուստի որ ընթերցողը չէ թէ միայն նոյն
ատենուան ժողովրդեան վիճակին վրայ աղէկ գա-
ղափար մը կ'ունենայ, այլ նաեւ դիւրաւ կրնայ մա-
կաբերել, որ ասանկ ժողովուրդ մը քաղաքակա-
նացընելու ինչպիսի դժուարութեանց չէ յաղթած
Պետրոս։ Ասանկ կը գրէ աս պատմագիրը 1654ին
"Ռուս ազգին որպիսութեանը վրայ իրեն պատիւ
բերելու չափ գրելու բան մը չկայ, ան կրթութիւնը
որն որ Եւրոպայի ազգաց մեծ մասին վրայ կը տես-
նուի, իրենց մէջ չկայ եւ պարզ կարդալ ու գրել
գիտնալը իրենց ուսմանը ամենաբարձր աստիճանն է,
ինչպէս իրենց քահանաներն ալ ուրիշ բան չեն գի-
տեր՝ բայց եթէ Ս․ Գիրքէն կամ քարոզագիրքէ մը
գլուխ մը բան։ Կասկածոտ, անագորոյն ու արիւնար-
բու են, յաջողութեան ատեն մեծասրտութիւննին

անտանելի է ու գժբախտութեան ատեն փոքրոգի են ու կը յուսահատին։ Ինքզինքնին մեծ բանի տեղ կը դնեն եւ մարդ չիկրնար իրենց բաւական պատիւ ընել։... Ծառայական զգածում ունին եւ խիստ կառավարութիւն կ'ուզեն։ Իրենց ամէն խաղերը հարուած ու բունցի են, խարազանն ու մտրակն ալ սիրով կը գործածեն։ Մարմիններնուն կազմուածքը զօրաւոր է, ամէն տեսակ գործքի եւ աշխատութեան կու գան, ցրտութեան եւ անօթիութեան ալ կը դիմանան։ Սակայն բաց դաշտի վրայ պատերազմելու եւ քաղաք պաշարելու ամենեւին յարմար չեն ու շուտով կը շփոթին, որովհետեւ կ'երեւակայեն որ դիմացի հակառակորդնին աս գործքիս մէջ իրենցմէ աւելի ճարտար է։ Բայց ի ներքուստ ամրոցները վերջի աստիճանի քաջութեամբ կը պաշտպանեն չէ թէ անոր համար որ աշխատութենէ ու նեղութենէ չեն փախչիր, այլ անոր համար որ հակառակն ընելու ըլլան կեանքերնին կը կորսնցընեն։ Սակայն հիմակ զօրքն օր ըստ օրէ կըրթելու ետեւէ են, ու շատ գերմանացի ու սկովտացի պաշտօնակալներ բերել կու տան, որպէս զի Եւրոպայի մէջ գործածուած պատերազմական արուեստին տեղեակ ըլլան։ Բայց Ռուսի մը ուրիշի ծառայութեան մտնելն արգելուած է, որովհետեւ Մեծ իշխանը կը վախնայ որ չըլլայ թէ աչքերնին բացուելով նորոգութեանց ձեռք զարնեն„։ Այսպիսի ժողովրդեան մը վրայ աշխատեցաւ Պետրոս, օտար երկիրներ ճամբորդութիւն ընելն որ ցայժմ մահուան պատժով արգելուած էր, ասկէ ետքն օրինաց պարտաւորութիւն եղաւ։ Կանայք որ մինչեւ հիմակ տան մէջ ծածկուած էին ու պէտք էր որ երեսնին գոց դուրս ելլէին, ա՛լ կապանքներնէն ազատեցան։ Քթախոտ ու ծխախոտ խմելն որ մահացու մեղք կը սեպուէր, Ցարին օրինակաւը սովորական բան եղաւ։

Ժողովուրդն ազնուական զուարճութեանց վարժեցընելու համար Թէատրոն մ՚ալ բացուեցաւ, որուն մէջ խաղացողները Գերմանիայէն եկած էին։ Որչափ ժողովրդեան՝ աս ամէն նորոգութեանց դէմ ունեցած զզուումն ու ընդդիմութիւնը արտաքոյ կարգի էր, այնչափ ալ Պետրոսին ռուսական հին ու վայրենի սովորութիւնները ջնջելու ճիգը մեծ էր։ Ռուսերը իրենց տարին Սեպտեմբեր ամսոյն մէջ կը սկսէին, Պետրոս եւրոպական սովորութեան համաձայն տարւոյն սկիզբը Յունուարին բերաւ. աս փոփոխութիւնը Մոսկուա վերափոխման եկեղեցւոյն մէջ հանդիսութեամբ հրատարակուեցաւ։ Համարձակեցաւ նաեւ Ռուսաց ազգային զգեստն ալ փոխելու. հրամայեց որ ամէն իրեն հետ գործք ունեցողները եւրոպական հագուստով իր առջին ելլեն։ Զգեստներուն օրինակը քաղքին ամէն դռներուն առջին դնել տուաւ եւ թէ որ մէկը հին սովորութեան համաձայն երկայն զգեստով քաղաք մտնել ուզէր, կամ տուրք պիտի վճարէր եւ կամ պիտի յանձն առնուր որ մինչեւ ծնկուընները զգեստը կտրուի։ Եւ որովհետեւ ասի շատ անգամ պատահելով ծիծաղելի բան կ՚ըլլար, անոր համար առանց դժուարութեան երկայն զգեստներն աներեւոյթ եղան։ Սակայն աս նորաձեւ զգեստներուն երկայն մօրուք ամենեւին չէր վայլեր. ասոր ալ դիւրին ճամբան գտնուեցաւ, քաղքին ամէն մէկ դրան առջին վարսավիրաներ դրուեցան, որոնք պէտք էր որ ներս մտնողներուն մօրուքն ածիլէին։ Քիչ ատենուան մէջ մօրուքն ալ ծաղրելի բան եղաւ ու միայն եկեղեցականաց ու գեղացւոց մօրուաց ազատութիւն տրուեցաւ աս թէութեամբ որ ամէն տարի նորէն հրաման առնուն ու ամէն մէկ հրաման առնելուն 100 ռուպլի վճարեն։ Աս տեսակ հրամաններով Պետրոսին նորոգութիւնները կրցան

գլուխ ելլել։ Բայց աւելորդապաշտները երկայն ժամանակ մեծ հոգով իրենց մօրուքին մազերը պահեցին, որպէս զի իրենց դագաղին մէջ դնել տան։ Դժուարին եղաւ աս հրամանը տէրութեան ուրիշ կողմերը կատարել տալ։ Պետրոս չկրցաւ Վորոնէժի առեւտրականները համոզել որ մօրուքնին ածիլեն։ Մենչիքօվ աս լսելով եւ ուզելով որ Զատկի տօնին աս առեւտրականները բոլորովին կերպարանափոխ ըրած Պետրոսին ցուցընէ, Զատկին առջի օրը զիրենք կանչել տուաւ եւ ըսաւ, Ձարէն հրաման ունիմ որ ամէնքնիդ ալ կամ զգեստնիդ փոխէք ու մօրուքնիդ ածիլէք եւ կամ Սիպիրիա երթալու պատրաստուիք։ Առեւտրականներն երբոր աս լսեցին, լալով Մենչիքօվին ոտքն ինկան "Աւելի կ'ուզենք, կ'ըսէին, մեր գլուխը տալ քան թէ մեր մօրուքները, որով Աստուծոյ պատկերն ալ կը կորսընցընենք,,։ Մենչիքօվ դառնացած զինուորներուն հրամայեց որ լացողները մէկ դի առնուն. ան ատենը մէջերնէն երիտասարդ մը պոռալու սկսաւ "Երկնից կամքն ըլլայ,, միւսներն ալ բոլոր ասոր հետեւեցան. անմիջապէս մօրուքներն աներեւոյթ եղան ու երկրորդ օրը Ձարին առջին ելած ատեննին Ձարը զիրենք չկրցաւ ճանչնալ ու Մենչիքօվէն բանն իմանալով շատ ուրախացաւ ու ամէն մէկը պագնելով Զատիկ շնորհաւորեց։

Անգամ մը Ձարը մօրուքն ածիլած ծերու մը հանդիպելով, Մօրուքդ ածիլելէն ետքը երիտասարդ դարձեր ես, ըսաւ. ծերն աս որ լսեց արտասուալից աչքերով, ձեռքերը կրծոցը վրայ դրած կտրած մօրուքը դուրս հանեց ու Ձարին ցուցուց ըսելով, Կը պահեմ ասիկա՝ որպէս զի դագաղիս մէջը դնել տամ ու անդին աշխարհք Ս. Նիկողայոսին ցուցընեմ։

Այսպէս իր ներքին նորոգութիւնները գլուխ

հանելէն ետեւ, նորէն արտաքին պատերազմական գործքերու զբաղելու սկսաւ: Պետրոսի հեռաւորութեանը առեն Շայն զօրավարը թէպէտ ոչ անյաջող, բայց անորոշ պատերազմներով հանդարտութիւն մը ստացած էր: Սակայն Թաթարները ծածուկ Սթուելիցներու հետ խօսք մէկ ըրած Ազովի վրայ կ՚ուզէին յարձակիլ: Վտանգն անմիջապէս Զարին ականջն հասաւ, որն որ պարզապէս իր ներկայութեամբը ամէն բան պարապի հանեց: Ապըստամբները պատժուեցան ու նոյն ծածուկ Սթուելիցներուն ալ իրենց ընկերաց վիճակն հասաւ: Ասկէ ետքը Պետրոս 30 թնդանօթնոց կրկնայարկ փառաւոր նաւով մը իր դեսպանը Կոստանդնուպոլիս խաւրեց, որն որ թնդանօթներու որոտմամբ արքունի պալատն ելաւ, 30ամեայ զինադադարի դաշինք դրուեցաւ, եւ Ազովն Ռուսաց ձեռքը մնաց, որով Սեւ ծովուն վրայ նաւարկութիւնը Ռուսաց համար ապահովցաւ ու դէպ ի Կոստանդնուպոլիս ճամբայ բացուեցաւ:

Այս խաղաղութեան համար մեծ ուրախութիւն կատարուեցաւ Մոսկուա, որուն երկրորդ օրը Պետրոս Շվետաց դէմ պատերազմ հրատարակեց:



## Հատուած Երրորդ

### Շուէտի դէմ պատերազմ՝ հրատարակութենէն մինչեւ Բոլթավայի յաղթութիւնը: 1700—1709

Զարն Աւգոստոս Սաքսոնիայի ընտրող իշխանին հետ դաշինք կը դնէ ու Ինկերմանլանտ կը մտնէ: Կարոլոս ԺԲ. ու Դանիայի Թագաւորին հետ ունեցած յարաբերութիւնը եւ 21ամեայ պատերազմին սկիզբը: Դանիայի Թագաւորը Զարին ու Փրեդերիկոս Աւգոստոսին հետ դաշինք դնելով պատերազմի կը պատրաստուի: Կարոլոս ԺԲ. Դանիա կ'իջնայ. Թրավենթալի խաղաղութիւնը: Նարվայի պաշարումը եւ Ռուսաց յաղթուիլը: Պետրոս Աւգոստոսին հետ կը տեսնուի: Կարոլոս ԺԲ. նոր յաղթութիւն մը կը վաստրկի, Լեհաստան ու Սաքսոնիա կը մտնէ: Զարը նորէն պատերազմի պատրաստութիւններ կը տեսնէ: Շերեմեթեւ իշխանը Շվէտները կը զարնէ: Պետրոս Արխանկել կ'երթայ: Մարիէնպուրկի յաղթութիւնն ու Կատարինէ օրիորդը: Նէօթեպուրկ կը յաղթուի ու Նայենշանց բերդն անձնատուր կ'ըլլայ: Բեթերպուրկի եւ Քրոնշլոթի շինութիւնները: Տէրութեան ներքին վիճակը: Զարն արեւելեան ծովուն վրայ: Տորբատ ու Նարվա քաղաքները կը պաշարուին: Մենչիքով Ինկերմանլանտի ընդհանուր կուսակալ կ'ըլլայ: Պետրոս Լեհաստանին հետ դաշինք կը դնէ ու փառաւորութեամբ Մոսկուա կը մտնէ: Ֆրաւշթատի քով յաղթութիւն մը: Աւգոստոս Լեհաստանի թագէն կը հրաժարի: Կարոլոս ահագին բազմութեամբ Ռուսաստան կը քալէ: Մազեփա: Բոլթավայի հռչակաւոր յաղթութիւնը:

## 23.

ՌՈՒՍԱՍՏԱՆ քանի որ Արեւելեան (Պալթիկ) ծովուն հետ հաղորդութիւն մը չունէր, աւելի ասիական քան թէ եւրոպական տէրութիւն կրնար ըսուիլ: Ֆիննեան ծովածոցին սահմանակից երկիրները Ինկերմանլանտ, Քարելիա, Լիֆլանտ, կրնային իր երկիրները Եւրոպայի հետ կապել, բայց ասոնք ալ իրեն չէին: Ան բախտը՝ որն որ Սեւ ծովը իր առջեւը բացաւ, սիրտ տուաւ՝ իրեն աչքերը նաեւ դէպ Արեւելեան ծով ուղղելու: Պետրոս իմացաւ որ Սեւ ծովու եզերքն ու Ազովի դիրքը իր ժողովրդեանը քաղաքականութեան ու կրթութեանը այնչափ չէին

օգներ ու նոյն իսկ վաճառականութիւնն ալ չէր կրնար աղէկ ծաղկիլ։ Անոր համար բովանդակ փոյթն ան էր որ Տաճկաց հետ շահաւոր խաղաղութիւն մ'ընէ, որոնք արդէն Զենթայի քով (1696, Եւգինէոս իշխանէն) յաղթուելէն ետքը խաղաղութեան միտում կը ցուցընէին։ Արդէն Աւստրիայի ու Տաճկի մէջ խաղաղութեան բանագնացութիւններ սկսած էին, սակայն Զարը աս խաղաղութեան մէջ իրեն շահաւոր բան մը չտեսնելով՝ իր Կոստանդնուպոլսոյ Վոսնիցին դեսպանին ձեռօքը Տաճիկները միշտ գրգռելու ետեւէ էր, որ Աւստրիայի հետ պատերազմը յառաջ տանին. բայց Տաճիկը պատերազմ չուզելուն՝ նոյն խաղաղութեան առիթը չէր ուզեր կորսընցընել։ Վոսնիցինին ջանքն աս պտուղն ունեցաւ որ Ազով բոլորովին Ռուսաց ձեռքը մնաց ու իրենց Սեւ ծովու վրայ առեւտրական ազատ նաւագնացութիւն տրուեցաւ. թէպէտ Զարն իր ուրիշ պահանջմունքներէն ալ ետ կենալ չէր ուզեր, բայց 1689ին բոլոր տէրութիւնները զինադադարի մը դաշանց ստորագրելով, ինքն ալ նոյնը յանձն առնլու ստիպուեցաւ. ասով քիչ մը ետքը (1700) 30ամեայ զինադադար եղաւ, որուն թէութեանցը համեմատ Ազով իրեն վերաբերեալ երկիրներովը Ռուսաց ձեռքը մնաց ու միւս ամէն Ռուսաց ձեռքն անցած երկիրները՝ Ռուսերը կամ կարասեօք մէջէն ելլելէն ետքը, Դրան ետ տրուեցան։

Ռուսն ասանկ մէկ կողմանէ խաղաղելէն ետքը, արեւելեան ծովու եզերքը պատերազմ բանալու ժամանակն հասած էր, բաւական որ շվետական գահը նստող պատանի Թագաւորին դէմ զէնք առնլու պատճառ մը գտնուէր։ Բայց կամք ըլլալէն ետքը ի հարկէ պատճառ մ'ալ կը գտնուի։ Երկու դրացի տէրութիւնները աս պատերազմին մէջ Պետրոսին հետ գաղտնի դաշնակից եղած էին։ Նոյն դրացի

տէրութիւններն էին Դանիա ու Լեհաստան։ Դանիան Շլեզվիկ կորսնցընելուն ցաւը չէր կրնար մոռնալ։ Լեհաստանի բոլոր մտադրութիւնը Լիֆլանտիայի վրան էր ու յարձակման առիթ մը կը փընտռուէր։ Իսկ Չարլը Դանիայի վրայ ամենեւին հոգ չունէր ու Լեհաստանին առնլու երկիրներն ալ ապահով էր որ ատենօք իրեն կ'անցնին։ "Թող, կ'ըսէր, Աւգոստոս Թագաւորը Ռիկա քաղաքն առնու, երկայն ատեն չիկրնար պահել, ես ստուգիւ նոյն քաղաքն իր ձեռքէն կ'առնում"։ Դանիան առջի անգամ Շլեզվիկի վրայ յարձակեցաւ ու իրեն պատերազմած ատենը՝ Ռուսաստան Բրուսիայի զգածմունքն իմանալու մտօք արտաքուստ հանդարտութիւն կը ցուցընէր ու ներքուստ պատերազմի պատրաստութեանց մէջ էր։

Ստոյգ է դժուարին բան է բարապատմչի (կենագրութիւն գրողի) մը, ան մարդուն վրայ՝ զորն որ ինքն իբր Մեծ ինքնակալ ամենուն աչքին առջին կը նկարէ, այնպիսի բաներ պատմել որ իր անունն աղարտեն ու մշտնջենաւոր արատներ դնեն իր փառացը վրայ։ Սակայն անաչառ պատմագիր մը երբոր արդարութեան ու գրիչն անարատ պահելու պարտքերն աղէկ մը կշռելու ըլլայ, պէտք է որ ճշմարտութեան ամէն բան զոհէ։ — Պետրոս աս երկիրներուն վրայ յարձակելու ամենեւին իրաւունք չունէր, որովհետեւ իր նախորդներն արդէն նոյն իրաւունքէն հրաժարած էին (2). Հիմակուան եղածը ըստ հետեւորդի բոլորովին իրաւանց դէմ էր, ու ասով միայն կրնայ արդարանալ, թէ որ կրնայ, որ ինքն ալ ժամանակին համաձայն ժամանակակից տիրողներուն համաձայնեցաւ։ — Առաջիկայ պատմութեանց վրայ լուսաւոր գաղափար մ'ունենալու ու պատմուած դէպքերն իրարու հետ կապելու եւ հիւսելու համար, պէտք է որ քիչ մ'ատեն մեր նպատակէն

շեղինք ու ընդհանուր պատմութենէ. քանի մը հարկաւոր տեղեկութիւններ առնլէն ետքը նորէն մեր պատմութեանը դառնանք։

Երբոր 1697ին Շուէտի թագաւորը Կարոլոս ԺԱ. մեռաւ, իր 15ամեայ որդին յաջորդ թողուց աս թէութեամբ, որ մինչեւ որ 18 տարեկան ըլլայ, մօրը խնամակալութեան տակը մնայ. բայց բանն այնպէս եղաւ որ նոյն տարին մանուկը չափահաս սեպուելով տէրութիւնը իրեն յանձնուեցաւ, որն որ պատերազմասէր երիտասարդ մ'ը ըլլալուն, գրեթէ իր կեանքը բոլորովին իր տէրութենէ դուրս անցուց։ Նոյն ատենները Դանիայի թագաւորաց ու Հոլշթայն Կոթթորպի կոմսերուն մէջ՝ որոնք Դանիայի թագաւորաց աւատային հպատակ էին, միշտ կռիւներ կ'ըլլար, որոնց վերջապէս Ալթոնայի դաշինքովն ու խաղաղութեամբը (1689) վերջ մը տրուած էր։ Սակայն Փրեդերիկոս Դ. կոմսը Շուէտի Կարոլոս ԺԲ. թագաւորին քրոջը հետ ամուսնացած ըլլալուն, բնականապէս Շուէտի կողմն աւելի հակում մը կը ցուցընէր։ Աս դէպքիս վրայ Փրեդերիկոս Դ. Դանիայի թագաւորը մեծ անհանգստութեանց մէջ էր, մանաւանդ երբոր կոմսը Թէօնինկ քաղաքը թումբերով ամրացընելու սկսաւ։ Անմիջապէս զօրք խրկեց Փրեդերիկոս թագաւորը, թումբերն աւրել տուաւ, որով ստիպուեցաւ Կարոլոս ԺԲ. իր քրոջն էրկանը օգնութեան գալ։ Աս եղաւ 21ամեայ հիւսիսային պատերազմին սկիզբը։

## 24.

Ասոր վրայ Դանիայի թագաւորն անմիջապէս Զառին (1688) ու Լեհաստանի թագաւորին Փրեդերիկոս Աւգոստոսին հետ (1697) դաշինք դրաւ ու սկսաւ ծովու ու ցամաքի վրայ սաստիկ պատրաստութիւններ տեսնել։ Այսպէս սկսաւ ան նշանաւոր

Հիւսիսային պատերազմը, որն որ բոլոր Եւրոպան տակն ու վրայ ըրաւ, Աւգոստոսն իր թագէն զրկեց, ռուսական գահին մեծ երերում պատճառեց ու Շվետը կործանեց։ Դանիան իր պատրաստութեանցը հետ էր, երբոր Կարոլոս ԺԲ. իր ամենայն զօրութեամբը Դանիա իջաւ ու Սէէլանտ ելլալով Քոբենհակնի վրայ յարձակեցաւ ու Աստուծոյ բարկութեանը պէս Դանիացւոց սաստիկ ջարդ մը տալով 6 շաբաթուան մէջ զԹագաւորը Թրա՛վենթալի խաղաղութեան ստիպեց, որով Փրետերիկոս Դ. Ռուսաստանի ու Լեհաստանի դաշնակցութենէ բաժնուելով Կոլթթորպի տան անկախութիւնը ճանչցաւ (1700)։ Կարոլոս Փրետերիկոսին հետ ասանկ շահաւոր դաշինք մը դնելէն ետքը Նորէն իր երկիրը դարձաւ։

Այս միջոցիս Լեհաստան թէպէտ անյաջող բայց յանդուգն փորձեր ըրած էր Ռիկայի վրայ, որով զԿարոլոս իր վրայ կատղեցուց. ասոր վրայ Նոյն տարին Օգոստոսի մէջ Ռուսաստան ալ Շվետի դէմ պատերազմ հրատարակեց, թէպէտ քանի մ'օր յառաջ հրեշտակութեամբ մը Շվետի թագաւորին խաղաղական զգածմունքներ ցուցըրցած էր։ Կարոլոս որսի մէջ էր, երբոր Լեհաստանի ու Ռուսաստանի իրեն դէմ ելլալուն լուրն առաւ, ու հանդարտ սրտով մը իր որսակցին, Գաղղիայի դեսպանին դառնալով անտարբերութեամբ մ'ըսաւ. Մենք շուտով կը ստիպենք զիրենք որ եկած ճամբաններնէն ետ դառնան. աս ըսաւ ու Նորէն իր որսն յառաջ տարաւ։ Աս պատերազմի հրատարակման լուրը բոլոր Շվետի ժողովուրդը գրգռեց, մանաւանդ պատանի թագաւորը, որն որ հաստատութեամբ որոշեց որ ասանկ արդարացի պատերազմէ մը ետ չկենայ ու Նուիրական բաներու եւ իր սրոյն վրայ երդում ըրաւ որ ամենեւին իր իրաւունքը չթողու ու քանի որ սուր կրելու կարողութենէ զրկուած չէ, աս բանու-

թեան դէմ դնէ։ Ահաւոր հսկայի մը պէս ոտք ելաւ աս անփորձ պատանին. 21 տարի բոլոր Եւրոպան դողացուց ու միայն մահը իր ազնիւ քաջասրտութեանը վերջ տուաւ։

Ռուսաց պատերազմի պատճառները թէ պղտի ու թէ փնտռուած բաներ էին։ Առջի պատճառը ռուսական դեսպանութեան Ռիկայի մէջ եղած նախատինքն էր ու աս ալ յառաջ կը բերուէր որ Վոսնիցին Վիէննայէն դարձած ատենը Լիֆլանտի գեղացիները զէնքը կողոպտած ըլլան, Ռիկայի սուրհանդակը ռուսական սուրհանդակութեան վնաս հասցուցած ըլլայ, Ռուսի վաճառականները բանտարկուած ըլլան եւ վերջապէս պէտք էր որ հարիւր տարի յառաջ՝ բոլոր Ռուսաստանէն առնուած երկիրները ետ տրուէին։ Փուճ տեղ Շվետները ասոր դէմ բողոքեցին, վայրապար կը յիշեցընէին որ արդէն Ռուսաստան ան երկիրներու վրայ ունեցած իրաւունքէն հրաժարած է (2), պատերազմն անտնօրինելի էր, պէտք էր որ ըլլար, Պետրոսը իր մտքէն դարձընելու ամենեւին պատճառ մը չկար։ Ասանկով Լեհերը՝ դեռ պատերազմ չհրատարակուած՝ Լիֆլանտ, ու Ռուսք Ինկերմանլանտ ու Քարելիա յարձակեցան։

Ան տեղն՝ ուր որ Ֆիննեան ծովածոցը ցամաք երկրին ներսի կողմերն յառաջանալով Նաւերուն հիւրընկալ ու խաղաղ դադար մը կը պատրաստէ, հոն Նարվա քաղքին առջին Պետրոս իր հարուստ բանակը դրաւ (1700. Սեպտ.)։ Իր զօրավարներն էին Հոլլարտ լեհը, Կորտոն, Մենչիքօվ, Փ. Ա. Կոլովին, Ա. Կոլովին, Քրոայի դուքսը, Տոլկորուքի . . . աս զօրավարները այնպիսի զօրքի մը գլուխն անցած էին, որն որ դեռ անփորձ էր, ու դեռ նոր՝ Շվետաց հետ պատերազմելով, յաղթելու եղանակը պիտի սորվէր։

Կարոլոս՝ Թշնամւոյն իր արեւելեան գաւառները մտնելն ու Լեհաց Թագաւորին Ռիկա քաղաքը պաշարելը լսելուն պէս, յանկարծակի շանթի մը պէս վար իջաւ ու Լիֆլանտի մէջ փեռնաւ քաղաքն ելաւ ու հոն լսեց որ Նարվա քաղաքը պաշարուեր է ու 9000 զօրքի գլուխն անցած քաղաքն ազատելու գնաց ան ատենը երբոր Պետրոս ապահովութեամբ գրեթէ իր 60,000ի բանակը հոն թողուցած Լեհաստանի Թագաւորին ու Տաճկի դեսպանին հետ խօսելու համար Նովկորոտ գացած էր։ Կարոլոս քաղքին վրայ յարձակեցաւ ու սոսկալի ձիւն մը՝ որն որ խածատիչ ցուրտ հովով մը Ռուսաց երեսը կը զարնէր, իրեն օգնական գտնելով, դառնութեամբ ու յանդգնութեամբ լի, իրմէ եօթնպատիկ զօրաւոր բանակի մը վրայ նետուեցաւ ու իր հետեւակ զօրքովը քառորդի մը մէջ պատնէշներն առնլով ձիաւորաց ճամբայ բացաւ. անդիի կողմանէ Ռուսերը դէպ ի Նարովա գետը մղեց, որոնք ճեպով փախչելու վրայ էին որ գոնէ գետին վրայի կամուրջը գրաւեն, բայց դժբախտութեամբ կամուրջը ծանրութենէ կործանեցաւ, վրայինները բոլոր ընկղմեցան, մնացածներուն ճարն հատնելով կատղեցան ու իրար ջարդելու սկսան ու օտարականներն իրենց յաղթուելուն պատճառ կը սեպէին։ Աս վիճակիս մէջ Քրոա, Հոլլար, Բլոմպերկ, Լըֆոռ (առաջինին որդին) լաւագոյն սեպեցին մեծասիրտ յաղթողին անձնատուր՝ քան թէ իրենց զօրացը անմիտ կատաղութեանը զոհ ըլլալ։ Այսպէս Կարոլոս 5000 հետեւակ ու 3000 ձիաւոր, ընդ ամէնը 9000 զօրքով գրեթէ եօթնպատիկ մեծ բանակի մը յաղթեց։ — Գիշերուան մութը աս սոսկալի արիւնհեղութեան վերջ տուաւ. երկրորդ օրը բանակցութիւնն սկսաւ։ Աս եղաւ Նարվայի հռչակաւոր պատերազմը, որն որ 20,000 մարդ արժեց Ռուսաց, ուր որ Շվետները միայն երկու

հազար կորսնցուցին։ Ռուսերը զօրքէն զատ 145 թնդանօթ, 28 ռմբկէն, 151 դրօշ, 20 ազգային դրօշ, 7 զոյգ հեծելազօրու թմբուկ կորսնցուցին։ Ասկէ զատ բոլոր բանակին վրանները, զինուորական արկղը, ու ահագին պաշար Շվետաց ձեռքն անցաւ։ Շվետները բոլոր բանակը գերի բռնելու բաւական զօրութիւն չունենալով Ռուսերը ազատ թողուցին։ Այս յաղթութիւնը, կ'ըսէ Հերտեր պատմագիրը, Կարողոսի վնասակար, իսկ Ռուսաց շահաւէտ ու օգտակար եղաւ. որովհետեւ Շվետները իրենց զօրութեանը վրայ մեծ համարում մ'ունեցան, իսկ Ռուսք պատերազմիլ սորվեցան„[1]։

Պետրոս զօրքով Նարվա երթալու եւ օգնութիւն տանելու մտաց վրայ էր, երբոր մէկէն իր զօրացը յաղթուելուն լուրն առաւ։ "Աղէկ գիտեմ որ, ը-

[1] Աս յաղթութեան վրայօք Պետրոս իր մէկ գրուածքին մէջ ինքզինք սանկ կը բացատրէ. "Տարակոյս չկայ որ, կ'ըսէ, մեր զօրքը Շվետներէն յաղթուեցան, միայն թէ պէտք է քիչ մը մտածել թէ աս զօրքն ի՞նչ զօրք էր։ Որովհետեւ Լըֆորտեան գունդը՝ որ յառաջ Շեփելեւեան կը կոչուէր, անոնց մէջ միայն հին գունդերէն էր։ Միւս երկու անձնապահաց գունդերը Ազովի առջին մինակ երկու յարձակում տեսած էին, իսկ ազատ դաշտի վրայ պատերազմ, եւ մանաւանդ կանոնաւոր գունդերով տեսած բաներնին չէր։ Մնացած զօրքը, քանի մը պաշտօնակալ դուրս առնլով, ինչպէս վերըըսինք բոլորովին նոր էին։ Ասոր վրայ անօթութիւն ալ եկաւ, ձմերուան պատճառաւ ճամբաներն անանկ ցեխ էին որ կերակրի պաշար հոգալն անկարելի էր։ Վերջապէս ամէն բան տղու խաղալիքի նմանեցաւ։ Ուրեմն զարմանալու բան չէ որ, սանկ հին, վարժ ու փորձառու պատերազմական գնդի մ'առջին աս անփորձ ուսանողները բան մը չկրցան ընել։ Ստուգիւ աս յաղթութիւնը նոյն ատենը մեզի զգալի ու տխուր եղաւ։ Այնպէս երեւցաւ որ ալ բոլորովին ապագայէն յոյսերնիս պէտք ենք կտրել ու Աստուծոյ սաստիկ բարկութեանը հանդիպեցանք։ Բայց հիմակ, որ բաները աղէկ մը կշռելով կրնամ մտածուիլ, կարծեմ թէ ան դէպքն աւելի Աստուծոյ բարութեանը քան թէ բարկութեանը պէտք ենք տալ. որովհետեւ եթէ հոն յաղթելու ըլլայինք, պատերազմական արուեստին ու քաղաքականութեան աւելի քիչ տեղեակ պիտի գտնուէինք, որով ան երջանկութիւնը շատ դժբախտ հետեւութիւններ պիտի ունենար„։

տալ, դեռ քանի մ՚անգամ Շվետները մեզի պիտի յաղթեն, բայց ժամանակ ալ պիտի գայ որ պատերազմելու եղանակն իրենցմէ սորվինք ու իրենց պիտի յաղթենք,,: Այսպիսի հաստատութեամբ ու անտարբերութեամբ եղած յաղթութիւնն անարգեց, ու անոր կ՚ուրախանար որ Կարոլոս 18,000 զօրք՝ զորոնք կրնար իր երկիրները խաւրել, արհամարհութեամբ քանի մը տեղ չդնելով, միայն զէնքերնին առած ետ խաւրած էր: Պետրոս իրաւամբ կը վախնար որ չըլլայ թէ Կարոլոս առանց յապաղելու իր յաղթող բանակովը Ռուսաստան մտնայ ու ամէն կողմանէ բաց մայրաքաղաքին մերձենայ: Աս բանս եթէ Կարոլոս իրօք ի գործ դնելու ըլլար, պէտք էր որ Պետրոս իր ամէն պահանջմանցը զիջանէր. ան ատենը պատերազմը լմնցած կ՚ըլլար, ան ատենը Նարածին զօրութիւնը քանի մը դար ալ, եւ գուցէ ընդմիշտ, Նորէն առջի վիճակը կը մտնէր:

## 26.

Բայց ուրիշ տեսակ որոշուած է եղեր բախտի դպրութեանը մէջ: Կարոլոսի Ռուսաց վրայ ունեցած ցած համարումը, Ռուսաց մեծութեան հիմը պիտի դնէ եղեր: Կարոլոսին միակ բաղձանքը, անմիջապէս Աւգոստոս Թագաւորին վրայ քալել էր: Որոշեց որ քանի մը գունդ 6—8000 զօրք, ու Փայփուս լճին վրայ պզտի նաւատորմիղ մը Ռուսները զբաղեցընեն, մինչեւ ինք Աւգոստոս Թագաւորէն վրէժն առնու: — Աս միջոցիս (1701) Պետրոս Ա. Քուրլանտայի սահմաններուն վրայ երթալով Աւգոստոս Թագաւորին հետ բերնէ բերան խօսելէն ետքը, ետ դառնալով Ռեփնին իշխանը զօրքով Ռիկա խաւրեց, որ երթայ Սաքսոնիացւոց հետ միանայ: Ռուսաց Սաքսոնիացւոց հետ միացած ատենը Կարոլոս արծուի պէս Տերբ քաղքէն ելաւ ու Ռիկայի մօտ

Ցիւնա գետէն անցաւ, լաստերու վրայ խռնաւ յարդ կուտելով կրակ տուաւ, ու այնպիսի թանձր մուխ մը հանեց, որ թշնամիները եւ ոչ փորձ մը կրցան ընել ու վերջէն դէմ ալ չկրնալով դնել՝ Ռուսի գունդերը փախչելու ստիպուեցան, Սաքսոնեցիք ցրուեցան ու Կարոլոս դէպ ի Լիթուանիա յառաջանալով Սաքսոնիացւոց համբարանոցը գտաւ ու իր ըրած յաղթութիւններովն յափշտակուած, ուրիշ բան չէր ուզեր բայց եթէ գլխաւոր թշնամւոյն Լեհաց թագաւորին զօրութիւնը բոլորովին խորտակել ու զանիկա իր թագաւորութենէն վար առնել: Ուստի ասոր փոխանակ իր արդէն տկարցած ախոյեանը՝ Զարն ընկճելու, թողուց զինքն ու իջաւ Սաքսոնիացւոց վրայ, որոնք զաւր Ռիկան պաշարելու փորձ մ'ըրած էին. զարկաւ վռնտեց զերենք Լիֆլանտէն ու խաղաղութեան ամէն առաջարկութիւնները դառնութեամբ մը մերժելով՝ Լեհաստան մտաւ ու թագաւորին հակառակ կողմնակցութենէն նպաստ ու օգնութիւն գտնելով Վարշաւն առաւ (1702) ու որոշիչ յաղթութիւններով Քրաքաւ մտաւ ու թագաւորը վար առնելով Ստանիսլաւ Լեշչինսքին թագաւոր դրաւ: Ասկէ ետքը Շլեզիայի վրայէն Սաքսոնիա մտաւ, ուր Աւգոստոսի դեսպաններն երեւցան ու Կարոլոսին հետ խաղաղութիւն ըրին, որով Աւգոստոս Ռուսիայի հետ ըրած դաշինքը մերժեց, Լեհաստանի թագաւորութենէ հրաժարեցաւ ու Ստանիսլաւոս Ա. Լեհաստանի թագաւոր ճանչցաւ, յանձն առաւ որ Շվետները Սաքսոնիա ձմերեն ու զօրաց ռոճիկ տայ: Գրեթէ ամբողջ տարի մը հոս էր յաղթող դիւցազնը, ու ամէն կողմանէ մեծամեծ պատիւներ կ'ընդունէր:

Զարը թշնամւոյն թողուցած միջոցը իր օգտին գործածելով նորէն պատերազմի պատրաստութիւններ տեսնելու սկսաւ. կորսուած թնդանօթներուն

8*

տեղ երեւելի քաղաքաց եկեղեցիներու զանգակնե-
րէն 242 թնդանօթ ու 12 ամբկէն թափել տուաւ,
12 վիշտապագունդ կազմեց. զօրքը մշտնջենաւոր կըր-
թութեան մէջ էր, սահմանաբերդերը հետզհետէ
կը զօրանային: Երբոր պատրաստութիւններն ու կըր-
թութիւնը ան աստիճանի հասան որ Շվետաց
դէմ դնելը կը յուսացուէր, Շերեմեթեւ զօրավարը
20,000ով Լիֆլանտ մտաւ ու Տորբատի մօտերը նոր
զօրութեամբ ու նոր հոգւով Շվետները զարկաւ:
Աս պզտի յաղթութիւնը մեծ ուրախութեան պատ-
ճառ եղաւ Ռուսաց: Մոսկուա մեծ հանդիսութիւն կա-
տարուեցաւ, թնդանօթներ նետուեցան ու հրախա-
ղութիւն եղաւ: “Փառք Աստուծոյ, կ'ըսէր Պետրոս,
հիմակ մեզմէ երկուքը իրենց մէկին դէմն ելաւ, բայց
քանի մը տարի ետքը մէկ Ռուս մը մէկ Շվետի դէմ
ալ կարող պիտի ըլլայ դնել„: Շերեմեթեւ զօրավարը
սպարապետի պատիւ ու Անդրէի կարգին նշանն ա-
ռաւ. նոյնպէս բոլոր զօրքն իրենց աստիճանին համե-
ձայն վարձատրուեցան: — Աս միջոցիս Շվետաց Ար-
խանկելի վրայ ըրած արշաւանքները հետեւութիւն մը
չունեցան ու քանի մը փոքր պատերազմները յիշուելու
արժանի չեն: Պետրոս 1702ին Ալեքսի փեթերովիչ
Չարորդւովը դէպ ի Արխանկէլ ճամբորդութիւն
մ'ըրաւ՝ կէս մը հոնտեղի եկեղեցական հանդիսու-
թեանց ներկայ գտնուելու ու կէս մ'ալ տեղացի
զօրաց Շվետաց դէմ դնելը տեսնելու համար: Տվինա
գետին բերանը մարտկոցներ կանգնել տալով Նոր-
Տվինքա ամրոցին հիմը դրաւ: Անկէ ետքը աչքը դէպ
Ինկերմանլանտ ուղղեց ու աս աներկիւղ յանդուգնը
ամենէն զօրաւոր բերդերը ձեռք ձգելու ճամբան
գտաւ: Իր գլխաւոր մտադրութիւնը Լատոկա լճին
քով Նէօթէպուրկ (Շլիւսսելպուրկ) ամրոցին վրան
էր: Անհնարին աշխատութեամբ ու դժուարութեամբ
ձերմակ ծովէն՝ ճախիններ ու անթափանցելի ան-

տառներ անցնելով, մինչեւ փովենէց ճամբայ բացուեցաւ, որպէս զի աս ճամբով Օնեկա լիճը քանի մը նաւ տարուի, որոնք անկից ալ Լատոկա պիտի բերուէին, որպէս զի Նեվա գետին վրայէն Նէօթեբպուրկի պաշարման օգնեն։ Այսպիսի նեղութեանց ատեն Ռուսաց Շվետներու վրայ ըրած յաղթութեանց յաջող լուրը մեծ զարմացում ու քաջալերութիւն տուին Պետրոսին։ Շվետի Լատոկա լճին մէջ ունեցած փոքր նաւատորմիղը, որ նոյն կողմերը ատէպ նեղելու վրայ էր, ըստ մեծի մասին փճացաւ ու ծովապետը կեանքը կորսնցուց։ Շերեմեթեւ ռուս, ու Շլիփիփենպախ շվետ զօրապետները Հումմէլսհոֆի քով իրարու հետ զարնուեցան ու Մարիենպուրկ ամրոցը Ռուսաց ձեռքն անցաւ։ Աս փոքր յաղթութիւնը ուրիշ պարագայով մը երեւելի է։ Ռուսները զինատունը գրաւած ատեննին Թնդանօթաձիգ զօրաց հրամանատար մը բռնութեամբ իր կինն ալ մէկտեղ առնլով վառօդանոց կ'իջնայ կրակ կու տայ, որով իրենք ու շատ Ռուսներ ալ օդ կ'ելլան։ Ռուսները ասոր վրայ դառնացած բոլոր քաղաքը մոխիր կը դարձընեն, ու բոլոր բնակիչները իբրեւ գերի Ռուսաստան կը խաւրեն։ Էրնեսթ Գլիւք անուն ծերունի երէցը փախչելու ճամբայ մը չգտնելով Ս. Գիրքը ձեռքն առած, բոլոր իր ընտանիքովը յաղթողը հաշտեցունելու եկաւ։ Աս մարդուն խընդիրքը կատարուեցաւ ու իր ուսումնականութեամբը ետքէն ալ մեծամեծ պատիւներու հասաւ։ Իր ընտանեացը մէջ, իր հոգեզաւակն էր նաեւ ան կատարինա անուն օրիորդը՝ զոր ոչ բախտը երբեմն Ռուսաստանի թագը կրելու որոշած էր։

## 27.

Աւելի նշանաւոր է Նէօթեպուրկ քաղաքին յաղթութիւնը։ Ան տեղը, ուր որ Նեվա՝ Լատոկա լիճէն կը բխի, գետին մէջտեղը պզտի կղզւոյ մը վրայ է ամրոցը, որն որ երկու ափանց ալ իր թնդանօթներուն զօրութիւնը կը հասցընէ։ Մարիենպուրկ առնլէն ետքը Պետրոսին աչքը աս տեղւոյն վրայ էր, ու Ափրաքսինի բանակին մէջ Շերեմեթեւին գալստեանը կը սպասէր, որն որ քիչ մը ետքը գալով քաղաքին պաշարումն սկսաւ։ Ամէն գործողութիւնները Պետրոսին աչքին առջեւ սովորական շուտութեամբ ու յարատեւութեամբ գլուխ կ՚ելլէին. ձի չըլլալով թնդանօթները մարդիկները կը բերէին. ականներ բացուեցան, թումբեր շինուեցան. բայց զարմանալին ան է, որ Լատոկա լիճէն գրեթէ կէս մղոն ճամբայ առնլով 50 նաւ Նեվա գետ բերուեցաւ, որպէս զի Ֆինեան ծովածոցէն ամրոցը պաշարուի ու բերդին օգնութիւն տանիլն անկարելի ըլլայ։ Զարն որ աս պատերազմիս մէջ թնդանօթաձիգ զօրաց հրամանատար էր, անընդհատ քաղաքը կը գնդակոծէր, անանկ որ բերդը հետզհետէ փլչելու սկսաւ ու յարձակմամբ մ՚ալ Շվետներն անանկ նեղ մտան որ անձնատուր եղան ու ազատութեամբ բերդէն ելան գացին։

Զարը՝ իր Ռոմոտանովսքի տեղապահին աս պատերազմիս վրայօք սաանկ կը գրէ. "Ամենայն հպատակութեամբ կը ծանուցանեմ Ձեր Մեծափառութեանը որ Նէօթեպուրկ ամրոցը զօրաւոր ու մեզի համար դժուարին յարձակում մը կրելէն ետքը՝ որն որ 12 ժամ տեւեց, յանուն Մեծափառութեանդ անձնատուր եղաւ։ Աս պաշարման վրայ դեռ մանրամասն տեղեկութիւններ կու տամ Ձեզի, որն որ շուտով ճամբայ ելլալ ուզելուս հիմակ անկարելի

է: Ձեր Մեծափառութեանը աս յաղթութեանս համար բարեմաղթութիւններ ընելով կը մնամ

Պետրոս„:

Ամրոցն անմիջապէս նորոգուեցաւ ու Շլիւսսելպուրկ (քաղաք բանալի) անուանեցաւ, վասն զի բանալւոյ մը պէս Թշնամւոյն երկիրները իր առջին բացաւ: Աս յաղթութենէ ետքը Պետրոս զօրաց գլուխն անցած մեծ փառաւորութեամբ մայրաքաղաք մտաւ: Նոյն յաղթութեան յիշատակին համար 2 յիշատակադրամ կոխուեցաւ[1], որով պատերազմին հրամանատարները վարձատրեցան. Պետրոսի սիրելին, Մենչիքովը տեղւոյն կառավար դրուեցաւ: Իսկ Պետրոս ձմեռը Տոնի վրայէն Վորոնէժ եւ Ուշա երթալով նաւագործութիւնն յառաջացընելու ետեւէ էր: Ինքն հոն գացած ատենն արդէն 15 նաւ լմընցած ջրի վրայ գտաւ, 25 նաւ ալ լմըննալու վրայ էին. հոս գտաւ նաեւ իր Փերրի բարեկամը, զորն որ Անգղիայէն՝ Տոն գետը Վոլկային հետ միացընելու համար բերած էր. դադրեցուց գործքը, հրամայեց Փերրիին որ Վորոնա գետը՝ Վորոնէժ քաղքէն մինչեւ իր Տոն թափող բերանը 80 թնդանօթնոց նաւու նաւագնացութեան յարմարցընէ: Երբոր Ձարը մէկ կողմանէ այսպէս գործքի վրայ էր, անդիի կողմանէ Մենչիքով Շլիւսսելպուրկ քաղաքը կը զօրացընէր: Շլիւսսելպուրկի պատերազմին ատեն Շվետները Նեվա գետէն վար Նյենշանց բերդը քշուած էին,

[1] Առջի դրամին առջի երեսը ռուսական բոլորագրով Ձարին դէմքը կայ. միւս երեսը Նէօթեպուրկ քաղաքը պաշարման վիճակի մէջ նկարուած է դարձեալ ռուսական բոլորագրով „Նուաճեալ 1702 Հոկտ. Ամն իննսուն էր ի ձեռս Թշնամւոյ„. Ստորնագիրն է „Շլիւսսելպուրկ„:

Երկրորդ դրամին առջի դին սովորական բոլորագրով Ձարին կերպարանքը կը տեսնուի: Հակառակ կողմը Նէօթեպուրկ քաղաքը պաշարման վիճակի մէջ նկարուած է եւ առջեւը ռուսական նաւատորմիղը կայ: Վարի կողմը Նեպտոն՝ ձախ դին բանալի մը ու ձեռքն երեքժանիքով նստած է, եւ բոլորագիրն աս է „Նէօթեպուրկ այժմ Շլիւսսելպուրկ„ (Noetteburgum nunc Schlusselburgum):

որն որ Արեւելեան ծովուն վրայ անանկ կը տիրէր՝ ինչպէս որ Շլիւսսելպուրկ Նեվա գետին Լատո-կայէն ելած տեղը։ Աս տեղն Ինկերմանլանտի դուռ ու առեւտրական նաւերու կայարան էր։ Պէտք էր որ աս զօրաւոր ամրոցն ալ առնուէր, ապա թէ ոչ՝ բան մ'առնուած չէր սեպուէր. բայց տեղւոյն առումը դիւրին բան չէր, Շվետացիք ծովու կողմանէ բերդին մեծ նպաստ ու օգնութիւն կրնային ընել։ Պետրոս բոլոր զօրքը ժողվեց, ու ամէն ճիգն ի գործ դրաւ, որ Շվետներէն օգնութիւն չեկած՝ բերդը ձեռք ձգէ։ Բերդը չորս դիէն պաշարուեցաւ, ահագին թնդանօթներ գիշեր ցորեկ կրակ կը տեղային։ 1703ին Մայիսի մէջ Շվետները՝ ազատ տեղերնին երթալու պայմանով բերդը թշնամւոյն ձեռքն յանձնեցին։ Աս միջոցիս Շվետի Նումէր անուն ծովապետի տեղակալը շատ պատերազմական նաւերով բերդին օգնութեան հասնելու համար Նեվա գետին բերանն հասած էր ու չէր գիտեր որ բերդն արդէն անձնատուր եղած է։ Հրաման եկաւ Պետրոսին որ նաւով թշնամւոյն դէմ դնէ. Պետրոս Միխայելով թնդանօթաձիգ զօրաց հրամանատարը յաջողութեամբ յաղթութիւնը գլուխ հանեց ու ըրած առջի ծովային յաղթութեանը համար Ս. Անդրէասի կարգին խաչն առաւ ու ինքզինք երջանիկ կը համարէր. "Կրնամ ըսել, որ միայն ութը նաւով յաղթութիւն ստացայ", ասանկ կը գրէ ինքն աս յաղթութեան վրայօք Ափրաքսին զօրապետին տեղեկութիւն տուած թղթին մէջ[1]։

ՙՆայենշանց առնուելէն ետքը արեւելեան ծովուն ճամբան բոլորովին բացուեցաւ։ Ա՛լ չկրցաւ Պետրոս

[1] Շվետական նաւերուն վրայ եղած յաղթութեան յիշատակին համար ելած միտալին առջի երեսը ռուսերէն բոլորագրով Ձարին երեսը կայ, երկրորդ երեսը բազմաթիւ փոքր նաւերէ պաշարուած երկու մեծ նաւեր կան ու ամպերու մէջէն երկնցած ձեռք մը յաղթութեան պսակ մը բռնած է՝ որուն բոլորագիրը "Որ ինչ ոչ էր՝ կարէ լինել 1703"

իր ներքին մղմանը դէմ դնել, պէտք էր որ նոյն տեղերը բոլորովին նոր ու ամուր քաղաք մը կանգնուէր։ Սակայն Նյենշանցի կողմերը բոլորովին ճախնային ու քանի մը ոտք բարձր ջրով ծածկուած էին։ Ասանկ անհաստատ ու վատառողջ երկրի մը վրայ կ'ուզէր Պետրոս իր հնուց ունեցած խորհուրդը գլուխ հանել ու նոր քաղաք մը կանգնել. զորն որ կատարելու համար յուսահատելի դժուարութեանց յաղթեց։ Ընտրած տեղը, ինչպէս ըսինք, մօրուտ ու գրեթէ կէս մը ջրի տակ ըլլալուն, բոլոր Նյենշանցի բնակիչներն ու անհամար գործաւորներ հազիւ կրցան քիչ մը տեղ չորցընել։ Հոս տեղս փայտ, քար ու ծառ ըսուած բանն ամենեւին չէր տեսնուեր, անբեր երկիր ու գրեթէ բեւեռական կողմանց պէս խիստ կլիմա. ասոնցմէ զատ հարաւային արեւելեան հովով՝ որ հոն միշտ կը տիրէ, ծովածոցին ջուրը երկիրը միշտ կ'ողողանէր, մանաւանդ երբոր Նեվա գետին սառոյցները քակուելու ըլլային։ Թէ արդեօք Պետրոս յառաջագոյն աս ամէն անյամարութիւնները տեսած էր, յայտնի չէ. միայն աս ստոյգ է որ ամէն արգելքներու դէմ անհնարին քրտինքով տեղւոյն շինութիւնը յառաջ տարաւ. Պետրոս՝ որ իր հինգ ընկերներովը աս գործքիս վրայ իբրեւ ճարտարապետ կեցած էր, հոս իրեն համար

ռուսերէն է։ Նոյնպէս աս ծովական յաղթութեան յիշատակին համար Պետրոս 1711ին փայտեայ տուն մը շինեց ու անունը Ապարանք Կատարինեայ դրաւ։

Նյենշանցի առմանը յիշատակին համար մետալ մ'երեւցաւ, որուն առջի երեսը Զարին պատկերը ու երկրորդ երեսը Նեվայի քովի ամրոցը կը տեսնուի։ Հին հռոմայեցի զգեստով մէկն աջ ձեռքը բանալիով մը աւերակաց վրայ կաթնած կ'ուզէ ցուցընել որ բերդը քանդուած ու կործանած է. վրայի ժամանակագիրը "Այսպէս. Մեծաց. Տեղի տա. (sIC. MagnIs. CeDIt. Ovid) տեղւոյն առման տարին կը ցուցընէ։ Ստորինագիրն է "Ամրոցն. Նոր. Նուաճեալ. Եւ. Աւերեալ. 14 Մայ.,,. (Castrum. Novum. Captum. Et. Destructum. Die 14 Maii. S. V.)

տնակ[1] մը շինեց եւ փուճ տեղ գործաւորաց զանազան պարգեւներ ու ազատութիւններ կը խոստանար, ամենեւին մէկը բաղձանք չունէր սա շէնքն յառաջացընելու. վերջապէս խաւիւ ու բռնութեամբ կանգնուեցաւ Ս. Բեթերսպուրկ քաղաքը ու բոլոր աշխարհքիս հետ վաճառականութեան սկսաւ: Աս քաղաքը Պետրոսին փառքն ու անունը ցյաւիտեանս աշխարհքիս վրայ անջինջ պիտի պահէ: Պետրոսի սկսածն իր յաջորդները յառաջ տարին. հիմակ Բեթերսպուրկ իր մեծութեամբը ու փառաւորութեամբը Եւրոպայի անուանի քաղաքացը հետ կը մրցի[2]:

[1] Աս տնակը, զորն որ Կատարինէ Բ. Կայսրուհին մրրկիներէն պահպանելու համար ուրիշ շէնքի մը մէջ առած է, մէկ նախասենեակ մը, երկու սենեակ եւ խոհանոց մ'ունի ու մինչեւ ցայսօր կը ցուցուի:

[2] Բեթերսպուրկ Նեվա գետին երկու կողմն ու նոյն գետին բերանը ֆիննեան ծովածոցին վրան շինուած է 8000 (2000 քարուշէն) տունով ու 500,000 բնակչով: Մինակ խրամով մը պատած ու բոլորտիքը 7 ժամու ճամբայ է: Հիմակ Բեթերսպուրկ 140 տարուան հին ու երկրիս ամենափառաւոր քաղաքներէն մէկն է, որովհետեւ ճամբաներն երկայն, շիտակ ու լայն են, ու երկու կողմերը լայն քարերով մայթեր շինուած են, Նեվայի ափունքը ու խոր ջրանցքները՝ որ գլխաւոր ճամբաներէն կ'անցնին, հաստաքար կամարներով փառաւոր շինուած են, հասարակաց տեղերն ալ՝ շատրուաններով ու արձաններով զարդարուած: Բոլոր քաղաքը իր աշտարակներուն ոսկեզօծ կամ արծաթեզօծ գագաթներովը ու իր յարկերուն կանաչ գոյներովը հեռուէն ալ աղուոր տեսք մ'ունի: Ընդարձակ հասարակաց պտըտելու տեղն է Արեսեան դաշտը, որուն չորս կողմը կայսերական պարտէզն ու մարմարեայ պալատը ու շատ մեծամեծ շէնքեր կան: Աս կայսերական մարմարեայ պալատը 20 պատուհան ունի իր երկայնքը ու 17 պատուհան լայնքը. շէնքին մէջ ամենեւին փայտ գործածուած չէ. յարկը երկաթներու վրայ կեցած՝ անաղէ է. դռները, գետինն ու պատուհանները թափցու պղինձ, սանդուղները մարմարէ. պալատը դրսէն գոյնզգոյն մարմարներով շինուած է ու արեւ զարկած ատենը գեղեցիկ տեսք մը կ'ունենայ: Կայսեր ձմերուան պալատը Նեվայի քով 350 ոտք լայնութիւն ու 750 երկայնութիւն ունի, կայսերական ընտանիքը հասարակօրէն հոս կը բնակի: Դռները, պատուհաններն ու խուցերը այնչափ բարձր են որ, կը կարծուի թէ հսկաներու համար շինուած է: Պետրոսի հրապարակին մէջ Պետրոս Մեծին արուրէ ձիաւոր արձանը կանգնուած ու

Այս քաղաքը ըստ մասին քիչ մը կարգաւորուելէն ետքը Պետրոսին փոյթն ան եղաւ որ Արխանկելի վաճառականութիւնն հոս դարձընէ ու Անգղիացի եւ Հոլանտացի վաճառականներով տեղւոյն բնակիչը բազմացընէ։ Բեթերսպուրկ մերձեցող առջի նաւը Հոլանտացի նաւ մըն էր։ Չարը անձամբ նաւավարի զգեստով աս նաւուն առջեւն ելաւ ու ինք նաւը Բեթերսպուրկի նաւահանգիստը խոթեց։ Նաւաստիները մեծ սիրով ընդունելութիւն կը գտնէին, Չարին հետ կերակրոյ կը նստէին ու մեծամեծ պարգեւներ կ՚ընդունէին։ Այսպիսի հիւրամեծարութիւն մը Չարին վրայ միշտ կը տեսնուէր. Ներուի մեզի հոս քանի մը դէպք յառաջ բերել՝ որոնք ըսածներնուս հաստատութիւն մը կրնան տալ։

## 28.

Ինչպէս յիշեցինք, հասարակօրէն նաւ մը հասնելուն, Չարը նաւաստեաց այցելութեան կ՚ելլար, իրենց հետ կ՚ուտէր կը խմէր ու զիրենք իր սեղանին կը հրաւիրէր։ Ասկէ կրնայ մակաբերուիլ որ նաւավարներն ինչ սիրով աս նաւահանգստին մէջ երկաթ կը նետէին եւ մանաւանդ որ Չարն ամէն բանի մէջ

տակն ասանկ գրուած է «Պետրոսի Ա. Կատարինա Բ.», աս արձանը 17,000 կենդինար ծանրութիւն ունի։ Նեվայի մէջ կղզւոյ մը վրայ Բեթերսպուրկի ամրոցը, գրեթէ բոլորովին քաղքին մէջտեղը կ՚իյնայ։ Հոս է Ս. Պետրոսի ու Ս. Պօղոսի մայր եկեղեցին կայսերական գերեզմանով։ Բեթերսպուրկ 100էն աւելի եկեղեցի ունի, որոնցմէ 83ը Ցունաց, 15ը ուղղափառաց, 12ը բողոքականաց ու 2ը Հայոց. 20 լեզուաւ ալ քարոզ կը տրուի։ Իսահակայ եկեղեցին, Ռուսաստանի գեղեցիկ շէնքերէն մէկը 26 միլ. ռուպլի ելած է։ Քազանեան Աստուածամօր եկեղեցին ալ իր 280 ոտք բարձր աշտարակովը երեւելի է։ Նիկողայոսի կամ Նաւաստեաց եկեղեցին 6 աշտարակ ունի, որոնց գմբեթները կէս մը ոսկեզօծ, կէս մ՚ալ արծաթեզօծ են, եկեղեցին երկու մաս կը բաժնուի, վերին՝ ամառուան եկեղեցի, վարի՝ ձմեռուան եկեղեցի, որոնցմէ երկուքն ալ 40ական խորան ունին։ Աղէքսանդր-Նեվսքիի վանքը քաղքին մօտ է ու 5 եկեղեցի 60 կրօնաւոր ունի, եւ Բեթերսպուրկի Մետրապոլտին բնակութիւնն է։ Աս եկեղե-

իրենց կողմէ ելլալով զիրենք կը պաշտպանէր, որով Զարին ու Նաւավարաց մէջ արտաքոյ կարգի ընտանութիւն մը ծագեցաւ։ Անգամ մը Պետրոս արքունի պարտէզին մէջ նոր եկած նաւաստի մը տեսնելով հարցուց իրեն թէ Բեթերսպուրկ Արխանկելէն աղէկ չէ՞. Չէ, ըսաւ նաւաստին։ Երբոր Պետրոս զարմացած պատճառն իմանալ կ'ուզէր, նաւաստին ըսաւ "Չէ մեծափառ տէր, Արխանկէլ հասած ատեննիս, ուտելու համար երբեմն երբեմն ձուաղեղ կը գըտնէինք, բայց հոս չենք գտներ,,։ Ասոր վրայ Զարը ծիծաղելով պատասխանեց "Աղէկ է, ասոր ճար կը գտնուի, վաղը միւս նաւավար ընկերներովդ իմ արքունիքս եկուր, հոն քեզի կը ցուցընեմ որ հոստեղի ձուաղեղներն ալ իրենց համին կողմանէ Արխանկելիններէն շատ վար չեն մնար,,։ Երկրորդ օրը խոստումը կատարուեցաւ։

Անգամ մ'ալ վաճառականի մը կնոջ մեռելին գնաց, որուն որ ինք բժշկութիւն ըրած էր, որովհետեւ ռուս բժիշկներէն շատ աւելի նոյն արուեստէն կը հասկընար։ Թաղումէն վերջը ըստ սովորութեան ընթրիք մ'եղաւ, որուն Բեթերսպուրկի շատ վաճառականներ ու Հոլանտացի նաւաստիներ ներկայ էին. գինւոյն առատութիւնը բազմականները զուարթացուց ու երիտասարդ Հոլանտացի նաւաստի մը գինւոյն գաւաթը ձեռքը՝ ոտք ելաւ ու պոռալու սկսաւ, "իմ տէրս Մեծն Պետրոս ու իր կողակիցը Կայսրուհի Տիկինն ապրի՜ն,,։ Ուրիշ նաւաստի մը աս բացատրութիւնը չհաւնելով ոտք ելաւ ու գաւաթը միւսին

ցիններէն մէկուն մէջն է Ռուսաց Ս. Աղեքսանդր Նեվսքիին մարմինը արծաթէ դագաղի մէջ։ Ամէն տարի Սեպտեմբերի 11ին կայսերական արքունիքը Քաղաքի Աստուածամօր եկեղեցիէն հոս ուխտագնացութեան կու գայ. բոլոր ճամբաները կարմիր լաթերով կը զարդարուի, ու թափորը մէկ ժամ կը տեւէ։ Ասոնցմէ զատ Բեթերսպուրկ համալսարան մ'ուճեմարան մ'ունի 300,000 հատոր գիրք ունեցող խոշոր մատենադարան մը։

ձեռքէն առնլով ըսաւ, "Աս ինչ կոպիտ մարդ ես, թող ինծի որ ես վայելուչ բարեմաղթութիւն մ'ընեմ, "իմ մեծափառ տէրս Պետրոս կայսրը ու իր մեծափառ տիկինը Կատարինա կայսրուհին, ապրին,,: Աս բարեմաղթութեան վրայ Պետրոս սրտանց ուրախանալով պատասխանեց, "Ասիկա շատ աղէկ է, շնորհակալ եմ, Նաւաստի,,:

Զարն իր Նորաշէն քաղաքը, Շլիւսսելպուրկի կառավարին՝ իր հաւատարիմ Մենչիքովին յանձնելով, ինքը՝ նաւերու շինութիւնը փութացընելու եւ ուրիշ կարգադրութեանց համար պէտք էր որ Վորոնէժ երթար:

Աս միջոցիս Ռուսերն Ինկերմանլանտի մէջ մեծ յաջողութեամբ յառաջ կ'երթային ու կամաց կամաց դէպ ի Նարվա կը յառաջանային, ուր որ անգամ մը գլուխնին մեծ դժբախտութիւն մ'եկած էր: Այս ամենայն յաջողութիւնը Սթոգհոլմի դահլճին մտադրութիւնը գրգռեց ու իմացուեցաւ որ Ռուսաստան երթալով իրենց նկատմամբ վտանգաւոր դիրք մը կը ստանայ, որն որ իսկզբան ամենեւին չէր կրնար յուսացուիլ: Աս պատճառաւ Քրոնհիորթ զօրապետն իր գնդովը Ռուսաստանի նեղ մտած Շվետներու օգնութեան գնաց: Իմացաւ Պետրոս որ իր Նորաշէն աշխատութիւնը վտանգի մէջ է ու լաւագոյն սեպեց որ ինքն անձամբ թշնամւոյն դէմ ելլայ, եւ իրօք ալ իր պահապան ու վիշապազունդ զօրացը գլուխն անցնելով թշնամին դիմաւորեց, որն որ Սէսթրա գետին քով բանակած էր: Շվետները գետին վրայ տիրած էին ու իրենց թնդանօթներովը Ռուսաց ասդին անցնիլը կ'արգելուին: Ռուսք թէպէտ իսկզբան այնչափ յաջողութիւն մը չունեցան, սակայն վերջէն սաստիկ պատերազմով մը յաղթութիւնը վաստըկելով Շվետները դէպ ի Վիպորկ ետ քշեցին:

Զգաց Պետրոս որ Նոր Բերթերսպուրկը դեռ մերկ է, մանաւանդ ծովու կողմանէ թշնամւոյն առջին բոլոր բաց· պէտք էր որ արեան ու աշխատութեան չխնայելով քաղքին ապահովութիւնն հոգար: Աս գործքիս՝ բնութիւնն ալ ձեռնտու եղաւ: Բերթերսպուրկէն 40 վրկաչափ հեռու Քոթլին ժայռակղզին ծովուն երեսէն վեր կը բարձրանայ: Լսուելուն պէս որ Շվետներուն նաւատորմիղը ձմերելու գացած է ու ծովն ազատ ու ապահով է, Չարն աս կղզւոյն վրայ իր յատակագիծն սկսելու ձեռք զարկաւ: Շինութիւնն անհնարին փութով կը յառաջանար ու պէտք էր որ նոյն ձմեռը լմըննար: Աս գործքս ալ Մենչիքովին յանձնուեցաւ ու Պետրոս իր անձնապահ զօրքովն իր մայրաքաղաքը դարձաւ, ուր որ անհամբերութեամբ յաղթողին գալստեանը կը սպասուէր:

Մեծ փառաւորութեամբ ու զանազան յաղթութեան կամարներէ անցնելով Պետրոս մայրաքաղաք մտաւ. սակայն չկրցաւ երկայն ատեն հոս կենալ: Ասկէ ետքը զինք նորէն Վորոնէժ կը գտնենք: Հոս Պետրոս իր նոր շինութեանցը ու նոր կանգնուելու ամրոցին գաղափարը շինելով Մենչիքովին խաւրեց: Նոյն ձմեռը չստորագրուելու ճգամբ ու աշխատութեամբ անանկ ամրոց մը բարձրացաւ որ շատ քիչ իր նմանն ունի:

Նոյեմբերի մէջ սառոյցն այնչափ զօրաւոր էր, որ մեծամեծ բեռներ կրնար վերցընել, շէնքի ատաղձները, փայտն ու քարը դէպ ի աւազակոյտ (կղզին) տարուեցան ու այնպէս անհիմն տեղ մը հիմ դնելու համար 20 ոտք բարձր ծառեր առնուեցան ու 10 ոտք բարձր ու 15 ոտք լայն արկղի մը մէջ արուեստով տեղաւորուելէն ետքը արկղը ծանր քարերով լեցուած ծով ընկղմեցին: Այսպէսով ամրոցին հիմը դրուեցաւ: Աս գործողութեան ատենը 8000 ձի ու գրեթէ նոյնչափ մարդ կորսուեցան:

Սակայն Գրոնսլոթ, ատ էր ամրոցին անունը, դեռ ձմեռը չեկած կանգնուեցաւ[1]: Պետրոս Մարտին նորէն Բեթերսպուրկ գալով ամրոցը թընդանօթներով ամրացաւ, ու երթալով զօրանալու վրայ էր, ու ժամանակէ մը վերջը (1712) շինուած Քրոնշտաթին հետ միանալով, Բեթերսպուրկին նախապարիսպն եղաւ:

## 29.

Կարոլոսի կողմանէ ասանկ մեծ հակառակութենէ մը ետքը չէր կրնար խաղաղութեան սպասուիլ, մանաւանդ թէ Լեհաց թագաւորին հակառակորդներէն պաշտպանութիւն գտնելով Լեհաստանի մէջ շատ խաղաղ էր ու թշնամւոյն բուն ժառան-

[1] Գրոնսլոթի շինութեան համար միտալ մը կոխուեցաւ, որուն աջի երեսը Պալթիկ ծովը կը տեսնուի, որուն վրայ ցուցընելու համար որ բերդը ձմեռ ատեն շինուած է, ալկիոն (ասպնկաթռչուն) մը բունած է եւ Օվիտիոսի Ողբերգութեան աս խօսքերը կան "Ձմեռայնի իբրեւ աղկիոն ի թուխս նստիցի, ապահով է նաւապարհ ծովու,, (Hiberno tempore nidis incubat alcyon : tum via tuta maris)։ Տավեզերքը ըլնեալ մէկը կայ, որն որ մաթեմաթիկական գործիքներ կը ցուցընէ. ստորնագիրն է "Ապահովութիւն Ֆինեան ծովու,, (Maris Finici securitas)։ Երկրորդ եզերն ալեաց մէջ ամրոց մը կը տեսնուի, որուն բոլորագիրը Վիրգիլիոսէն է, "Պաղղաս ամրոցին՝ զոր կանգնեաց, պաշտպանէ,, (Pallas quam condidit arcem ipsa colit.) ստորնագիրն է "Գրոնշլոս ձմեռայնի յինքնակալէն Ռուսաց կառուցաւ,,. (Cron—schloss, media hieme a Russ. Imperatore extruct. MDCCIV.)

Անկէ քիչ մը յառաջ երեւցած էր նաեւ Բեթերսպուրկի հիմնարկութեան յիշատակագրամը, որուն աջի երեսը սովորական բոլորագրով Ցարին պատկերը կայ։ Երկրորդ երեսը Պաղղաս ու Հերմէս Ցարին շրջանակաւոր պատկերը կը բռնեն. Պաղղասին ձեռքը ամրոց մ'ու Հերմէսին ձեռքը գաւազան կայ. վերնագիրը ժամանակագիր (chronogramme) է "Ձհաստատուն պարիսպս նա հաստատեաց,, (haeC. fortIa. MoenIa. ConDIt.)։ Վարը նորաշէն քաղքին յատակը կայ, որուն վրայ քաղքին Ս. Բեթերսպուրկ անունը գրուած է։ Ստորնագիրն է "Բեթերսպուրկեայ. Նաւահանգիստ. եւ. Նաւարան,, (Petriburgi.Portus.et.Navale.)

Նոյն տարին ուրիշ յիշատակագրամ մ'ալ կոխուեցաւ, որուն աջի երեսը սովորական բոլորագրով Ցարին կերպարանքը կայ. երկրորդ երեսը Նեպտոն ձեռքը երեքժանիք՝ ալեաց

գաղկան երկրին մէջ պատերազմ մղելն իրեն բան մը չէր արժեր, որովհետեւ հոն ալ Շվետները Թագաւորին հակառակորդացը բարեկամ էին։ Կարոլոս միշտ իր միտքը դրածը յառաջ կը տանէր, արեւելեան ծովուն եզերքը միշտ ասպատակելու վրայ էր, հետզհետէ ամուր տեղեր կը նուաճէր եւ ըրած աւարներովը ու դրած տուգանքներովը ըրած պատերազմներուն ծախքը կը հանէր։

Աս միջոցիս ռուսական զէնքը բովանդակ Լիֆլանտա ու Էսթլանտա աւեր ու անապատ կը դարձընէր։ Շլիբբենպախ շվետ զօրապետը չէր կրնար Ռուսաց դէմ դնել ու իրենց ասպատակութեանցն առջեւն առնուլ։ Ժամանակին սովորութեանը համաձայն բարբարոսական եղանակաւ պատերազմ ընելը ռուս զօրապետաց սկիզբն էր, պատերազմ ըրած տեղերնին բոլորովին կ՚աւրէին կ՚աւրշաւրկէին ու բնակիչներն իրենց հետ մէկտեղ կը տանէին, որպէս զի եսեւէն եկած թշնամին աս աւեր ու անապատ դարձած երկիրներու մէջ առանց բնակութիւն ու կերակուր գտնելու փճանայ։ Շերեմէթեւ զօրավարն աս բանս շատ հաւնելով Զարին ասանկ կը գրէ, "Երկիրներն ասկէ աւելի աւրշաւրկելը կարելի բան չէր, Աստուած գիտէ, ինչ պիտի ընէ թշնամին եթէ իր զօրքովը աս երկիրները մտնելու ըլլայ. որովհետեւ բոլոր երկրին մէջ Ռեվալ, Բեռնաւ, Ռիկա ու վերջի երկու քաղաքաց մէջ Ռէյմէս աւանէն զատ, չապականած ու չաւրուած տեղ չկայ,,։

Ասանկ 1703—4ին ձմեռն երկիրներն աւերելով անցաւ, Նոր զօրք ժողվուեցաւ, Բեթերսպուրկ ամրացուեցաւ ու թշնամւոյն ամենեւին հանգիստ չտրուե-

վրայ իր երիվարները կը կառավարէ. աս երեսին ժամանակագիր բոլորագիրն աս է "Ֆիննիա, ահա եռեքժանիք,, այսինքն "Ընկալ Ֆինլանտա, զարքունի գաւազան ծովու,,. (Finnia. eCCe. trIDenteM.) Մակագիրն է "ի յիշատակ հաստատութեան նաւագնացութեան ի Պալթիկ ծովու,, (Navigatione in mari Baltico stabilita.)։

ցաւ: Չարին մէկ հատիկ խորհուրդն ան էր որ Թշնամւոյն ամենեւին հանգիստ չտրուի, եւ ինքն ալ Վորոնէժէն Մոսկուա գալով կարգաւորելու բաները կարգաւորեց ու Տաճկի դեսպանն որ Ահմէտ Գ.ին աթոռ ելլալը կը ծանուցանէր ու Սեւ ծովուքով դաշանց դէմ շինած ամրութեանց մեկնութիւն մը կ՚ուզէր, հանդարտեցընելէն ետքը 1704ին փետրուարին աճապարեց բանակ դնաց, որպէս զի ամէն բան անձամբ կարգաւորէ ու Բեթերսպուրկի Նորաշէն ամրութիւնները տեսնէ: Քրոնշլթատ արդէն ջրի վրայ բարձրացած ու գրեթէ լմըննալու մօտ էր: Ոչ ձիւն, ոչ սառոյց, ոչ մրրիկ կրցած էին տեղւոյն շինութիւնն արգելուլ:

Հազիւ թէ օդերը քիչ մը մեղմացած էին Շերեմեթեւ իր ձիաւորներովը դէպ ի Տրուխա ու Տինապուրկ յառաջ քալելու սկսաւ ու ոտանաւոր զօրքերով Տորբատ պաշարեց: Սակայն անդիէն ալ իմացուեցաւ որ Նարուա գետին բերանը Ռուսերը նեղ մտեր են եւ Շլիբբենպախ զօրավարը պաշարեալ Նարվային օգնութեան կու գայ: Չարն անձամբ Շլիբբենպախի դէմ ելլալ ու ան տեղն իրեն հետ զարնուիլ կ՚ուզէր, ուր որ Ռուսերը առջի արիւնահեղ դասն առած էին:

Յանդուգն յուսով մ՚երեւցաւ Պետրոս արեւելեան ծովուն վրայ: Նորաշէն Բեթերսպուրկն եւ Ռուսաց յառաջադիմութիւնը նոյն իսկ դաշնակցաց աչքին փուշ էր: Շվետներն ալ Նորաշէն քաղաքն եւ ռուսական զինուց յաջողութիւնը մեծ հոգով կը տեսնէին: Իմացան որ իրենց Թագաւորը Լեհաստան ժամանակ կորսնցընելու տեղն, իրենց վարի դին հսկայ մը կը գոյանայ ու զիրենք ընկճելու կը ջանայ: Նոյն իսկ Օքսենսթիռնա պաշտօնէից գահերէցն իր Թագաւորին ասանկ գրեց. «Ձեր Նախորդացը Կուստաւ Ատոլֆին ու Կարոլոս Կուստաւին օրինակացը

հետեւեցէք: Թշնամեաց մէկուն դէմ կենալու համար պէտք էք, թէ խաղաղութեամբ եղեր է, թէ զինադադարով, միւս թշնամիներէն ազատիլ: Այսպէս ըրէք, Աւգոստոս թագաւորը արդէն խաղաղութեան հակած է. շնորհեցէք իրեն խաղաղութիւն ու տկարին թագն առնլու խորհուրդը մէկ դի թողուցէք: Թէ որ միտքերնիդ դրածնիդ ալ յաջողցընելու ըլլաք, օգուտն ինչ է: Միայն առանց բարեկամ մը վաստըկելու թշնամիներնուդ թիւը կը բազմանայ: Ձեր ան կողմերն ըրած ամէն յաղթութիւնները դրացեաց անհաճոյ պիտի ըլլան ու ըստ հետեւորդի պահպանելու ալ դժուարին. անոր հակառակ Չարին դէմ ինչ որ ընէք ամենեւին մէկու մը անհաճոյ չէ, ամենեւին ձեռքերնէդ առնող չկայ: Կ'երդուընցընեմ զՁեզ, Ռուսերը մ'անարգէք, թէպէտ յաղթեցինք, բայց յաղթուողները պատերազմիլ կը սորվին ու մենք վերջապէս իրենց զօրութեանը տակ պիտ'որ ընկճինք,,: — Կարոլոս աս խորհրդին պէտք էր հետեւիլ, ինչու որ Աւգոստոս թագաւորը արդէն խաղաղութեան դեսպաններ խաւրած էր: Փիպեր կոմսը, որն որ Կարոլոսին սիրելին էր, Օքսենսթիռնայի գրութեան հոգւովը իրեն հետ խօսեցաւ, բայց Աւգոստոս թագաւորը՝ որն որ աս պատերազմներուն սկզբնական պատճառն եղած էր, աթոռէ վար առնլու խորհուրդը այնպէս գրաւած էր Կարոլոսին միտքը որ չէր կրնար նոյնը թողուլ: Սկսուած բանը թողուլը մարդու գործք չէ, կ'ըսէր, պէտք է որ Սաքսոնիա երթամ ու թշնամւոյն զօրութիւնն իր երկրին մէջ խորտակեմ: Թէ որ զինքը թողում դէպ ի հիւսիս դառնամ, ինքն ետեւէս կ'իյնայ ու վերջի վտանգը առջինէն աւելի կ'ըլլայ: Ինկերմանլանտ կորսուած է ու Լիֆլանտ ռուսական ասպատակութիւններու տակ կը հեծէ, ասոնք արդէն գիտեմ, եղած վնասները շուտով կրնանք

նորոգել ու Նարվայի պատերազմ մը կորսուած երկիրները նորէն մեզի կը դարձընէ։ Աս տեսակ խորհուրդներով ու զանազան յաղթութեամբ արբեցած, Կարօլոս իր ճամբան յառաջ տարաւ։

## 30.

Պետրոս իր ահաւոր պատրաստութիւններովը իր պատերազմական յատակագիծերը կատարելու ետեւէ էր. երանի՜ թէ, կ՚ըսէր, Շվետաց թագաւորը իր մտացը վրայ հաստատուն մնար, Ռուսիայի զինուց ասկէ աւելի բաղձալի բան չկայ։ — Չէ թէ միայն Աւգոստոսի, այլ նոյն իսկ Դանիայի ու Պրուշի բաղձանքն ան էր, որ Պետրոս Լիֆլանտի պատերազմները դադրեցընելով ամենայն զօրութեամբ շիտակ Լեհաստան իյնայ ու հոն Կարօլոսին զօրութիւնը բոլորովին խորտակէ. որուն համար որ յայտնապէս օգնելու յոյս ալ կու տային։ Սակայն Չարն աւելի յարմար սեպեց Արեւելեան ծովուն ձախ դին Էսթլանտի ու Լիֆլանտի եւ աջ դին Ֆինլանտի մէջ առած երկիրները ուրիշ զանազան ամուր տեղեր վաստըկելով ապահովցընել։ Նեվա գետին բերանն ու բոլոր Ինկերմանլանտ վաստըկուած էր՝ բաց ի Նարվայի դիմացը Իվանկորոտ սահմանաբերդէն։ Լիֆլանտի մէջ ապահովութեամբ արշաւելու համար՝ պէտք էր որ նախ Փայփուս լճին վրայի շվետական նաւատորմիղը ոչընչանար։ Փայփուս լիճը՝ որն որ Ինկերմանլանտի ու Լիֆլանտի մէջտեղը 12 մղոն երկայնութեամբ տարածուած է, Նարովա գետով Ֆինեան, Էմպախ ու Բեռնով գետերով Լիֆլանեան ծովածոցներուն հետ հաղորդութիւն ունի։ Քանի որ Շվետներն իրենց 13 զինեալ նաւերով ու ընդ ամէնը 98 թնդանօթով Փայփուսի տիրած էին, Էմպախ գետին քով Նարվա ու Տորբատ քաղաքները չէին կրնար առնուիլ։ Անխոհեմութեամբ Շվե-

տաց Լէօշէրթ անուն ծովապետին փոխանորդը ձմեռը Էմպախ գետը քաշուած էր։ Դեռ սառոյցները չքակուած գետին բերանը բռնուեցաւ, եզերքներն ալ զինուորներով լեցուեցաւ։ Այսպէս շվետական նաւերը որ բռնութեամբ լիճ մտնել կ՚ուզէին, առանց դժուարութեան կէս մը զարնուեցան ու կէս մը գերի ինկան։ Լէօշէրթ յուսահատած ինքզինքը ու բոլոր նաւին մէջինները օդ հանեց։

Տորբատ ու Նարվա քաղաքները, ինչպէս վերն ըսինք, 1704ին Մայ. 4ին պաշարուած էին։ Պետրոս անհանգիստ՝ մէյ մը մէկ ու մէյ մը մէկալ քաղքին կ՚երթար ու զօրաց քաջալերութիւն կու տար։ Շվետի Շլիփփենպախ զօրապետը, որ 3 գունդ զօրքով Ռեվալի մօտերը կեցած՝ պաշարուած ամրոցներուն օգնելու կը սպառնար, Ռուսներէն զարնուեցաւ, զօրքը կէս մը ցրուեցաւ կէս մը բռնուեցաւ ու զօրապետը քանի մը հարիւր ձիաւորով հազիւ Ռեվալ հասաւ ու հոն համոզուեցաւ որ Լիֆլանտիան կորսուած է։ Նարվայի հրամանատարը ամէն րոպէ Շլիփփենպախէն օգնութիւն սպասելու վրայ էր։ Աս ակնկալութիւնը պատերազմական հնարքով մ՚իր օգտին գործածեց Պետրոս. իր զինուորացը շվետական զգեստներ հագցընելով Ռեվալէն դէպ ի Նարվա երթալու ճամբան խոթեց ու այնպէս ձեւացուց որ Ռուսաց վրայ կը յարձակին. Շվետները իրենց եղբարցը ու զինակցացը հետ միանալու համար ամրոցէն ելան, բայց ի՛նչ զարմանք, իրենցմէ միայն մահ ու գերութիւն գտան։ Ձիաւորները բոլոր ինկան ու ոտանաւոր զօրքը (800 մարդ) բանն իմանալով հազիւ կրցան քաղաք դառնալ ու Նարվան նորէն պաշտպանելու սկսան։ — Անդրէն Շերեմեթեւ զօրապետը Տորբատի առջին անորոշ վիճակի մը մէջ ժամանակ կ՚անցընէր, անոր համար Ձարը Նարվայի զօրաց հրամանատարութիւնը աւստրիական ծառայ-

ութեան մէջ զինուորութեան վարժած ծերունի Օկիլվի զօրավարին թողլով եւ Տորբատ գնաց։ Ստոյգ է Շերեմեթեւ վատասիրտ չէր, սակայն Պետրոսին ամենատես աչքերն ալ չունէր։ Զարին ներկայութիւնը գործքը շատ փութացուց, թնդանօթներուն անընդհատ հուրը բերդին պատերը կամաց կամաց վար առնլու սկսաւ ու մինակ մէկ յարձակում մը բաւական եղաւ բերդն անձնատուր ընելու։ Բերդին մէջինները ազատ թող տրուեցան, ու ասանկով, ինչպէս Պետրոս կը գրէ, եօթուկէս օրուան մէջ քաղաքն առնուեցաւ։ Աս յաղթութենէ ետքը բոլոր Լիֆլանտի բնակչաց ու ամէն հպատակաց զանազան արտօնութեան ու պաշտպանութեան հրովարտակներ խաւրուեցան ու նոյն իսկ Տորբատացւոց ալ զանազան շնորհքներ տրուեցան, որով անթիւ փախստականք նորէն իրենց տեղը դարձան։

Ասկէ ետքը Զարն իր բոլոր մտադրութիւնը Նարվայի վրայ ուղղեց։ Բեթերսպուրկի նոր ծովապարիսպը՝ Քրոնշլթատ պաշտպանելը Մենչիքովին յանձնուեցաւ, որովհետեւ շվետական նաւատորմիղ մը աս նորաշէն ծովապարիսպը հիմնայատակ կործանելու համար ճամբայ ելած էր։ Սակայն փուճ տեղ Շվետացիք պարիսպը կը գնդակոծէին, փուճ տեղ ցամաքէն յարձակումներ կ՚ընէին, բան մը չկրցան ընել ու ետ դարձան։

Նոյնպէս Նարվայի պատերազմին մէջն ալ Շվետներու զէնքը յաջողութիւն չունեցաւ։ Պետրոս Տորբատի զօրականներէն 10,000 հոգի առած Նարվային առջին կեցող զօրաց օգնութեան գնաց։ 16ամեայ պատանի մ՚էր բոլոր զօրաց հրամանատարը. փոքր յարձակումներով գլխաւոր պարիսպը փլցընելով մեծ յարձակման ճամբայ բացուեցաւ։ Շատ սաստիկ եղաւ աս պատերազմը եւ Ռուսք արտաքոյ կարգի մարդ կորսնցուցին։ Գիշեր ատեն

յարձակիլը Ռուսաց սովորութիւնն էր, Մենչիքովին եւ ուրիշ զօրավարաց հիմնկուան տուած խորհուրդն ալ աս էր: Սակայն աս անգամ աս վտանգաւոր սովորութիւնը ի գործ չդրուեցաւ. որոշուեցաւ որ յարձակումը ցորեկ ատեն ըլլայ, ու կէսօրը երբոր Շվետի պաշտօնակալները կերակրոյ վրայ էին՝ յարձակման նշանը տրուեցաւ ու երեք քառորդուան մէջ Ռուսերը բերդին տէրն եղան. (Աւգոստ.): Ռուսի զօրքը՝ աս պատերազմիս մէջ ինկած անհամար ազգակիցներնուն վրէժն առնլու համար, քաղքին անմեղ բնակիչները անխնայ ջարդելու սկսան. իսկ Պետրոս իր զինուորացը ըրած աւարառութիւնն ու արիւնհեղութիւնը արգելուլ ուզելով սուսերամերկ փողոցներու մէջ կը պտըտէր, ու իր ձեռօքը իրեն անհնազանդ Ռուս զինուորները կը սպաննէր: Երբ որ բերդ մտաւ, Շվետներու Հօռն հրամանատարը բռնած իր առջեւը հանեցին, որուն Զարը սաստիկ բարկութեամբ ապտակ մը հանեց ու յանդիմանեց որ այնչափ քիչ մարդով դէմ կենալով այսչափ արիւնհեղութեանց պատճառ եղաւ ու իր արիւնլուայ սուրը սեղանին վրայ զարնելով դարձաւ քաղաքացւոց ըսաւ թէ աս սուրը չէ թէ ձեր քաղաքացեացը՝ այլ իմ անառակ զինուորացս արեամբը ներկուած է: Ասկէ քանի մ'օր ետքը Իվանկորոտ բերդն ալ անձնատուր եղաւ. աս երկու յաղթութեանց մէջ Շվետները շատ բան կորսնցուցին:

## 31.

Սանկով բոլոր Ինկերման Ռուսաց ձեռքն անցաւ ու Զարն իր սրտին արտաքոյ կարգի ուրախութենէն երգիչներու դասակներով փողոցէ փողոց կը պտըտէր ու կ'աղաղակէր, "Ոչ մեզ, ոչ մեզ, այլ անուան քում վայելեն փառք„: Ասկէ ետքը ձմեռը մօտեցած ըլլալուն չէր կրնար նոր պատերազմներու

ձեռք զարնուիլ ու մանաւանդ հարկ էր որ փլած տեղերը շինուէին ու զանազան ամրութիւններ կանգնուէին: — Մենչիքօվ Ինկերմանլանտի ընդհանուր կուսակալ դրուեցաւ:

Այս դէպքերուս ատեն Լեհաստանի մէջ Կարոլոսի զէնքերը մեծ յաջողութիւն կը գտնէին. արդէն Աւգոստոս իր ձեռքն ինկած ու 1704ին Ստանիսլաւոս Լեշչինսքին թագաւոր դրուած էր. վերջապէս ամէն տեղ Կարոլոս յաղթող էր, Վիսնիովիեցքի լեհ զօրավարը ռուս զօրքով Քուրլանտի մէջ Եաքոպշթատի առջեւ աղէկ ջարդ մը կերաւ, եւ թէպէտ Չարը միշտ զօրքով ու ստըկով Լեհաստանի օգնութիւն կ'ընէր, սակայն ըրած զոհերը շահաւոր հետեւութիւն մը չէին ունենար: Ռուսերը օտար հրամանատարներու տակ կը վհատէին եւ ըստ պատշաճի չէին հոգացուեր ու միշտ կը տրտընջէին որ "Լեհերը խռովարար են, մի միայն ուտելու համար աստին կ'անցնին ու ետքէն խելքերնուն փչածը կ'ընեն,,: Թէպէտ քանի մը պատերազմներ ալ վաստըկեցան, սակայն ըրած կորուստնին ալ կրկնապատիկ էր: Կարոլոս Լեհաստանի տէր եղած էր եւ ռուսական-սաքսոնիական զօրքը ողորմելի վիճակի մը մէջ Օտեր գետէն անդին քշուեցաւ:

Այս ատեններս Չարն՝ որ մեծ յաղթանակաւ Մոսկուա մտաւ (Դեկտ.), իր տէրութեանը մէջ զանազան զբաղմանց ու կարգադրութեանց մէջ կը գտնենք ու իրեն պատերազմներն ալ չեն ընդհատիր: Նորէն մեծ թնդանօթներ կը թափուէին, Օլոնէցի նաւարանը Բեթերսպուրկի համար նաւեր կը պատրաստուէին, ու Վորոնէժ մեծ գործունէութիւն մը կը տեսնուէր. Նոր զօրաժողով կ'ըլլայ: Գեղերէն 20 տուն մէկ հոգի կու տայ, մեծամեծները զօրաց կերակրեղէն, ապրուստ ու զգեստ, իսկ քաղաքացիք ձի կը հոգան (1705 Փետր.): Ասանկ պատրաստութեանց մէջ՝ որ

չէ թէ միայն Չարին ժամանակը, այլ նաեւ մտադրութիւնն ալ գրաւած էր, որովհետեւ գիտենք որ ինչ եռանդեամբ ամէն բան անձամբ կը հոգար, մէկէն Ուֆայեան Պաշկիրներուն ապստամբելուն լուրն հասաւ. ժողովուրդը Ուֆա գտնուող Սերկէյեվիչ գործակալին դէմ դառնացած էր, որն որ բռնութեամբ իրենցմէ ձի կ'առնուր ու սաստիկ զօրք կը ժողվէր: Ժողովուրդը զէնքի վազեց ու նոյն իսկ Քազան վտանգի մէջ էր (փետր.): Կովանքի իշխանն աս ապստամբութիւնը զսպեց ու ժողովուրդը Սերկէյեվիչին մահուան պատժոյն լոմն հանդարտեցաւ:

Հազիւ թէ նորահաս գարնան արեւուն կազդուրեցուցիչ ճառագայթները երկիրն իր խոր քնէն կ'արթնցընէին, երկու թշնամի բանակները նորանոր պատրաստութեանց ձեռք զարնելու սկսան ու արիւնահեղ պատերազմներու սկիզբ տրուեցաւ: Շերեմեթեւ, որն որ Բոլոցք ձմերած էր, հրաման ընդունեցաւ որ ամենայն եղանակաւ թշնամին նեղէ ու տկարցընէ, բայց մեծ պատերազմներէն զգուշանայ: Չարն ալ անձամբ իր հակառակորդ դիւցազնին դէմ ելլալու կը պատրաստուէր, ան դիւցազնին, որն որ ռուսական զօրութիւնը բանի մը տեղ չէր դներ: Բայց Պետրոսին վրայ տենդ մ'եկաւ եւ չիկրնալով իր ուզածն ընել, մեծ նեղութեանց մէջ ինկաւ: Բայց աս հիւանդութեան ատեն ալ իր զօրացը հոգկ ամենեւին մտքէն չէր հեռանար, որովհետեւ աղէն ըմբռնած էր, որ բոլոր զօրաց կենդանութիւնն ու հոգին ինքն է: Աս միջոցիս մէջ Մենչիքովի ասանկ կը գրէ, "Կ'աղաչեմ, Աստուած սիրէք: զիս ամենեւին մի հոգաք, ես ամէն բան հաւատարմութեամբ ու մանրամասն ձեզի կը գրեմ, որպէս զի չըլլայ թէ, ինչպէս սովորաբար կ'ըլլայ, ուրիշները Ձեր առջին բանը մեծցընեն":

Պետրոս քիչ մ'առողջանալուն պէս անթիւ զօր-

քով Նեվայի բերանը վազեց, որովհետեւ մէկ կողմանէ Անքերսթիռնա ծովապետը իր նաւատորմիղովը Գրոնսլոթ մերձենալու վրայ էր ու անդիէն Մայտլ զօրավարն ալ իր բանակովը Բեթրսպուրկի վրայ կը քալէր: Երկուքին ըրած փորձերն ալ պարապի ելան ու Պետրոս անձամբ Շվետաց դիմացն ելլալու մտաց վրայ հաստատուն մնաց:

Իրօք ալ 1705ին Յունիսի մէջ Լեհաստան հրովարտակ մը խաւրուեցաւ, որուն մէջ Զարը կը հրամայէ, որ զօրքը ժողվուի ու Ռուսաց հետ մէկտեղ թշնամւոյն մեծ ճակատ մը տայ: Շերեմեթեւ, եւ ուրիշ քանի մը զօրավարներն աս պատերազմին սկիզբ տալով դէպ ի Միթաւիա, Լէօվէնհաուփթին վրայ քալելու սկսան: Բայց սաքսոնիական զօրքը Կարոլոսէն պարտեցաւ ու Շերեմեթեւին Լէօվէնհաուփթի հետ ըրած պատերազմն անյաջող գնաց, ու թընդանօթները թշնամւոյն ձեռքն անցան. սակայն Պետրոս աս պարտութիւնը բանի տեղ չդնելով Շերեմեթեւին ասանկ կը գրէ. "Մի՛ յուսահատիր, սրտիդ տխրութիւնը փարատէ. միշտ յաջողութիւն գտնելը՝ շատ անգամ ալ կործանման պատճառ կ՚ըլլայ: Մոռցէ՛ր եղածը ու զօրքդ քաջալերէ": — Աս միջոցիս Պետրոս անձամբ պատերազմի ասպարէզն ելաւ: Միթաւ ու Պաւսքէ ամրոցները ամենայն խստութեամբ պաշարուեցան, Լէօվէնհաուփթ որ շատ տկարացած էր, ամրոցը թշնամւոյն ձեռքն յանձնեց, ասանկով Սեպտ. 5ին Միթաւ ինկաւ, ու քիչ մը ետքը Պաւսքէ բերդն ալ անձնատուր եղաւ, որով ամբողջ Քուրլանտիան Ռուսաց իշխանութեան տակ մտաւ:

## 32.

Աս գործողութեանց ժամանակ Կարոլոս Թագաւորն անակնունելի անգործունէութեան մէջ ժամանակ կը կորսնցընէր։ Լեսչինսքին աթոռ հանելու ջանքով բոլորովին զբաղած էր եւ գուցէ աս ըրածէն մեծամեծ բաներ յուսալով իր ահագին ու զօրաւոր հակառակորդը բանի տեղ չէր դնէր։ «Իմ խարազանս, կ'ըսէր, չէ թէ միայն Մոսկուայէն, այլ նաեւ բոլոր աշխարհքէն ռուսի սինլքորը ջնջելու վերցընելու բաւական է»։ Սակայն անդիէն ռուսի Կորլով ու Շոմպուրկ հրամանատարները յանդգնութեամբ մինչեւ Բրակա ամրոցը գացին ու Նորընտիր Թագաւորին անձնապահ զօրքը գերի առին, ասոր վրայ Կարոլոս իր ամենազօր զօրութիւնը Ռուսաց ցուցընելու համար դէպ ի Վարշաւ ճամբայ ելաւ։

Հիմակ մտադրութեան արժանի տեղն հոս էր, ինչու որ թէպէտ Աւգոստոս Սաքսոնիայի մէջ մինակ Շվետ զօրավարի մը դէմ 20,000 զօրք ունէր, սակայն ասանկ Նորընտիր զօրքով պատերազմ ընելէն շատ կը վախնար ու կը սպասէր որ յառաջ Ռուսերն ու Շվետները իրարու հետ զարնուին. բայց Պետրոս ալ Կարոլոսի ու Լէօվէնհաւփթի դէմ մէկէն մեծ պատերազմ մը բանալու չյանդգնելով, Դանիան ու Բրուսիան դաշնակցութեան հրաւիրեց, սակայն ըրած խնդիրը երկուքէն ալ մերժուեցաւ, ինչու որ առջինը արդէն մէյ մը Շվետի զօրութեան փորձն առած էր, ու երկրորդը իր մեծնալուն բաղձանացը ժամանակը հասած չէր տեսնէր։ Զարը Կրոտնոյ քաղաքին մէջ Աւգոստոս Թագաւորին՝ որն որ աս միջոցին հոն եկած էր, օգնութիւն ու պաշտպանութիւն խոստանալով՝ զինքը բոլոր զօրաց հրամանատար կարգելէն ետեւ ելաւ Մոսկուա գնաց։

Հազիւ թէ Զարն իր մայրաքաղաքն հասած էր,

մէյ մ'ալ Աժտէրխանի շփոթութեանց լուրն առաւ. Հին ազգայնութեան հոգին Նորէն գրգռած էր. կղերականներէն սկսեալ մինչեւ ստորին ազնուականներն իրենց իրաւունքն ու արտօնութիւնները կորսնցուցած կը համարէին ու անանկ կը գուշակէին որ յառաջուան ռուսական մեծութիւնն ու փառաւորութիւնը բոլորովին պիտի կործանի ու տէրութիւնը Չարին սիրելի օտարականաց ձեռքը պիտի իյնայ. ամենուն բերանն ասանկ անհիմն համբաւներ կը պտըտէին: Եօթը տարի ետքը, կ'ըսուէր, ամուսնանալն ալ պիտի արգելուի, որպէս զի ռուս կնիկներն օտարականաց հետ կարգուելով բազմանան ու բոլորովին Նոր ազգ մը յառաջ գայ: 1705ին Օգոստոսի մէջ անթիւ հարսնիքներ կ'ըլլային, որովհետեւ իբրեւ ստոյգ կը համարէին թէ քիչ մ'ետքը ազգայնոց իրարու հետ ամուսնանալը պիտ'որ արգելուի: Աս հարսանեաց հանդիսութեանց առենն երեւակայութիւններն ան աստիճանի տաքցան, որ քաղքին մէջ ասդին անդին գունդ գունդ բազմութիւն երեւնալու սկսաւ ու 300 հոգի քաղքին դրան վրայ յարձակեցան, պահապանները սպաննեցին, քաղքին մէջ գտնուող օտարականաց վրայ ինկան ու յարձակման զանգակներ զարնելով ընդհանուր յեղափոխութեան նշան տուին: Խռովութիւնն երթալով աճեցաւ ու Յակոբ Նոսով անուամբ մէկը խռովարարաց գլուխն անցնելով՝ բոլոր ժողովուրդը ոտք հանելու համար չորս դին հրեշտակներ խաւրեց: Չարը Մոսկուայի մէջ աս ամէն եղածներն իմանալով Շերեմեթեւ սպարապետը վարժ գօրքով անմիջապէս ճամբայ հանեց պատուիրելով որ իսկզբան խռովութիւնն հանդարտութեամբ զսպելու ջանայ ու եթէ չյաջողէր նէ, ան ատենը զէնք գործածէ: Շերեմեթեւ առած հրամանին համաձայն գործելու սկսաւ, սակայն մոլեռանդ բազմութիւնը հպատակութիւն ու

թողութիւն բառերուն ամէնեւին միտ դնել չէր ուզեր։ Շերեմեթեւ իր 3 հազարովը 10 հազարի դէմ ելաւ ու քիչ ատենուան մէջ քաղաքը հանդարտեցաւ, ժողովրդեան ընդհանուր թողութիւն տրուեցաւ ու ապստամբութեան գլխաւորները Մոսկուա տարուեցան։

Չարն իր այնչափ զբաղմանց մէջ իր տէրութիւնը ներքուստ յառաջացընելու փոյթն ամենեւին չէր մոռնար։ Վաճառականութեան, ճարտարարուեստի (Industrie) ու ժողովրդեան լուսաւորութեան համար հարկաւոր եղած շէնքերը նորոգուեցան ու շինուեցան։ Վաճառականութեան դիւրութեան համար դրամները փոխուեցան, երկաթի ու չուխայի գործատունները մեծ յառաջադիմութեան մէջ էին. եւ ի՞նչպէս կրնար աս գործաւորաց յառաջադիմութեան եռանդը չքորբոքել երբոր կը տեսնէին, որ իրենց Կայսրն ու Տէրը իրենց ձեռքէն ելածները կը հագնի ու կը գործածէ։ Իսկ որչափ մեծ էր Պետրոսի ուրախութիւնը. "Գործքն աղէկ յառաջանալու վրայ է, կը գրէ Մենշիքովին, որն որ չուխայի գործատանց վերատեսուչ էր, ու Աստուած մեզի աղէկ պտուղներ կը հասցընէ, անանկ որ կերտուած նիւթերէն ինծի հանդիսական զգեստ մը շինել տուի։ Աստուած տայ որ զՁեզ նորէն տեսնէի ու ասոր համար մասնաւոր ձեզի շնորհակալ ըլլայի"։

Շատ անգամ անձամբ երկաթի գործատանց մէջ կը գործէր ու ինչպէս իր բնութիւնն էր, ամէն բան կը տեղեկանար։ Մոսկուայէն 60 գրկաչափ հեռու Իսթիա տեղը Միւլլեր անուն մէկուն գործատանը շատ անգամ այցելութեան կ'ելլէր։ Երբոր անգամ մ'իր առողջութեան վիճակին պատճառաւ քիչ մ'ատեն վերջիշեալ տեղը կենալու պարտաւորեցաւ, գարնանային զուարճութիւն կը համարէր՝ հանգստեան ատենները նոյն տեղը երկաթ հալե-

ցրնել ու ծեծելը. այսպիսի ատեններ իր քովը գտնուած ազնուականներն ալ յակամայ կամս պէտք էր որ աս գործքերուն մէջ իրեն մասնակից ըլլային. որովհետեւ Չարըլ եւ ոչ կրնար մտածել որ այնպիսի մէկը կարող ըլլայ գտնուիլ որ աս տեսակ գործքերու ընդդիմութիւն ունենայ: Պետրոս հոս անցուցած չորս շաբթուան մէջ 18 ֆօօթ (1 փութը 20 քաշ կամ օխա է) երկաթ ծեծեց: Մոսկուա դառնալէն ետքը գործատան տիրոջը գնաց ու հարցուց, որ մէկ ֆօօթ երկաթ ծեծելուն վարձքն ի՞նչ է: Երեք գօբէյգ պատասխանեց Միւլլեր: Ուրեմն, ըսաւ Չարը, իմ գործածիս համար 18 ալթըն վճարէ: Շփոթեցաւ Միւլլեր ու Չարին 18 դուքաթ տուաւ ըսելով թէ անանկ բարձրապատիւ գործաւորի չէի կրնար անանկ ցած վարձք տրուիլ "Ա՛ռ դուքաթներդ, ըսաւ Պետրոս, ես յառաջուան ըսած գնոյս չափ աշխատեցայ, դուն միայն իմ աշխատանացս վարձքը տուր, որ երթամ զոյգ մը կօշիկ գնեմ, որուն հիմակ շատ հարկաւորութիւն ունիմ": Աս ըսաւ ու իր պատռտած կօշիկները ցուցուց: Միւլլեր իր պարտքը վճարեց ու Չարն ստակն առնլուն պէս վազեց կօշկակարի խանութ գնաց զոյգ մը կօշիկ գնեց ու միշտ մեծ ուրախութեամբ ամենուն կ'ըսէր, "Ասոնք իմ ձեռացս աշխատութեամբը վաստըկեցայ":

## 33.

Պեթերսպուրկ՝ որ իր աչքին բիբն էր, ամենայն կարելի փութաւորութեամբ կը զարդարէր եւ որպէս զի քաղաքը ժողովրդեան սիրելի ընէ, Միթաւէն պտղոյ ծառեր բերել տուաւ ու գրեց որ զանազան գեղեցիկ ծաղիկներ ալ խաւրեն. եւ որովհետեւ իր զօրապետները գրեթէ իր գործաւորներն էին, ինչպէս որ ինքն ալ ամեն բան էր, անոր համար անոնց

խաւրած պատերազմական հրամանագիրներու եզերքը յանձնարարութիւններ ալ կ'ընէր։ Ասանկ ալ 1704ին Յունիսի 14ին Շերեմեթեւ՝ որ Ինկերմանլանտ զանազան ամրոցներու վրայ կ'արշաւէր, հրամանագիր մ'ընդունեցաւ որուն եզերքը ասանկ գրուած էր։ «Վեց մատուտակ իրենց խոշոր ծաղիկներովը անվնաս հոս հասան։ Զարմանալու բան է, որ ինչո՞ւ անանուխ եւ ուրիշ հոտաւէտ խոտեր մէկտեղ չէք խաւրած, մատուտակները որ խաւրեր էիք՝ մէկալնոնք աւելի եւս դիւրաւ կրնայիք խաւրել։ Նայեցէք որ անոնք ալ խաւրուին»։ Մասնաւորապէս Բեթերսպուրկի քովերը կաղնիի ծառեր տնկելու շատ փոյթ տարաւ, որոնք առենօք նաւաշինութեան համար շատ հարկաւոր կրնային ըլլալ։ Աս գործքիս համար Գերմանացի անտառապետներ որոշեց, որոնք Ինկերմանլանտի ու Նովկորոտեան անտառները պտըտելով կաղնիները նշանեցին։ Կաղնիներու զատ անտառ տնկուեցաւ, ու անտառներու վնաս հասցընողներուն վրայ զանազան պատիժներ սահմանուեցան։

1706ին գարնան սկիզբը, գլխաւոր բանակը Կրօտնոյ կեդրոնանալու սկսաւ. Մազեբբա իր քոզաքներովը գլխաւոր բանակին աջ դին էր ու ձախ դին լեհ-լիթուացի զօրքը կը կենար, Ռէօննէ զօրավարն իր ձիաւորներովը ու Միկէլլուքին անդին ասդին յարձակելու վրայ էին։ Շուլէնպուրկ ցրուած Սաքսոնիացիները, Ռուսերն ու օտարականները ժողվելով 20,000ի բանակ մը կազմեց, որն որ գլխաւոր բանակին հետ միանալու համար Սաքսոնիայէն շարժելու սկսաւ ու ամենուն մտադրութիւնը Կարոլոս ԺԲ.ին վրան էր, թէ արդեօք ինչ պիտի ընէ։

Բայց Կարոլոս իր հակառակորդը երկայն չսպասեցուց։ Ձմերուան պաղը ճամբաները չորցուցած ու գետերը սառեցընելով անցանելի ըրած էր. Կարոլոս, որուն առջին տարուայն ամէն եղանակն հաւասար

էր, բանակը շարժելով Վայքսել ու Պուկ գետերէն անցաւ ու բռնութեամբ Նիեմենի վրայէն ճամբայ բանալով եկաւ Կրոտնոյ պաշարեց (1706 Յուն. սկիզբը)։ Բայց Աւգոստոս զօրաց հրամանատարութիւնը Օկիլվիյին յանձնելով, ինք չորս գունդ ձիաւոր զօրքով Շուլէնպուրկի դիմացը գնաց, որպէս զի իրեն հետ միանալով Վարդէ գետին քով Շվետացի գնդին վրայ յարձակի։ Բայց Ռենշիլտ Շվետացի զօրավարը Աւգոստոսին միտքն իմանալուն պէս անոր Շուլէնպուրկին հետ միանալը արգելելու համար, իր քաջ զօրքերովն իրեն դիմացն ելաւ։ Փրաւշթատի մօտերը Վարդէ գետէն քիչ մը հեռու երկու բանակները մէկզմէկ դիմաւորեցին ու պատերազմն սկսելով (Փետրուարի մէջ) Ռենշիլտ միացեալ զօրաց մեծ մասը ջարդեց, մէկ մաս մ'ալ գերի բռնեց. մնացուրնէ ու գերութենէ ազատողներն ալ փախան։ Աս լուրը Չարը շատ տրտմեցուց. "Աստուած գիտէ աս տրտմութեան սաստկութիւնը, կ'ըսէր, մենք մեր սորկովը տրտմութիւն ու ողբ կը գնենք" ու Շուլէնպուրկին համար ասանկ կ'ըսէր, "Շուլէնպուրկ զօրավարը 7 ամսուան մէջ 50,000 ռուպլի առաւ, բայց այսպիսի կարեւոր ատեն 50 ֆոքէյֆէ օգուտ չըրաւ ու գողի պէս ելաւ փախաւ, անոր համար եթէ ասոր հատուցում մ'ընել կ'ուզենք, ասանկներուն երկայն ատեն ստակ չկերցընենք"։

Սորէն Կրոտնոյին առջեւը դառնանք։ Պետրոս Մոսկուայի մէջ Կարոլոսի շարժելուն լուրն առաւ. աս ատեններս Շերեմեթեւ դեռ Աժտերխան ապըստամբներու հետ զբաղած էր, ու Չարն ալ հիւանդագին։ Սակայն աս ժամանակը հիւանդութեան միտ դնելու ժամանակ չէր. աճապարեց ճամբայ ելաւ, որպէս զի Կրոտնոյ օգնութիւն հասցընէ ու կը կարծէր որ Կարոլոսէն յառաջ Կրոտնոյ կը հասնի։ Սակայն դեռ հոն չհասած Մենչիքով դիմացն ելաւ ու

լուր բերաւ որ Կրոտնոյ պաշարուած ու մեծ վտանգի մէջ է ու Աւգոստոս Լեհաստանի թագաւորն ալ թոզուցած գացած է ։ Քաղքին մէջիններուն պաշարը քիչ էր եւ քաղքէն քիչ մը հեռու գտնուող ռուսական զօրքն ալ նշանաւոր զօրք մը չէր ։ Ռոզն զօրավարը Լէօվէնհաւփթ սպարապետը պիտի դիտէր, որպէս զի անոր թագաւորին հետ միանալն արգելու, գերղացիք Կարոլոսն անհանգիստ պիտի ընէին եւ Ռէօննէ զօրավարը փոքր յարձակումներ պիտի ընէր ու Մասեբբային ալ յանձնուեցաւ որ դէպ ի Ալուբցք յառաջանայ, պատրաստ պաշար ունենայ, կամուրջներ ձգէ, որպէս զի ռուսի զօրքը Կրոտնոյէն ետ դառնալու ատեն հանգիստ ճամբայ գտնէ ։ Սակայն բերդին հրամանատարը Սաքսոնիացւոց գալստեանը կը սպասէր, որովհետեւ աս ատենս Ֆրաւենշթատ պատերազմը դեռ եղած չէր ։ Պետրոս ան մտաց վրայ հաստատուն կը կենար, որ Սաքսոնիացիներէն ամենեւին բան մը չյուսան ու բերդին հրամանատարին թուղթ մ'ալ գրեց, որուն մէջ կ'ըսէ, "Որովհետեւ ասկէ ետքը սաքսոնիական զօրքէն ամենեւին բան մը չյուսացուիր, ինչու որ գալու ալ ըլլան, անմիջապէս նորէն ետ կը փախչին ու մերիններուն կորստեանը պատճառ կ'ըլլան, յառաջուան գրածս նորէն կը գրեմ ու կը կրկնեմ որ ասկէ ետքը ուրիշ բանի միտ չդրուի, բայց եթէ ազատութեամբ ետ դառնալու,,. կ'ըսէ նաեւ նոյն գրութեան մէջ որ արդէն կամուրջները պատրաստուած են, սառոյցներու քակուիլը ամենեւին վնաս մը չ'ըներ ։ Բերդին մէջինները Պետրոսի խորհրդին հնազանդեցան ու իրենց ամէն բաները մէկտեղ առնլով բերդը պարպեցին ։ Թէպէտ Կարոլոս իր թշնամին ասանկ դիւրաւ թողուլ չէր ուզեր ու արդէն ալ փախչողներուն ետեւէն ինկաւ, սակայն Ռուսաց կանոնաւոր ետ քաշուելուն համար չկրցաւ մեծ վնաս մը հասցը-

նել, որովհետեւ ինքն ալ պաշարի պակսութենէ ու ճամբաներու անյարմարութենէ կը նեղուէր ու չէր կրնար յառաջ երթալ։ Անկէ ետքը Կարոլոս հոս քիչ մ'ալ ժամանակ անցընելէն ետքը ձգեց Կրոտնոյ ու իր զօրացը հանգիստ տալու համար Վոլինիա դարձաւ։

Ասոր վրայ Լեհաստան նորէն Չարէն մեծամեծ օգնութիւններ խնդրելու սկսաւ ու ցուցուց որ եթէ թող տրուելու ըլլայ որ Լեհաստան կործանի, Ռուսաստան ալ մեծ վտանգի մէջ կ'իյնայ։ Չարն իրենց նորէն օգնութիւն խոստանալով իր տէրութիւնը ամրացընելու սկսաւ, սահմաններուն վրայ թումբեր քաշուեցան, նոր զօրաժողով եղաւ, Շվետի հակում ցուցընող Ինկերմանլանտի վրայ զանազան զգուշութիւններ եղաւ, զօրաց ազնիւ մասը Ուքրանիա խաւրուեցաւ, որովհետեւ համբաւ մը կը պտըտէր, որ Կարոլոսին միտքը Ուքրանիա իջնալ է։ Չարն ալ Քիեւ գնաց ու քաղքին դիրքը շատ հաւնելով մօտերը ամրոց մը դրաւ։

Աս միջոցիս Կարոլոս Վոլինիայի մէջ հանգիստ կ'առնուր։ Աւգոստոս կը կարծէր որ Կարոլոս Լիթուանիա պիտի մտնէ ու Քրաքաւի մէջ զէնքը կը դիտէր։ Պետրոս վախնալով որ չըլլայ թէ Ուքրանիա յարձակի, իր զօրաց ընտիր մասը հոն խաւրած էր։ Բայց երկուքն ալ խաբուեցան։ Կարոլոս յանկարծակի Կալիցիա մտաւ, ու Վայքսել գետէն անցնելով Ռենշիլտին հետ միացաւ ու դէպ ի Սաքսոնիա յառաջանալու սկսաւ (1706 Օգոստ.) որպէս զի ընտրող իշխանը իր ժառանգական երկրին մէջ խաղաղութեան ստիպէ։ Աս միջոցիս Աւգոստոս ինքզինք ամէն կողմանէ նեղ մտած տեսնելով Կարոլոսին հրեշտակներ խաւրեց ու Ալթրանշթատ քաղքին մէջ Լիւցն քաղքէն քիչ մը հեռու՝ որուն դաշտերուն վրայ շատ տարի յառաջ Գերմանիայի երեսնամեայ պատե-

րազմին ժամանակը Շվետի թագաւոր մը մեռած էր, հիմակ Կարոլոս իր սեփական ազատութեան օրէնքները հրատարակեց։ Աւգոստոս Լեհաստանի թագէն հրաժարեցաւ, Ռուսաստանի հետ ամենեւին հաղորդութիւն պիտի չունենար, գերիները, մատնիչները ու դասալիքները, բանակին կամ կարասիքն ու պատերազմական նշանները ետ տուաւ։ Այս թէութիւններով կատարուեցաւ Ալթրանշթատի խաղաղութիւնը։ Կարոլոս Սաքսոնիան ասանկ անարգ դաշանց մը խոնարհեցընելէն ետքը յայտնի բան էր որ իր սուրը Ռուսաստան պիտի դարձըներ։ Այս բանս Զարն ալ աղէկ գիտնալով ու միանգամայն իր հակառակորդին զօրութիւնն ալ աղէկ ճանչնալով, մեծամեծ պատրաստութիւններ տեսնելու սկսաւ։ Զարն օտար տէրութիւններէ ամենեւին օգնութիւն մը չսպասելէն զատ, եւ ոչ ալ կը յուսար որ իրեն ու Կարոլոսին մէջ խաղաղութեան միջամտութիւն մ'ընեն։ Ռուսաստանի աճող զօրութիւնը արդէն նոյն ատենը Եւրոպային վտանգաւոր կ'երեւար, նոր ձարաքաղաքը որ աս հսկայ տէրութիւնը ծովերու եւ օտար տէրութիւններու հետ կը կապէր, աս կասկածն աւելի եւս սաստկացուց, որուն համար որ Կարոլոս Եւրոպայի հաւասարակշռութեան նորոգիչը կը համարուէր։ Բրուսիան Կարոլոսի վախէն իրեն բարեկամ Ռուսաստանին չէր կրնար օգնութիւն մ'ընել։ Ծովային վաճառականութիւն ունեցող տէրութիւնները իրենց շահաւոր չէզոքականութիւնը թողուլ չէին ուզեր։ Աւստրիան Սպանիայի յաջորդութեան պատերազմի մէջ ընկղմած էր ու Գաղղիան ալ առանձինն Ռուսաստանի հետ գործք տեսած չունէր։ Պետրոսին միակ նեցուկն իր սեփական զօրութիւնն եղաւ ու ամենայն շրջահայեցութեամբ իր հզօր թշնամւոյն դէմ դնելու կը պատրաստուէր։ Այս միջոցիս Շերեմեթեւ՝ Աժտէրխանէն դառնալով Լե-

հաստանի վերին հրամանատար դրուեցաւ խիստ հրամանով որ պատերազմ տալէն զգուշանայ, երկիրը բոլոր ասպատակէ ու այրէ եւ թեթեւ ձիաւորներով թշնամւոյն յառաջանալն արգելու։

## 34.

Պետրոսին ասանկ արտաքուստ պատերազմներով զբաղած ատենը իր տէրութեանը մէջ ունեցած գործունէութիւնն ալ քիչ մը տեսնենք։ Լեհաստանի զօրաց վերին հրամանատարութիւնը Շերեմեթեւին յանձնուելէն ետքը իր Աժտէրխան բերած զօրքը Նեվայի մօտերը խաւրուած էր, որոնցմով կ'ուզէր Պետրոս Ֆինլանտ արշաւանք մ'ընել։ Արիւնահեղ արշաւանք մ'էր աս արշաւանքը։ Վիպորկ քաղքէն քիչ մը հեռու թշնամւոյն հետ զարնուելէն ետքը նոյն քաղաքն ալ պաշարուեցաւ (1706 Հոկտ.) թէպէտ առանց թնդանօթի, որովհետեւ թնդանօթները դեռ Բեթերսպուրկէն ճամբայ պիտի ելլային. բայց մէկէն լուր մ'եկաւ որ անանկ ձմեռ ատեն ճամբաներու անպիտանութենէ թնդանօթ խաւրելն անկարելի է։ Պետրոս փուճ տեղ քաղաքը պաշարած չըլլալու համար քանի մը թնդանօթ արձակելով ու թշնամւոյն մօտենալը լսելով իր երկիրները քաշուեցաւ։

Թէպէտ աս պատերազմը առանց հետեւութեան մնաց, սակայն Պետրոսին օգտեց, որովհետեւ իմացուեցաւ որ քաղաքին ջրի կողմը՝ ուր որ կամուրջներով ցամաք երկրին հետ կապուած է, շատ տկար է ու նոյն իսկ թեթեւ ու ակար թնդանօթներով բանը կրնայ լմննալ։ "Կը զարմանամ որ, կը գրէ Մենշիքովին, գրեթէ միշտ հոն գտնուողները ասոր ամենեւին միտ չեն դրած„։

Բայց եթէ Պետրոսին՝ իր միտքը դրածն յաջողցընելու համար ունեցած ապահովութեանը վրայ

զարմանալ կ'ուզենք նէ, տեսնենք թէ ինչ փութով ու գործունէութեամբ իր նորաշէն քաղաքը կը կարգաւորէ ու կը կերպարանաւորէ։ 1706ին Մայիսի մէջ Բեթերսպուրկ Պետրոս-Պօղոս ամրոցին հիմը դրաւ։ 30,000 մարդ յարատեւ գործունէութեամբ մը, անհաստատ ու ճախնային երկրի մը վրայ աճագին շէնքը բարձրացընելու կ'աշխատէին եւ հետզհետէ ուրիշ մեծամեծ շինութիւններ սկսելու եռեւէէին, այնպիսի ատեն մը՝ որ արտաքուստ հզօր թշնամի մ'ալ արդէն զիրենք զբաղցուցած էր։ Ասկէ զատ աս ատեններս Պետրոս քանի մը մտադրութեան արժանի գործքեր ալ ունի։ 1706ին Կատարինային Լիթուացի գերուցն հետ գաղտնի՝ ու երկրորդ տարի անկից Կատարինա անուամբ դուստր մ'ունենալէն ետքը յայտնի ամուսնացաւ։ Ասկէ զատ 1707ին պաշտօնակալի պատիւ առաւ, զորն որ նամակով մը Ռոմատանովսքի տեղապահին ասանկ կը ծանուցանէ. «Մեծափառ տէր (Sire). Ձեր Մեծափառութեան հրամանաւը պատերազմի պաշտօնեան այսօր զիս բրէօպրաշէնսքեան գնդին պաշտօնակալ կարգեց։ Մեծափառ Տէր աս պատիւն ընդունելս չէ թէ իմ պարտքերս կատարելուս, այլ Ձեր բարութեանը կու տամ, որուն համար որ Ձեզի՝ թէպէտ տկար բայց անկեղծ շնորհակալութիւն կը մատուցանեմ։ Կը մնամ Ձեր Մեծափ. Պետրոս,,։

Աս ատեններս անդիէն Կարոլոս Սաքսոնիայի մէջ իր կրթեալ զօրքը ժողվելով իր ընելու յարձակմանը նշան կու տայ։ Բոլոր աս զօրքը իր միակ ու անյաղթ թշնամւոյն՝ Պետրոս Մեծին համար էին։ Կարոլոս Ռուսաստանի սիրտը մտնել կ'ուզէր, որպէս զի հոն ամէն բան խաղաղցընելով ան հզօր պետութիւնը իր հզօր ինքնակալովը ոչնչացընէ։ Ան մտօք դէպ ի Վայքսել գետ յառաջանալու սկսաւ ու 44,000ի բանակով մը գետին քովն հասաւ (1707 Հոկտ.)։ Դեռ

չէր գիտցուեր որ արգեօք դէպ ի հարաւ պիտի յարձակի, ինչպէս Մենչիքով կը կարծէր, չէ նէ, ինչպէս Չարը կը կարծէր դէպ ի ան կողմը ուր որ առջի անգամ զէնքն ընկճեցին ու երկիրները ձեռքէն առին: Ռուսական զօրութեան գլխաւոր մասը Տինեպրի քով կենդրոնացաւ, որովհետեւ Պետրոս գլխաւորաբար աս կողմէն կը վախնար ու չէր կրնար հաւտալ որ տէրութեան հարաւային կողմը Մազեբբային հաւատարմութեանը յանձնելը վտանգաւոր է: Բայց Կարոլոս Վայքսելէն անցնելով Թոռն քաղաքը ձմեռելու սկսաւ ու թշնամին երկիւղի ու անհաստատութեան մէջ թողուց ու Պետրոս Բեթերսպուրկէն Մոսկուա գնաց:

Արդէն գիտենք որ Պետրոս միշտ գործունեայ է, ամենեւին անգործ չիկենար ու ամէն գործքին թէպէտ պզտիկ ըլլայ մասնակից կ'ըլլայ: Ուր որ երթայ՝ գործելու կարգաւորելու բան մը կը գտնէ ու ինչ որ կ'ընէ ամենայն հոգւով կ'ընէ: Որովհետեւ զինք կենսագրելն ու հետաքրքիր ընթերցողները իր գործոց տեղեակ ընելը մեր նպատակն է, ինչո՞ւ համար զանց առնունք ան փոքր բաներն ալ՝ որոնք իր վառվռուն հոգւոյն ու անխոնջ փութոյն մէյ մէկ ցոյցերն ու նշաններն են:

Պետրոս Մոսկուա հասնելուն պէս իր բոլոր մտադրութիւնը իրաւանց ու դրամի վրայ ուղղեց. Նոր ատեաններ դրուեցան, եւ եղած կարգադրութեանց համաձայն ամէն վճարմանց տասներորդ մասը պղինձէ ստակ պիտի ըլլար, որպէս զի աս ամենէն անարգ համարուած ստակն ընդունելութիւն ու աժէք ունենայ: — Մոսկուա մեծ դեղարան մ'ունեցաւ ու բաց ի փոքր Ռուսաստանէն, ամէն գաւառներուն դեղն ասկից կը խրկուէր: Ասկէ զատ իր սովորութեանը համաձայն գործատանց ստէպ այցելութեան կ'ելլէր, հանգստեան ատեն հիւանութիւն կ'ընէր ու

ամէն տեսակ գործք կը տանէր: — Այս միջոցիս իմացուցին իրեն որ Նարվայի ու անոր բոլորտիքն եղող բնակիչքը Շվետի մեծ հակում ունին, ու քաղքին մօտերը կրակ ձգեր են: Զարն ասանկ ատեն վնասակար սեպելով Նարվայէն ու Տորբատին բոլոր բնակիչները ներքին Ռուսաստան կը փոխադրէ (1708 փետր.) ու հազիւ 6 տարի ետքը իրենց հայրենիքը դառնալու հրաման կու տայ:

Զմերուան խստութիւնը քիչ մը մեղմանալուն պէս Կարլոս իր ձմերանոցէն ելաւ, վտանգ ու դժուարութիւն բանի տեղ չդնելով Լեհական-Ռուսական սահմաններէն ճախիններու եւ անտառներու մէջէն դէպ ի Նիեմէն գետ յառաջ կ'երթար: Զարն որ աս միջոցիս իր բանակը գացած էր Կարոլոսին ստուար բանակին շարժումը իմացաւ ու Կրոտնոյ փութաց: Շատ չանցաւ Կարոլոսին յառաջապահները ամրոցին առջին երեւցան Ռուսաց Միւլենֆէլտ անուն ձիաւորաց զօրավարը հրաման տուաւ որ մինչեւ իր վերջին զինուորը Նիեմէնի կամուրջը պաշտպանէ, սակայն 1708 փետրուարի մէջ քանի մը հարիւր ձիաւորաց գլուխն անցած Շվետի դիւցազնը երեւցաւ, շուտով մը կամուրջը գրաւեց ու Միւլենֆելտ մատնիչ համարուելուն ինքզինք Շվետաց յանձնեց. Կրոտնոյի մէջինները չկրնալով դէմ կենալ քաղաքը պարպեցին ու դէպ ի Վիլնա ետ քաշուեցան: Փախչողները իրենց ետեւէն թշնամին արգելելու համար անցած տեղերնին աւեր ու անապատ կը դարձնէին. ասանկ մինչեւ Պերեզինա հասան, որուն անդիի եզերքը ռուս զօրքը բանակեցաւ, Պորիսովին կամուրջը գրաւուեցաւ ու Բելեպքովի սահմաններուն վրայ գտնուած ամրոցները բոլոր ամրացան: Պետրոս ասանկ սահմաններն ամրացընելէն ետքը ելաւ Նորէն Բեթերսպուրկ գնաց, որպէս զի ամրոցին յառաջանալը տեսնէ. կ'երեւայ թէ հոս

դարձեալ սաստիկ տենդէ մը բռնուած ըլլայ. ինչու որ Մենշիքովին ասանկ կը գրէ "Կ'աղաչեմ, Թշնամւոյն գալուստը աղէկ մը չստուգած՝ զիս մի՛ կանչեր....":

## 35.

Երկու ինքնակալաց իրարու դէմ ելլալը չպատմած այնպիսի դէպք մ'ալ յառաջ բերենք որ Հարաւային Ռուսաստանի մէջ Պետրոսին կորուստ կը սպառնար: — Պաշքիրներու ապստամբութիւնը զսպուելուն պէս, նոյն պատճառաւ Տոնի Քոզաքներուն մէջ յեղափոխութիւն մը ծագեցաւ: Ազախու եւ Վորոնէժի մէջ բնակած Տոնի ազատասէր ու աւազակ Քոզաքները Թափառական ազգաց պէս պաճարաբուծութիւն կ'ընէին եւ Ռուսաստանի ուրիշ պարտաւորութիւն մը չունէին բայց եթէ հարկաւորութեան ատեն 20,000 զինեալ պատերազմելու կարողութիւն ունեցող մարդ պիտի տային: Շատ երկայն չտեւեց, աս ապստամբութիւնն ալ զսպուեցաւ:

Կարոլոս ասանկ ատեն մը Պերեզինայէն անցնիլը յարմար սեպեց. Շքաւէ զօրապետը դէպ ի Պորիսով խաւրելէն ետքը, որպէս զի Ռուսաց կարծեցընէ, որ նոյն գետէն կ'ուզէ անցնիլ, ինքն անհնարին կորուստով գլխաւոր բանակովը անտառներէ, ճախիններէ, ու անապատ դարձած տեղերէ անցնելով Պերեզինայի մօտ եղող Քոզաքներու գունդը ցրուեց ու բանակը նոյն գետէն անցուց. աս միջոցիս Ռուսները ետ քաշուելու ստիպուեցան ու Պապիչ գետակն անցնելով աղէկ դիրք մը ստացան, որովհետեւ առջեւնին յիշեալ գետակին ճախինային ափունքը ետեւնին անտառ ու քովերնին թումբեր կային: Սակայն բան մը չէր կրնար Կարոլոսն արգելել: Հասաւ, Ռուսաց վրայ յարձակեցաւ ու սաստիկ պատերազմը սկսաւ: Կարոլոսի կեանքը վտանգի մէջ

էր, ձիէն ճախճնի մէջ ինկաւ. ոտք ելաւ անմիջապէս առիւծն ու տեղը գրաւեց որով ռուսական բանակը Ցնիեբերէն անցնելով միշտ ետ քաշուելու պարտաւորեցաւ: Աս պատերազմէս քանի մ'օր ետքը Զարը զօրաց հետ միացաւ: Կարոլոս քիչ մ'ատեն Ցնիեբէրի քով Մոհիլեւ քաղաքը ժամանակ անցուց որով Զարն իր կարծեաց մէջ հաստատուեցաւ որ Կարոլոս կ'ուզէ Ինկերմանլանտ ու Լիֆլանտ մտնել, անոր համար նոյն գաւառները զօրացընելու սկսաւ ու իր գլխաւոր զօրութիւնը Շքլով ու Կորքի ժողվեց:

Նորէն ոտք ելաւ Կարոլոս ու Ցնիեբերն անցաւ եւ Լէօվէնհաուփթ զօրավարին չսպասելով դէպ ի Հին Ռուսաստան յառաջ գնաց: Ասոր վրայ Ռուսական զօրաց հրաման եկաւ, որ դէպ ի Մըսթիսլաւ ետ քաշուին, որովհետեւ ա՛լ յայտնապէս կը տեսնուէր որ Կարոլոս Սմոլենսք երթալ կ'ուզէր: Թէպէտ Կարոլոս միտքը դրած էր, որ Լէօվէնհաուփթին հետ միանայ, սակայն անի անդին Ռէօննէ զօրավարէն արգելուած ըլլալուն միանալն անկարելի ըլլալով կամաց կամաց յառաջանալու սկսաւ եւ իր յառաջապահ գունդը Ռուսի զօրաց մէկ բաժնին հանդիպելով զարնուեցաւ ու յաղթուեցաւ: Կարոլոս աս դէպքիս վրայ կատղելով իր ճամբան յառաջ տարաւ ու նորէն Ռուսաց հետ զարնուելով մեծ վտանգի մէջ ինկաւ, բայց ասով ալ չզգաստացաւ: “Կ'երեւայ թէ, կ'ըսէ Սեկիւռ՝ իր Ռուսաց պատմութեանը մէջ, ան մարդն, որ կրեթէ ինքզինք աստուածացուցած էր, ճշմարիտ Աստուածն իրմէ հեռացուց,,:

Կարոլոս Լէօվէնհաուփթի հետ միանալն ա՛լ իրօք հարկաւոր կը տեսնէր, որն որ Ռիկայէն դառնալով Ցնիեբերի վրայէն անցնելու եւ իր թագաւորին հետ միանալու վրայ էր: Պետրոս միտքը դրաւ, որ ամենայն եղանակաւ աս միանալն արգելու. աս միտքով Մենշիքով ճամբայ ելաւ ու Զարն ալ իր ետեւէն

գնաց, որպէս զի Շվետացի զօրավարին գետէն անցնիլն արգելու։ Լէօվէնհաուփթ Ռուսաց գալուստն իմանալուն պէս ընթացքը կրկնապատկեց ու քիչ մնաց որ կ՚արգելուէր եթէ Շվետներէ կաշառուած Հրեայ մը Ռուսներուն սխալ ճամբայ մը ցուցընելով զիրենք չխաբէր, փուճ տեղ Ռուսները Լէօվէնհաուփթի գալստեանը կը սպասէին, արդէն ինք երեք օր էր որ նոյն գետէն անցած էր. վազեցին Ռուսերը ու Լիեզնա գեղին քով Շվետաց չարաչար ջարդ մը տուին։ Լէօվէնհաուփթ՝ թէպէտ չյաղթուեցաւ, բայց հազիւ 6000 հոգի կրցաւ իր թագաւորին տանիլ. բարկացաւ թագաւորը ու զինքն մինչեւ Բոլթավայի պատերազմը պաշտօնէ զուրկ թողուց ու բերած զօրքը միւս գունդերուն մէջ ցրուեց։ — Հոս պատմութիւննիս քիչ ատեննուան համար ընդհատելով դառնանք ճանչնանք այն մարդը, որն որ մինչեւ հիմակ քանի մ՚անգամ յիշեցինք ու հետագայ պատմութեանց մէջն ալ յաճախ պիտի յիշենք։

Յովհաննէս Մազեբբա լեհ ազնուականաց ցեղէն ու պզտիկութեանն ատեն Լեհաց Յովհաննէս Քազիմիր թագաւորին արքունեացը մէջ մանկլաւիկ (page) էր։ Աս անկիրթ երիտասարդը ազնուական օրիորդի մը հետ շատ բարեկամանալով զինքը հափշտակել ուզելուն, օրիորդին հայրն աս բանս իմացաւ եւ սաստիկ բարկանալով Մազեբբան վայրենի ձիու մը վրայ կապեց ու իր բախտին թողուց։ Ասանկով երիտասարդը վրան գլուխը պատռուած տկարցած ու սաստիկ անօթի Տնիեբերի Քոզաքներուն ձեռքն ինկաւ, որով ինքն ալ անդին ասդին ասպատակող ու յանդուգն վայրենաբարոյ մարդկանց մէջ մնաց, որոնք որսի, գողութեան ու տղայ յափշտակելու կը պարապէին։ Աս ատեններս երկու երեւելի անձ վերին իշխանութեան պատճառաւ իրարու դէմ պատերազմ բացին, Մազեբբան Պետրոս Տորոշինքոյի

կողմը բանեց, որն որ Լեհական պաշտպանութեան տակ էր, բայց իր տիրոջը դեսպանութիւն ընելու ատեն Սաբորոժկացի Քոզաքներուն ձեռքն ինկաւ, որոնք զինքն առնելնուն պէս իրենց մեծին՝ Եուան Սամոյլովիչ Բոբովին տարին, որն որ ռուսական ազդեցութեան տակ էր։ Հոս Մազեպպա երդմամբ Տորոշենքոյի կողմնակցութենէ հրաժարեցաւ ու իր նոր տիրոջը հաւատարմութիւն խոստացաւ, եւ կ'երեւայ թէ տիրոջը շատ սիրելի եղած ըլլայ, ինչու որ քիչ ատենուան մէջ հետզհետէ զանազան պատիւներու հասաւ ու ծանրակշիռ խոստակցութեանց համար Մոսկուա կ'երթար, որով Չարին ալ ծանօթացաւ։ Անխիղճ ու անհաւատարիմ խորամանկը հոս իր տիրոջ ու բարերարին դէմ գործելու սկսաւ ու վերջապէս բանն ան աստիճանի բերաւ որ Բոբով Սիպիրիա աքսորուեցաւ ու մատնիչ Մազեպպան անոր տեղն անցաւ եւ ասչի բերան ռուսական պետութեան առջեւ մեծ արդիւնք ցուցուց, այսինքն Տաճկական պատերազմի ատեն ամրոցներ շինեց, ապականած քաղաքները նորոգեց . . . ։ Սակայն ասոնք չէ թէ Ռուսաստանի սիրոյն, այլ իր ապագայ անկախութեանը համար կ'ընէր։ Չարին սրտին վրայ ալ անանկ տիրեց ու զինքն անանկ վստահեցուց որ Մազեպպան բամբասողին պատիժը մահ էր։ Եւ սակայն խորամանկ Մազեպպան խոնարհած աչքերով, կախած երեսով ու կոկորդիլոսի արցունքներով Չարին առջեւը կը տրտնջար թէ թշնամիները կը ջանան որ զինքն իր ամենասիրելի տիրոջն աչքէն հանեն։ Պետրոս ատենգմով խաբուած հարաւային Ռուսաստանին պաշտպանութիւնն իրեն յանձնած էր։ — Սակայն Մազեպպա իր խորին խոնարհական անձնանուիրութեանն ատեն շվետ-լեհական կողմնակցութեան հետ բանագնացութեան մէջ էր ու Չարին դէմ իրենց մեծ օգնութիւններ կը խոստանար եթէ զինք լեհական վերա-

դաշնութեամբ Ուքրանիայի տէր ըլլան։ Կարոլոս խնդիրքը յանձն առաւ եւ Մազեբբան քանի որ Շվետաց վրայ հաստատուն ապահովութիւն մը չունէր, աս խաղին մէջ ճարպկութեամբ իր վաստըկած ապահովութեան վնաս մը չհասուց. մէկ կողմանէ իր նախանձաւորները իբրեւ Շվետաց բարեկամ Չարին կը մատնէր, ու անդիի կողմանէ Ուքրանիայի մէջ ժողովրդեան սէրը Ռուսի իշխանէն կը հեռացընէր։ Առաջիկայ գործքիս համառօտութիւնը չիներեր մեզի մանրամասն յառաջ բերելու այն ամենայն որով խորամանկը իր խաբէութիւնը յառաջ կը տանէր, աս գիտնալը միայն բաւական է, որ բանն անանկ քաջութեամբ մը յաջողցուց որ Չարը եւ ոչ իր սիրելիներուն Մազեբբայի դէմ ըրած բողոքներուն միտ կը դնէր. բայց երբոր խաբէութիւնը յայտնապէս երեւան ելաւ, ան ատեն իր աչքերն ալ բացուեցան։

## 36.

Արդէն երկայն ժամանակէ վեր Կարոլոս ԺԲ. Սթանիսլաւոս Թագաւորին ձեռօքը, Մազեբբային, Քոզաքներուն գլխաւորին, հետ գաղտնի բանակցութեան մէջ էր։ Քոզաքները Ուքրանիա երկրին բնակիչներն են, որ յառաջ (1654) թէպէտ ինքզինքնին ռուսական պաշտպանութեան տակը թողուցած էին, սակայն հիմակ Մազեբբային գրգռելովը իրենց աս վիճակին համար մեծ տժգոհութեան մէջ էին։ Մազեբբան՝ թէպէտ 70ամեայ բայց փառասէր մէկն ըլլալուն հիւսիսային դիւցազնին զէնուց յաջողութիւնը կ՚ուզէր իր փառասիրութեանը օգտին գործածել ու թագաւորական պատիւ առնալ։ Խոստում առաւ Կարոլոս, որ 20—30,000 ըստ երեւութի Չարին համար պատրաստուած զօրքը Ցնիեբերէն անցնելէն ետքը Մազեբբան Շվետի զօրաց հետ կը միա-

ցընէ։ Ինչպէս գիտենք Մազեբբա Զարին սիրտը շահած եւ Ռուսաց մէջ մեծ անուն հանած ըլլալուն, ըրած մատնութիւնն ալ անակնունելի էր։ Կարոլոս ասանկ խոստումներէ խաբուած Ուքրանիայի բերրի երկիրները առանց արիւն թափելու ձեռք ձգած կը համարէր ու կը կարծէր, որ աս երկրին բերդերէն երկու՝ Մոսկուա եւ Վարշաւ մայրաքաղաքներուն վրայ ալ կրնար իշխել։ Ուստի աս գաղափարներով, ու իր զօրավարացը խորհրդին հակառակ, Ուքրանիա մտաւ. բայց ի՜նչ զարմանք որ Մազեբբան իրեն խոստացած 20—30,000 զօրքի տեղ հազիւ 3000 կրցաւ բերել ու խոստացուած պաշարները ամենեւին չէին երեւար։ Բանակն երթալով խեղճութեանց մէջ կ'իյնար, զօրքը պատերազմէ, պաղէ, անօթութենէ ու հիւանդութենէ տկարացած էր եւ ուրիշ հազարումէկ տեսակ ողորմելութենէ հազարաւոր զօրքեր գերեզման կ'իջնային։

Պետրոս վերահաս ձմեռն աւիթ առնլով խաղաղութեան հակում մը կը ցուցընէր, բայց անողոքելի Կարոլոսին պատասխանը միշտ աս էր "Միայն Մոսկուայի մէջ կ'ուզեմ խաղաղութեան ստորագրել"։ Աս պատասխանին վրայ Պետրոս ասանկ կ'ըսէր, "Իմ Կարոլոս եղբայրս ինքզինք Աղեքսանդր ձեւացընել կ'ուզէ, բայց զիս Դարեհ մը պիտի չկարենայ գտնել"

Մ՚եծ օգուտ եղաւ Պետրոսին աս ատեննուան սաստիկ ցուրտը, որով Կարոլոս սաստիկ վնասներ կրեց եւ ստիպուեցաւ իր Կատիչ եղած զօրացը օգնութեան երթալու, որովհետեւ թշնամեաց կողմանէ Լըպըտին զօրավարին գունդը ասոնց դէմ կու գար. Թէպէտ ընելու ճամբան միայն մէկ քանի մղոն ճամբայ էր, ի վերայ այսր ամենայնի իր զօրացը երեւելի մասը սառեցաւ ու աւելի եւս խեղճութեան մէջ ինկաւ երբոր Կատիչ հասնելով, քաղաքն արդէն զօր-

քով լեցուած ըլլալուն, իր բերած զօրացը տեղ չգտնուեցաւ։ Եթէ ետ դառնալ չուզէր պէտք էր որ յառաջ երթար ու հանգչելու տեղ մը գտնէր։ Վիբորկ քաղաքը շատ տկար եւ Ռուսաց ձեռքն էր, բայց Ռուսերը բանն իմանալով խրամները ջրով լեցուցին, որով քիչ ատենուան մէջ Շվեդաց առջին սառոյցի լեռներ բարձրանալու սկսան։ Շվեդաց կողմանէ եղած երկու յարձակումը պարապի ելաւ, Կարոլոս երրորդ յարձակման նշանն ալ տուաւ, պէտք էր որ աս տեղն առնուր, որովհետեւ ձմերելու համար տեղ մը պէտք էր։ Անհնարին կորուստով աս յարձակումն յաջողեցաւ ու քաղաքն անձնատուր եղաւ (1709, Յունուար), բայց անանկ ապականած ու կործանած էր, որ Կարոլոս իր զօրացը մեծ մասը Սենքով փոխադրելու ստիպուեցաւ։

Այսանկ անտանելի դժուարութեանց մէջ Կարոլոս զինադադար կը խնդրէր։ Պետրոս պատասխանեց "Խաղաղութիւն կ'ուզեմ եւ ոչ զինադադար"։ Խաղաղութեան ալ կը զիջանէր Կարոլոս եթէ որ իրմէ առնուած երկիրները ետ տրուէին ու պատերազմի ծախքը վճարուէր։ Դժուարութիւնները ետեւէ ետեւ կը շատնային ու քանի մը փոքր յաջողութիւններէ խաբուած, Կարոլոս իր զօրապետաց կարծեացը դէմ, Ուքրանիայի մէջ պատերազմը յառաջ տանիլ կ'ուզէր։

Աս միջոցիս լուր մ'եկաւ որ Կարոլոս Վորոնէժ քաղաքին կը սպառնայ։ Աս քաղաքը Ռուսաց համար Սեւ ծովուն ու Ազովին համբարանոցն էր։ Պետրոս՝ իր Ալեքսիոս որդւոյն հիւանդութիւնը քիչ մը տեղի տալուն պէս, ճամբայ ելաւ, բայց Կարոլոս Կորտենէք եւ Քրասնայքուսթ քաղաքաց քով արգելուած էր. անձրեւային օդ մը, որ բոլոր երկիրը ջրով ողողեց, Կարոլոսի պատերազմական փորձերուն մեծ արգելք եղաւ. Պետրոս աս միջոցն իր շահին գործածելով

ու իր նաւատորմիղին զօրութիւնը Տաճկի տէրութեան ալ ցուցընելու մտօք, Սեւ ծովու քով քանի մ'ամրութեանց ձեռք զարկաւ: Բայց Կարոլոս ալ ասդիէն սաբորոկացի վայրենի Քոզաքները իր կողմը վաստըկեցաւ: Ռուսաց՝ Քոզաքներն իրենցմէ չհեռացընելու ամէն ջանքը պարապի ելաւ, անոնք Կարոլոսին հաւատարմութեան երդում ըրին եւ Ռուսաց երկրին մէջ իրենց ապականիչ ասպատակութեանց սկսան, թէպէտ Պետրոս իր զօրավարներն ասոնց դէմ խաւրեց, բայց չկրցաւ բան մ'ընել, մանաւանդ թէ իրենք աւելի եւս գրգռուելով իրենց բնակած քաղաքը կործանեցին ու մէջի հարուստները բոլոր սպաննեցին: — Պետրոս, որ իր վերջի արիւնահեղ գործողութենէն ետքը քիչ մը մեղմացած կ'երեւար ու ամէն անգամ պատերազմի կամ ապստամբութիւն մը նուաճելու մարդ խաւրած ատենը կ'ապսպրէր որ նախ գթութեամբ բանը լմընցընելու ջանան, աս դէպքիս մէջ դարձեալ իր բնական խստութիւնը ձեռք առած կ'երեւայ: Աս միջոցիս Կարոլոս որոշիչ պատերազմ մ'ընելու մտօք Բոլթավայի անապատացեալ կողմերը քաշուելու սկսաւ, ինչու որ իր զօրքն ալ հիւանդութենէ, անօթիութենէ, պաղէն փճանալու սկսաւ: Աս պատերազմիս կենդրոնը Փոքր Ռուսաստանի Բոլթավա քաղաքն էր, որուն մէջ 4000 ռուս իրենց Քելին անուն քաջ զօրավարին տակ քաղաքը պիտի պաշտպանէին: Կարոլոս աճապարեց քաղքին առջին հասաւ ու Ապրիլի սկիզբը նոյնը պաշարեց եւ կը կարծէր որ դիւրաւ քաղաքը անձնատուր կ'ըլլայ: Սակայն Մենչիքով վերի կողմը ամէն բան ազատութեամբ կը գործէր ու Կոլովկին դեռ մարդու ոտք չկոխած ճամբաներով բարեբախտաբար թշնամւոյն յառաջապահ գունդը ճեղքելով քաղաք մտաւ: Աս ըլլալէն ետեւ երկու կողմն ալ իրենց պատրաստու-

Թիւնները կրկնապատկեցին եւ Յունիսի սկիզբը
Կարոլոս քաղաքը գնդակոծելու սկսաւ, ու քաղքին
մէջինները անհնարին քաջութեամբ թշնամւոյն առջի
յարձակումը պարապի հանեցին ։ Յունիսի 4ին նշա-
նով մը քաղքին մէջինները իմացան որ Շերեմե-
թեւ Մենչիքովին հետ միացած՝ Զարին հետ իրենց
օգնութեան կու գայ ։ Ռուսական բանակին մէջ դեռ
որոշուած չէր որ արդեօք թշնամւոյն հետ արձակ
դաշտի վրայ պատերազմ տան թէ չէ․ բայց աս ո-
րոշուած էր որ Կարոլոսի առջեւ Լեհաստանի ճամբան
գոցեն, ասոր համար Տոլկորուքին գնդով մը Տնիե-
բերէն անցնելով մինչեւ Բոսլ յառաջացաւ ։

Բերդի մէջ վառօդն ու կապարը լմըննալու վրայ
ըլլալուն լուրը ստիպեց Ռուսները որ բաց տեղ ո-
րոշիչ պատերազմ մը սկսին ։ Կարոլոսին ուզածն
ալ աս էր․ որովհետեւ թողուլ ետ քաշուիլը վտան-
գաւոր բան կը սեպէր ու ետեւի դին թշնամւոյն
ձեռքն անյաղթ քաղաք մը թողուլն ալ ապահով չէր
համարեր, անոր համար քաղաքը նորէն սաստիկ
գնդակոծելու սկսաւ ։ Կատաղութեան եւ յուսահա-
տութեան պատերազմ էր աս պատերազմը, Շվետ-
ները կատաղաբար քաղքին վրայ կը յարձակէին ու
ամէն անգամ ալ ետ կը վանուէին ։ Վերջապէս
Կարոլոս բաց դաշտի վրայ պատերազմ մը տալէն
յառաջ քաղաքն առնուլը անկարելի բան սեպեց ։

## 37.

Երկու կողմն ալ մեծ պատրաստութեանց մէջ էին ։
Ռուսի բանակը կռնըկի դիէն ապահով էր, ձիա-
ւորները անտառներու քով էին, բանակին կողն ու
ճակատը հողաբլուրներով ամրացած էր ։ Զարն՝ որ
դեռ զինուորական աստիճանի մէջ ստորին պաշտօ-
նակալ մըն էր, աս պատերազմիս ինչ ծանրակշիռ
հետեւութիւն ունենալն ըմբռնելով աս առջի ան-

գամ զօրաց վերին հրամանատարութիւնն յանձն առաւ ։ Մենչիքօվ իշխանը ձիաւորաց հրամանատար դրուեցաւ ու Շերեմեթեւ բանակին միջավայրը բռնած էր ։ Խիստ հրաման հանեց Պետրոս որ ամէն փախչող, նոյն իսկ Զարը եթէ փախչի, անմիջապէս մեռցուի ․ եւ մեծ քաջարութեամբ ու վստահութեամբ զօրաց այցելութեան ելաւ, որոնց հազարաւոր աղաղակները իրենց եռանդեան ու հայրենասիրութեան վրայ Զարն ապահովցուցին ։ — Կարոլոս ալ անգործունեայ չէր կենար ։ Ոտքը վիրաւորուած ըլլալուն ձի հեծնալ չկրնալով ուրիշներուն օգնութեամբը զօրաց մէջը մտնելով զիրենք քաջալերեց ու բանակը կարգաւորեց, բայց կարգադրութիւնը ի՞նչ օգուտ կրնայ ունենալ եթէ պատերազմի պաշար չկայ ։ Նշան տուաւ Կարոլոս աս յանդուգն պատերազմին ու իր ահագին թնդանօթները գոռալու սկսան ։ Սակայն Ռուսերն ալ պատերազմելու եղանակն ու արուեստը գիտէին, ձիաւորները Շվետի բանակին կողն ինկան ու կարգերնին շփոթեցին եւ հազիւ թէ երկու ժամ տեւեց պատերազմը մէյ մ՚ալ Շվետները փախչելու սկսան ։ Քիչ ատենուան մէջ մահը սոսկալի ճարակեցաւ, 9000 Շվետ ինկաւ եւ Վիւրթեմպերկ, Սթաքելպերկ ու Համիլթըն իշխանները շատ մը պաշտօնականներով Ռուսաց ձեռք գերի ինկան ։ Աս պատերազմիս մէջ երկու ինքնակալներն ալ իրենց կեանքը վտանգի մէջ դրած էին ։ Թնդանօթի գունդ մը Կարոլոսին գահաւորակին ոտքը տարաւ ու իր տակի ձին գետին պառկեցուց ։ Պետրոսին գլխարկը ծակ ծակ եղած էր ու իր ձիուն թամբին գլխուն մէջ հրացանի կապար մը գտնուեցաւ ։ Հոս Կարոլոս բոլորովին յաղթուեցաւ 1709 ․ Յուլ ․ 8 ։

Զարն ասանկ յաջողութեան համար, նոյն օրն ու նոյն տեղը իր զօրացը հետ մեծ ուրախութեան տօն

մը կատարեց։ Պետրոս սեղանի վրայ Շվետի գերիներուն մեծ յարգութիւն կ՚ընէր, որոնց ամէնն ալ իրենց զէնքերն ետ առած էին, ու քաջն Ռենշիլտ իր սուրը Զարին սրոյն հետ փոխելու պատիւն ունեցաւ։ Զարը գինին իր պատերազմական ուսուցչին կենդանութեանը համար խմեց ու խօսակցութեանը մէջ Կարոլոսին քաջութիւնը ամենուն օրինակ բերաւ։ Ասկէ ետքը Բոլթաւա ամրոցը մտաւ ու մէջինները մեծ շնորհակալութեամբ վարձատրեց[1]։

[1] Բոլթավայի հռչակաւոր յաղթութեան համար երկու յիշատակագրամ կոխուած է. որոնց առջինին առջի երեսը Պետրոս նժոյգ հեծած ու դափնիներով պսակուած կը տեսնուի ու իր ետի դին են յաղթուողները, Բոլթավա քաղաքն ու պատերազմին սա վերնագրով, “Աստէն ինքնին իսկ պատիւ նախանձ մեզ բերիցէ„ (Hic honor in nobis invidiosus erit. Ovid.)։ Ստորնագիրն է, “Պետրոսի Աղեքսեայ Հ. Ա. Մեծի. Ռուս. Ինք. Բարեպաշտի. Երջանկի. Օգ. Յաղթողի„. (Petro. Alexiadi D. G. Magno. Russ. Imp. Pio. Felici. Aug. Triumphatori)։ — Երկրորդ երեսն է Հերակղէս իր դափնեզարդ կացինն ուսը զարկած, յաղթութեան նշանները ոտքին տակ ու քովը Լէօվէնհաւփթ։ Իր ետեւը բանակին պատերազմէն յառաջ ունեցած դիրքը կը տեսնուի. աջ դին Բոլթավա անուամբ քաղքին յատակը կայ ու ձախ դին պատնէշ սա խօսքերով “Բանակ. Ռուս.„ (Castra. Russ.)։ Ժամանակագիր բոլորագիրն սա է. “Բոլթավա, զարմանալի կոտորածիւ նշանաւոր„. (PoLtaVa, MIra. CLaDe. InsIgnIs.)։ Ստորնագիրն է „Ցրուեալ ըզհամօրէն զօրս Սուետաց. Օ. 27. Յուն.„։ (Universo. Suecorum. exercitu. deleto. D. 27. Jun. S. V.)։

Երկրորդ յիշատակագրամին առջի երեսը Պետրոսին զըլահաւոր ու թափնեզարդ կիսարձանը կայ սա բոլորագրով։ “Պետրոս. Աղեքսիէվիչ. Մեծաց. Ռուսաց. Զար„։ (Petrus. Alexiew. Magn. Russ. Zaar.)։ Երկրորդ երեսը փառաց տաճար մը կը տեսնուի, որուն մէջի հրապարակը սեղանին աջ դին բախտի ու ձախ դին Հերակղեայ արձանները կան ու վերի դին յաղթող Զարը ձիու վրայ հեծած ու բոլորագիրն սա է. „Զբախտի եւ զՀերակղեայ տաճարն մտանեաց ի պարտութիւն„։ (Vicit. fortunae. atque. Herculis. aedem.)։ Ստորնագիրն է “Ի յիշատակ Սուետաց պարտելոյ առ Բոլթավայ. 1709. Օ. 29. Յուլ„. (Ob. devictos. Suecos. ad Pultav. MDCCIX. D. 29. Jul. St. v.)։

Բոլթավայի յաղթութենէ անմիջապէս ետքը Բերեվոլաչնոյի քով Շվետաց անձնատուր ըլլալուն համար կոխուած յիշատակագրամին բոլորագիրն սա է. “Կատարած սպանութեանց եւ վախճան գործոյն„։ (Internecionis. terminus. operisque finis.)։

Հոս կը յիշենք նաեւ ասկէ քիչ մը յառաջ Լեսնայի յաղթութեան համար կոխուած յիշատակագրամը, որուն առջի

Նոյն միջոցիս Կոլեցին զօրավարը 10 գունդ ձիաւոր զօրքով փախչող Թշնամւոյն ետեւէն խաւրուեցաւ, որն որ դէպ ի Ցնիեբեր կը փախչէր. ուստի որ քիչ մը յառաջ յաղթութեամբ անցած էր: Երկու օր ետքը Բերեվոլոչնոյի քով՝ այն տեղն ուր որ Վորսքլոյ Ցնիեբեր կը Թափի, Կոլեցին Լէօվէնհաւփթը գտաւ. արդէն Թագաւորն ինչպէս նաեւ Մազեբբան՝ որ Ռուսաց ձեռքէն իյնալէն սաստիկ կը վախնար, գետն անցած էին: Լէօվէնհաւփթ իր ահագին զօրքովն աս անկեան մէջ նեղ մնացած՝ Թշնամւոյն առջին խոնարհելու սկսաւ. 8000 քաջ զօրք ու բոլոր բանակին կահ կարասիքը Ռուսաց ձեռքն ինկան, որով Կարոլոսին վերջի նեցուկն ալ կորսուեցաւ: Աս ըլլալէն ետքը Կարոլոս քաղաքի կառք մը հեծած անմարդի ու անբեր անապատներուն մէջէն դէպ ի վար Մոլտաւիայի սահմանները փութալու սկսաւ: Հինգ օր անընդհատ ու դժուարին ճամբորդութենէ ետքը Պուկ գետակն հասաւ ու բարեբախտաբար հոս նաւ մը գտնելով Օչաքով գնաց: Հոս ալ ինքզինք ապահով չսեպելով Պենտեր գնաց ու Բարձրագոյն Դրան պաշտպանութեանը ապաւինեցաւ: Պետրոս նորէն ուզեց իրեն հետ խաղաղութիւն ընել, բայց անօգուտ տեղ:

Զարմանալի ու նշանաւոր պատերազմ է աս պա-

երեսը զօրահաւոր ու դափնեզարդ. Զարը զանազան զինանշաններու վրայ ձի հեծած կեցած է ու իրմէ վար Լէօվէնհաւփթ կը տեսնուի: Բոլորագիրը գրեթէ սովորականն է: Մակագիրը ժամանակագիր է ,,Դառնայ յաղթող ի պատերազմէ,, (reDIt e CertaMIne vIctor.): Միւս կողմը պատերազմին յատակագիծը կը տեսնուի, որուն վրայ Լեսնա անունը կայ. ձախ դին Թեւաւոր յաղթութիւն մը բազմած է, որուն վահանին վրայ Ովիտիոսին աս խօսքերը կը կարդացուին. ''Հեռի է գլուխն ի բնոյ,,. (Լէօվէնհաւփթ, առիւծի գլուխ կը նշանակէ): Ժամանակագիր վերնագիրն աս է, ''Փառաւոր յաղթութիւնն առ Լեսնայ,,: (gLorIosa vIctoria aD LessnaM. 28. Sept. s. v.): Մակագիրն է. ''Յաղթեալ Լէօվէնհաւփթայ խորտակեալ կամ գերեալ. ԺԶ. գնդայ. Սուէտ,,: (Devicto Löwenhaupt caesis aut capt. XVI. miss. suec.)

տերազմը եւրոպական պատերազմներու մէջ եւ շատ մեծ հետեւութիւն ունի ։ 60,000ի զարհուրելի բանակ մը՝ որ քիչ մը յառաջ բոլոր եւրոպական տէրութիւնները կը դողացընէր, բոլորովին փճացաւ ոչնչացաւ ։ Ընդ ամէնը 15,000 Շվետ Ռուսներէն գերի բռնուեցաւ, ու Շվետի քով ամենեւին պատերազմական կահ կարասիք չմնաց ։ Անոր հակառակն եթէ Չարին աս պատերազմիս մէջ յինար, ան ատեն Ռուսաստան նորէն իր առջի բարբարոսական խեղճ վիճակը կ'իյնար եւ գուցէ մէյ մ'ալ չէր կանգնուեր ։ Այսպէս մի միայն օր մը Շվետական տէրութեան զարհուրելի զօրութիւնը գահավիժեց եւ ռուսական պետութեան դողդոջիւն հիմանցը հաստատութիւն տուաւ ։

Պետրոս աս պատերազմիս մէջ գտնուող զօրավարներն ու զօրքերը, ամէն մէկուն արժանեացը համաձայն, զանազան շքանշաններով վարձատրելէն ետքը, ինքն ալ անոնց խնդրելովը ցամաքային զօրաց սպարապետի տեղակալ ու նաւատորմղին ծովակալի տեղակալ անուանուեցաւ ։ Բոլթավայի յաղթութեան յիշատակին համար տարեկան հանդիսութիւն մ'ալ հաստատուեցաւ ։ Նոյն պատերազմէն քանի մը ժամ ետքը Պետրոս Ապրաքսին ծովակալին ասանկ գրեց “Բեթօնին դէպքը մեր թշնամւոյն գլուխն ալ եկաւ ու վերջապէս մեր Նեվայեան քաղքին հիմնաքարը աղէկ հաստատուեցաւ„ ։



# Հատուած չորրորդ

## *Բօլթավայի յաղթութենէն մինչեւ Փինլանտի աշխարհակալութիւնը: 1709—1714.*



Բօլթավայի յաղթութենէն ետքը Պետրոսի գործունէութիւնը: Ալեքսիոսի ճամբորդութիւնը: Պետրոս դարձեալ պատերազմութեանց ձեռք կը զարնէ: Կարոլոսի գործունէութիւնը: Էլպինկէն ու Վիպորկ քաղաքները կը յաղթուին: Ռիկա եւ ուրիշ քանի մը քաղաքներ Ռուսաց ձեռքը կ'անցնին: Տաճկաստան պատերազմ կը հրատարակէ: Պետրոս արեւելեան ծովուն եզերքը Լեհաստանի կը յանձնէ ու ինք Տաճկաց վրայ կ'իջնայ: Բրութ գետին քով Պետրոսին գլուխն եկած դժբախտութիւնը: Կատարինա Զարուհւոյն հնարքովը Տաճիկը խաղաղութեան կը զիջանի: Կարոլոսին պատմութիւնն ու վախճանը: Պետրոսին պատերազմի հետ զբաղած ատեն Եւրոպայի քանի մը տէրութեանց գործքերը: Ալեքսիոս: Պետրոս Քարլսպատ կ'երթայ ու դարձին որդւոյն հարսնիքը կը կատարէ: Դանիայի ու Պրուշի դեսպաններուն հետ կը խօսի: Շթրալսունտի պաշարումը: Պետրոս դանիական նաւատորմիղին հրամանատար կ'ըլլայ եւ Շվետաց նաւատորմիղին կը յաղթէ: Նորէն Քարլսպատ կ'երթայ ու նորէն Դանիացւոց օգնութեան կը հասնի, Շվետները նեղ կը խոթէ: Բեթերպուրկ կ'երթայ ու պատերազմութեանց կը սկսի եւ արեւելեան ծովուն եզերքներն ըրած յաղթութիւնները կ'ապահովցնէ ու մեծ հանդիսութեամբ Բեթերպուրկ կը մտնէ. Ս. Կատարինայի կարգին շքանշանը:

## 38.

ՊՈԼԹԱՒԱՅԻ յաղթութենէ մինչեւ Բրութ գետին քով Պետրոսին գլուխն եկած դժբախտութիւնը թէպէտ քիչ, գրեթէ երկու տարուան միջոց մըն է, սակայն այս կարճ ժամանակիս միջոցին մէջ ինչ մեծ գործքեր ու ինչ մեծ գործունէութիւն չտեսնուիր Պետրոսին վրայ: Աս միջոցիս պարագաներն իր անխոնջ գործունէութիւնը կրկնապատկեցին ու իր զօրութիւնն ու կարողութիւնը ցուցընելու աւելի եւս առիթ տուին:

Նոյն իսկ ան պատերազմին դաշտին վրայ, ուր որ ինքն իր թշնամւոյն գլխէն դափնիները կողոպտեց, զօրքը կարգաւորելու սկսաւ: Շերեմեթեւ դէպ ի վերի Լիֆլանտ խաղացաւ, Մենշիքով Լեհաստան պիտի մտնէր: Քօզաքներու Աքրոպատքի հաւատարիմ գլխաւորը իր մտադրութիւնը Փօքր Ռուսաստանի վրայ պիտի ուղղէր ու Մազեբբայի կող-

Միակցութեանը դէմ Չարին իշխանութեանը պաշտ-
պան պիտի կենար։ Ինքն ալ, թէպէտ ալ Շվետնե-
րէն վախ չունէր, Եւրոպայի տէրութեանց հետ խօ-
սակցելով ու անոնց հետ դաշինքներ դնելով իր
յաղթութիւններն ապահովցընելու ջանքի մէջ էր։
Ստանիզլաւոս թագաւորը թէպէտ քանի մը յաղ-
թութիւն ունեցած, բայց վերջապէս յաղթուած
էր ու իր վրան քալող Չարին առջեւն ալ իր թագը
չէր կրնար պաշտպանել։ Աւգոստոս Սաքսոնիայէն
Ալթրանշթատի խաղաղութիւնը անվաւեր հրատա-
րակեց ու Լեհական թագին վրայ ունեցած իրա-
ւունքները նորէն պաշտպանելու սկսաւ։ Քոբենհա-
կենի ու Պերլինի արքունիքը հիւսիսային յաղթողէն
հետ բարեկամութիւն խառնելու սկսան. եւ Մոսկու-
այի, Տրեզտենի ու Վարշաւի արքունեաց հետ դաշինք
մը դրին՝ որ թշնամական ու մանաւանդ Շվետական
յարձակմանց դէմ կենան. եւ թէպէտ մէջերնին
որոշուեցաւ որ Ալթրանշթատի խաղաղութեան թէու-
թիւնները պահուին, սակայն եւ այնպէս Աւգոստոս
նորէն Լեհաստանի թագաւոր ճանչցուեցաւ։ Բայց
Պետրոս ալ՝ իր նոր ստացած բարեկամներէն
ամենուն մէկն իր նեղութեանցը մէջ իրեն օգնա-
կան չունենալուն, յառաջուան դրած դաշինքները
բոլորովին անգործունեայ հրատարակեց ու ամենուն
մէկը իր յաղթութեանցը մասնակից ըլլալ չուզեց։
Սաստիկ տենդէ մը բռնուելէն ետքը անձամբ Լե-
հաստան երթալու ճամբայ ելաւ, ուր որ ամօթա-
պարտեալ Աւգոստոսը նորէն գահ հանեց, ու այն-
չափ պատերազմներով ամէն կողմանէ տկարացած
երկրին հանգստութեանը համար, Մենշիքովին հրա-
մայեց որ զօրքն առնու եւ Հունգարիայի սահման-
ները քաշուի։

Վայքսել գետին մօտերը Մարիենվերտէն քաղ-
քին քով Բրուսիայի թագաւորին հետ տեսնուելէն
ետքը Չարը դէպ ի Ռիկա վեր ելլալու սկսաւ, որ-

պէս զի ան արեւմահեղ աշխատութեանց մասնակից ըլլայ, ուստի որ մինչեւ աս տարին, խաղաղական բանակցութեանց զբաղելով, ետ մնացած էր: Շերեմեթեւ արդէն հոս հասած ու ամէն կողմանէ ամրացած Ռիկան պաշարած էր, (1709): Շերեմեթեւէն վերջ օր ետքը հասաւ Պետրոս Ռիկա ու անձամբ քաղաքը գնդակոծելու սկսաւ. սակայն քաղքին ամրութիւնը ու պաշտպանողներուն քաջութիւնը՝ որ ի հարկաւորութեան բոլոր քաղքին կրակ տալու կը սպառնային, ու ժամանակին անյարմարութիւնը (նոյեմբ.) քաղքին առումն անկարելի ըրին ու Պետրոս հոն քիչ մը զօրք թողլով, զօրաց մեծ մասն առաւ ու վեր դէպ ի Քուրլանտ ելաւ. ու անկից ալ Բեթերսպուրկ անցաւ, ուր որ իր սովորական գործքերը նորէն սկսաւ. Բոլթավա անուամբ նաւ մը շինելու սկսաւ ու քաղաքը գեղեցկացընելու համար որոշուած 20,000 գործաւորաց մեծ մասը Շվետի գերի ինկած զօրքերն էին: Բեթերսպուրկէն ելլալով անդին աստին հանդիպելէն ու զանազան կարգադրութիւններ ընելէն ետքը իբրեւ յաղթող փառաւոր ձաղանքով Մոսկուա մտաւ: Աս հանդէսն որ յառաջ պիտի ըլլար, ուրախարար դէպքով մ'արգելուած էր: Աս դէպքը Զարին երրորդ Եղիսաբեթ դստերը ծնունդն էր, որն որ ետքէն Ռուսաստանի կայսրուհի եղաւ: Շվետի գերիները անոր միայն կը զարմանային, որ ասանկ հզօր Զար մը սպարապետի տեղակալի պատուով հասարակ պաշտօնակալի մը պէս ձարական գահին աստիճաններուն վրայ կը կենար ու իր տեղն ուրիշ մը, Ռոմոտանովսքի, գահ ելած՝ զօրապետներէն ու պաշտօնակալներէն զանազան տեղեկութիւններ կ'առնուր:

Պետրոս հոս իր մայրաքաղքին մէջ իբրեւ Զար ու Ինքնակալ ամէն բան նոր ու մտադիր աչքով քննելու սկսաւ: Մեծ ու պզտիկ, արտաքին ու ներքին ամէն բան տակն ու վրայ կ'ընէր, բայց միշտ

իր մտացն համաձայն ամէն բան նորոգելու ու ազնուացընելու փութով։ Հին մայրաքաղաքը նորոգուելու սկսաւ ու հրաման ելաւ որ բուն քաղաքը, ձարական պալատին բոլորտիքը քարաշէն տներ շինուին. ու նոյնը յանձն առնողը գետինը ձրի կ'առնուր։ Եթէ Պետրոսի իր ժողովուրդը կրթելու ջանքը այնչափ մեծ էր, որչափ մեծ պիտի ըլլար այն ջանքը որով ինքն իր Ալեքսիոս որդին կրթելու ետեւէն ինկաւ, որն որ ատեն մ'իրեն յաջորդ պիտի ըլլար։ Ասոր վրան ուրիշ տեղ ընդարձակկեկ խօսելու առիթ կ'ունենանք։

## 39.

Պետրոս Ալեքսիոս իր արշաւանացը մէջ մէկտեղ կ'առնուր, որպէս զի կէս մը վրան աւելի եւս ազդեցութիւն ունենայ ու կէս մ'ալ տէրութեան գործոցն ու յարաբերութեանցը զինքը տեղեակ ընէ. Ու այսպիսի ժամանակ մը յարմար սեպեց զինքն արտաքին երկիրներ խաւրելու, որպէս զի հին ռուսական սովորութիւնները վրայէն բոլորովին փարատին, ուր նաեւ իրեն ամուսին մ'ընտրէ, որն որ Պետրոսի յուսոյն համաձայն իր եւրոպական կրթութեամբը ատենօք Ալեքսիոսին թէ առտնին ու թէ հասարակաց կենացը վրայ մեծ ազդեցութիւն կրնար ընել։ 1710ին գարնան սկիզբը քանի մը մեծամեծներու ուղեկցութեամբն իշխանը ճամբայ ելաւ ու Մայիսի մէջ Վարշաւ հասաւ, ուր որ Աւգոստոս թագաւորին հետ ընկերանալով դէպ ի Տրեզտէն ու Քարլսպատ ճամբայ ելան։ Հոս Պրաունշվայկ-Վոլֆենպիւթթելի Քրիսթինէ իշխանուհւոյն հետ ծանօթացաւ, որն որ քիչ մը վերջը իրեն դժբախտ ամուսին եղաւ։ Երբոր Վիէննայի արքունիքը իմացաւ որ ինչ վախճանաւ իշխանը ճամբայ ելած է, ուզեց որ Աւստրիայի տունը ամուսնական դաշինքով մը Ռոմանովի տան հետ կապուի, Չարլ մեծ

հաճութեամբ աս խնդիրքը կ՚ընդունէր ու քաղաքական խոհեմութիւնն ալ աս կը թելադրէր. բայց իշխանն արդէն իր ամուսինն ընտրած ըլլալուն Պետրոս չուզեց իր ազատ ընտրութեանը դպչիլ։

Աս միջոցիս շահախնդիր Անգղիան ալ յաղթող Պետրոսին իր պատիւը ցուցուց ու իր դեսպանին եղած մէկ անպատուութեանը հատուցում ըրաւ։ Մաթվէյեւ ռուս դեսպանը՝ որ 1708ին հոն խաւրուած էր, ետ դառնալու ատեն իր պարտատէրներէն մէկէն դատաւորի մատնուած ու դատաստանական եղանակաւ բանտարկուած էր։ Թէպէտ Մաթվէյեւ երկու ժամ ետքը ազատ թող տրուեցաւ, բայց ասիկա Զարին համար հատուցում չէր։ Աս միջոցիս Անգղիայի թագուհին հիւսիսային հսկան գոհ ընելու համար խորհրդանոցի մէջ զինքը Կայսերական Մեծափառութիւն պատուանուամբ յիշեց ու ռուսական տէրութեան ապահովութիւն տուաւ որ ալ անանկ դէպք մը չիպատահիր։

Սակայն շրջահայեաց Պետրոսը պէտք էր որ դարձեալ մեծամեծ պատրաստութեանց ձեռք զարնէր, որովհետեւ իր թշնամիները՝ ինչպէս քիչ մ՚ետքը պիտ՚ որ տեսնենք, դեռ բոլորովին յոյսերնին կտրած չէին։ Դարձեալ Որոնէժ մեծ գործունէութիւն կը տեսնուէր. Բեթերսպուրկ, Քիեւ, Թվեր, Թաւրով ամրոցները ամրանալու սկսան. Նոր զօրաժողով եղաւ, ու խստութեան եւ աշխատանաց տակ ընկճող ժողովուրդը հառաչանօք ու արտասուօք պէտք էր որ զօրաց ստակ հասցընէր, որովհետեւ Պետրոսի ժամանակը յեղափոխութեան ու նորոգութեան ժամանակ էր։

Աս ատեններս պատերազմի դաշտն ուրիշ կերպարանք մը ստացած էր։ Դանիա իր հակառակորդին յաղթուիլը լսելուն պէս, իր Ռուսաստանի հետ ըրած դաշինքը նորոգեց (1709, Հոկտ.) եւ յայտնապէս ցուցուց որ Շվետաց հետ հակառակութիւն-

ներն սկսելու վրայ է. իրօք ալ քիչ մ'ետքը 17,000 դանիացի զօրք Հոնէն մերժեցան, որն որ Շվետ զօրաց պաշտպանութեանը տակն էր:

Իսկ Կարոլոս անդլին Պենների մէջ Տաճկաց Հիւրընկալութեան պաշտպանութեանը ապաւինած էր, որն որ իրեն դժբախտ վիճակը դիւրընցընելու կը ջանար ու Մազեբբան Ռուսաց ձեռքը յանձնելը բարեկամութեան վնասկը սեպէր: Սակայն Մազեբբան միշտ Ռուսաց ձեռքն իյնալէն վախնալով՝ լաւագոյն սեպեց իր փառախնդիր կենացը թիւնով վերջ տալ, քան թէ Ռուսաց վրէժխնդիր ձեռքն իյնալ:

Կարոլոս միշտ Սուլթանն համոզցընելու կը ջանար որ իր դժբախտութիւնը չէ թէ Ռուսաց քաջութենէ ու պատերազմի արուեստին տեղեակ ըլլալէն, այլ անոնց աՀագին բազմութենէն ու նոյն ատենուան պարագաներէն յառաջ եկաւ, եւ ասանկով Դուռն եւ Ռուսաստանի մէջ պատերազմը նորէն բորբոքել կ'ուզէր: Իսկ Պետրոս ասդիէն կը պնդէր թէ պէտք է որ Կարոլոս Տաճկաստանէն հեռանայ ու անոր երկայն ատեն հոն կենալը խաղաղութիւնը վրդովելու բաւական պատճառ կը համարէր: Տաճկաց խաղաղասէր հոգին Ռուսաստանն ապահովցուց եւ խօսք տուաւ որ Շվետի Ինքնակալը տկար ուղեկցութեամբ մը լեհական սահմանները կը բերէ: Սակայն յանդուգն իշխանը ասանկ որոշումները փճացընելու ճամբան աղէկ գիտէր, արքունեաց կարծեացը վրայ բոլոր տիրեց ու Վալիտէ Սուլթանն իր կողմը վաստըկեցաւ, որն որ ստէպ թագաւորին կ'ըսէր "Ե՞րբ պիտ' որ օգնես առիւծիս որ Չարը կլլէ,,: Տէրութեան մեծամեծները ետեւէ ետեւ իրենց պաշտօններէն ինկան ու վերջապէս Կարոլոս իր բաղձանացն հասաւ ու յայտնապէս Ռուսաստանի դէմ պատերազմ հրատարակուեցաւ, որուն վրայ քիչ մ'ետքը ընդարձակ կը խօսինք:

1710ին գարունը մերձենալով զօրաց շարժում-

ներն սկսան ։ Պետրոս ալ իր բանակը գնաց, որպէս զի զօրքը արեւելեան ծովեզերեայ Էլպինկէն ու Վիպորկ քաղաքներուն յաղթութեանը քաջալերէ. քանի որ Դանիա Անքերսթիունայի հրամանատարութեանը ներքեւն եղած շվետական նաւատորմիղը կը զբաղեցընէր, ինքն իր բոլոր մտադրութիւնը Ֆինլանտի վրայ ուղղած էր ։ Բայց Դանիայի պատերազմը շատ անյաջող կ'երթար, բոլոր Շվետի ժողովուրդը հայրենասիրական հոգւով վառուած զէնքի վազեց ու փառաւսէր թշնամին իր երկրէն վռնտեց ։

Սակայն Պետրոսի գործքերն աւելի յաջողութիւն կը գտնէին ։ Նոսթից սպարապետը պաշարաշատ Էլպինկէն քաղքին վրան յարձակեցաւ (1710 Յուն.) ու քանի մ'օր պաշարելէն ետքը քաղաքն անձնատուր ըլլալու ստիպեց, բոլոր քաղքին մէջի բնակիչներն ու զօրքը Ռուսաստան փոխադրուեցան ։ Էլպինկէն առնուելէն անմիջապէս ետքը ռուս զօրքը վեր դէպ ի Վիպորկ յառաջանալու սկսաւ ։ Տարւոյն եղանակն ալ քաղքին առմանը շատ օգնեց. զօրքը սառած ծովածոցին վրայէն անցաւ ու սկսաւ դէպ ի վեր շարժիլ, որպէս զի քաղաքն իր տկար կողմէն դիւրաւ նեղ խոթէ. սակայն սառոյցներու քակուիլը, պատերազմի եւ մանաւանդ կերակրոյ պաշարին պակսութիւնը կրնար Ռուսաց մեծ դժբախտութիւն մը պատճառել, եթէ Պետրոս ծովապետն իր նաւատորմիղով ու աղագին թնդանօթներովն իր զօրաց օգնութեան չհասնէր ։ Սոսկալի եղանակաւ գնդակոծութիւնն սկսաւ. նեղ մտաւ Վիպորկ ու քաղքին հրամանատարը՝ անձնատուր ըլլալու թէութեանց վրայ խօսիլ ուզեց, սակայն խնդիրքն ընդունելի չեղաւ, պէտք էր որ առանց թէութեան անձնատուր ըլլար ։ Գնդակոծութիւնը նորէն սկսաւ. քաղքին հրամանատարը նորէն Ռուսաց հրեշտակ խաւրեց ու այս թէութեամբ որ պահապան զօրքը իր պաշարովը, ընտանեօքն ու ինչքովը ազատ ու

ապահով ճամբայ ունենայ ու քաղքին բնակչացը ազատութեան ու օրինացը վնաս մը չհասնի, անձնատուր ըլլալ կ'ուզէր: Աս թէութիւններով քաղաքը Ռուսաց ձեռքն յանձնուեցաւ: Բայց փուճ տեղ քաղաքապետը կայսերական խօսքի մը վրայ վստահացած քաղաքը թշնամւոյն ձեռքն յանձնած էր: Պետրոս զանազան ծանրակշիռ պատճառներ յառաջ բերելով՝ առջի անգամ տուած խօսքը չպահեց:

## 40.

Երբոր Չարը Վիպորկի յաղթութենէ ետքը Բեթերսպուրկ դարձած զանազան ուրախութիւններ կատարեց ու իր Աննա դուստրը Քուրլանտիայի դքսին հետ նշանեց ու Բոլթավայի յաղթութեան տարեդարձը կը կատարէր, Լիֆլանտէն Ռիկայի իյնալուն լուրն եկաւ: Սաստիկ գնդակոծութիւնը, կրակը, անօթութիւնն ու հիւանդութիւնը՝ որ նաեւ Ռուսի բանակին մէջն ալ կար, շատ վնաս ու չարիք հասուցին խեղճ բնակչաց. Ռուսերը աս յաղթութիւնը շատ սուղ գնեցին, ռուսական արտասուքն ու արիւնը հեղհեղի պէս կը վազէին: Հոս ալ Պետրոս վերջին՝ ալ անհաւատարմութիւնը երկրորդեց:

Վիպորկի եւ Ռիկայի յաղթութիւնները Շվետի դժբախտ ծովափանց վրայ ռուսական զինուց յաջողութիւնը ապահովցուցած էին: Հիւանդութիւնն ու սովը Չարին յաղթութեանց օգնականներն էին. Տինամունտէ, Բեռնաւ, Ռեվալ, Էզէլ ու Արենսպուրկ քաղաքները հետզհետէ ինկան ու տարւոյն վերջերը Քեքսհոլմ ալ անձնատուր եղաւ: Աս յաղթութիւններէն ետքը Պետրոսին մեծ գործք բացուեցաւ. աւեր ու անապատ դարձած քաղաքները պէտք էր որ նորոգուէին: Խեղճ բնակչաց շատ օգնեց Պետրոս ու ամէն կողմանէ մեծ փութով զիրենք կը հոգար. բնակչաց արուեստ սորվեցընելու համար

Ռուսաստանէն արուեստաւորներ եկան եւ ուսումնական գիրքեր ալ ունեցան եւ ասանկով անոնք ալ Ռուսաստանի նորոգութեանցը մասնակից եղան։

Մերջապէս Կարոլոս իր անհանգիստ աշխատութեամբը Տաճկաստանը Ռուսաստանի դէմ ոտք հանեց ու բարկութենէ կը կատղէր քանի որ կը լսէր թէ Ռուսաստան զԴուռը կը ստիպէ որ զինքն իր տէրութենէն հեռացընէ։ Խրիմի Խանը ու շատ փաշաներ Շվետի թագաւորին կողմն էին. Գաղղիա Դրան առջին Կարոլոսի միտում կը ցուցընէր, եւ տաճկական տէրութեան մեծամեծներէն՝ Ռուսաստանի բարեկամութիւնը հաստատուն պահել ուզողները հետզհետէ իրենց պաշտօններէն ինկան։ Բոնիաթովսքի իշխանը որ Կոստանդնուպոլիս Կարոլոսի պաշտպանն էր, Ռուսի պատրաստութեանց վրայ ըլլալը Դրան ազդեց ու իմացուց որ իրենք արեւելեան ծովուն քով Շվետաց հետ բաներնին լմնցընելուն պէս՝ նորէն Տաճկաց հետ պատերազմելու պիտի սկըսին։ Ասոր վրայ Ռուսաստան ինք զինք կը ջատագովէր ըսելով որ եղած պատրաստութիւնները՝ նորոգութիւն է, չէ թէ պատրաստութիւն. բայց ըսածին հակառակ պատերազմի պատրաստութիւն ըլլալն յայտնի կ'երեւար, մանաւանդ որ Ռուսի կողմանէ Տաճկի դէմ քանի մը տրտունջներ ալ եղան, որ Կարոլոսի եւ Ռուսաստանի ապստամբաց եւ Քոզաքներուն պաշտպանութիւն կ'ընէ։ Բայց արդէն Դուռն որոշած էր որ պատերազմ սկսի. Թաթարները ռուսական սահմաններն անհանգիստ ընելու սկսան եւ յայտնապէս պատերազմ հրատարակուեցաւ (1710 Դեկտ.)։

Երկու կողմանէ ալ պատրաստութիւններն սկըսան։ Արեւելեան ծովուն եզերքը զօրացաւ, Լեհաստան գտնուող զօրաց հրամանատարը հրաման ընդունեցաւ որ զօրքն աղէկ կրթէ։ Քիեւի հրամանատարը սահմանները պիտի պաշտպանէր։ Քանի մը

տեղ համբարանոցներ դրուեցան, որովհետեւ Պետրոսին ամենէն մեծ մտադրութիւնը զօրաց պաշարին վրան էր. զօրաց թիւն աւելցաւ ու հրովարտակ մ'ալ ելաւ, որն որ Տաճկաց՝ Ռուսաստանի տուած նեղութիւններն ու յարձակումները կը յիշեցընէր ու վտանգաւոր ու անհանգիստ դրացւոյն դէմ ժողովրրդեան ատելութիւնը կը գրգռէր։ Աս գործքիս յաջողութեան համար հանդիսական աստուածային պաշտօն մը կատարուեցաւ, անձնապահ զօրաց գունդն օրհնուեցաւ եւ տէրութեան մեծամեծները հաւատարմութիւնն ու արդարութիւնն անարատ պահելու երդում ըրին։ Ասոր վրայ Պետրոս ալ իր Կատարինա ամուսինը մեծ հանդիսութեամբ Չարուհի հրատարակեց ու զինքն առած դէպ ի վար Սուլցք երթալու սկսաւ, որն որ Շերեմեթեւին գլխաւոր բանակատեղն էր։

Արդէն քուպանեան Թաթարներու զօրաւոր գունդ մը Տօն գետէն վեր ելլելու սկսած էր, Խրըմէն ալ զօրաւոր բանակ մը դէպ ի Ռուսաստան յառաջ կը խաղար, բայց բարեբախտաբար Կոլիցին զօրավարը Քալմուքներուն օգնութեամբը արգելելով զերենք բոլորովին զսպեց։ Պետրոս միտ դրաւ երկու Ցոյներու՝ որ թէպէտ իրարու արեան չափ թշնամի էին, սակայն երկուքն ալ Տաճկի դէմ ըլլալնուն՝ մէջերնին միաբան էին ու Պետրոսին զօրքով մերձենալը իրենց օգտին գործածել կ'ուզէին։ Ասոնցմէ մէկը՝ Մոլտաւիայի Քանթիմիր Հոսբոտարն էր, որն որ զՊետրոս միշտ կը յորդորէր որ աներկիւղ յառաջ քալէ ու գայ իր զօրքերուն հետ միանայ, երդում ալ ըրաւ որ իր իշխանութեան երկիրը ռուսական պաշտպանութեան կը յանձնէ՝ եթէ ինքն իր իշխանութեան մէջ թող տրուի։ Միւսը՝ Վալաքիայի Պրանքովան Հոսբոտարն էր, որն որ չէ թէ միայն շահախնդիր ու Տաճկաց թշնամի, այլ նաեւ թոյլ մէկն էր, եւ Տաճկի բարեկամու-

թիւն ցուցընելով խոստացաւ որ զՊետրոս իրեն կը մնանէ ։

Կարծես թէ բախտը լքեալ թողեալ Կարոլոսին հաստուցում մ'ընել կ'ուզէր՝ հօս Պետրոսին վրայ ըստ ամենայնի նոյն պտկսութիւնները կը տեսնուին, որոնք որ քիչ մը յառաջ հզօր Կարոլոսը կործանած էին ։ Բարբարոսներուն խօսքին վստահացած՝ ինք զինք թշնամւոյ ձեռք մատնեց ։ Աս սխալմունքը շատ ստակ արժեց իրեն, եւ մինչեւ նոյն ատեն արեամբ եւ ոսկւով գնած պտուղները կորսնցուց ։ Պետրոս միշտ դէպ ի Մոլտաւիա կեղծաւոր Հօսբոտարին կ'երթար, եւ դեռ չհեռացած՝ Լեհաստանի թագաւորին հետ խօսեցաւ. թագաւորը վերը հիւսիսային կողմը թշնամին պիտի զբաղցընէր ու արեւելեան ծովուն գաւառները պիտի պաշտպանէր ։ Այսկայն լեհական հասարակապետութիւնը Զարէն քանի մը պահանջմունքներ ընելու սկսաւ, որով Էլպինկէն, լեհական Ուքրանիան եւ Լիֆլանտն իրեն պահել կ'ուզէր ։ Երկայն երթեւեկութենէ ետքը Զարը Լեհաստանի երեւելի գումար մը խոստացաւ ու Լիֆլանտն ալ թագաւորին իբրեւ Սաքսոնիայի Ընտրող իշխանին կու տար, որուն դիմացը՝ Լեհաստան հիւսիսային կողմը պիտի հսկէր ։

## 41.

Պետրոս իր 40,000ի բանակին գլուխն անցած դէպ ի հարաւ ճամբայ ելաւ եւ կ'ուզէր Կատարինան ուրիշ տիկիններով մէկտեղ Լեհաստան թողուլ, բայց կարծես թէ Կատարինան գուշակութեան հոգւով մը ստիպեց իր այրն որ զինք մէկտեղ առնու, որն որ վերջապէս իր կամացը զիջաւ եւ Ցունիսի մէջ սահմաններն հասան. հոս Նորէն Շերեմեթեւին իր վախն յայտնեց որ արդեօք բաւական պաշար կայ, որովհետեւ զօրքը միայն ութը օրուան պաշար ունէր. հաց ու միս գտնելն անկարելի էր եւ պաշարազուրկ

բանակի մը թշնամւոյ երկիրներու մէջ ինչ խեղճ ու ողորմելի վիճակ ունենալը Կարոլոսի վրայ տեսած էր։ Բանակը Ցնիեսթերի քով կենդրոնացաւ ու պատերազմական ժողով մը ժողովեցաւ, որուն մէջ չէին կրնար որոշել որ արդեօք սահմանները պահպանելով թշնամւոյն սպասեն, թէ յառաջ երթան։ Ռուս զօրավարաց անհամբերութիւնը եւ Հոսպոտարի թախանձելը որ յառաջ քալեն ու համբարանոցները թշնամեաց ձեռքը չանցած գրաւեն, որոնք արդէն Դանուբի քով հասած էին, ամենայն ընդդիմութեանց յաղթեց, զօրաց հիւանդները հոն թողտուեցան ու բուն բանակը Ցնիեսթերէն անցաւ ու չէր գիտեր որ հոն ընդարձակ անհովանի ու անմխիթար տափաստանին (Steppe) մէջ՝ որ կիզիչ աւազէն ու երկինքէն զատ բան մը չէր տեսնուէր, Ցաճիկներէն շատ աւելի ահեղ թշնամւոյ մը հետ պէտք էր որ պատերազմէր։ Կ՚ուզէին Բրութին աջ դիէն վար մինչեւ Ֆալչի յառաջանալ, կարծելով որ ան մօրուտ ու ցեխոտ տեղերը թշնամին կրնան արգելուլ. բայց մինչեւ որ աս գետն հասան, մեծամեծ կորուստներ կրեցին ու Պետրոս բուն բանակէն շատ յառաջացած անջուր ու անբեր անապատի մէջ եղած զօրքերուն միօրինակ ջուր կը խաւրէր, զորն որ ծարաւի զօրքն անչափ խմելուն քիչ մարդու կորուստ չեղաւ։

Հազիւ թէ Բրութին եզերքն հասան, մէյ մ՚ալ ան վայրենի տափաստանին բնակիչները գունդագունդ բազմութեամբ զանազան կողմերէ Ռուսաց վրան յարձակելու սկսան եւ իրենց սոսկալի ձայներ կու տային։ Սակայն Քանթեմիր միշտ խորհուրդ կու տար որ աճապարեն յառաջ գան, ըսելով թէ դեռ թշամին բոլորովին Դանուբէն անցած չէ ու մեծ համբարանոցները դեռ կրնան դիւրաւ գրաւուիլ։ — Բայց արդէն երկու զօրաւոր տաճկական գունդեր երթալով Ռուսաց կը մերձենային ու ի-

րենց մեծ կորուստ կը սպառնային: Բրուլթին դէպ արեւմտեան եզերքը մերձեցող Ռուսաց հրամանատար՝ Եանուս զօրավարը հրաման տուաւ որ շուտով աճապարէ ու յառաջանայ եւ Թշամւոյն Ֆալչէի քով գետէն անցնիլն արգելու, բայց հազիւ թէ նեղ գետաձորի մը մէջէն քանի մը մղոն յառաջացած էր, մէյ մ՚ալ դիմացը ընդարձակ դաշտերու վրայ Եէնիչէրիներու ահագին բազմութիւնը տեսաւ, որոնք իրեն դէմ ելլալով անպատմելի վնասներ տալու սկսան: Վերահաս գիշերն իր բոլոր զօրաց ջընջումն արգելեց: Չարն աս լսելուն պէս իր զօրաց ընտիր մասը հետն առած օգնութեան եկաւ: Սակայն ան խոպանացեալ ու մացառներէն անապատ դարձած դաշտերու վրայ երկայն ատեն չէր կրնար կեցուիլ, պէտք էր որ ժամանակը չանցած՝ ետ դառնուէր: Թշնամին փախչողներուն ետեւէն ինկաւ, որոնք Ֆալչի հանելով, մէկ կողմանէ գետով պատսպարած՝ պատերազմի պատրաստուելու սկսան: Բազմաթիւ Թշնամին կէս բոլորշի ձեւով իր հակառակորդը պատեց եւ Ռուսերը նեղ ձորի մը մէջ գետի, բլուրներու շղթայի մ՚եւ տաճիկ զօրաց մէջ փակուած մնացին (Յուլ.): Անանկ պաշարում մ՚եղաւ աս պաշարումն՝ որ ամենեւին փրկութիւն չկար եւ բոլոր Ռուս զօրքը մեծ յուսահատութեան ու կատաղութեան մէջ ձգեց:

Հոս Ռուսաց ձեռքէն ուրիշ բան չէր գար բայց եթէ մեռնիլ կամ անձնատուր ըլլալ: Շվետները անօթութեամբ, իսկ Տաճիկները զէնուց զօրութեամբ Թշնամին ոչնչացրնել կ՚ուզէին: Վերջիններուն կամքն յաղթեց: Իսկ Պետրոս յուսահատեալի մը պէս, որն որ ինքզինք բոլորովին բախտի ձեռքը թողուցած՝ Թնդանօթներու որոտման ահագին ձայնին մէջ իր տանը հանգստութեան անկողնոյն մէջ եղածի պէս անտարբերութեամբ կը կենար մէկ կողմանէ լեռներէն Թնդանօթներ ու գնդեր՝ անձրեւի

պէս իր բանակին վրայ տեղացած ատենն, ինքն իր զօրքը հետզհետէ անանկ անտարբերութեամբ կարգի դնելու վրայ էր որ իբր թէ անթիւ անհամար զօրք ունենար: Գիշերն էր միայն ամէն կողմանէ խեղճութեան ու չքաւորութեան մէջ ինկող Ռուսաց քիչ մը հանգստութիւն տուողն, որ ատեն որ գոնէ մերձակայ գետէն իրենց ծարաւը կրնային յագեցընել, զորն որ ցորեկը թշնամական հրացանները չէին թողուր: Ռուսաստանի Նորածին զօրութիւնը հոս ստուգիւ իր վերջին օրը ծագած տեսաւ: Պետրոս թէպէտ ամէն կողմ զօրաւոր էր, բայց հոս ան զօրութիւնը բոլորովին իր ազդեցութիւնը կորսընցուց:

Տաճկի բանակին մէջն էին Վեզիրը, Քեահեան, Չվետի Աքար դուքսը ու Բոնիաթովսքի լեհ կոմսը, որոնք թէպէտ իրենց մինչեւ հիմակ ունեցած յաջողութեանը վրայ կ'ուրախանային, սակայն ապագային վրայ կասկածանաց մէջ էին: Բոնիաթովսքիին խորհրդովը գիշերանց Ռուսաց բոլորտիքը խրամ բացուեցաւ, եւ բոլոր տաճկական բանակը անհնարին պատրաստութիւններով երկրորդ օրուան յաջող պատերազմի մը մեծ յուսոյ մէջ էր: Իսկ Չարն անդիէն իր սրտին դառնութիւնն ու նեղութիւնը ծածկելու համար առանձինն իր վրանին մէջ քաշուած՝ սրտառուչ տրտմութեանց ու դառնադառն հոգերու մէջ ընկղմած էր: Ասանկ վայրենի անապատի մը մէջ իր Նորակազմ բանակովը ոչնչանալու վտանգն աչքէն չէր կրնար հեռացընել: Մէկ րոպէ մը իր այնչափ տարուան քրտնալից աշխատութիւնը պիտի փճացընէր ու զինքն անհաշտ թշնամւոյ ձեռք պիտի մատնէր: Ամենեւին, յաջող հետեւութիւն մը չկար, կամ պէտք էր յուսահատաբար պատերազմիլ եւ կամ անձնատուր ըլլալ: Այսպիսի յուսահատական խորհուրդներով իր վրանը քաշուած ատեն՝ արգելած էր Պետրոս որ իր քովը ամենեւին

մօտը չմերձենայ։ Սակայն Կատարինա աս հրամանս բանի տեղ չդնելով, իր էրկանը վրանը մտաւ, ուր Պետրոս Ինքիրմէ եղած ջղաձգութեան մը մէջ էր։ Կատարինա որ ասանկ ատեններ Զարին հանդարտեցընելու եղանակը գիտէր, անմիջապէս հրամայեց որ պատերազմական ժողովք մը ժողվուի ու խաղաղութեան փորձ մը փորձուի։ Բոլոր զօրավարները գիշերով ժողվուեցան ու Շերեմեթեւ սպարապետը Վեզիրին խաղաղական թուղթ մը գրեց ու Կատարինան ալ բոլոր իր քովը գտնուած ծանրագին զարդերն ու ադնիւ քարերը աս թղթով մէկտեղ Շաֆիրով պատուանուն ձեռքը տալով Վեզիրին խարեց, խոստանալով որ եթէ բանն յաջողելու ըլլայ, ուրիշ պարգեւներ ալ կը խրկուին. անկէ զատ Քեահեային ալ շատ ստակ խոստացաւ։

## 42.

Պատգամաւորին երթալէն քանի մը ժամ ետքը բոլոր բանակին վրայ երկիւղ մը տիրեց որ չըլլայ թէ պատգամաւորը բռնուած ու սպաննուած ըլլայ. անոր համար անմիջապէս նորէն ժողովք մը կանչուեցաւ, որուն մէջ Կատարինան ալ ներկայ կը գտնենք։ Աս խորհրդին մէջ որոշուեցաւ որ եթէ Տաճիկները խաղաղութեան չզիջանին, իրենք յուսահատաբար պատերազմելով թշնամւոյն մէջէն ճամբայ բանալու ջանան։ Բայց Զարը յաջող ելքէ մը յուսահատած ծերակուտին աս նամակը կը գրէ. «Կը ծանուցանեմ որ բոլոր զօրքովս առանց յանցանքի կամ յառաջատեսութեան, պարզապէս սութենէ խաբուելով իզմէ չորս անգամ զօրաւոր տաճկական զօրութենէ պաշարուած եմ, ամենեւին պաշար չունիմ եւ առանց Աստուծոյ մասնաւոր օգնութեանը ուրիշ բան չեմ սպասեր բայց եթէ բոլորովին կործանում ու գերութիւն։ Եթէ վերջինը կատարուելու ըլլայ, եթէ գերի իյնամ, ալ զիս

Ցար ու իշխող մի՛ սեպէք ու նաեւ իմ սեպհական ձեռագրովս խրկած հրամաններուս ալ մի՛ անսաք, մինչեւ որ անձամբ ես Ձեզի չերեւամ։ Բայց եթէ պատժուելու ըլլամ եւ իմ մահուանս վրայ ապահով ըլլալու ըլլաք, ան ատեն ձեր մէջէն արժանաւորագոյնն ինծի յաջորդ ընտրեցէք„։ Շարժեալ սրտով ու արտասուալից աչքերով աս թուղթը Պետրոս հաւատարիմ պաշտօնակալի մը յանձնեց ու անոր ճակատը պագնելով զինքն երկնից պաշտպանութեանը յանձնեց ու ճամբայ դրաւ[1]։

Աստարխնային ադամանդներն ու մարգրիտները եւ ուրիշ ծանրագին ու հազուագիւտ զարդերը Տաճիկները շատ զուարթացուցին ու Վեզիրը Շերեմեթեւին թուղթն առնելով Բոնիաթովսքին կանչեց ու հարցուց թէ ինչ միտքի վրայ է։ Պատասխանեց լեհը թէ թնդանօթաց որոտումն աս թղթին պատասխանն ըլլայ եւ իրօք ալ սկսած էին թնդանօթներն արդէն չորս կողմանէ գոռալ, երբոր մէկէն Վեզիրէն հրաման եկաւ որ կրակը դադրի։ Քեահեան պէտք էր որ հնազանդէր, ու Բոնիաթովսքին առնելով սկսաւ ռուսական բանակը մօտանց դիտել։ Հոս Բոնիաթովսքին Քեահեային Ռուսաց խեղճութիւնն ու անոնց ամրութեանցը տկարութիւնը ցուցուց եւ մտադիր ալ ըրաւ զՔեահեան թէ ինչպէս Ռուսերը մինչեւ կէս մէջք ջուրի մէջ էին ու բանակին մէջ ամէն բան աւելի մեռած քան թէ կենդանի էր, եւ հաւանականաբար Ռուսերը եւ ոչ մէկ յարձակման մը դէմ կրնային դնել։ Աս համոզմամբ նորէն մեծ Վեզիրին վրանը դարձան։ Երբոր Վեզիրը շվետական կողմնակցութենէ ստիպուելով, արգելուած թնդանօթները նորէն արձակելու

[1] Աս ճգնական գիշերուան մէջ գրուած թղթոյն սկզբնագիրը Բեթերսպուրկի Պետրոս մեծին թանգարանին մէջն է։ Նամակը բերողն 9 օրուան մէջ հասած ու դռները գոց սենեկի մէջ ժողվուած ամբողջ ծերակուտին տուած է։

սկսաւ: Թուրք Տաճիկներէն որոշ պատասխան մ՚ու-զեցին եւ Զարը Շաֆիրովին սանկ գրեց:

"Կը տեսնեմ որ Տաճիկները Թէպէտ խաղաղու-թեան միտում ունին սակայն դեռ կը տատամսին, անոր համար ինչպէս որ քեզի աղէկ կ՚երեւայ ու Աստուած ինչ որ քեզի ազդէ անանկ ըրէ, եւ եթէ իրօք խաղաղութիւնն յանձն առնուն, ինչ որ ուզեն մի զլանար բաց ի մեր գերութենէ ու այսօր մեզի լուր մը տուր, որպէս զի մենք ալ, եթէ խաղաղու-թիւնը չյաջողի, բռնական ճամբայ մը բռնելու սկը-սինք,,: Անանկ կը սպառնար նաեւ Շաֆիրով եւ արդէն Ռուսերը, ինչպէս դեսպանը Տաճկաց իմա-ցուցած էր, թշամւոյն անհամար բազմութեանը մէ-ջէն իրենց ճամբան բանալու պատրաստուած էին:

Մերջապէս Վեզիրը խաղաղութեան զիջաւ եւ յանձն առաւ որ զինադադար ըլլայ եւ Ռուսաց կող-մանէ հրեշտակութիւն մը գայ ու խաղաղութեան վրայ խօսուի: Փուճ տեղ կը յորդորէր Բոնիա-թովսքին որ Զարը բռնուի ու Ռուսական տէրութիւ-նը Տաճկի հարկատու ըլլայ: Աս միջոցիս անմիջապէս հասաւ Ռուսի հրեշտակութիւնը, որուն գլուխը նոյն խաղաղութեան դեսպանը Շաֆիրով իմաստուն պա-տանին էր եւ Զարին կողմանէ լիազօր իշխանութիւն ունէր: Վեզիրը մեծ սիրով զիրենք ընդունեցաւ ու Բոնիաթովսքին թարգման ըլլալով խաղաղութեան դաշանց խօսակցութիւնը սկսաւ ու աս թէութիւն-ները Ռուսաց առջեւը դրուեցան: Զարը պէտք էր որ Ազով, Թականրոկ, Քամենոյ, Սաթոն, Պոկորոտիցք քաղաքները Ազովեան կամ Ազախու եւ Սեւ ծովե-րով մէկ տեղ նորէն Տաճկին ետ դարձընէր, Շվե-տի թագաւորին Ռուսաստանէն անցնելու ազատ ճամբայ տար, զօրքերը Լեհաստանէն ետ քաշէր, տաճկի թագաւորը Քողաքներուն պաշտպան ճան-չնար ու բոլոր իր զէնքերը ինչպէս նաեւ ապատամբ Քանթեմիր հոսբոտարը Տաճկաց ձեռքը տար: Թէ-

պէտ մեծ էին Վեզիրին պահանջածները, բայց խաղաղութիւնը փաստըկելու համար Չարն ամէն բան յանձն առնլու պատրաստ էր։ Ասանկով Թող տրուեցաւ հրեշտակութիւնը որ երթայ խաղաղութեան Թէութիւններն Չարին առջին դնէ։ Թէպէտ Պետրոս վերջի երկու Թէութիւնները յանձն չառաւ բայց Վեզիրը տեսնելով որ իր գլխաւոր վախճանին հասաւ ու Սեւ ծովուն վրայ Տաճկաց երկիւղ պատճառող ռուսական զօրութիւնը բոլորովին խորտակեցաւ, առանց վերջի երկու Թէութեանց ալ խաղաղութիւնը յանձն առաւ։ Աս միջոցիս Բոնիաթովսքին խաղաղութիւնն արգելելու համար ամէն բան ի գործ դրաւ, անմիջապէս դէպ ի Պենտեր Կարոլոսին դեսպան մը խաւրեց ու եղածները բոլոր ծանուցանելով կը յորդորէր որ գայ շուտով ու արգելու։ Կարոլոս չհասած, հասաւ Շաֆիրով իր Չարին դաշանց ստորագրութեամբը ու մատոյց Վեզիրին որ ստորագրէ, որն որ Բոնիաթովսքիին ճգանցը հակառակ՝ որ ստորագրութիւնն արգելելու համար մինչեւ իր ձեռքը բռնած էր, դաշնագրոյն ստորագրեց 1711 (Յուլ.)։ Այսպէս կորսնցուց Պետրոս հոն ան ամէն բան՝ զորն որ Քարլովիցի խաղաղութեամբ ստացած էր[1]։ Աս խաղաղութեան մէջ, որ

[1] Քարլովիցի խաղաղութեան վրայ, զորն որ մինչուկ հիմակ պատմութիւններնուս ընթացքին մէջ քանի մ'անգամ յիշեցինք, հետաքննին ընթերցողին գաղափար մը տալու համար, հոս տեղւոյն անձկութիւնը ներածին չափ նոյն խաղաղութեան ծագմանը պատմութիւնը համառօտիւ մը կը դնենք, ազդելով միանգամայն որ առաջիկայ տեղեկութիւնն ուրիշ բան չէ բայց եթէ 15 Թուոյն ծանօթութեան մէջի պատմութեան յառաջխաղացութիւնը։ — Վիէննայի ազատութենէ ետքը տաճկական պատերազմը քանի մ'անգամ ընդհատելով 15 տարի տեւեց, որ միջոցին մէջ որ կայսրական զինուց վրայ մեծ յաջողութիւն կը տեսնուէր։ 1683ին Տաճիկները Պարքանի քով երկրորդ անգամ սոսկալի ջարդ մը կերան, որմէ շատ քիչ մարդ կրցաւ ազատիլ. ասոր վրայ Կրան քաղաքն անձնատուր եղաւ. աս գժբախտութեամբ Գարա Մուստաֆան իր կեանքը կորսնցուց (որուն գլուխը մինչուկ հիմակ Վիէննայի զինարանին մէջ կը պահուի)։ 1684ին Վենետիկ ալ ան դաշանց մասնակից

Հուշ պզտի քաղքէն Հուշեան խաղաղութիւն կո-չուեցաւ, կորսնցուց Պետրոս Ազովն ալ վիճակի մէջ ինչ վիճակի մէջ որ Տաճկըներէն առած էր, պարտաւորեցաւ Նորաշէն ամրոցներն հարթ յատակ ընելու ու Սամարա քաղաքը գտնուող թնդանօթներն ու պատերազմական պաշարն Տաճկաց ձեռքն յանձնելու։ Երկու կողմանէ ալ որոշուեցաւ որ նոյն տեղերն ալ ամենեւին ամրոց չշինուի։ Ա՛լ Ռուսաստան ոչ Լեհաց թագաւորութեան եւ ոչ ալ Թաթարներու գործքերուն պիտի խառնուէր։ — Գե-

եղաւ, զորն որ Կայսրը, Լեհաստան ու Իննովկենտիոս ԺԱ. իրենց մէջ դրած էին, որոնց Սպանիա ու Փորթուգալ ալ-կով կռնակ կեցան ու Գերմանիա զօրք կու տար. տարպտուղը հետեւեալ տարին երեւալու սկսաւ, ինչու որ Կարոլոս Լոթարինգիայի դուքսը Կրանի քով փառաւոր յաղթութիւն մը վաստըկեցաւ, որով զանազան ամրոցներ հետզհետէ անձնատուր ըլլալու սկսան։—1686ին կայսրական բանակը (90,000 զօրք Կարոլոս Լոթարինգիայի դքսին զօրավարութեամբը) երկամսեայ պաշարումէն ետքը Օֆէն քաղքին վրայ յարձակեցաւ, որուն մէջի Տաճկաց հրամանատարները ըստ մեծի մասին Գաղղիացի էին։ 140 տարի էր քաղաքը Տաճկաց ձեռքը մնացած էր. որն որ առնուելէն ետեւ ուրիշ մեծամեծ քաղաքներ ալ ինկան ու մի եւ նոյն ատեն Վենետացիք ալ Մորէայի ու Դալմատիայի մէջ մեծ յաջողութեամբ միշտ յառաջ քալելու վրայ էին։ Սակայն Մոհաչի քով եղած յաղթութիւնն աւելի եւս յաջողագոյն ու փառաւորագոյն է։ Կայսերականք Կարոլոս Լոթարինգիայի դքսին ու Պաւիերայի ընտրող իշխանին առկ. յիշեալ քաղքին քով Տաճկաց անանկ ջարդ մը տուին որ (1687 Օգոստ. 12) հազիւ 10,000 տաճիկ 5 միլիոն աւար թողլով կրցան փախչիլ. ասոր վրայ Սլաւոնիա, Սիպնպիւրկէն ու բոլոր Մաճառաստան կայսեր հպատակեցան ու առանձինն Մաճառաստան իր ընտրական իրաւունքէն հրաժարեցաւ ու Կայսեր Յովսէփ Ա. երէց որդին առաջին ժառանգական թագաւոր ընդունեցաւ (1687 Հոկտ. 31)։ Հետեւեալ տարին (1688) ուրիշ մեծամեծ քաղաքներ ալ անձնատուր ըլլալէն զատ Սեպտ. 6ին Մաքս. Էմմանուէլ Պաւիերայի ընտրող իշխանը անանկ սոսկալի ջարդ մը տալով Պելկրատի վրայ յարձակեցաւ որ բոլոր Սերբիա մէկէն հնազանդեցուց։ — Վալաքիա ինքնակամ հպատակեցաւ։ 1689ին Լուդովիկոս Պատենի իշխանին Մորաւա գետին ու Նիսսայի քով ըրած նշանաւոր յաղթութիւններովը Վիտին ու Սոֆիա քաղաքներն ալ առնուեցան որով Դրան Դանուբի ձախ դին ամենեւին տեղ մը չմնաց։ Սակայն 1690 ու 1691ին Գաղղիացւոց Լուդովիկոս ԺԴ. թագաւորին Գերմանիայի դէմ տուած պատերազմովը ու Տաճիկները զօրանալովը կայսրականք իրենց յաջողութիւնը բոլորովին

տրոս իր բերնովը կը խոստովանի իր Կարոլոսին պէս առանց պաշար ունենալու 20,000 Թէպէտ ընտիր զօրքով 250,000 Ցաճկաց դէմ ելլալով ըրած անխոհեմութիւնն ու ասանկ կը գրէ. "Ես ալ հիմակ ըստ ամենայնի ան վիճակին մէջն եմ՝ ինչ վիճակի մէջ որ Կարոլոս իմ եղբայրս Բոլթավայի քով գտնուեցաւ. առանց իմ զօրացս պիտոյքն հոգալու թշնամւոյ երկիրները մտայ։ Կորուստ Պրանքովայինն"։

## 43.

Որչափ որ անակնունելի էր աս խաղաղութիւնը, այնչափ ալ մեծ եղաւ Ռուսաց ուրախութիւնը։ Ամէն բան անմիջապէս փոխուեցաւ. ստորագրութենէ անմիջապէս ետքը հրամայեց Վեզիրն որ ռուսական բանակին կերակուր հոգացուի, որով Ցաճկաց բանակը կերակուր գնող ռուսներէն լեցուեցաւ։ — Անդիէն Կարոլոս Բոնիաթովսքիին թուղթն առնլուն պէս ինքզինք ձի նետած ճամբայ ելած էր, բայց բանը բանէն անցնելէն ետքը։ Կարոլոս

կը կորսնցունեն։ Ցաճկական տասւար բանակ մը նորէն երեւան կ'ելլէ, Գամնիա կը նուաճի, Նիսսա ու Վիտին անձնատուր կ'ըլլան. Սեմենտրիա ու Պելկրատ չարաչար յարձակումներ կը կրեն։ Սակայն եւ այնպէս 1691ին Օգոստ. 19ին Սալանքեմենի արիւնահեղ պատերազմին մէջ Մեծ Վեզիրը կ'իյնայ ու 25,000 տաճիկ պատերազմի դաշտը կը ծածկեն։ — Աս միջոցիս պատերազմը շատ տկար յառաջ կ'երթար ու նշանաւոր հետեւութիւն մ'ալ չունէր եւ Լուդովիկոս Թագաւորին ճգանցը հակառակ ծովական տէրութիւնները խաղաղութեան ետեւէն էին։ Վերջապէս Մուստաֆա Բ. 1697ին Սեպտ. 11ին անձամբ Զենթայի քով Եւգինէոս Սաւոյացի իշխանէն չարաչար յաղթուեցաւ, բոլոր բանակն ու 30,000 մարդ կորսնցուց։ Ասոր վրայ 1699, Յունվ. 26ին Քարլովիցի քով 25ամեայ դաշանց ստորագրուեցաւ, որով Աւստրիան՝ Թեմեշվարի երկիրը դուրս առնլով, բոլոր Մաճառաստան, Սիպնպիւրկէն եւ Սլաւոնիա դարձեալ իր տակն առաւ։ Աս զինադադարի զօրութեամբն Ազով Ռուսաց ձեռքը կը մնայ (23) Լեհաստանի ու Վենետիկի ալ հատուցմունքներ կ'ըլլան։ — 24. յօդուածին մէջ յիշուած զինադադարը Քարլովիցինը ակնարկել կ'ուզէ։ Ռուսաստանի Քարլովիցի խաղաղութեան համար դրոշմած յիշատակագրամը տես 13. յօդուածին ծանօթութեանը մէջ։

ըստ ամենայնի Ռուսաց բանակին առջին հասնելով մեծ դառնութեամբ ուրախութեան աղաղակները լսեց ու Ցածիկներն եւ Ռուսերը առանց թշնամութեան մէկզմէկու հետ խառնուած տեսնելով իր աչքերուն չէր կրնար հաւտալ. տեսաւ նաեւ Ռուսաց երթալու վրայ ըլլալնին. կ'երէր կը տաչարէր անհամբերութենէ ու եղածն իմանալ կ'ուզէր: Փոխանակ կամուրջները փնտռելու որ 3 ժամու մէջ դիմաց կ'անցընէին, դէտ նետուեցաւ անդիի կողմն անցաւ ու առանց արգելքի մը Ռուսաց բանակին մէջէն անցնելով Բոնխաթովզքիին հասաւ ու հոն իրեն համար պատահած դժբախտ դէպքն իմանալով՝ կրնայ մտածուիլ որ ինչ դառնութեամբ Վեզիրին առջին ելած է, որն որ զէնքը թագաւորական պատուով իր վրանն ընդունեցաւ ու իր գորգին վրայ աջ դին նստուց: Հոն Կարոլոս եղած դէպքին վրայօք իր սրտին դառնութիւնը յայտնեց ու կատղութեամբ կը յորդորէր Վեզիրն որ պատերազմը յառաջ տանի եւ Ռուսերը փճացընէ, սակայն վայրապար: Կրակ կտրած թողուց գնաց Կարոլոս բոլորովին իր յոյսէն կողոպտուած, որով կը յուսար որ քիչ ատենուան մէջ իր թշնամին կապեալ կաշկանդեալ իր առջեւը կը տեսնէ:

Ռուսերը իրենց կահ կարասիքը թողուցած, զօրոնք տկար ձիերը քաշելու զօրութիւն չունէին, բայց առատ կերակրեղէնօք ու 5000 Սպահիներու պաշտպանութեամբը աս դժբախտ տեղէն լեհական սահմաններուն վրայէն իրենց հայրենիքը դառնալու սկսան: Սահմաններու վրայ Ռէօննէ զօրավարը, որ մեծ յաջողութեամբ Ցաճկաց դէմ կը պատերազմէր, աս տկար բանակին հետ միացաւ: — Աս վախճանն ունեցաւ աս պատերազմն ալ. Շաֆիրով սպարապետը իբր պատանդ Կոստանդնուպոլիս խաւրուեցաւ: Աս զարհուրելի դէպքը Պետրոսի քաջալերութեանն ու հաստատութեանն ամենեւին վնաս մը

չքերրաւ : Քանի որ Թշնամւոյն ձեռքն իյնալու երկիւղը չէր փարատած, մեծ տրտմութեանց մէջ էր, սակայն անգամ մ'որ անկից ազատեցաւ, Նորէն արիաբար ոտք ելաւ ու իր մինչեւ նոյն ատեն աչքին կառջին ունեցած վախճանը չկորսընցուց ու ծերաուտին ասանկ գրեց. “Ստոյգ է դժբախտ ու տխրալի բան է անանկ տեղեր կորսնցընել որոնք մեծ ճգամբ ու ծախքով վաստըկուած էին, սակայն ասոնց տեղը կը լեցընեմ եւ ուրիշ կողմանէ աւելի եւս մեծ շահ կ'ունենանք„: Իրօք գրածին պէս ալ Նորէն Արեւելեան ծովուն քով իր գործքերը յառաջ տանելու սկսաւ ու իր զինուցը յաջողութիւնն ու ազդեցութիւնը չիկորսնցուց եւ Ռուս անուան մեծ պատիւ բերաւ. բայց դեռ աս պատմութեանց չսկսած Կարոլոսի պատմութիւնն համառօտիւ մ'աչքէ անցընենք ու տեսնենք թէ Զարին պատերազմներու զբաղած ու Բրութին դժբախտութեանն ատեն Եւրոպայի վերի կողմերը մեզի վերաբերեալ ինչ դէպքեր հանդիպեցան ու քիչ մ'ատեն ալ Զարին դէպ ի Քարլսպատ ըրած ճամբորդութեանը ճանապարհորդակից ըլլանք, որուն անանկ աշխատած ու յոգնած մարմին մը մեծ հարկաւորութիւն ունէր:

Կարոլոս որ Վեզիրին՝ իր բախտն ասանկ աղարտելուն համար, կորուստ երդուընցած էր, իրօք զէնքը Սուլթանին ամբաստանեց՝ որ օսմանեան տէրութեան փառքն ու բարիքը իր ագահութեանը զոհեց: Առանց ունկնդրութեան ու դեռ Կոստանդնուպոլիս չհասած Վեզիրն ի մահ դատապարտուեցաւ: — Բոնիաթովսքիին ջանքը, Կարոլոսին յորդորանքներն եւ Ռուսաց դաշնադրութեան թէութեանց կատարման դանդաղելը՝ պատճառ եղաւ որ երկու անգամ Նորէն Ռուսաց դէմ պատերազմ հրատարակուի (1712 ու 13ին, երկու անգամ ալ Ապրիլի մէջ). բայց Անգղիայի ու Հոլանտայի միջամտութեամբը հետեւութիւն մը չունեցաւ. Հու-

շեան[1] խաղաղութիւնն հաստատուեցաւ, առատական զօրքը Լեհաստանէն ելաւ ու միւս թէութիւններն ալ կատարուեցան: Մեծ ցաւով Պետրոս իր աչքէ յաղթութիւնն, Ազովը, Նորէն Տաճկաց ձեռքը տուաւ: Թուականոքի Նաւահանգստին ամուր ամրոցներն քանդուեցան ու Պետրոսի բազմամեայ զբաղմանցը առարկան՝ Վորոնէժի Նաւագործութիւնն ինկաւ: — Կարոլոսի յոյսն ալ Տաճկէն բոլորովին կտրեցաւ, Նոյն իսկ Տաճիկներն իրմէ ձանձրացած բռնութեամբ զինքը Տեմոթիքա քշեցին, ուր որ նաեւ միշտ անհանգիստ էր. վերջապէս աս դժբախտ դէպքերն ու իր Տաճկի տէրութեան մէջ մնալուն անօգուտ ըլլալն ստիպեցին զինքն որ թագաւորին խորհրդոցը համաձայն Տեմոթիքա հարուստ ընծաներով թողու երթայ: Կարոլոս սահմաններուն վրայ իրեններներէն բաժնուեցաւ ու երկու պաշտօնակալով ծպտեալ, ըստ մեծի մասին ձիով Շթուլվայզենպուրկ, Օֆէն, Վեննա, Ռեկենսպուրկ, Նիւռնպերկ, Պամպերկ, Վիւրցպուրկ, Հանաւ, Քասսէլ, Պրաւնշվայկ ու Կիւսթրով քաղաքներուն վրայէն — 14 օրուան մէջ 280 գերմանական մղոն ճամբայ առնլով, գիշերանց յանկարծ Շթրալսունտ հասաւ:

Ներուի հոս մեզի Կարոլոսի վրայ քիչ մ'երկայնկեկ խօսելով իր պատմութիւնը լմնցընելը: Աս դիւցազնը իր հեռաւորութեանն ատեն Հոլշթայնի պաշտօնեան Կէօրցը իր տէրութեանը վերատեսուչ դրած էր: Աս իմաստուն մարդը բոլոր ժողովրդեան վրայ թագաւորական թագին յարգ մը տպաւորեց. իրեն հիմակուան յատակագիծն ան էր որ Կարոլոսը Զարին հետ հաշտեցընէ ու անոր օգնութեամբը կարող ըլլայ միւս դաշնաւորաց ըրած յաղթու-

[1] Հուշ Մոլտաւիայի մէջ Գալչի քաղաքէն քիչ մը վեր փոքր քաղաք մըն է ու կ'երեւայ թէ աս անունը միայն աշխարհագրական տախտակներու մէջ կը գործածուի, որովհետեւ տաճկական դաշնագրերու մէջ աս տեղը Կեչիտ գուշ կը կոչուի:

թիւններն ետ առնուլ։ Երկայն բանագնացութենէ ետքը 1718ին գաղտնի դաշինք մ՚եղաւ, որուն առ-ջի գործքը Գամիան խոնարհեցընելն էր։ Աս ասանկ ըլլալէն ետքը Կարոլոս ԺԲ. ու Արմֆելտ սպարապետը աշնան երկու կողմանէ Նորուեգիա յարձակեցան։ Սպարապետը լերանց վրայ ելլելով Տրոնդհայմ քաղաքը պաշարեց, որուն 10,000 զօրքէն 500ը ձեան մէջ կարգ կարգ շարուած սառած մնացին ու վայրենի անասնոց կեր եղան։ Իսկ թագաւորը Ֆրիտրիխսհալ քաղքին պաշարումն սկսած էր ու գործքը շատ ծանր կը յառաջանար. իր զօրքը անդադար խրամներ պեղելու ետեւէ էր ու գործքը շուտցընելու համար Կարոլոս անձամբ վերը կեցած իր զօրքը կը քաջալերէր։ Քիչ մը ետքը իր երկու պաշտօնակալներն իր քովը գալով զինքը կռնկի վրայ փռուած գտան, քունքը գլխուն երկու դիէն կապարի հարուածով մը ծակած ու ձեռքը սուրին վրան էր։ Ա՛յսպէս եղաւ աս աշխարհքէս բոլոր Եւրոպա իր առջին դողացընող, հիւսիսային քաջասիրտ առիւծ, դիւցազն ու նշանաւոր Կարոլոս ԺԲ. իր 37ամեայ հասակին մէջ։ Զարմանալի էր իր խստութիւնն ու քաջութիւնը. չափաւոր էր Կարոլոս ու ժուժկալ ու գրեթէ կանանց թշնամի. Նաեւ կրօնական զգածմունքներ ալ չէին պակսեր իր վրայ։

## 44.

Պետրոս թէպէտ Սեւ ծովուն վրայ վաստըկած տէրութիւնը կորսնցուց, սակայն դեռ մեծ ասպարէզ մ՚ունէր իր առջին, որ էր իր Պալթիկ ծովուն վրայ ըրած յաղթութեանցը ապահովութիւնը, որն որ իր տէրութեանը ներքին զօրութեանը ու իր հպատակացը վրայ անհամեմատ իրական ազդեցութիւն ունէր։ Պետրոս Բրուտ գետին քով երկրայական վիճակի մէջ եղած ատենն իր դաշնակիցները Շվե-

տը հանգիստ թող չէին տուած, որուն Կարոլոսին յամառութիւնը աւելի եւս գրգիռ եղած էր։ — Բոլթաւայի քով Կարոլոսի յաղթուելէն ետքը շուետական բազմաթիւ գունդ մը Քրասսաւ զօրավարին առաջնորդութեամբը Լեհաստանէն շուետական գաւառները քաշուած էր։ Ան վախը որ չ՚ըլլայ թէ պատերազմի հուրը բոլոր Գերմանիայի մէջ տարածուի, անմիջապէս (1709) Լեհաստան, Ռուսաստան ու Դանիայի հակառակորդ դաշնակիցները, այսինքն՝ կայսրը, Անգղիան ու Հոլանտան Հաակի մէջ ժողովք մ՚ըրին, որով գերմանական շուետական գաւառներու ան թէութեամբ չէզոքականութիւն կը շնորհէին՝ որ կամ քրասսաւեան գունդը անգործունեայ մնայ կամ քաշուի Շուետ երթայ։ Կարոլոս Պեսսարապիայի Ներքին կողմերէն աս չէզոքականութեան դէմ բողոքեց ու հրաման խաւրեց որ Քրասսաւ իր հարուստ գունդովը նորէն Լեհաստան մտնէ։ Ա՛լ ամենեւին արգելք մը չիկար Կարոլոսի թշնամեաց պատերազմով Բոմերանիա մտնելու։ Բայց Քրասսաւի գունդին Գերմանիա արգելուիլը մեծ օգուտ էր Պետրոսին, որովհետեւ իր Մոլտաւիա մտած ատեն քրասսաւեան գունդը կրնար իր ետեւէն առնուլ։ Սակայն ըստ ինքեան գործքերը շատ ուշացան ու հազիւ Զարին Մոլտաւիայէն դարձած ատենը Դանիացիք իրենց թագաւորին առաջնորդութեամբը Բոմերանիա ելան ու Օգոստոս թագաւորն ալ իր սաքսոն-ռուսական գունդերովը Շթրալզունտի առջին Դանիացւոց հետ միացաւ ու աս ամուր շուետական ծովային քաղաքը պաշարեցին։ Պետրոսին մինչեւ աս ատենս կրած աշխատութիւնն ու նեղութիւնը ու դժբախտ անակնալ դէպքերը ու նոյն իսկ իր որդւոյն հոգը զինքն անանկ տկարացուցած ու աշխատցուցած էին որ շատ անգամ անկողին մտնելու ստիպուած էր։ Կէս մ՚աս ու կէս մ՚ալ որդւոյն հարսանեացը պատճառաւ պէտք էր

որ Բոհեմիայի Քարլսպատ քաղաքը ճամբորդութիւն մ'ընէր։ Իր ամուսինէն՝ որ մինչեւ Թոռն իրեն ուղեկից եղաւ, պահապան զօրաց մէկ բաժնոյն պաշտպանութեանը յանձնելով բաժնուեցաւ ու Լեհաստանին վրայէն Քրոսսէն ու Կուպէն քաղաքներէն անցնելով Տրեզտէն հասաւ։ Ճամբան սաքսոնական Էրցկէպիրկէ լերանց մէջէն կ'իյնար, ուր որ Ֆրայպերկի մօտ հարուստ ու զանազան բովագործութիւններն իր բոլոր մտադրութիւնը գրաւեցին։ Ստորերկրեայ ճամբաներուն մէջն իջաւ, ուր անխոնջ աշխատաւորները երկրին ծոցը ծածկուած գանձերը դուրս կը պեղէին ու իր սովորութեանը համաձայն ամէն բան խիստ քննութեան տակ ձգեց ու գործավարաց երգերովը պատուեցաւ։ Ասկից Ցոպաւի, Աւկուսթուսպուրկի եւ Օպերվիզենթալի վրայէն Բոհեմիա մտաւ։ Քարլսպատի զուարճալի եւ անգործունեայ կեանքը ու անոր առողջարար աղբիւրները Պետրոսին հոգւոյն ու մարմնոյն մեծ արծարծում ու կենդանութիւն տուին որով իր առջի զուարթ բնութիւնը նորէն ստացած Մենչիքովին ասանկ կը գրէ. “Այսօր, Լեսնայի յաղթութեան տարեդարձին օրը գաւաթ մ'ալ քու առողջութեանդ համար խմեցինք„։ Շվետական տաճկական գործքերը նոյն իսկ հոս զինքն հանգիստ չթողուցին. Վոլինսքին Կոստանդնուպոլսոյ դեսպանէն իբրեւ հրեշտակ հոս խաբուելով ծանոյց թէ Դուռը անյապաղ խոստացուած տեղերը ետ կ'ուզէ. Զարը նորէն եղած խոստմունքը կատարելու հրամաններ խաւրեց, սակայն պահանջեց որ տաճկի կողմանէ դաշնագրոյն պայմանները կատարուին ու Շվետի թագաւորը տէրութենէ հեռացուի։ — Պետրոս կատարեալ առողջանալէն ետքը մեծ ուրախութեամբ իր որդւոյն հարսանեացը ներկայ գտնուելու համար ճամբայ ելաւ, որովհետեւ հաստատուն յուսով կը կարծէր որ նորընտիր սիրալիր

հարսը իր որդւոյն սրտին վրայ մեծ ազդեցութիւն կ՚ընէ ու զինքն ուղղելու բաւական կ՚ըլլայ : Հարսնիքը Թորկաւ քաղաքը պիտի կատարուէր, որն որ Լեհի Թագուհւոյն նիստն էր, ու Պետրոս Ցրեզդէն նաւ մաններով Էլպայի վրայէն Թորկաւ հասաւ: Հասնելուն առջի կիրակին մեծ հանդիսութեամբ հարսնիքը կատարուեցաւ[1] ու Վոլֆենպիւթթելի արքունեաց կողմանէ կը բաղձացուէր որ Նորապսակները ձմեռն իրենց քովը մնան ու ասոր համար Զարին մասնաւոր աղաչեցին որ իշխանը նոյն ձմեռ Գերմանիա թողու : Սակայն Զարն որ անկէ ետքը որդւոյն վրայ բոլորովին փոփոխութիւն մը կը յուսար, զինքն հայրենեաց գործոցը աւելի եւս տեղեակ ընելու համար աս խնդիրքը յանձն չառաւ, նոյնպէս մերժեց ան խնդիրքն ալ որ գոնէ հարսը նոյն ձմեռն իր հայրենիքը անցընէ, որովհետեւ Պետրոս որդւոյն փոփոխութեանը յոյսը մինակ անոր վրայ դրած էր: Մինակ անոր հաւանեցաւ որ քիչ մ՚ատեն Վոլֆենպիւթթել երթան ու վերջի բարեւը տան ու ինք բոլորովին առողջացած ու հոգւով եւ մարմնով զօրացած հայրենիք փութաց : Սակայն կը տեսնենք որ Պետրոս Քրոսսեն քաղքին մէջ իր ճամբորդութիւնը քանի մ՚օր կ՚ընդհատէ ու հոս Դանիայի եւ Պրուսիի դեսպաններուն հետ խօսելով կ՚որոշէ որ ամենայն եղանակաւ Շթրալսունտ առնուելու ջանա-

[1] Աս հարսանեաց աւթով կոխուած մետալին վրայ Զարորդւոյն ու Իշխանուհւոյն կիսարձանները կան աս բոլորագրով "Ալեքս. Պետր. Ինք. Ռուս. Ժառ. Եւ. Կարոլ. Քրիստ. Սոփ. Իշխնհ. Պրաւնշվկ. եւ Լիւն. Ռ.„ (Alex. Petr. Imp. Russ. Haer. et. Carol. Christ. Soph. Pr. Brunsu. et· Lun. R.): Անկէ զատ կայ նաեւ սեղան մ՚ալ, որուն վրայ վառ ու բորբոք հուրէն զատ, երկու զինանշան՝ ռուսական արծիւն ու Պրաւնշվայկի ձին կայ : Սեղանին վրայ մէկմէկու կցած երկու ձեռք կը տեսնուի աս գրերով "Հաւատարմութիւնն ազնուագոյնս քան զասս ոչ ուրեք կապեաց„ (Non usquam junxit nobiliora fides): Սարնաբաժնոյն գիրերն են "Զհարսանեաց Թորկաւ հռչակ հարկանէ ի 25 Հոկտ. 1711„ (Ob nupt. Torgau celebrat. XXV. Oct. MDCCXI.)

ցուի, որպէս զի ասկից իբրեւ հաստատուն տեղէ մը ազատութեամբ Ռիւկեն կղզւոյն վրայ գործուի։ Հանովերի ընտրող իշխանին հետ ալ բանակցութիւն եղաւ ու խնդրուեցաւ որ արեւելեան ծովեզերքը ունեցած տեղերուն համար դժուարութիւններ հանելով պատերազմի արգելք չըդնէ ու ջրի եւ ցամաքի վրայ պատերազմն անընդհատ յառաջ երթայ։ Ասկէ 1712ին Յունուարի մէջ բարեբախտաբար իր կողակցովը Բեթերսպուրկ հասաւ։ Հոս Կատարինան՝ զորն որ արդէն տաճկական պատերազմէն յառաջ իրեն ամուսին առած էր, նորէն մեծ հանդիսութեամբ իրեն յանձնուեցաւ։

## 45.

Հոս Ալեքսիոս իշխանին վրայ համառօտ տեղեկութիւն մը տալը յարմար կը տեսնենք։ Ալեքսիոսին պատանեկութեանը երկնքին վրայ բախտաբեր աստղ մը ամենեւին չփայլեցաւ ու ամէն բարեաց ու մեծութեանց բողբոջը սիրոյ արեգական ջերմացուցիչ ու լուսաւորիչ ճառագայթը չտեսնելուն ընդ միշտ ապականեցաւ ու չորցաւ։ Նոյն իսկ Ալեքսիոսի մօրը՝ Եւթոքսիային, Պետրոսին հետ կարգուիլը դժբախտ եղաւ։ Ինչպէս որ գիտենք Եւթոքսիա բոլորովին ժամանակին համաձայն ռուսական հոգւով զգածուած ռուսուհի մըն էր, որով բնականաբար Պետրոսին անհաճոյ ըլլալով գլխուն եկած դժբախտութեան ալ արդէն տեղեակ ենք։ Սակայն Եւթոքսիային աս վիճակը իր որդւոյն ալ դժբախտութեան պատճառ եղաւ։ Վայրենաբարոյ ու անկիրթ Պետրոսը իր որդին կրթելու կարողութիւն չունէր, ինչու որ շատ անգամ եւ ոչ ինքզինք կրնար զսպել, ու մայրն ալ մենաստան աքսորուած էր։ Ասանկով Ալեքսիոս որբ մնաց եւ լաւագոյն կ՚ըլլար իրեն իր մօրը մահուամբը քան թէ անոր աքսորանքովը որբ մնալ։ Եւ հասակն առնլով սկսաւ իր

ծնողացը մէջ ծագած ամուսնական գժտութեան պատճառները փնտռել ու իմացաւ թէ իր մայրը հայրենական սովորութեանց ու բարուց զոհ մ՚եղեր է. աս բարքն ու սովորութիւնը սկսաւ իրեն բարձր ու նուիրական երեւալ եւ մանաւանդ երբոր աքսորեալ ձարուհւոյն կողմնակիցները տղուն առջին մօրը բարեսրտութիւնն ու անմեղութիւնը կը պաշտպանէին: Ասանկով տղան արդէն իր մօրմէն զրկուած ըլլալով հօրմէն ալ պաղեցուցին, որն որ իր սիրելիները, Մենչիքոֆն ու անոր նման մարդիկները տղուն դաստիարակ կարգեց, որոնք եւ ոչ կարդալ գիտէին ու հազիւ կրնային անուննին գրել: Ալեքսիոս իր մանկական սրտին ամէն կարողութեամբն ասոնց ամէնն ալ կ՚ատէր, ու իր հօրը երկրորդ ամուսնութեամբը բոլորովին սիրտն իրմէ պաղեցաւ եւ տեսաւ որ Լիթուացի զինուորի կնոջ մը սիրոյն իր մայրը բոլորովին մոռցուեցաւ: Ա՛լ ասկէ ետքը երթալով աւելի եւս իր հօրմէն պաղեցաւ ու թափառական կենաց մէջ մխիթարութիւն փնտռելու սկսաւ. ասոր վրայ բոլոր նորոգութեան հակառակորդներն ու աւելորդապաշտ Բոյերը գունդագունդ զինք կը բոլորէին ու բոլոր ժողովրդեան հօրը դէմ ունեցած ընդդիմութիւններն ու տրտունջները բերաննին առած՝ այս ամենայն վնասակար նորոգութեանց զԱլեքսիոսը մտադիր կ՚ընէին ու զինքը ժողովրդեան փրկիչ կը համարէին:

Պետրոս իր որդւոյն հոգին արդէն իմացած էր, ու զինքը կարգի բերելու յուսով ու գործքի մը զբաղցընելու մտօք տաճկական պատերազմի համար Մոլտաւիա գացած ատենը տէրութեան կառավարութիւնն իրեն յանձնեց: Սակայն Ալեքսիոսին ընթացքը հօրը յուսոյն ամենեւին չէր համապատասխաներ: Կառավարութիւնը ձարորդւոյն յանձնուելուն համբաւը տարածուելուն պէս Ռուսաստանի

չորս կողմանէ նեղութեան տրտունջներ գալու սկսան ու ամէն մարդ ազատութիւն կը խնդրէր ան իշխանէն՝ զորն որ կղերը չորս կողմը փրկիչ ժողովրդեան կը քարոզէր։ Ալեքսիոս իր հօրմէն ժողովրդեան թոյլտուութիւն խնդրեց, չառաւ յանձն հայրը ու իր որդւոյն ասնոր հոգւով կառավարելու անկարող ըլլալն իմացաւ ու աս համոզմամբ գրեց Բրութին եզերքէն, ուր որ մահ կամ գերութիւն իրեն կը սպառնացուէր, որ իրեն տեղ արժանաւորագոյնն յաջորդ ընտրեն։ Եկաւ Պետրոս իր երկիրը, թողութիւն շնորհեց Ալեքսիոսի ու զինքն ուղղելու համար ուրիշ փորձ մ'ալ փորձելը միտքը դրաւ, որն որ էր վերը յիշուած ամուսնութիւնը։

Պոմերանիայի պատերազմը քիչ ատեն մ'ալ խաղաղութիւն չտուաւ Պետրոսին։ Շթրալսունտի պաշարումը շատ երկայն գնաց, մէջի շվետ զօրքը քաջութեամբ բերդը կը պաշտպանէր, համբաւ մ'ալ ելաւ որ դաշնաւորք Շվետաց հետ խաղաղութիւն պիտի ընեն։ Աճապարեց Պետրոս իր Կատարինային հետ ճամբայ ելաւ դաշնաւորաց օգնութեան. 15,000 զօրք Մենշիքօվ իշխանին զօրապետութեամբը Բոմերանիա հասան, ուր որ նաեւ մեծ ուրախութեամբ Զարն ընդունուեցաւ ու Դանիայի թագաւորին հրամանաւը դանիական նաւատորմղին հրամանատար եղաւ։ Պետրոսի խորհրդովը պատերազմի յատակագիծը շինուելէն ետքը՝ անդիէն Շվետի նաւատորմիղ մը հասաւ, Սթէնպոք կոմսին հրամանատարութեամբը, որն որ Ռիւկենի ու Շթրալսունտի առատ պաշար բերած էր։ Դանիայի տկար նաւատորմիղը սկզբան վախնալով ետ քաշուեցաւ, բայց յետոյ Շվետաց նաւերը պարպելու զբաղած ատեննին ամենայն զօրութեամբ վրանին յարձակեցաւ, զարկաւ, ցրուեց ու բոլորովին Շվետի նաւատորմղին յաղթելով 100էն աւելի նաւ փճացուց, որով Բոմերանիայի համար եկած

պաշարին ալ գրեթէ բոլորովին փճացաւ ու Սթէն-
պոք ստիպուեցաւ Ռիւկենը ու Բոմերանիան թող
տալու։ Բայց ո՞ւր կրնար երթալ. իր թագաւորին
հրամանը կատարելը, Լեհաստան ու անկէն ալ
Պենտեր երթալը հարկաւոր իրերու պակսութեանը
համար անկարելի էր։ Պրեմէն ու Վերտէն շվետա-
կան գաւառները արդէն Դանիացւոց ձեռքն էին.
ուստի ուրիշ բան չմնաց բայց եթէ Մեքլենպուրկի
մէջէն դէպ ի Հոլշթայն ճամբայ ելլել, ուր կը յու-
սար որ ընդունելութիւն կը գտնէ։ Իրօք ալ աշնան
18,000ի բանակով մը Շթրալսունտէն Ռոսթոքը
գրաւեց ու իր ընթացքը ապահովցընելու համար
դանիական-սաքսոնական բանակը զարնելու ետեւէ
էր։

## 46.

Պետրոս աս միջոցիս երբոր Ռիւկենի ու Շթրալ-
սունտի առումը չյաջողեցաւ՝ Նորէն իր առողջու-
թեանը համար Քարլսպատի բաղնիքները գացած
էր, ուր որ հազիւ թէ 3 շաբաթ կեցած էր երբոր
մէկէն Սթէնպոքի Նորէն պատերազմիլ ուզելուն
լուրն առաւ։ Կրնար երկրորդ Բոլթավա մ՚ալ հոս
ըլլալ. բոլոր Շվետի զօրութեան ծուծը հոս Սթէն-
պոքի քով ժողվուած էր, որն որ առանց պաշարի
օտար երկրի մէջ չորս կողմանէ թշնամիներով
պաշարուած Հոլշթայն մտնելու կարողութեանը յու-
սէն աւելի բան մը չունէր։ Զարը Քիւսթրովէն քիչ
մը հեռու, Լեհաստանի թագաւորին հետ միանալով,
Դանիացիք ալ գտնելու համար դէպ ի Քիւսթրով
շարժելու սկսաւ. ու անընդհատ Դանիացւոց թա-
գաւորին սուրհանդակներ կը խաւրէր որ բոլոր զօ-
րաց հետ չմիացած կարելի եղածին չափ պատերազ-
մէ զգուշանայ։ Արդէն Քրիվից հասած էին Ռուս-
երը, երբոր Դանիացւոց Կատեպուշի քով սաստիկ
ջարդուիլն իմացան։ Պետրոս թէպէտ անմիջապէս

զօրքը Նորէն Քիւսթրով դարձուց, բայց Դանիացւոց անընդհատ օգնութիւն խնդրելովը Նորէն Ճամբայ հանեց ու կատարինան որ մինչեւ աս ատենս քովն էր, Բեթերսպուրկ խաւրեց։

Սթէնպօք կոմսը յանդուգն իր թագաւորին պէս միտքը դրած էր որ Գերմանիայի սիրտը պատերազմին յառաջ մղէ, կ'ուզէր Դանիան կամ յաջող դաշանց մը ստիպել եւ կամ մինչեւ Եուտլանտ յառաջանալով զօրքն հայրենիքն անցընել. իր առջին 5,000 Նորմանիացի զօրքով զօրացած բանակ մ'ու իր ետեւը Զարը Սաքսոնիացի ու Ռուս զօրքով կեցած էր։ Սթէնպօք Ալթոնան կրակի տալով Հոլշթայն մտաւ (1713 Յունվ.) ու սկսաւ դէպ ի գիմբրեան թերակղզին ուղղուիլ։ Պետրոս որ միշտ ասոր ետեւէն էր, Յունուարի մէջ տեղը Համպուրկ հասաւ ու քաղքին բոլորտիքը բանակեցաւ. եւ մեծ ցաւով Ալթոնայի փլատակները տեսաւ ու քիչ մը ժամանակ անցընելէն ետքը առաւ բանակը Հոլշթայն մտաւ։ Արդէն Սթէնպօք մինչեւ Ֆլենսպուրկ յառաջացած էր, ուր տեղ որ ալ յառաջ երթալէն արգելուելով, բանակեցաւ ու խրամներ բանալով բոլոր երկիրն ապականեց ու թումբերը թնդանօթներով ամրացուց։ Դաշնակիցներն ալ արդէն ետեւէն հասած ըլլալով Փետր. 11ին առտու կանուխ Պետրոս Թշնամւոյն վրան ինկաւ ու սկզբան քիչ մ'ընդդիմութիւն կրելէն ետքը զարկաւ բոլորովին հակառակորդն ու Սթէնպօք Թէօնինկէն փախչելու ստիպուեցաւ. բայց Զարը զինքն հանդարտ չթողլով Շվետի բանակն անանկ նեղը խոթեց որ, անոնք ալ ստակի ու կերակրոյ չքաւորութենէն նեղացած ու զանազան հիւանդութիւններով տկարացած անձնատուր ըլլալու վրայ էին։ Սակայն Զարը չէր կրնար երկայն ատեն հոս կենալ. Ռուսաց վերին հրամանատարութիւնը Մենչիքովին յանձնելով ինք Ֆինլանտիայի աշխարհակալութեան մասնակից ու

առաջնորդ ըլլալու համար դէպ ի Բեթերպուրկ ճամբայ ելաւ եւ մեծ յուսով իր աշխարհակալութեան պատրաստութիւնն սկսաւ, որովհետեւ Գանիայի թագաւորը խոստացած էր որ ինքն իր կողմանէ Շվետը կը զբաղցընէ, որով Պետրոս կրնար իր գործքն անարգել յառաջ տանիլ: 1713ին Մայիսին սկիզբը 200 նաւերով ու 16,000 զօրքով նաւատորմիղը Բեթերսպուրկէն ճամբայ ելաւ: Առջի յարձակումը Հելզինկֆորս քաղքին վրան պիտի ըլլար, որն որ Ֆինլանտիայի գեղեցիկ նաւահանգիստներէն մէկն է: Շվետական հուրը Ռուսի նաւատորմիղին չկրցաւ շատ վնաս մը տալ ու Պետրոս փուճ տեղ ցամաքէն քաղաքն առնլու փորձեր ընելէն ետքը որոշեց որ ծովու կողմանէ ալ փորձուի. մէյ մ'ալ յանկարծ գիշերը Հելզինկֆորս բոցերու մէջ տեսնուեցաւ: Շվետները յուսահատութենէ բոլոր քաղքին կրակ տուած էին. Ռուսները աս որ տեսան անմիջապէս ելան ու յաղթանակաւ Շվետներն առջեւնին ձգած մինչեւ Ֆինլանտիայի մայրաքաղաքն հասան, որն որ արդէն բնակիչներէն բոլորովին թող տրուած էր: Ափրաքսին զօրապետը Շվետաց հանգիստ չտալով Բելքէնի քով իրենց վրայ նորէն յարձակում մ'ալ ըրաւ, որով Շվետները բոլորովին յաղթուեցան: Նոյնպէս Գերմանիայի պատերազմն ասանկ յաջող վախճան մ'ունեցաւ, Ստէնպոք անձնատուր եղաւ ու Թէօնինկէնը պարպուած էր: Մենչիքով որ զօրքն արդէն Ռուսաստան բերած էր, իր արծաթասիրութեամբը Պետրոսի աչքէն բոլորովին ելաւ:

## 47.

Աս միջոցիս Պետրոսի բոլոր մտադրութիւնը իր արեւելեան ծովուն վրայ ըրած յաղթութեանցը ապահովութիւնն էր. 1714ին ձմեռուան մէջ Ռիկա ճամբորդութիւն ըրաւ, ու աս առթիւ Ռեվալ

ալ գնաց ու ան մօտերը նաւահանգիստ մը հաստատեց: Իր նաւատորմիղը մեծցընելու համար արդէն Անգղիա ու Հօլանտա նաւեր ապսպրուած էին ու իր տէրութեանը մէջ շինուած նաւերն ալ առած՝ գարնան Շվետի նաւատորմղին ետեւէն իյնալու ճամբայ ելաւ. Թշնամութիւնը փոփոխ յաջողութեամբ մինչեւ Օգոստոս երկննալով, վերջապէս Պետրոս մեծ յաջողութեամբ իր թշնամւոյն նաւատորմիղն անխնայ ջնջեց եւ հրոյ ճարակ տուաւ: Քաջն Էրէնշիլտ Շվետի ծովակալին փոխանորդը իր դրօշը վար առնլու ստիպուեցաւ եւ եօթը վէրք առած՝ պզտի նաւ մը նետուելով փախած ատենը բռնուեցաւ: Պետրոս ասանկ Արեւելեան ծովուն միապետ ըլլալուն վրայ ուրախացած Բեթերսպուրկ դարձաւ (Սեպտ.): Քաղքին ամէն դուռները զարդարուած էին, դրօշներն ամէն դի կը ծփային, ծովակալութեան ամրոցն ու բոլոր քաղաքը թնդանօթի որոտումներով զինքն ողջունեցին. նաւերը պարպուեցան, գերի ինկած դրօշներն ու նաւերը ժողովրդեան ցուցուեցան: Պետրոս մեծ հանդիսութեամբ քաղաք մտաւ ու ծերակոյտէն փոխանակ ծովակալի անուանուեցաւ ու մնացած զօրաց ալ ըստ արժանւոյն ոսկի ու արծաթ միտալներ բաժնուեցան: Էրէնշիլտ ծովակալը մեծ պատուով պահուեցաւ: Աս յաղթութեան շքեղ վայրկեանին մէջ Պետրոս զԿատարինան տեսնելով իր շնորհակալութեան զգածմունքը գրգռեցաւ: Առանց իրեն գուցէ ես հիմակ Տաճկաց ձեռք գերի ինկած կ'ըլլայի կ'ըսէր. եւ իբր իր երախտագիտութեանն ու շնորհակալութեանը նշան. անոր անուան օրը, Ս. Կատարինայի կարգին շքանշանն հաստատեց[1]:

[1] Ս. Կատարինայի կարգին շքանշանն երկնագոյն արծնեալ հաւկթաձեւ միտալ մըն է, որուն վրայ Սրբուհի Կատարինէ պատկազարդ գլխով կէս անուի մը վրայ նստած

# Հ ա տ ո ւ ա ծ  հ ի ն գ ե ր ո ր դ

## Փինլանտիայի աշխարհակալութենէն մինչեւ Նայշթատի խաղաղութիւնը: 1714—1721.



Պետրոս ժողովրդեան արդարացի տրտունջը կը լսէ ու քննիչ ժողովք մը կը դնէ: Նոր դաւաճանութիւն մը: Պետրոս Բեթերպուրկ կ'երթայ: Նեվայեան կղզիներուն վրայ եղած շինութեանց անհնարին դժուարութիւնը: Բեթերպուրկ վաճառականական քաղաք կ'ըլլայ: Պետրոսի իր տէրութեանը հեռաւոր մասերուն վրայ ունեցած մտադրութիւնը: Շվետի խաղաղութեան ունեցած միտումը Կարոլոսի հասնելովը կ'արգելուի: Պետրոս Արեւելեան ծովուն վրայ: Պետրոս Ցանցիկ ու Շերեմեթեւ Մեքլենպուրկ կ'երթայ: Պետրոս իր առողջութեանը համար Բիրմոնթ երթալէն ետքը դաշնակիցներէն ծովապետ կ'ընտրուի: Պետրոսին երկրորդ ճամբորդութիւնը: Պետրոս նորէն Բեթերպուրկ դառնալով, նորէն կարգադրութեանց կը զբաղի: Ալեքսիոսի դատաստանն ու մահը: Քանի մ'երեւելի անձինք ի մահ կը դատապարտուին: Պետրոսի վաճառականաց հետ ունեցած վարմունքն ու նոյն արուեստին վրայ ունեցած փոյթը: Բնական գիտութեան ու արուեստից թանգարանները: Ակումբներու սկիզբը: Օլանտի ժողովքը: Կէօրցին մահը: Զարը Օլոնեց կ'երթայ: Շվետի թագուհւոյն հրեշտակութիւն կը խաւրուի: Շվետին նորէն սպառնալիքներ կ'ըլլան: Շվետ նորէն խաղաղութիւն ընել կ'ուզէ: Ափրաքսին ծովապետին հարստահարութիւնները: Նորիս ծովապետն Արեւելեան ծովուն վրայ: Պետրոս իր բոլոր դաշնակիցները կը կորսնցընէ ու Անգղիացւոց դէմ ելլալու կը պատրաստուի: Պետրոսի տխուր վիճակը: Շվետը նորէն խաղաղութեան միտում կը ցուցընէ: Ռուսաց ասպատակութիւնը: Նոր նաւահանգիստ մը: Նայշթատի խաղաղութիւնը:

## 48.

ԶԻՆՈՒՑ շառաչիւնը մինչեւ աս ատենս անընդհատ պատերազմի ու աշխատանաց տակ ընկճած ժողովրդեան մը հառաչանաց ձայները ծածկած խեղդած էր. հիմակ նոյներն ինքնակալին ականջն հասնելով՝ իմացաւ որ իր տէրութեան բարիքն հոգալու համար դեռ շատ մարդու կարօտութիւն ունի: Ժամանակէ մը վեր զօրաց ռոճիկը շատ ողորմելի էր, օտար պաշտօնակալները ռուսական ծառայութենէ ելած ու հազարաւոր օտարական գործա-

վարներ խեղճ ու ողորմելի վիճակի մը մէջ էին, ընդհանուր սղութիւն մ'է երկիրը կը նեղէր, առուտուրը դադրած ու ելեւմուտքը շատ անյաջող վիճակի մը մէջ էր։ Տարակոյս չկայ որ աս ամենուն պատճառը ձանձրացուցիչ ու մարդակապուտ պատերազմն էր. սակայն պատերազմէն աւելի մեծամեծներն ամենայն խեղճութեանց պատճառ էին, որոնց բռնութեանը տակ խեղճ ամբոխն անդադար կ'երկնէր ու կը հեծէր։ Պետրոս որ պատերազմի պատճառաւ աս տեսակ բաներու միտ դնելու ամենեւին ժամանակ չունէր, աս միջոցիս ինքզինք բոլորովին իր ժողովրդեանը բարիքն հոգալու տուաւ։ Անմիջապէս քննիչ ժողովք մը դրաւ ու քիչ ատենէն Սիպիրիա հարստահար մեծամեծներով լեցուեցաւ։ Իսկ իր նորոգութեանցը հակառակորդները թէպէտ արտաքուստ շատ խաղաղ կ'երեւային, սակայն դեռ շատ թշնամիներ ունէր, որոնք իրենց սրտին մէջ ծածկուած դառն թոյնը Պետրոսին վրան թափելու ու եղանակաւ մ'իր կեանքը կարճելու առիթի մը կը սպասէին. եւ որոնց ատելութեանն ու դառնութեանը քիչ մնաց զոհ կ'ըլլար Պետրոս։ — Զարը սովորութիւն ունէր որ իր պալատին պաշտօնատեարց ժողովքն ընելէն ետքը, մինչեւ նախասենեակ իրենց կ'ընկերանար։ Մոլեռանդ աւելորդապաշտին մէկն աս սովորութիւնը ինքնակալին մահացու հարուած մը տալու բաւական յարմար առիթ սեպեց։ Աս մոլեռանդը՝ սպասող պահապանն անկասկած թող տալու համար՝ ձեռքը նամակի ձեւով թուղթ մ'առած նախասենեկին մէջ պտըտելու սկսաւ։ Վերջապէս կայսրը դուրս ելաւ ու պաշտօնեան ճամբայ դնելով նորա երթալու ատեն, չարագործն ալ ետեւէն երթալու սկսաւ։ Նոյն ատենը պահապանին մտադրութիւնը գրգռուելով զուաց մարդուն թէ ինչ կ'ու-

զէ․ մարդուն տուած աննշանակ պատասխաններուն վրայ մեծ վէճ մը բրթաւ, որն որ Պետրոսն ալ լսելով եղաւ եւ դարձաւ որ բանին էութիւնն իմանայ ու մարդուն մօտենալուն պէս, մարդը սարսափած գանակը գետին ձգեց։ Աս պարագայով առեղծուածն ալ լուծուեցաւ։ Բայց Պետրոս ծանրութեամբ եւ անտարբերութեամբ մը հարցուց․ “Միտքդ ինչ էր„

— “Զքեզ մեռցընել„․

— “Քեզի բան մ՚ըրի„․

— “Ինծի չէ,՝ սակայն իմ եղբարցս ու կրօնիս„․

— “Աղէկ է, ըսաւ Պետրոս, քննենք տեսնենք․ ատ այժմ զէնքը բանտարկեցէք, բայց իրեն վնաս մը չհասնի․ վաղը առտու կու գամ ու անձամբ բանը կը քննեմ„։ Պատմութիւնը չիպատմեր որ աս յանցաւորին վախճանն ինչ եղաւ․ սակայն աս ստոյգ է որ Պետրոս ասանկներուն համար իր նպատակէն ամենեւին չշեղեցաւ ու այսպիսիններուն իրենց կռնակը դեղին նշան մը կրելու պատիժ կու տար։ Պետրոս աս դէպքիս վրայ Մոսկուա թողլով Բեթերսպուրկ փութաց։ Նեվայեան կղզիներու վրայ եղած շինութեան արտաքոյ կարգի դժուարութիւնները զինքն աւելի եւս գրգռեցին նոյն շինութիւնն յառաջ տանելու։ Երկրին ճախճախուտ որպիսութիւնն՝ որ փորուելու ատեն մինչեւ 7 ոտք ջրոյ մէջ կ՚ըլլար։ զանազան մեծամեծ դժուարութեանց պատճառ էր, Շատ սուղ ու դժուար էր այսպիսի երկրի մը վրայ շէնքերու շինութիւնն, մանաւանդ փայտէ տուներ պէտք էր որ շուտով ապականէին։ Ամենեւին տեղ մ՚աղբիւր չկար ու ջրի կոխելը թէ շէնքերը կործանելու ու թէ կենաց վտանգ կը սպառնար։ Երկրին զանազան սաստիկ հովերն ու Գրոնշթատի նաւահանգստին անոյշ ջուրերը ու մեծամեծաց տըրտունջը քաղքին շինութիւնն յառաջ տանելու մէյ-

մէկ արգելքներ էին։ Մոսկուայ քաղաքին այնպիսի գետի մը բերանն ունեցած դիրքը, որն որ բոլոր երկրին հետ հաղորդութեան մէջ էր, Նեվայի բազկին անոյշ ջուրը եւ ուրիշ ունեցած քանի մը յաղող առաւելութիւնները Նարվա, Ռեվալ ու Ռիկա քաղաքներէն նախադասութիւն մը տուին Պետերբուրկին ու Ցարը՝ Նոր քաղաքն իր տէրութեանը ամէն քաղաքներէն վեր բարձրացընելու խորհրդին մէջ հաստատեցին։ Մեծ բան ալ էր միանգամայն բոլոր վաճառականութեան ընթացքն հոս փոխադրելը, մեծ ու դժուար բան էր Ռուսաց ու օտարականաց՝ իրենց մինչեւ նոյն ատեն դէպ Արխանկէլ ըրած վաճառականական ճամբան փոխելն ու Պետերբուրկ ուղղելը։ Վենետիկի ու Լիւպեքի հետ վաճառականական ընկերութիւն մը հաստատուեցաւ (1712) ու Պետերբուրկ նաւողներուն տրուած զանազան առաւելութիւնները բանն այնչափի հասուցին որ 1713ին բաւական նաւագնացութիւն կ՚ըլլար։ Ասոր վրայ անմիջապէս մաքսատուն ու վաճառականական շէնքեր կանգնուեցան ու վաճառականական իրերն հոգալու համար բոլոր օտարական անդամներէ դատաստանարան մը դրուեցաւ։ Նոյնպէս հրաման մ՚ելաւ (1713) որ բոլոր վաճառականներն իրենց վաճառքները 1714ին գարունէն վեր Պետերսպուրկ բերեն, հեռու օտար երկիրներէ եկող վաճառքներն ալ պէտք էր որ Պետերսպուրկ գային. մի եւ նոյն ժամանակ Արխանկէլի վաճառականներն ալ Պետերսպուրկ գաղթելու ու հոն վաճառականութիւններին յառաջ տանելու հրաման ընդունեցան։ Բոլոր վաճառականաց ընդդիմութեանը ու բողոքին հակառակ հաստատուեցաւ, որ (1717) բոլոր ռուսական բերքերուն երեքին մէկը Արխանկէլ ու միւս մասերը Պետերսպուրկ բերուին։ Նոյն քաղքին շինութեանը նկատմամբ պե-

տրոսին տուած հրամաններն ու կարգադրութիւնները նոյն ազդեցութիւնն ու զօրութիւնը ունեցան։ 1714ին Ճամբորդութիւն ընող գերմանացի մը այսպէս կը գրէ. «Բեթերսպուրկ չտեսած, հասարակ քաղաք մը կը կարծէի. բայց գտածս Ամերիկայի գաղթականաց բնակութեանը պէս խառնաշփոթ գեղեր էին»։ Բայց Զարն աս գեղերը՝ Պալթիկ ծովու վրայ տիրելու որոշուած տեղը, շուտով մը հըկայաձեւ քաղաք մը բարձրացընելու համար, ամենեւին ստակի ու աշխատութեան չէր խնայեր։ Տուները դեռ ըստ մեծի մասին փայտէ ու մէկ դստիկոնով էին, հրամայեց Պետրոս որ բոլորն ալ՝ մանաւանդ Նեվայի ափունքը եղողները, բարձր ու աղիւսայարկ ըլլան։ Ասոր վրայ բոլոր մեծամեծաց, վաճառականաց ու գործատէրներու հրաման ելաւ որ Բեթերսպուրկ տուներ շինեն ու այսչափ շէնքերու համար որմնադիր չպակսելու համար, Բեթերսպուրկի շինութեան ատեն բոլոր տէրութեան մէջ քարէ շէնքերն արգելուեցան։ Աս շինութեանց վրայ 40,000 մարդ զբաղած էր. որովհետեւ աս չափս ալ բաւական չէր, Ֆինեան գեղացիներն ու Շվետի գերիներն ալ օգնութեան կանչուեցան։ Աս դժբախտ Շվետներէն շատերը Քազանի անդիի դին Սամարայի եզերքը ծծմբոյ հանքերու մէջ էին, որոնց ընկերներուն շատերը իրենց աչքին առջին, ան ծանր ու անտանելի աշխատութեան տակ հոգինին փչած էին։ Ասոնցմէ 600 հոգի Նեվայի քով բերուեցաւ, որոնք ոգիներու կերպարանքով աշխատելու սկսան։ Կատարինա Զարուհին ասոնց վրայ գթալով, զիրենք ստակով ու զգեստով կը հոգար ու տանտիկնոջ մը պէս Պետրոսին հետ Նորաշէն քաղքին կարգադրութեանը զբաղած էր։

## 49.

Զօրը Նորահիմ քաղքին տանկ կերպարանք մը տալու ժամանակ զօրքին վրայէն ալ իր մտադրութիւնը չդադրեցուց. ծովամարտերու համար դպրոց մը շինել տուաւ, որուն մէջ թէ ծովու թէ ցամաքի կրթութիւն պիտի տրուէր. ուսուցիչները կէս մ'Անգղիացի ու կէս մը Ռուս էին։ Իր մտադրութիւնը նաեւ տէրութեանը հեռու մասերուն վրայ ալ ուղղեց։ Սիպիրիայի քաղաքապետը փորձի համար Թաթարիստանի գետերէն ոսկւոյ փոշի խառբած էր։ Ասոր տեղեկութիւնը ու միանգամայն փոքրը Թաթարիստանի մէջ Իրքեն քաղքին Կասպից ծովէն ո՛րչափ հեռու ըլլալն իմանալն ու ստուգելը՝ որ արդեօք նոյն կամ մերձակայ տեղ մը դէպ ի յիշեալ ծովը գետ կա՞յ թէ չէ ու ռուսական սահմանները թշնամական յարձակմունքներէ ապահովեցընելն ու Հնդկաստանի հետ վաճառականութիւն մը սկսիլը Պետրոսին միտքը բոլոր գրաւած էր։ Աս նկատմամբ Չերքասքի իշխանն Աժտերխանի ու Կասպից ծովու վրայէն Թաթարիստան խաղացուեցաւ ու Պուխհոլց վերին հրամանատարն ալ 1500 հոգւով Թօպոլսքի վրայէն դէպ ի Եամիշ լիճ ճամբայ ելաւ, որպէս զի հոն ամրոց մը կանգնէ ու դէպ ի Եէրքէն ճամբայ բանայ, ու եթէ կարելի ըլլայ նոյնն առնու եւ ոսկւոյ աւազին վրայ ստոյգ տեղեկութիւններ տայ։ — Իսկ ասդիէն Շվետի կառավարութիւնն՝ որ ինքզինքն ա՛լ իր թագաւորէն թող տրուած կը համարէր, Ռուսաց հետ խաղաղութիւն ընելու վրայ էր՝ երբոր մէկէն լուր մը հնչեց թէ Կարոլոս Շթրալսունտ եկած է։

Գիտենք արդէն Կարոլոսին ինչպէս Շթրալսունտ հասնիլը. բոլոր եւրոպական դահլիճները աչքերնին Շթրալսունտ ուղղած, բացուելու տեսարանին կը

սպասէին։ Ամենուն յոյսը խաղաղութիւն էր. սակայն Հիւսիսային առիւծին առանց անարգ խաղաղութեան մը զիջանիլ չուզելովը՝ դաշնակիցները նորէն միացան ու բոլոր իրենց զօրութիւնը Շթրալսունտի վրայ թափեցին։ Պետրոս չէ թէ միայն ցամաքէն օգնեց, այլ նաեւ (1715) ամառն Արեւելեան ծովն ելաւ. սակայն իր նորակազմ նաւատորմիղը Դանիացւոց նաւատորմղին հետ չմիացուց, որն որ առանձինն Շուէտին դէմ դնելու բաւական էր։ Արեւելեան ծովուն վրայ Հոլանտական նաւախումբն ալ երեւցաւ ու Նորրիս ծովապետը Ռեվալի առջին իր ծովակալութեան նաւին մէջ Զարին ու Զարուհւոյն սեղան տալու պատիւն ունեցաւ։ Զարին զօրքը Շթրալսունտ չհասած քաղաքն արդէն անձնատուր եղած ու Կարոլոս բարեբախտաբար Շուէտ ելած էր։ Գերմանիայի մէջ մի միայն Վիզմար քաղաքը Շուէտաց ձեռքը մնացած էր։ Աճապարեց Պետրոս իր զօրքը նոյն քաղքին օգնութեան խաւրեց ու ինքն ալ ամուսնոյն հետ 1716ին սկիզբները դէպ ի Գերմանիա ճամբայ ելաւ. բայց աս անգամ դեռ ինքն ու զօրքը չհասած՝ քաղաքը դաշնակիցներէն առնուեցաւ ու Ռուսաց հասնելէն ետքը այնպիսի անդէպ ընդունելութիւն մ'եղաւ, որ քիչ մնաց Պետրոս Կարոլոսին հետ միանալով դաշնակցացը դէմ պիտի դառնար։

Ռուսական նաւատորմիղը՝ որ Քուրլանտիա ձմեռած էր, Պետրոսի առաջնորդութեամբը Քէօնիկսպերկէն Ցանցիկ տարուեցաւ, ու մի եւ նոյն ատեն անդիէն Շերեմեթեւ սպարապետը հրաման ընդունեցաւ որ Մեքլենպուրկ մտնէ, ուր քիչ մը ետքը Զարն ալ գնաց։ Ճամբան՝ Շթեթթինի մէջ, Պետրոս Պրուշի թագաւորին հետ տեսնուեցաւ ու միատեղ որոշեցին, որ Շուէտն ու Դանիան հաւասարակշռութեան մէջ բռնեն։ Դանիայի թագաւո-

րին հետ ալ տեսնուեցաւ․ Շվետ յարձակում մ՚ընելն իրենց խօսակցութեանց նիւթն էր։ Թագաւորը գործքը փութացընելու կը ջանար, որովհետեւ Կարոլոս Նորուեգիա արշաւած ու մինչեւ Քրիսթիանա յառաջացած էր։ Որոշուեցաւ խորհուրդը ու Ռուսի Մեքլենպուրկ եղած զօրքը հրաման առաւ որ Յունիսի մէջ դէպ ի Սէէլանտ ճամբայ ելլայ, որպէս զի գարնան սկսելովը գործքերն ալ սկսին։ Ասկէ ետքը զՉարը իր առողջութեանը պատճառաւ շաբաթներով Բիրմոնթ կը գտնենք․ ուստի որ, Յունիսի մէջ իր զօրաց ճամբայ ելլալուն ներկայ գտնուելու համար Մեքլենպուրկ գնաց։ Աս արշաւանքին համար Պետրոս բոլոր դաշնակիցներէն ծովապետ ընտրուելով՝ Պալթիկ ծովու մէջ իր երթեւեկութիւնն սկսաւ[1]․ սակայն զօրաց չհասնելուն ու ամէն պատրաստութեանց ուշանալուն պատճառաւ ամառն արդէն անցած ու ձմեռուան խստութիւնը սկսած էր, աս միջոցիս լուր մ՚ալ ելաւ որ Կարոլոս աս թշնամական յարձակման պատրաստութիւնն իմանալով Նորուեգիան թողուցած 20,000 զօրքով՝ միացեալ տէրութիւնները, Ռուսերն ու Դանիացիք դիմաւորելու կու գայ։ Չարը բոլոր Շվետի եզերքը փորձեց ու տեսաւ որ մերձեցուելու տեղերը մարտկոցներով ու պատնէշներով ամրացուած են։ Աս ամէն պատճառներուն համար Պետրոս պատերազմական ժողովք մը կոչեց ու հարցուց թէ այսպիսի ժամանակ Շվետ արշաւելը յաջող հե-

[1] Այսպիսի պատուոյ համար կը վայլէր որ գեղեցիկ ու հին Հռոմայեցի ճաշակով միտալ մը կոխուէր։ Աս միտալին առջին երեսը զինազարդ պատուանդանի մը վրայ Չարին գլուխը կայ ռուսերէն խօսքերով․ "Պետրոս Մեծ ամենայն Ռուսաց,,։ Ստորնաբաժնոյն մէջ "Յամի 1716,, գրուած է։ Երկրորդ երեսին վրան է Նեպտոն երկու ծովու ձիերով լծուած չորս գրօշներով (որոնք Նաւատորմիղները կ՚ակնարկեն) զարդարուած կառքի մը մէջ կը հրամայէ աս վերնագրով "Իշխեամ չորից,,։ Ստորնագիրն է "Առ Պոռնհոլմի,,։

տեւութիւն մը կրնա՞յ ունենալ։ Աս խորհուրդին վրայ Դանիայի թագաւորը շատ նեղացաւ ու Պետրոսին վրայ բոլոր իր վստահութիւնը կորսնցուց, որով աս յատակագիծն երթալով աւրուեցաւ, ու աս երկու դաշնակից տէրութեանց մէջ թշնամութեան սկիզբ մը ծագեցաւ. ասոր վրայ Պետրոս Նորէն իր զօրքովը Մեքլենպուրկ դառնալու ստիպուեցաւ ու նոյն ձմեռը (1716) դէպ ի Հոլանտա ու Գաղղիա ընելու երկրորդ ճամբորդութիւնը սկսաւ։ Համպուրկէն, Էլպայի վրայէն, Ալթոնա ու անկից ալ Պրեմէն երթալով մեծ հանդիսութիւններով ընդունելութիւն գտաւ։ Ասկէ Ամսդերտամ անցաւ, ուր որ 18 տարի յառաջ նաւագործութիւն սորված ու խելքը միտքը Ռուսաստանի ծովական ոյժ ու զօրութիւն մը տալու զբաղած էր։ Ան ատենուան մտածածը ահաւասիկ հիմակ գլուխ ելած էր։ Ան աշկերտը որ Պետրոս Պաաս անուամբ Սաարտամ նաւերու վրայ կ՚աշխատէր, հիմակ նոյն արուեստին քաջ վարպետ եղած, Արեւելեան ծովուն վրայ նաւահանգիստ մը ստացած ու նաւատորմիղներ շինած, Շվետաց հետ լի յաղթութեամբ պատերազմած ու Պալթիկ ծովուն տիրած էր։

## 50.

‘Չարն հոս աս անգամ առջինէն աւելի ուսման ու գիտութեանց ետեւէ ըլլալու սկսաւ։ Ամէն հասարակաց ու առանձնական թանգարաններու այցելութեան կ՚ելլէր։ Ժամերով նկարիչներու քով կենալով իրենց հետ նոյն արուեստին վրայ կը խօսէր։ Բայց սաստիկ տենդ մը շաբաթներով զինքն իր սիրական զբաղմունքներէն ետ ձգեց. աս ատեններս Կատարինա իր ամուսինը՝ որ Շվերին էր, դէպ ի Հոլանտա ճամբայ ելաւ. Պետրոս զինքն Ամսդերտամ ընդունելով (1717), Սաարտամ տարաւ, ուր

որ ինք երբեմն իբր աշկերտ աշխատած էր․ Նոյն ատենուան բնակարանն անոր ցուցուց, ու Հեադհե-ակ Հոլանտայի երեւելի քաղաքները պտըտեցան: Ապրիլի սկիզբներն իր ամուսինը Հաակ թողլով, դէպ ի Պրապանթ ու Գաղղիա ճամբայ ելաւ, ու երկայն ատեն Տիւնքիրխէն կեցաւ, որուն ջրանցք-ներն ու նաւահանգիստը բոլոր իր մտադրութիւնը գրաւեցին․ անկից ալ ելլալով Մայիսի սկիզբները Փարիզ հասաւ, ուր Վիյլըռուա դքսին պալատը՝ մինչեւ Յունիսի 20 օրբունիքը զինքն հոգաց: Եօթ-նամեայ Լուդովիկոս ԺԵ․ Թագաւորը իր Վիյլըռուա խնամակալովը իրեն այցելութեան եկաւ, զորն որ Չարը մեծ սիրով գրկելով պագաւ ու ձեռքէն բռնած սանդուղներէն վեր հանած ատեն, կ՚աղա-ղակէր թէ Գաղղիան կը տանիմ․ ու իր բարեմաղ-թութեանց մէջը «Կը բաղձամ Տէր, ըսաւ, որ Ձեր մեծափառութիւնը աղէկ մեծնայ ու գովութեամբ իշխէ: Գուցէ ժամանակաւ կրնանք իրարու օգտակար ըլլալ»: Երկրորդ օրը Չարը Թագաւորին փոխա-նակ այցելութեան երթալով Թիւյլըրիի մէջ մեծ պատուով ու հանդիսութեամբ ընդունելու-թիւն գտաւ:

Չարը Փարիզի մէջ իր հետաքրքրութիւնը յա-գեցընելու համար բաւական նիւթ ունէր: Նաւա-րանը, զինարանն ու անդամազննական թանգարանը իր աչքի տեսութեան առարկաներն էին: Ուսումնա-կան ճեմարան եղած ատենն իր գիտութեամբ Կաս-պից ծովուն մէկ աշխարհագրական տախտակը լաւագունացընելովը՝ մեծ համարում ստացաւ, ա-նանկ որ քիչ մ՚ետքը նոյն ճեմարանը զինքն իրեն անդամ անուանեց, որն որ Չարին քիչ ուրախու-թիւն չեղաւ: Մեծ զարմացմամբ տեսաւ Լուդո-վիկոս ԺԴ-ին կանգնած զինուորական հիւանդատու-նը, որուն մէջ 4000 խեղ ու ծեր զինուորներ

կայեն. մեծ մտադրութեամբ գոբեղեան օթոցներու գործատունը քննեց. Թագաւորական գրատան այցելութեան գացած ատենը Լուդովիկոս ԺԴ.ին արշաւանաց պատմութիւնը, Վերսայլի Թագաւորական շէնքերու ու պարտէզներու պատկերներով իրեն ընծայեցին: Մեծ զարմացման մէջ ինկաւ երբոր տէրութեան փողերանոցն երթալով ուզեց որ առջեւը բան մը կոխուի ու մէկէն իր դէմքը ձեռքը տեսաւ: Նշանաւոր էր նաեւ իր Սորպոնեան դպրոցին ըրած այցելութիւնը, ուր որ զանազան աստուածաբանական գիրքեր առնլով խօսքը ռուսական ու Հռոմէական եկեղեցեաց մէջ եղած տարբերութեան վրայ եկաւ: Աս բաժանման պատճառը՝ կ՚ըսէին Սորպոնեան վարդապետք, անանկ ոչինչ բան է որ եթէ սիրոյ հոգւով գործուելու սկսուի, նորէն միանալը բան մը չէ: Անոր համար Ցարն ալ յորդորելու սկսան որ կրօնն ալ միացընելու ձեռք զարնէ ու այսչափ աշխատելէն վերջը այնպիսի գործք մ՚ալ գլուխ հանէ, որով իր փառքն ու պատիւը կատարելագործուի: Պետրոս պատասխան տուաւ թէ ինք զինուորական ըլլալով կրօնական բաներու մէջ մտնելն իրեն չինար. գրեցէք, կ՚ըսէր, մեր եպիսկոպոսաց ու անոնց հետ բանն յաջողցըցէք: Ասանկ, ան մարդը որ իր տէրութեանը մէջ ազատութեամբ կրօնական իրերու մէջ կը խառնուէր ու մինչեւ հոգեւոր գլխաւորութիւնն ալ իր անձին վերապահեց, հոս ասանկ խաղաղ համակամ ու զարմանալի անտարբերութիւն մը կը ցուցընէ: — Երբոր Ժիրարտոնի եկեղեցին Ռիշլիէօ կարդինալին մեծագործ գերեզմանը տեսաւ,ափշեցաւ մնաց ու իր արձանը գրկելով աղաղակելու սկսաւ՝ “Ո՜ մեծանուն մարդ, տէրութեանս կէսը շատ սիրով քեզի կու տայի, մնացած կէսին վրայ քեզմէ իշխել սորվելու„: Երբոր Վերսայլ Ս. Ժէրմէն ան Լէի

մէջ Սէն Սիր շէնքը տեսաւ, զոր որ Մենթենոն դշխոյն ազնուական աղջկանց համար շինել տուած էր, նոյն տիկինը տեսնելու բաղձանք մ՚ունեցաւ, որն որ իր վերջի օրերը նոյն շէնքի մէջ կ՚անցընէր․ անոր խուցը մտնելով անկողնոյն ոտքը նստաւ ու որպիսութիւնն հարցուց ։ Հասակս է հիւանդութիւնս պատասխանեց խաթունը տկար ձայնով մը․ Պետրոս իրեն քանի մը մխիթարական խօսքեր ըսելով՝ Գաղղիայի բարերար գտնուելնուդ յիշատակն ու օրհորդաց գունդագունդ բազմութիւնն որ իրենց երջանկութիւնը ձեզի պարտական են, Ձեր հիւանդութեանը մեծ դիւր պէտք են ըլլալ, ըսաւ ։

Ասանկ 4 ամիս պտըտելէն ետքը նորէն Ամսդերտամ դարձաւ, ուր որ Կատարինան անհամբերութեամբ իրեն կը սպասէր ։ Զարին Հոլանտա եղած ժամանակը Շվետի հետ խաղաղութեան ճամբայ մը բացուած էր․ Կէօրց Պետրոսին հետ տեսնուելով խոստացաւ որ երկու ինքնակալներն իրարու հետ հաշտեցընելու կը ջանայ․ ասոր վրայ Պետրոս ալ խօսք տուաւ որ երեք ամիս ամենեւին Շվետի դէմ թշնամական գործք մը չիտեսներ ։ Ասկէ ետքը փութաց Զարն իր տէրութիւնը հասնելու, ճամբան Պերլին հանդիպեցաւ, ուր որ վեց օր կենալով Բրուսիական արքունեաց հետ աւելի եւս սերտիւ կապուեցաւ ու 1717ին Նեվայի ափունքն հասաւ, ուր որ հեծութիւններն ու հոգերը զինքը դիմաւորեցին ։ Քանի մը տարի յառաջ եղած խստութիւններն օգուտ մը չէին ըրած․ Պետրոսի ականջը նորանոր հարստահարութեանց տրտունջներ ու բողոքներ հասան ։ Պետրոս անձամբ իրին ստուգութիւնը քննելու սկսաւ ։ Առտու կանուխ ժամը 4ին ամբաստանելոց յանցանքները քննելու կը սկսէր ։ Երեւելիներէն մէկը, Արխանկելի իշխանն հրացանի բռնուեցաւ․ եւ որովհետեւ քննութիւններն երկայն կը

տեւէին ու նոյն իսկ ծերակոյտի մէջ շատ յանցաւորներ կային, բանը շուտով լմնցընելու համար զինուորական ատեան մը դրաւ ու ինքը Մոսկուա երթալով իր փախստական որդւոյն՝ Ալեքսիոսին, չարաչար դատաստանը սկսաւ ։

## 51.

Հոս պէտք է որ առաջիկայ պատմութեան թելը քիչ մ'ատեննուան համար կտրելով, քանի մը տարի ետ դառնանք ու տեսնենք ան աղեխարշ ու ողբալի տեսարանը, զորն որ Պետրոս իր որդւոյն վրայ բացաւ ։ Ինչպէս որ գիտենք՝ արդէն Պետրոս իր Ալեքսիոս որդին մեծ յուսով Պրաունշվայկի Քարոլինա Քրիստինէ իշխանուհւոյն հետ կարգած էր․ սակայն ան ատենն իր աչքերը բացուեցան երբոր տեսաւ որ աս ամուսնութիւնը յուսացուած հետեւութիւնք չունեցաւ, այլ մանաւանդ թէ ան խեղճ ու սիրալիր օրիորդը իր էրկանը վայրենաբարոյ բնութեանը տակ երթալով ընկճելու վրայ էր ։ 1715ին իշխանին որդի մը ծնաւ, որն որ յետ ժամանակաց Պետրոս Բ․ անուամբ Ռուսաստանի գահն ելաւ ։ Զարն որ աս ատենս Շլիւսսելպուրկ էր, իր թոռանը ծննդեան լուրն առնլուն պէս անպատմելի ուրախութեամբ ուրախացաւ, ինչու որ Քրիստինէն իր աչքին լոյսն ու միակ մխիթարութիւնն էր ։ Փութաց մայրաքաղաքն հասաւ, որպէս զի իր սիրելի հարսին վրան ունեցած սէրն անոր յայտնելով իրեն սփոփանք ու մխիթարանք ըլլայ․ սակայն աս մատաղ մօր կենացը սոսկալի փոթորիկներ սպառնացած էին, որոնց վրայ որդեծնութեան ցաւերն ալ գալով չկրցաւ դիմանալ ու Պետրոսին խոր տրտմութիւն պատճառելով վախճանեցաւ ։ Ալեքսիոս այս ամէն դէպքերը վայրենական անտարբերութեամբ մը կը տեսնէր ։ Քրիստինէ Պետրոս-Պօղոսի մայր եկեղեցւոյն

մէջ իշխանական գերեզմանին մէջ թաղուեցաւ։ Ռուսական աւանդութիւն մը կայ թէ Քրիստինէ նոյն գերեզմանէն յառնելով Ամերիկայի վայրենիներուն մէջ ազատ ու խաղաղ տեղ փնտռած գտած ու հոն բնակած ըլլայ։ Աս համբաւը միշտ իր զուարճալի բանաստեղծական ստուգութեանը մէջ կը մնայ, որուն որ մենք ալ մեր քուէն կը նետենք։

Պետրոս իր խոր տրամութեանը մէջ՝ թէպէտ որդւոյն վրայ չարաչար կատղած ու դառնացած էր, սակայն զինքն ուղղելու համար վերջին փորձ մ'ալ ընել ուզելով իրեն խրատական թուղթ մը գրեց, որուն մէջ ասանկ կ'ըսէ, "Եթէ չես ուղղուիր, փտտած անդամի մը պէս զքեզ յաջորդութեան ժառանգութենէ կը կտրեմ կը նետեմ։ Մի կարծեր որ ուրիշ որդի չունենալուս՝ միայն վախցընելու համար ասոնք քեզի կ'ըսեմ։ Պէտք է որ, եթէ Աստուած ուզէ, սպառնալիքներս գործքի ալ ելլեն։ Իմ հայրենեացս ու հպատակացս բարւոյն համար եւ ոչ անձինս խնայեցի, ի՞նչպէս կրնամ քեզի պէս անարժանի մը խնայել։ Աւելի սիրով կը թողում տէրութիւնս արժանաւոր օտարականի մը՝ քան թէ անարժան որդւոյս,,։ Ալեքսիոս աս թղթին խեղճ պատասխան մը տալով կ'ըսէ՝ թէ ինքն իր մտացը տկարութեամբ ու մարմնաւոր հիւանդութիւններովն այնչափ ժողովուրդ կառավարելու անկարող է։ Կ'երդուըննայ նաեւ ան թղթին մէջ որ բոլորովին յաջորդութենէ հրաժարելով իր իրաւունքը իր նորածին որդւոյն կը թողու ու իր որդիքներն ալ Զարին պաշտպանութեանը կը յանձնէ։ Պետրոս (1716ին) ուրիշ թուղթ մ'ալ գրեց՝ որուն մէջ կը ցուցընէ թէ ի՞նչպէս իր ըրած գործքերն իրեն կեանք տուող հօր մը նոյն իսկ կենացը դէմ են. "Ի՞նչպէս կրնամ չվախնալ, կ'ըսէ. մեռնելէս վերջը բոլոր աշխատութիւններս պիտ' ոչնչացընես։

Զքեզ քու կամացդ համաձայն ապրելու թողուլն ըլլալու բա՞ն է։ Ես փուճ տեղ քեզի համար անհանգիստ ըլլալ չեմ ուզեր, փոխէ ընթացքդ. կամ պայազատութեան արժանաւոր ընթացք մը ցուցընելու ջանա եւ կամ ելի մենաստան քաշուէ։ Պէտք է որ աս թուղթս առնլէդ ետքը կամ խօսքով կամ գրով անմիջապէս պատասխան մը տաս, ապա թէ ոչ զքեզ յանցաւոր կը համարիմ ու հետդ տարբեր տեսակ կը վարուիմ„։

Ասոր վրայ Ալեքսիոս անմիջապէս երկրորդ օրը պզտի թուղթ մը գրեց, որուն մէջ կ'ըսէր. “Իմ վատառողջութեանս պատճառաւ չեմ կրնար մանրամասն նամակ մը գրել։ Սակայն հոգեւորական վիճակն յանձն կ'առնում, որուն համար նաեւ ձեր հաւանութիւնն ալ կը խնդրեմ„։ Պետրոս աս հոգերու ու անձկութեանց մէջ ուրախութիւն մ'ունեցաւ։ Կատարինան իրեն որդի մը ծնաւ (1715) որուն անունը Պետրոս Բեթրովիչ դրուեցաւ։ Աս ուրախութիւնը առժամանակեայ ուրախութիւն մ'եղաւ Պետրոսին, ինչու որ մանուկը քանի մը տարի ետքը մեռնելով՝ հօրը գեղեցիկ յոյսերն ու ակնկալութիւնները բոլորովին փճացուց։

Զարն աս ծննդեան դէպքին մէջ դարձեալ իր բնական զուարթասրտութեանը մէջ կը գտնենք։ Մեծ ուրախութեամբ աս յաջող դէպքն իր զօրավարացը յայտնեց ու մկրտութեան օրը զատ զատ արանց եւ կանանց մեծ սեղաններ տուաւ։ Երկու սեղանի վրան ալ աչքի զարնող բաները մեծագործ կարկանդակներն էին, որոնց մէջէն՝ բազմականաց զուարթանալէն ետքը, մէկէն գաճաճ ու գաճաճուհի մը դուրս ելան ու հիւրերն ափշեցուցին։

## 52.

Այս պատահած դէպքերը Ալեքսիոսի եւ հօրը մէջ աւելի եւս ցրտութիւն մը պատճառեցին, ու Պետրոս իր երկրորդ ճամբորդութիւնն ընելէն յառաջ վերջի հրաժարականը տալու համար իր որդւոյն երթալով, զինքն հիւանդ անկողնոյ մէջ գտաւ ու հարցուց թէ իր որոշմանը վրայ հաստատո՞ւն է։ Հաստատեց Ալեքսիոս իր որոշումն ու Աստուած վկայ կոչելով, կրօնաւորական վիճակ մտնելէն ուրիշ բաղձանք մը չունիմ ըսաւ։ Բայց Պետրոս խորհուրդ տուաւ իրեն որ բանը չաճապարէ ու մտածելու համար ալ վեց ամիս շնորհեց։ Անցաւ վեց ամիսն ու դեռ Պետրոս որոշիչ պատասխան մը չառաւ. Ալեքսիոսին նամակներուն մէջ իր որպիսութեան լուրերէն ուրիշ բան չէր տեսնուեր։ Բայց ուրիշ նամակներէն կ'իմանար Պետրոս՝ թէ Ալեքսիոս շատ կասկածաւոր անձանց հետ տեսութիւն կ'ընէ, ու խորհուրդ կը տրուէր Զարին որ իր որդին իրեն կանչէ ու միշտ աչքին առջին ունենայ։ Զարն աս ատենս Քոբենհակն ըլլալով, Ալեքսիոսին համառօտ թուղթ մը գրեց, որուն մէջ ասանկ կ'ըսէ, “Մտածելու բաւական ժամանակ ունեցար, որոշէ ինքզինքդ. թէ որ միտքդ ժառանգութիւն առնուլ է՝ ելի՛ քովս եկու ու պատերազմական իրերու մէջ կրթուէ. եթէ մենաստան մտնել կ'ուզես գրէ ինծի ո՞ր մենաստան ու ե՞րբ պիտի մտնես, որպէս զի իմ սիրտս ալ հանգչի ու գիտնամ որ ի՞նչ ես„։ Իմացաւ իշխանը՝ որ եթէ հօրը իշխանութեանը տակ մտնելու ըլլայ իր վիճակը շուտով պիտ՝ որոշուի, անոր համար միտքը դրաւ որ իր երկայն ատենէ վեր ունեցած խորհուրդը ի գործ դնէ։ Որոշեց որ իր հօրը բռնութենէ ազատ մնալու համար մինչեւ անոր մահը օտար երկիրներու մէջ իր կեանքն ան-

ցընէ, որուն մահուընէ ետքը կը յուսար որ շատերը զինքը գահ կը հանեն։ Այսպիսի պարագաներն աս ակար մարդուն կարծես նոր զօրութիւն ու յանդգնութիւն մը տուին. արթնցաւ Աղեքսիոս ու իր հօրը հրամանը պատճառ առնլով՝ որ զինքը Քոբենհակն կը կանչէր, ամենուն մէկու մը միտքը չյայտնելով, Բեթերսպուրկէն ելաւ գնաց։ Ճամբան արտորնօք դէպ ի Վիեննա ուղղուեցաւ, ուր որ Աղեքսիոս իր գալուստը Շէօնպրուն կոմսին յայտնելով՝ անոր ձեռքով աղաչեց կայսեր որ զինքն ընդունի։ Իսկզբան Կայսրը աս բանը լսելուն պէս շատ այլայլեցաւ, բայց վերջէն իր թափած խեղճերէն շարժած՝ Եւգինիոս իշխանին ու Շթարենպէրկ կոմսին հետ խորհուրդ մ'ընելով խոստացաւ Աղեքսիոսին որ ամենայն գաղտնութեամբ զինք կ'ընդունի ու ապաստանարան մը կու տայ, եւ ժամանակին՝ եթէ հարկ ըլլայ, մինչեւ զէնքով ալ զինքը գահ հանելու կ'օգնէ։ Ասանկով Աղեքսիոս Թիրոլի լեռները խաւրուելով Էրենպէրկ բերդը կը բնակէր։ Աս ամէն գործողութիւններն իրօք ալ մեծ գաղտնութեամբ եղան։

Պետրոս Ամստերտամ էր երբոր իր որդւոյն փախուստն իմացաւ ու ստուգեց որ իր ընթացքը դէպ ի Վիեննա ուղղեր է։ Ձարն իր զօրաց հազարապետ՝ Աղեքսանդր Ռոմանցովը ինքնագիր թղթով մը Վիեննա խրկելով, տժգոհութեամբ հոն գտնուող իշխանն իբրեւ հայր ու տէր կը խնդրէր։ Որչափ որ ալ աղաչանքն սաստիկ ըլլար՝ բնական էր որ կայսրըն անմիջապէս՝ իրեն ապաւինած որդի մը, իր բարկացած հօրը ձեռքը չյանձնէր։ Աղեքսիոս Էրենպէրկէն Նէապոլիս Ս. Էլմօ բերդը փոխադրուեցաւ, ուր որ օտար անուամբ յանցաւորի մը պէս ինքզինքն իր հօրը ձեռքէն ազատ կը կարծէր։ Ձարն Սպաա էր՝ երբոր Ռոմանցովը լուր բերաւ՝ թէ իր որդին Նէապոլիս կայսերական պաշտպանութեան

տակ է ։ Ռոմանցով ու Թոլսթոյ Ներքին խորհրդա-
կանը աւելի ազդու նամակով նորէն կայսեր խա-
ւրուեցան ։ "Ծանր հետեւութիւններ կրնայ ունենալ,
կ՚ըսէր Զարը, երբոր որդիս ձեռքս չտրուի, որուն
վրայ իբր հայր ու իշխող բացարձակ իշխանութիւն
ունենալով, ամենեւին ուրիշ դատաւորէ մը կախում
չունիմ,, ։ Դեսպանները Զարին գրուածքը ազդու
խօսքերով պաշտպանեցին, անանկ որ կայսրը հրա-
ման տուաւ որ Նէապոլիս երթան ու եթէ կրնան,
առանց բռնութեան իշխանն համոզելով իր հօ-
րը դարձընեն ։ Հասան դեսպանները Նէապոլիս ու
փոխարքային առջին Ալեքսիին իր հօրը Սպաա քաղ-
քէն գրած թուղթը տուին, որուն մէջ Զարն ասանկ
կը խօսի. "Քու անհնազանդութիւնդ, քու իմ հրա-
մաններս անարգելդ, նշանաւոր բաներ են ։ Չափը
մեծապէս անցուցիր. մանաւանդ ասանկ փախչելովդ
ու մտնչի մը պէս օտար տէրութեան ապաւինե-
լովդ ։ Դեռ ասանկ բան մ՚եղած չէ ։ Ի՜նչ անար-
գանք հօր մը. Ի՜նչ հոգերու պատճառ կ՚ըլլաս ։
Ի՜նչ ամօթ քու հայրենեացդ ։ Ռոմանցովին ու
Թոլսթոյին քեզի ըսածներուն հնազանդէ ու մի
վախնար, կ՚ապահովցունեմ զքեզ ու կը խոստա-
նամ Աստուծոյ ու իր դատաստանին առջին՝ որ ա-
մենեւին զքեզ չեմ պատժեր, մանաւանդ թէ,
եթէ կամքս՝ հնազանդութեամբ ու ետ դառնալով
կը կատարես, զքեզ աւելի եւս կը սիրեմ ։ Բայց եթէ
անոր հակառակ չհնազանդելու ըլլաս, իբր հայր
Աստուծմէ ունեցած կարողութեանս զօրութեամբը,
վրադ յաւիտենական անէծք կը կարդամ, զքեզ՝
իբր քու վերնագոյնդ, մատնիչ կը հրատարակեմ
ու ապահով եղիր՝ որ Աստուծոյ օգնութեամբը իբր
այնպէս զքեզ տանջանաց մատնելու ալ միջոցներ
կը գտնամ ։ Բայց աս յիշէ որ ես զքեզ ամենեւին՝
ինչպէս կրնայի, բանի մը ստիպած չունիմ,, ։ Ցաղ-

թուեցաւ Ալեքսիոս մանաւանդ փոխարքային յորդորանքէն ու հօրը տուած ապահովութեանը վստահանալով ճամբայ ելաւ ։ Զարն արդէն Մոսկուա եկած էր, ուր հասաւ նաեւ Ալեքսիոս 1718ին փետրուարի առջի օրը ։

## 53.

Ալեքսիոս իր հասած գիշերը հօրը հետ առանձին երկայն խօսակցութիւն ըրաւ ու ասոր վրայ թէ եկեղեցական ու թէ աշխարհական մեծամեծաց առջին երդմամբ երկու անգամ՝ մէյ մը պալատան ու մէյ մ'ալ եկեղեցւոյ մէջ, բոլոր ժողովրդեան առջին իր յաջորդութեան իրաւունքէն հրաժարեցաւ ։ Զարն ասոր վրայ անմիջապէս յայտարարութիւն մը հանեց, որուն մէջ Ալեքսիոսին պզտիկութենէ վեր ըրածները մէկիկ մէկիկ ժողովրդեան առջեւը կը դնէ ու կը ցուցընէ որ յաջորդութեան անարժան եւ անկարող է ու անոր խորթ եղբայրը՝ իր Կատարինայէն ունեցած Պետրոս Բեթրովիչ որդին, յաջորդ կը սահմանէ ։ Ալեքսիոսին դարձն ու իր վրայ եղած քննութիւնը բազմաթիւ Ռուսեր՝ որոնց Բեթերսպուրկի շինութիւնն, օտար բարքն ու լեզուն անհաճոյ էր, խոր տրտմութեան մէջ թաղեց ու իշխանին գործակցացը վրայ ըլլալու քննութեան լուրը, մահուան սարսափով մ'ամենուն սիրտը գրաւեց ։ Աս խիստ ու չարաչար քննութիւնը մինչեւ Սուստալի մենաստանին ներքին բնակարանները թափանցեց, ուր աքսորեալ Զարուհին իր հին ձարական զարդերովը զարդարուած ամենուն կ'իշխէր ։ Մահուան պատիժ առնողներուն թիւն արտաքոյ կարգի եղաւ ու Եւթոքսիա խստագոյն պահպանութեան տակ ձգուեցաւ ։ Ամէն մարդ կը կարծէր որ քննութիւնները շուտով կը դադրին ու Զարն իր այնչափ խոնարհած որդւոյն աչք կը գո-

ցէ։ Սակայն որ բան որ է յայտնուած նորանոր ծա-
ծուկները, քննութիւններն աւելի եւս առաւելացու-
ցին։ Պետրոս կ՚ուզէր որ բոլոր իր հակառակորդ-
ներն երեւան ելլալով կամ մահուան դատապար-
տուին եւ կամ աքսորուին ու Ալեքսիսին գահ բար-
ձրանալու խորհուրդը իր հպատակացը միտքէն բո-
լորովին ջնջուի։

Չարը 1718ին գարնան Մոսկուա Թողլով Պե-
տերբուրգ գացած էր. Ալեքսիս ու ամէն կասկա-
ծաւոր անձինք իրեն ետեւէն Պետերբուրգ բե-
րուեցան, ուր՝ նախ երեւելի եկեղեցականները,
պաշտօնեայք, ծերակոյտն, զօրապետներն ու անձնա-
պահները դատաստան ընելու կանչուեցան։ Չարն
անոնց ամենուն գլուխն անցած Հոգւոյն սրբոյ եկե-
ղեցւոյն մէջ այսպիսի ծանր գործքի մը համար նոյնին
առաջնորդութիւնը խնդրելէն ետքը, իր գահերէ-
ցութեամբը ծերակոյտի մէջ բաց պատուհաններով
ու դռներով դատաստանը սկսաւ ու Ալեքսիս գերիի
պէս զինուորներու պահպանութեամբ դատաստանի
ելաւ։ Հոս Ալեքսիս բոլոր խորհրդակիցներն ու իր
փախուստը գիտցողները յայտնեց, որով իր հրա-
ժարական խոստմունքը հակառակ, դեռ յաջորդու-
թեան ունեցած ջանքն ալ իմացուեցաւ։ Մանրա-
գրելու բան չէ աս քննութեան խստութիւնը։ Ա-
լեքսիսին ամէն մէկ բերնէն ելած բառերը
գրեթէ կշիռքի մէջ կշռուեցան։ Ճանչցաւ Ալեք-
սիս իր յանցանքը եւ խոստովանեցաւ թէ յան-
ցաւոր է ու սակայն հօրմէն թողութիւն կը խնդրէր։
Չարը դարձաւ ու եկեղեցական ու աշխարհական
ունկնդրաց հարցուց՝ թէ իր որդին ի՞նչ պատժոյ
արժանի է։ Դատաւորներն իրենց վճիռը չտուած,
նորէն զանազան հարցումներով զինքը քննեցին,
որն որ ամենուն ալ պատասխանելով ինքզինքն ա-
նանկ անպիտան կրթութիւն մ՚առած ըլլալովը կ՚ար-

դարացընէր։ «Թէ որ ապստամբները խնդրելու ըլլային իրմէ որ, կ'ըսէր իր հօրը, Ձեր ողջութեան առենն իրենց հետ միանամ, շատ հաւանական էր որ յանձն կ'առնուի եթէ զիրենք բաւական զօրաւոր գտնէի»։ Ուրիշ հարցման մ'ալ պատասխանելու առեն ըսաւ թէ խոստովանութեան մէջ իր հօրը մահուանը ունեցած բաղձանքն ամբաստանելու առեն, քահանան ըսած ըլլայ որ, Ձեն չունի, Աստուած թողութիւն կու տայ, ամէննուս բաղձանքն ալ ան է։ Աս ամէն քննութիւններէն ետքը եկեղեցական ատեանը Զարէն իր որդւոյն համար աւելի գթութիւն կը խնդրէր, երբոր անդիէն աշխարհական ատեանը միաբան, առանց ժամանակն ու եղանակը որոշելու, Ռուսաստանի ինքնակալին որդին ի մահ դատապարտեց, գիտնալով որ Զարն աս վճիռն հաստատելու կամ եղծանելու իշխանութիւն ունի։ Արդեօք Զարն իր որդւոյն մահը իրօք կ'ուզէր թէ չէ, այնպիսի խնդիր մ'է՝ որ պատմութեան անթափանցելի գաղտնեաց մէջ ծածկուած է։

Աս վճռոյն երկրորդ օրը Ալէքսիոս զինուորներով բոլորած Նորէն դատաստանի ելաւ, ուր որ Նորէն իր յանցաւոր ըլլալը խոստովանելէն ետքը, մահուանը վճիռն իրեն ծանուցին։ Ահն ու սարսափը պատեց զԱլէքսիոս ու նոյն տեղը մարեցաւ ինկաւ, ջղաձգական հիւանդութիւն մ'է եկաւ վրան՝ որով միտքն ալ կորսնցուց եւ ինքիրմէ ելաւ։ Աս խեղճ վիճակին մէջ Նորէն զինքն իր բանտը տարին, ուր որ հետեւեալ օրը քիչ մը սթափելով, մեծ սրտի անձկութեամբ հօրը հետ տեսնուիլ ուզեց։ Զարը լսելով որ, որդւոյն դատապարտութեան վճիռը իրեն չարաչար հարուած մը տալով մահուան վտանգի մէջ ձգեր էր, խորհրդականները Նորէն ժողվեր էր։ Աս ժողովքի առեն լուր հասաւ թէ վտանգն երթալով կ'աճի, գուցէ հիւանդը մինչեւ իրիկուն չի հասնիր։

Ան ատեն Զարը բոլոր խորհրդականներով եւս իր դժբախտ որդւոյն գնաց։ Արտասուախառն աչքերով ու աղաչանաց ձեռքերով նորէն խոստովանեցաւ հիւանդը թէ "Աստուծոյ ու հօրը առջին ծանր մեղանչած է. կենաց արժանի չէ ու չյուսար ալ որ աս հիւանդութենէն առողջանայ։ Միայն կ'աղաչէ Զարին որ իր վախճանելէն յառաջ իր վրան կարդացած անէծքը ետ առնու ու իր հայրանենգութեանը ներելով, հայրական օրհնութիւն տայ ու իրեն համար աղօթք ապըսպըրէ"։ Ներկայ եղողներէն չեղաւ ամէնեւին մէկն որ աս սրտաշարժ տեսարանէն յարտասուս չլուծուի։ Նոյն իսկ Զարն արտաքոյ կարգի շարժած էր. բայց շուտով ինքզինքը ժողվելով ծանրութեամբ ու խորին զգածմամբ մ'անցելոյն վրայ խօսեցաւ, թողութիւնն ու օրհնութիւնը շնորհելով բաժնուեցաւ։ Սակայն հիւանդին անձկութիւններուն նորէն կամաց կամաց վրան տիրեցին. իրիկուան մօտերը իր հօրը հետ անգամ մ'ալ խօսելու սաստիկ բաղձանքն յայտնեց։ Հիւանդին ներկայ եղողներուն աղաչանքը՝ ստիպեցին զՊետրոս որ անգամ մ'ալ իր բնական հակակրութեանը յաղթէ ու չարչարելոյն երկրորդ հրաժարականն ալ տայ։ Ճամբայ ելլալու վրայ էր Պետրոս երբոր լուր հասաւ թէ վախճանեցաւ։ — Դժբախտ վախճանելոյն մարմինը երկու օր Երրորդութեան եկեղեցին ժողովրդեան տեսութեանը դրուեցաւ, որուն անհամար մարդիկ այցելութեան գալով ձեռքը կը համբուրէին։ Ալեքսիոս մայր եկեղեցւոյն նոր շինուած ձարական գերեզմանը՝ իր ամուսնոյն քով թաղուեցաւ։ Զարն ու Զարուհին ու բոլոր արքունեաց մեծամեները ձեռքերնին ճրագ մեռելն յուղարկաւորեցին։ Դամբանականին բնաբանն էր, "Ո՜հ Աբեսողոմ, Աբեսողոմ որդեա՜կ իմ", որ խօսքերուն չկրցաւ Զարն իր արտասուքը բռնել։ — Ալեքսիոսին մա-

Հուանը վրայ զանազան ինքնահնար պատմութիւններ բերնէ բերան պտըտեցան, զորոնք նաեւ շատ պատմագիրներ իրենց գրուածոցը մէջն ալ ընդունած են : Բայց արդէն պատմուած բաներուն զանազանութիւնն ու իրարու աննմանութիւնն իրին անստուգութիւնը յայտնապէս կը ցուցընեն : Ոմանք կ'ըսեն որ Զարը զինքը թունաւորած ըլլայ, կամ ծեծելով, կամ գլուխը բան մ'իջեցընելով զինքն սպաննած ըլլայ : Աս ամէն առասպելաց ստութեան ապացոյցն ան է որ Զարն իր որդւոյն մահն որ ուզէր՝ զինքն արդարութեան ձեռք թողուլը բաւական էր : Ինչպէս որ կրնայ երեւակայուիլ՝ դէզ մ'առասպել ալ Կատարինայի վրայ ուղղուեցան. բայց ամենաստոյգ է որ Զարուհին՝ ձեռքէն եկածին չափ Զարէն իր որդւոյն շնորհք խնդրելու աղաչած է :

## 54.

Ալեքսիոսին մահուընէ ետքը միւս քննութեան տակ ինկողներն ալ չազատեցան : Եւթոքսիա ձարուհւոյն եղբայրը, Ալեքսիոսի խոստովանահայրը ու բոլոր արքունեաց մէջ վախճանելոյն հետ յարաբերութիւն ունեցողներն իրենց Ալեքսիոսին ունեցած միտութեանը զոհ եղան, գլխատութեան բեմն ելան : Նոյնպէս Ալեքսիոսին ուրիշ զանազան բարեկամներն ու ծառաները ծանր պատժոց տակ ինկան : Քիեվի եպիսկոպոսը անձնասպանութեամբ իր մահուան դատապարտութեանը առաջն առաւ : Վերջապէս աս զարհուրելի քննութիւնը լմնցաւ, յանցաւորները պատժուեցան ու քննիչները, որոնց ամենէն փոյթեռանդները Թոլսթոյ ու Ռոմանցով էին, շքանշաններով ու պատիւներով վարձատրեցան : Մենչիքով, Ափրաքսին ու Տոլկորուքի իշխաններուն թողութիւն շնորհուեցաւ : Աս միջոցիս Թաթարիստանի գործոց անյաջողութեամբը Կակարին իշխանն ալ

մահուան դատապարտուեցաւ: Բուխհոլց որ գրեթէ 3000 հոգւով, Եամիշ լճին քով ամրոց մը կանգնելու ու կարծեցեալ ոսկին Երքէթին քաղաքն ալ առնելու համար, փոքր Թաթարիստան խառնուած էր, Քալմուքներէն նեղ մնալով, վերադարձեալ բերդն որ արդէն շինուած էր, ու Օմ գետին քովէ բերդը թշնամւոյ ձեռքը ձգելու ստիպուեցաւ: Աւելի եւս դժբախտ եղաւ Չերքասքի իշխանը, որն որ Մեծ Թաթարիստանի մէջ մատնութեամբ սպաննուեցաւ, որով Կասպից լճին եզերքին վրայ եղող ամրութիւնները բոլոր կորսուեցան: Վերադարձեալ Կակարին իշխանն ալ Բուխհոլցին հետ գժտած ըլլալով այս ամէն չարեաց պատճառ սեպուեցաւ. վայրապար զինքը կ'արդարացընեին, պաշտօնէն վար առնուեցաւ ու ինքն իր յանցանքը չգիտնալովը՝ իբր անօրինելի յանցաւոր մահուան դատապարտուեցաւ: Կակարինին անչափ ու ահագին հարստութիւնը ձարական գանձին մնաց ու իր որդին որ քիչ մ'առաջ իշխանական ճոխութեամբ բոլոր Եւրոպա պտըտած էր, հասարակ նաւաստի մ'եղաւ: Ամբաստանեալներէն ամէններէն մէկը առանց սակի պատժոյ թող չտրուեցաւ: Տուգանաց գումարը միլիոններու հասաւ, որոնցմով տէրութեան ելեւմտից վիճակը քիչ մը կարգադրուեցաւ: Այս փոթորկալից զարհուրելի ժամանակէն ետեւ Պետրոս սաստիկ գործունէութիւն մ'առաւ: Շուտով վայելել տալ կ'ուզէր իր հպատակացը իր օտար երկիրներու մէջ ժողված տեղեկութեանց պտուղները, անոր համար Պետրոսին իր երկրորդ ճամբորդութենէն ետ դառնալը զանազան նկատմամբ Ռուսաստանի նոր ժամանակ մը կը սկսի: Իր տէրութեան կառավարութեան վրայ ունեցած գաղափարը ի գործ ելաւ: Նաւատորմիղներու շինութիւնն ու ըստ հետեւորդի վաճառականական նաւերու շինութեան դադրիլը վաճառականութեան

մեծ հարուած մը տուած էր։ Հին ձեւով վաճառականական նաւեր շինելն արգելուեցաւ. վաճառականական ընկերութիւն մ'ու ատեան մը դրուեցաւ, վաճառականութեան համարում մը տալու համար երեւելի վաճառականներն իրեն սեղանին կը հրաւիրէր ու ինքն անոնց առանձին ուրախութեանցը ներկայ կ'ըլլար. եւ աս աստիճանի մարդկանց հարկաւոր գիտութիւնը ծաղկեցընելու համար (1720) իր հրամանովը 12 երիտասարդ վաճառականի զաւակներէն, Հոլանտա ու Իտալիա խրկուեցան։ Վաճառականական դպրոց մ'ալ հաստատուեցաւ ու (1723) հրամանաւ մը որոշուեցաւ որ 15 վաճառականութեան փորձ պատանիներ միշտ դուրս օտար երկիր գտնուին, ու Ռիկա ու Ռեվալ քաղաքներու մէջ միշտ 20 ռուս ու վաճառականութեան տեղեակ պատանիներ պատրաստ կենան։ Եթէ Պետրոսին վաճառականութեան համար ունեցած այսչափ փութոյն ու գործունէութեան համեմատ յուսացուած պտուղն յառաջ եկած չէ, պակասութիւնը ազգային նկարագիրն է որ այնչափ մեծ վաճառականութեան յարմարութիւն եւ ընդունակութիւն չունի։

## 55.

Վաճառականութեան ժողովքը տէրութեան տասը ժողովքներէն մէկն էր, որոնց մէջ Պետրոս ուրիշ եւրոպական տէրութեանց սովորութեանցը համաձայն (1718) գործունելու գործքերը բաժնեց։ Աս ամէն գործողութեանց մէջ Շվեդան իրեն օրինակ առած էր։ Արտաքին գործքերուն ալ՝ պատերազմը, ծովակալութիւնը, ելեւմուտքը, արդարութիւնը, հանքի գործատունները, վերջապէս կառավարութեան ամէն մէկ ուշադրութեան արժանի բաները, մասնաւոր ժողովքներու յանձնուեցան։ Ասոնցմէ

զատ տէրութեան հաշուետուն մը ու վերին հակող ժողովք մ'ալ դրուեցաւ: Շատ օտարականներ եւ ռուսերէնագէտ շվետ գերիներ այս ժողովքներու անդամ եղած էին:

Չարը տէրութեան այսչափ գործոց վրայ աշխատելէն ետքը, քիչ մ'ալ հանգչելու հարկաւորութիւն ունէր: Սակայն նոր քաղքին շինութեանը զբաղմունքէն զատ հաճելի ու զուարճալի բան չկար իրեն: Մեծ զուարճութիւն էր նաեւ իրեն իր դուրսի տէրութիւններէն ժողված գանձերը, զորոնք միշտ կը քննէր ու կը կարգաւորէր: Իր ժողված՝ բնական պատմութեան ու արուեստներու վերաբերեալ նիւթերը Նեւա գետին մօտ քարաշէն տան մը մէջ բնական պատմութեան ու արուեստից թանգարանի մը հիմ դրին, ուր որ Պետրոս առտու կանուխ զբաղած կը գտնուէր: Թանգարանը տեսնելու համար եկողներուն ամէն բան հաճութեամբ կը մեկնէր. այս ժողովածոյից կարգն ու զանազան գործեաց օգուտները ամենուն կ'իմացընէր: Տեսութեան եկողներէն սակ առնուլը բոլորովին արգելուած էր: Ռուսաստանի մէջ արուեստներու ալ կերպարանաւորութիւն մը տալու համար՝ ընտրեալ պատանիներ օտար երկիրներ խաւրուեցան: Ռուսաստան գտնուող իտալական ճարտարապետութեամբ շինուած եկեղեցիները, հասարակաց շէնքերն ու զանազան գեղեցիկ նկարները կը ցուցընեն որ Պետրոսի աշխատութիւնը պարապի եղած չէ: Վերջապէս Պետրոսին երկրորդ ճամբորդութենէն ետքը վաճառականութիւնը, նաւագործութիւնը, ու նոյն իսկ ժողովրդեան հագուստը նոր ձեւ ու նոր կերպարանք մ'առին: Ասկէ քիչ մ'ետքը ակումբներու ալ հրաման հանեց: Պետրոս իր հրամանագրին մէջ ակմբին ինչ ըլլալը ժողովրդեան մեկնելով, "Ռուսական լեզուն, կ'ըսէ, այս բանս բացատրելու մասնաւոր բառ մը չունի, ու

Նոյն գաղղիական բառին (assemblée) չի կրնար համապատասխանել. Ակումբը ժողովք մ'է՝ որուն մէջ ժամանակ կ'անցուի կամ գործքեր կը կարգաւորուին։ Ակմբին տէրն եկողներն ոչ ընդունելու եւ ոչ ալ յուղարկելու պարտաւորութիւն ունի. եկող հիւրին գալու ու երթալու ժամը որոշուած չէ։ Ինչպէս հաճի ազատ է. կ'ուզէ կ'երթայ, կ'ուզէ կու գայ, կ'ուզէ կը խաղայ, կ'ուզէ կը խօսի ....։„ Պետրոսին Նորոգութեանց մէջ աս ակումբներն ամենէն հաճելի եղան Ռուսաց։ Ասոնցմէ ետքը Պետրոսին երեւելի գործքը Շվետի հետ սկսուած խաղաղութեան գործքն էր։

Կարոլոս՝ Կէօրցին Ռուսաստանի հետ խաղաղութիւն ընելու յատակագծին կատարեալ հաւան ու միաբան էր։ Զարին ալ այսպիսի խաղաղութեան մը միտում ունենալովը (1717) խօսակցութիւններն ու գործողութիւններն սկսան։ Զարը կ'ուզէր որ գործողութիւնները Ֆինլանտի Աբօ մայրաքաղաքը ըլլան, իսկ Շվետները Ուբլանտի եզերաց վրայ եղող Օրեկրունտ կղզին որոշած էին։ Բայց երկու կողման միաբան հաւանութեամբը՝ Ուբլանտի ու Ֆինլանտի մէջ տեղը Ռուսաց ձեռքն եղած Օլանտ կղզին որոշուեցաւ։ Երկայն խօսակցութենէ ու վէճերէ ետքը թէութիւններն ընդունուած ու խաղաղութիւնը յաջողած կ'երեւար ու Կէօրց իր թագաւորին հաւանութիւնն առնլու համար երկրորդ անգամ ճամբայ ելած էր՝ երբոր մէկէն Կարոլոսին Նորուեգիա յարձակելուն ու դժբախտ մահուանը լուրն առաւ։ Աս անակնունելի գոյժը անմիջապէս աս ծանրակշիռ դաշինքը՝ որն որ հիւսիսին նոր կերպարանք մը պիտի տար՝ կործանեց։ Ինկաւ Կարոլոս, ինկաւ անոր հետ նաեւ Կէօրցն ալ ու երկինք բողոքող ապերախտութեամբ մը յանցաւորի մը պէս մեռաւ։ Չէր յուսացուեր որ ան անձը՝ որ բոլոր հոգւով իր

աղջկին սիրոյն համար կ՚աշխատէր, այնպիսի մէկին որ իր մէկ թշնամւոյն, Բուսսոստանի, հետ միանալով միւս թշնամիները զսպելու կը ջանար, առանց վախճան մ՚ունենալու։ “Շվեդները, կ՚ըսէ Մեծն Փրեդերիկոս, գիւղացւոյնի մը պէս զԿարոլոս կը պատուէին, բայց իրօք անոր յիշատակին անարգեցին ու նախատեցին՝ երբոր ան մարդը՝ զոր ինքն իր բոլոր վստահութեանը արժանի սեպած էր, մահուան դատապարտեցին„։ — Պետրոս Կարոլոսին քաջասրտութիւնն ու արիութիւնը աղէկ ըմբռնած ըլլալով, միշտ իր վրայ կը դարմանար, ու հաշտութեան միջոց մը փնտռելն աչքէն չէր հեռացըներ. ասոր համար ալ էր որ վերջապէս իրեն խաղաղութեան ձեռք երկնցուց։ Թէպէտ Շվետաց հետ դեռ խաղաղութիւն չէր եղած ու շվեդական նաւատորմիղն ու զօրքը չէին կրնար զՌուսները իրենց արշաւանքէն արգելուլ, ի վերայ այսոր ամենայնի Կարոլոսին ունեցած խաղաղութեան միտումը չարգելելու համար Ռուսաց կողմանէ ամէն թշնամական գործքերը դադրեցան։ Նոյն իսկ Պետրոս բոլոր ամառը իր նաւատորմիղին երթեւեկութեանը ներկայ էր, ժողովքին վրայ կը հսկէր ու դժուարութիւնները դիւրինցընելու ետեւէ էր։ Սեպտեմբերի մէջ նորէն Նեվա դարձաւ, ու Ալանտէն եկած լուրերը յաջող կ՚երեւային ու ամէն մէկ րոպէ վերջնական որոշման կը սպասուէր։ Աս իրարու նախանձաւոր Ինքնակալներն ասանկ յաջող դիրքի մը մէջ էին՝ երբոր յանկարծ շանթի մը պէս Կարոլոսի մահուանը գոյժը հնչեց։ Խորին լռութիւն մ՚է տիրեց Պետրոսի վրայ ու տակն ու վրայ եղաւ, արցունքներն երեսներէն վար գլտորելու սկսան. բռնեց ինքզինքը ու քովիններուն դառնալով ըսաւ. “Ո՜հ, Կարոլոս եղբայր իմ, ինչ ցաւ տուիր ինծի„։ Զգացած ցաւը չթողուց որ աւէ աւելի բան մը խօսի։

## 56.

Արդէն Պետրոս Ալմանեան ժողովքին առենն ու ժամանակէ անկէ յառաջ ալ թշնամութիւնները դադրեցընելովը իր խաղաղութեան ունեցած յօժարութիւնը ցուցըրած էր : Չարը Կարոլոսի մահուընէ ետքը իր առողջութեանը համար եղաւ Ոլոնեց գնաց, ուր իմացաւ որ Կարոլոսի քոյրը, Ուլրիք Էլէոնորա՝ որն որ Հեսսենի ժառանգ իշխանին հետ ամուսնացած էր, գահն ելեր է ու Ալմանեան խաղաղութեան գործոց համար կէօրցին տեղ Պ. Լիլիոնթեալը խաւրելու խոստացեր է : Աս լուրը Ռուսի Օսթերման գործակալն ալ հաստատեց, որն որ Ալանտէն գալով նոր պարագաներու համեմատ ասկէ ետքն սկսուելու գործողութեանց համար տեղեկութիւններ առնուլ կ'ուզէր : Պետրոս զինքը նորէն ժողովետեղ խաւրեց. նաեւ Մարտֆէլտ Պրուշի պաշտօնեան ալ իրեն հետ խաւրուեցաւ, որ Պրուշի ու Շվետի մէջն ալ ըլլալու խաղաղութեան վրայ խօսուի :

Ասոր ետեւէն Պետրոս Լըֆոռ ռազմապետը Ալանտի վրայէն Սթոքհոլմ խաւրեց՝ աս յանձնարարութեամբ, որ երթայ Թագուհւոյն իրեն աս բազմամեայ պատերազմին դադարմանը համար ունեցած հաստատուն կամքն յայտնէ, եւ միանգամայն Լիլիէնսթէտ պաշտօնէին առաքումը փութացընէ, եւ ի մասնաւորի Շվետի հոգիները քննէ : Լըֆոռ տէրութիւնը զանազան կողմնակցութեանց բաժնուած տեսաւ : Ուլրիք Էլէոնորա թագաւորական միապետութենէ զրաժարած, ու իր մեծ քրոջը որդւոյն Հոլշթայնի դքսին իրաւունքը յափշտակած գահն ելած ըլլալով, ինքզինքն գահին վրայ հաստատուն բռնելն ու իր ամուսինը թագաւորական պատուոյ հասցընելն իր ամէն գործոցը գլխաւոր նպատակն ըրած էր :

Ան կողմնակցութիւնը՝ զոր որ Ինք Հոլշթայնցի Կէօրցը կործանելու համար ոտք հանած էր, պէտք էր որ աւելի եւս օգտակար թելութիւններով վառուէր: Թէպէտ Լըֆոռ շատ սիրով ընդունելութիւն գտաւ ու ցուցուեցաւ իրեն թէ Ինկերմանլանտէն, Նարվայէն եւ գուցէ Քարիլեայի մէկ մասէն ալ հրաժարելու կրնայ, բայց անոր կը ղարմացուէր որ ռուսական կողմանէ Պրուշին ալանտեան դաշանց մասնակից ըլլալը կը բաղձացուի, որուն համար որ Մարտֆէլտ ալ գործոց մէջ մտած է. ու Սիլիէնսթէափ տուաքման վրայ ալ հաստատուն պատասխան մը չտրուեցաւ: Ցիրող կողման միտքն ան էր թէ մինչեւ որ անգղիական նաւատորմիղը արեւելեան ծով մտնէ՝ անորոշ պատասխաններով գործողութեանց ձեռք չզարնուի, որպէս զի նոյն ատենն անգղիացւոց օգնութեամբը զօրացած՝ Զարին դէմ այնպիսի դիրքի մը մէջ մտնեն որ շվետական ժողովըրդեան տրուած գեղեցիկ խոստումներն ալ ապահովութիւն մ'առնուն: Աս միտքերն ու խորհուրդները աւելի եւս կը հաստատուէին ու կը գրգռուէին Անգղիայի ու Հանովէրի դեսպաններէն: Արդէն յառաջուց ալ Անգղիայի թագաւորը խօսք տուած էր, որ բոլոր Շվետին թշնամիները եւ մանաւանդ Զարը կը զսպէ ու կը հանդարտեցընէ, բայց Կարոլոս ու Կէօրց այնպիսի խոստմանց ոչնչութիւնն ու ի գործ չելլալն աղէկ իմացած էին. բայց ինչ օգուտ որ ալ նոյն մարդիկները չկային: "Քանի որ Անգղիացիք Շվետաց հետ, կ'ըսէին, Ռուսաց դէմ են, Շվետը եւ ոչ ափ մ'երկիր կը կորսնցընէ,,: Սակայն զարմանալի եղանակաւ մը չկրցաւ աս Անգղիացւոց հետ ըլլալու դաշինքը շուտով ի գործ դրուիլ, որով Շվետի անորոշ վիճակն երկայն տեւելով Զարը զիրենք ստիպելու ու իրենց սպառնալու սկսաւ:

Լըֆոռ որ Յուլիսի սկիզբը (1719) Ստոքհոլմէն

ետ դարձած էր, Պետրոսն ամուր նաւատորմիղով
մը Ալանտի մօտերը Լիմլանտ պզտի կղզւոյն վրայ
գտաւ։ Թէպէտ Միլիէնսթէտ Ալանտեան ժողովքին
ներկայացաւ, սակայն Շվետին մինչեւ աս ատենս
բռնած անորոշ ընթացքը ստիպած էր զՉարն, որ
զէնքի սարսափով շվետական կառավարութիւնը
խաղաղութեան ստիպէ։ "Կ'ուզեմ կ'ըսէր, 40,000
զինեալ ու լիազօր իշխանութեամբ մարդ խաւրել,
որպէս զի Ալանտեան խօսքերուն ազդուութիւն
տան. երկու անգամ իմ եղբօրս Կարոլոսին խաղա-
ղութիւն առաջարկեցի, անգամ մը նեղութեան՝ ան-
գամ մ'ալ մեծասրտութեան։ Թող հիմակ Շվետ-
ներն աս երրորդ ստիպման խաղաղութիւնը յանձն
առնուն,,։ Կատարուեցաւ իր զարհուրելի սպառնա-
լիքը. արդէն ինքը, անգղիական նաւատարմիղն ա-
րեւելեան ջուրերուն վրայ չերեւցած, իր նաւատոր-
միղովը ճամբայ ելած ու Ափրաքսին ծովապետն
ալ իրմէ յառաջ նաւերով ու շատ զօրքով Ֆին-
լանտիայի ծովեզերքը խաւրած էր։ Պետրոս սրով ու
հրով խաղաղութիւնը ձեռք ձգելու մտացը վրայ
աւելի եւս հաստատուած, հրովարտակ մը հանեց,
որուն մէջ իր միտքը յայտնապէս կը ծանուցանէր։
Ասոր վրայ Թագուհին Չարին մարդ խաւրեց ու խա-
ղաղութեան բանագնացութիւնն սկսաւ եւ որոշուե-
ցաւ որ խաղաղութեան խօսակցութիւնն սկսուի,
Օսթերման Չարին պայմաններովը շուտ մը Սթօք-
հոլմ խրկուի ու ծովապետին ալ հրաման երթայ՝ որ
առած պատուէրն դեռ ի գործ չդնէ, թշնամու-
թիւնները չսկսի։ Բայց Ափրաքսին իր զարհուրելի
յաղթահարութիւններն սկսելու հրամանովն արդէն
նոյն օրը Լիմլանտէն ճամբայ ելած ըլլալով, յաջո-
ղութեամբ Շվետի եզերները հասաւ, ու ամենեւին
առանց արգելքի մը ցամաք ելլալովն ահ ու սարսա-
փը չորս դին պատեց։ Ռուսք 'ուր որ ոտք կը կո-

խէին, գեղերն ու քաղաքները, Նարածաղքին գոր-ծառութիւններով հրոյ ու բոցերու մէջ կ՚ոչնչացընէ-ին: Այսպէս Նիւքէօբինկ, Նորքէօբինկ, Սէօտէր-թելյէ, Թրոսա, Էօրէկրունտ հրոյ ճարակ եղան: Մեծ համբարանոցներ, ահագին ամբարներ, բազ-մաթիւ նաւեր բոցեղէն ծովու մէջ ընկղմած էին: Վնասը 12 միլ. թալեր կը համարուի: Շվէտները բոլորովին վհատած նոյն խակ իրենց մայրաքաղաքին համար ալ մեծ երկիւղ կը կրէին, զորն որ Թա-գուհւոյն ամուսինը արագաժողով զօրքերով ամ-րացընելու ետեւէ էր:

## 57.

Այսօր ասանկ բոլոր Շվէտ ահ ու սարսափը պա-տած էր, մէյ մ՚ալ Օսթերման խաղաղութեան պայ-մաններով Սթոքհոլմ հասաւ: Պետրոս պատրաստ էր Ֆինլանտիան անմիջապէս ու Լիֆլանտիան 40 տարիէ ետքը ետ դարձընելու ու անոնց տեղ Էսթ-լանտա, Քարելիա ու Քեքսհոլմը ինչպէս նաեւ Ռեվալ, Նարվա ու Վիպորկ քաղաքները պահել կ՚ուզէր: Թագուհին ալ թէութեանց ընդդիմու-թիւն չցուցուց ու իր՝ ասանց խորհրդանոցին ասանկ կարեւոր երկիրներէ հրաժարելու անկարողութիւնը յայտնելով, խոստացաւ որ Ալանտ իր լեռնոտ գոր-ծակալին ասոր վրայ տեղեկութիւններ կու տայ: Եւ որովհետեւ Պետրոսին ասանկ թշնամական գործոց ատենը վիճակները չէին կրնար ժողվուիլ, անոր հա-մար Օսթերման աղաչեց Զարին՝ որ թշնամութիւն-ները դադրեցընէ ու նաւատորմիղը ետ կոչէ: Ար-դէն Պետրոս իր նպատակին հասած ըլլալով ցուցուց որ ինքն իր խօսքին վրայ հաստատուն է: Ասոր վրայ ռուսական նաւատորմիղը շվէտական եզերքէն անմի-ջապէս հեռացաւ, ու շատ ալ չհեռանալու համար Ռեվալ ձմերեց ու Պետրոս ալ նորէն Բեթերբու-

պարկ դարձաւ։ — Աս միջոցիս Անգղիացիք Շվետի հետ դաշինք դնելէն ետքը՝ Նորիս ծովակալը՝ բոլոր անգղիական նաւատորմիղին գլուխն անցած Ռուսի դէմ Շվետին օգնելու միտք ու արտաքուստ վաճառականութիւնը պաշտպանելու պատրուակաւ, արեւելեան ծով մտնելով յառաջ քալելու սկսաւ. սակայն ատենն անցած էր, բոլոր Շվետի եզերքը անմարդի ու մոխրածածկ գտաւ։ Սակայն եւ այնպէս անգղիական նաւատորմիղին երեւալը, լքեալ ու վհատեալ Շվետաց մեծ սիրտ ու հոգի տուաւ։ Մեծին Բրիտանիայի հետ հաստատուն կապ ունենալը միայն վրէժխնդրութեան յոյս տուաւ իրենց. Անգղիացւոց հետ պաշտպանիչ դաշնակցութիւն մը հաստատուեցաւ (1720), որով Անգղիան կը պարտաւորէր Շվետի տէրութիւնը թշնամական յարձակումներէ պաշտպանել ու թշնամին յաջող խաղաղութեան մը ստիպել։ Անգղիայի հետ եղած խաղաղութեան դաշինքէն ետքը նաեւ Լեհաստանի, Դանիայի ու Պրուսի հետ ալ խաղաղութիւն եղաւ, որոնց ամենուն վրայ ալ Չարլին աճող զօրութիւնը մեծ նախանձ ձգած ըլլալուն, ամէնքն ալ մէկ վախճանի վրայ միացուց։ Այսպէս Պետրոս իր քիչ մը յառաջ Շվետի դէմ եղող դաշնակիցները կորսնցուց եւ իմացաւ որ նոյն դաշնակիցներէն ամենէն զօրաւորը՝ Բրիտանիան, յայտնապէս իրեն դէմ էր։ Անգղիայի այսպիսի ընթացք մը բռնելուն վրայ չարաչար բարկացած ու կատղած, չէ թէ միայն իր դեսպանին ձեւօքն զթագաւորն յանդիմանեց, այլ նաեւ Ռուսաստան գտնուող բոլոր անգղիացի վաճառականները բռնադրկեց սպառնալեօք հանդերձ որ իրենց գրեթէ 50 միլ. ինչքերն ու վաճառքները բոլոր յարքունիս կը գրաւէ։ Այսպիսի հզօր թշնամւոյ մը առանձինն դէմ դնելու համար ծովով ու ցամաքով պատրաստուելու սկսաւ, ու երկու՝

ծովու եւ ցամաքի, զօրութիւնն ալ կրկնապատկեց: Այսպիսի պատրաստութիւններով անցաւ Պետրոս 1729 տարին, որուն շրջանին մէջ՝ չէ թէ միայն իր դաշնակցացը կորուստը, այլ նաեւ իր ազնիւ փե-նակցին, Շերեմեթեւ սպարապետին մահուամբը ու Կատարինայի 5ամեայ տղուն կորուստովը մեծ տրտմութեան ու սգոյ մէջ ընկղմած էր: Որչափ որ մեծ էր Պետրոսին ուրախութիւնն իշխանին ծննդեանը ատեն, նոյնչափ սաստիկ ցաւ զգաց անոր կորստեանքը. զարհուրելի յիշատակներ նորէն իր միտքը տանելու սկսան: Երեք օր ու երեք գիշեր առանձին քաշուած էր առանց եւ ոչ իր Կատարինան տեսնելու, ոչ կերակուր եւ ոչ ըմպելի առաւ: Խորին տխրութիւն մ՚է տիրեց բոլոր արքունեաց մէջ, ու տխուր հետեւութենէ մը մեծ երկիւղ կար: Ազնիւ Տոլկորուքին՝ որ տէրութեան ամէն գործոցը մէջ Պետրոսին օգնական էր, առոր ալ ճար մը գտաւ. Կատարինային անուամբ ծերակոյտը ժողվեց, ու տէրութեան վտանգն առջեւը դնելով, ստիպեց որ իրեն հետ Ձարին գայ: Մեծ դժուարութեամբ ծերակոյտն ալ խորհուրդին հաւանեցաւ: Տոլկորուքի Ձարին առջին համարձակութեամբ մը խօսելու սկսաւ. “Կ՚ուզես, կ՚ըսէր, կ՚ուզե՞ս որ Ռուսերն ուրիշ իշխան մ՚ընտրեն: Տէրութիւնը վտանգի մէջ է, բոլոր գործքերը դադրած են, թշնամին նորէն գլուխ վերցուցած է, սկսած գործքդ կրնա՞ս կործանել“: Արթնցաւ Պետրոսին իշխանական զգածմունքը. քաջալերեց ինքզինք, յաղթեց իր ցաւոցը ու նորէն ինքզինքն իր տէրութեանը տուաւ:

Նոյն պատերազմալից տարիներու մէջ՝ որ Ռուսաստան Արեւելեան ծովուն եզերացը տիրելովն ան աստիճանի զօրութիւն ստացած էր՝ որ չէ թէ միայն Շվետէ այլ եւ ոչ հիւսիսային միացեալ տէրութիւններէ վախ ունէր, յետ որոյ որ արդէն Շվետը

նոյն իսկ իր ներքին վէճերովն որ ըստ օրէ կ'երթար ու կը տկարնար, Հոլշթայնի իշխանն իր ժառանգական երկրէն զրկուած 1710ին Շվետէն փախած էր, ու խորհրդանոցին խռովութեանցը առեն ինք Վեննա կայսրմէ իր երկիրներն ստանալու օգնութիւն կը խնդրէր: Պետրոսն ալ զինքը շատ սիրելուն ու նաեւ քաղաքական յարաբերութեանց նկատմամբ միտքը դրաւ որ աս լքեալ իշխանին ձեռք երկնցընէ. եւ աս միտքով իր Վեննա եղող դեսպանին ձեռօքը ազդեց իշխանին որ ըլլայ անմիջապէս Բեթերսպուրկ գայ ու բոլոր իր բախտը Ձարին ձեռքն յանձնէ, խոստանալով՝ որ առանց Շլեզվիկն եւ Հոլշթայնը իրեն համար առնլու, Շվետի հետ խաղաղութիւն չ'ըներ ու իր դուստրներէն մէկն իրեն ամուսին կու տայ. աս ալ աւելցուց որ իշխանը Բեթերսպուրկ ոտք կոխելուն պէս Էսթլանտ ու Լիֆլանտ նոյն հետայն իրեն կ'ըլլան ու ասով գահն ելլալու ճամբայ ալ կը բացուի: Հաւանական է որ Ձարը աս տուած խոստմունքները, գոնէ իր շահուն համար կատարելու հաստատուն կամք ունէր. որովհետեւ քիչ օգուտ չէր իրեն իր դուստրը Շվետի գահն հանելը ու նոյն տէրութեան այնպիսի թագաւոր մը տալը՝ որ իրեն հետ աղէկ կապուած ու օգնական ըլլայ, որով ինքն ալ Մեծ Բրիտանիայէն վրէժը կ'առնուր: Սակայն Հոլշթայնի դուքս՝ Փրեդերիկոս Կարոլոսը, Ձարին հետ զանազան խօսակցութիւններու ելնալու առեն, անդիէն Ուլրիքա Թագուհւոյն ջանքը գլուխ ելլալով իր պըրը, Հեսսէնի ժառանգական իշխանը, որ նոյնպէս Փրեդերիկոս կ'անուանուէր, շվետական աթոռն ելաւ եւ Ռուսաստանի հետ խաղաղութեան փորձերն սկսելով Վիթթենպէրկ սպարապետի տեղակալը խաղաղութեան խօսքերով Բեթերսպուրկ խաւրեց. ուր իրեն հետ գացին նաեւ 200էն աւելի պատերազմի մէջ բռնուած ռուս գերիներ: Նաեւ

Հոլշթայնի դուքսն ալ սակով փոխանակելու ետեւէ էր։ Չարը Վիթթենպէրկի գալուստն ուրիշ մտօք առնլով, ռուսական նաւատորմիղն ու Գրոնշթատի ամրութիւնները մէկիկ մէկիկ իրեն ցուցուց ըսելով «Ըրածս սովորութենէ դուրս բան է, բայց ձեր Թագաւորին լրտեսաց համար ընելու ծախքին կը խնայեմ, ապահով եղէք որ ամէն բան տեսաք»։

## 58.

Շվետները բոլոր յոյսերնին անգղիական նաւատորմղին վրայ դնելով Ֆինլանտի մէջ պատերազմ սկսելու կը պատրաստուէին։ Սակայն անգղիական աշագին նաւատորմիղն առանց բանի մը ձեռք զարնելու դէպ ի Ռեվալ ճամբայ ելաւ, որով Ֆինլանտի արշաւանքը չկրցաւ սկսիլ։ Երբոր Նորիս ծովապետը նաւերու վրայէն Ռեվալի ամրութիւնները կը դիտէր, Ռուսերը զինքն հրաւիրեցին որ առանց վախի, իբրեւ բարեկամ ցամաք ելլայ, ուզածը տեսնէ եւ զիրենք թշնամի չհամարի։ Աս միջոցիս Ռուսերն արդէն իրենց ասպատակութիւններն սկսած էին, Պոթնիայի եզերքը կրակ ու բոց կտրած էր. Ումէա քաղաքը մոխիր դարձաւ, համբարանոցները, գեղերը, ջաղացքներն ու ամէն բան հրոյ ճարակ եղաւ։ Ծովածոցին երկու եզերքէն մուխն ու խեղճ բնակչաց վայնասունը մէկտեղ խառնուած երկինք կ'ելլէին։ Շվետը ծովու վրայ ալ չորս կրկնայարկ նաւ կորսնցուց։ Ասանկ Պետրոս մէկ ձեռքը յաղթող սրովը յառաջանալու ատեն միւս ձեռքն ալ միշտ խաղաղութեան կ'երկնցընէր։ Ռոմանցով նորէն Սթոքհոլմ խաւրուեցաւ, թագաւորին գահակալութիւնը շնորհաւորելու ու Չարին խաղաղութեան ունեցած միտումն յայտնելու։ Վերջապէս ժողովքին տեղը Նայշթատ որոշուեցաւ. բաց ի Ռուսի ու Շվետի դեսպաններէն, միջնորդ մնաց Գաղղիայի

արքունեաց պաշտօնեայ՝ Քոմպրետոնը 1721ին Բեթերսպուրկ եկաւ, որուն ջանքը Պետրոսն Հոլշթայնի դքսէն բաժնելն էր։ Քոմպրետոնին ջանքը չյաջողեցաւ, մանաւանդ թէ Չարը որոշեց որ առանց դուքսն իր քովն ունենալու խաղաղութիւնը չլմնցունէ, անոր համար նորէն թուղթ մը խաւրեց Վեննա իր դեսպանին ու ծանոյց դքսին՝ որ առանց զինքը Շվետի թագաւորին յաջորդ որոշել տալու, խաղաղութիւն պիտի չընէ։ Նոյն իսկ Կարոլոս Զ. Կայսրը զդուքսը յորդորեց որ այնպիսի հզօր ինքնակալի մը փեսայ ըլլայ, որով վերջապէս դուքսը դէպ ի Բեթերսպուրկ ճամբայ ելաւ (1721)։ Աս ատեններս Պետրոս իր ամուսնովը Ռիկա գնաց, հոն անգղիական նաւատորմղին ընթացքը զննելու ու անոր համաձայն գործողութիւնները կարգադրելու. հոս գտաւ նաեւ Հոլշթայնի դուքսն ու մեծ սիրով եւ յարգութեամբ զինքն ընդունեցաւ։

Ռիկայի մէջ Պետրոս զօրաւոր տենդ մ'ունեցաւ, իր խորհուրդովը զինքը նաւ մը տարին ու հոն ծովու օդէն առողջացաւ ու ետքը նաւատորմիղն առած անկից Ռոայէրվայքի նաւահանգիստն աչքէ անցընելու համար Ռեվալ գնաց։ Գրոնշթատի նաւահանգիստը, Նեվայի անոյշ ջրերուն պատճառաւը ռուսական նաւատորմղին գլխաւոր նաւահանգիստ չէր կրնար ըլլալ։ Լաւագոյն էր Ռեվալի նաւահանգիստը՝ որ խորունկ, ընդարձակ, դիրքն ալ վաճառականութեան յարմար, Արեւելեան ծովուն առջի նաւահանգիստներէն մէկը կրնար ըլլալ. սակայն աս ալ չհաւասարէր Ռոայէրվայքի ծովածոցին, որ աւելի ընդարձակ, բաւական խորունկ, մուտքն աւելի դիւրին, ու մեծամեծ ժայռերով ըստ մեծի մասին հովերէ կը պահպանուի ու քանի մը մօտաւոր ծանծաղուտներովն ու աւազակղզեակներովը թշնամական մերձեցումները անկարելի չէ նէ շատ կը դժուարցընէ։ Շվետ-

երրորդ անգամ Արեւելեան ծովուն վրայ երեւցաւ ու Շվետի 20 պատերազմական նաւերուն հետ միացաւ։ Բայց միշտ մէկ կողմանէ Շվետի եզերքն աւեր ու անապատ կը դառնար։ Վայրենի Քօզաքներն ոտքերնին կոխած տեղը կ'աւրէին կ'ապականէին, քաղաքներ, գեղեր ու համբարանոցներ բոցերու մէջ ոչնչացան։ Սուրին բերնէն ազատած տեղացիներն ալ իբր գերի Ռուսաստան կը խաւրուէին։ Ի վերայ այսր ամենայնի Շվետի Թագաւորն ինչպէս նաեւ խորհրդանոցն ալ ամենեւին յանձն չէր առնուր մանաւանդ Գաղղիայի դրդելովը, դաշանց մէջ Հոլշթայնի դքսին նպաստաւոր թէութիւն մը խոթել, մինչեւ նոյն իսկ Օսթերման Զարն համոզցընելու կը ջանար որ դքսին շահը խաղաղութեան սիրոյն զոհէ։ Շվետի՝ ասանկ իր մտացը վրայ անակնունելի հաստատութիւնն ու մանաւանդ Պարսկաստանէն եկած լուրերն ստիպեցին զՊետրոս որ խաբէ այնպիսի իշխան մը՝ որն որ իրեն յորդորելովն ու հրաւիրելովը բոլոր իր բախտն իրեն յանձնած էր։ — Վրդոված էր Պարսկաստան ներքին խռովութիւններով ու Տաճիկք նոյնը յարմար առիթ առնլով, նոյն տէրութեան մէկ մասին ու գլխաւոր Դարպանդ սահմանաքաղքին տիրել կ'ուզէին, որով իրենց Ռուսաստան մտնելու ճամբայ կը բացուէր ու Կասպից ծովուն վրայ ռուսական վաճառականութիւնը մեծապէս կ'արգելուէր։ Ամենէն ապահովն ան էր՝ որ Զարը Տաճիկներէն յառաջ աճապարելով նոյն սահմանաքաղաքն առնուր. բայց աս արշաւանքը բոլոր իր զօրութիւնն ու իր ներկայութիւնը կը պահանջէր. չէր կրնար Պետրոս առանց Շվետի հետ խաղաղական դաշինք մը դնելու իր տէրութենէ հեռանալ ու բոլոր զօրութիւնն անդին թափել։ Աս պարագաներն ստիպեցին զՊետրոս որ Դքսին պայազատութեան խօսքը մէկ դի դնելով, իր տէրութեանը օգտին

համար խաղաղութիւնն ըստ կարելւոյն փութա-ցին ։

## 59.

Օգոստոսի 30ին երկամենայ զինադադարէ մը ետքը այնպիսի խաղաղութեան մը ստորագրուեցաւ՝ որ 20ամեայ եւ աւելի եւս երկայն պատերազմի մը վերջ եւ Ռուսաստանի մեծութեանն հաստատութիւն տուաւ ։ Նոյշթատի խաղաղութեամբ Լիֆլանտ, Էսթլանտ, Ինկերմանլանտ, Վիպուրկոյէն (որ Ֆին-լանտիայի մէկ մասն է) Քեքսհոլմէն, ատոնցմէ զատ Էօզէլ, Տակէօ, Մէօն եւ ուրիշ քանի մը կղզիներ, յաւիտեանս Ռուսաստանի անցան ու տեղացւոց մին-չեւ նոյն ատենն ունեցած իրաւունքներն ու կրօնք ազատ թող տրուեցան ։ Զարն ալ ասոնց տեղ Ֆին-լանտիան ետ տուաւ, որուն վրայ 2 միլ. թալ. ալ վճարեց, ուր որ ինք մէկ տարուան մէջ (1710) 12 միլ. աւելի ծախս տուած էր ։ Խոստացաւ ալ որ ամենեւին Շվետի ներքին գործողութեանցը չխառ-նուի ։ — Այսպէս դժբախտ վերջ մ'ունեցաւ հիւ-սիսային պատերազմը Շվետի նկատմամբ. եւ ընդ-հակառակն Ռուսաստան առջի աստիճանի տէրու-թեանց կարգն հանեց ։ — Պետրոս խաղաղութեան լուրն անձամբ Բեթերսպուրկ տարաւ, թնդանօթաց անընդհատ որոտմամբ կղերական ու աշխարհական մեծամեծները զինքը դիմաւորեցին, ու խաղաղու-թիւնը բոլոր քաղաքն հրատարակելու համար՝ մին-չեւ առտու երաժշտութիւն եղաւ ։ Ասոր վրայ Զա-րը ծովապետութեան պատիւն առաւ ։ Աս շահաւոր դաշանց համար եղած ուրախութիւնը շաբաթնե-րով տեւեց, հարկերն ու պարտքերը նուազեցան, շատ յանցաւորաց ալ թողութիւն տրուեցաւ ։ Ծե-րակոյտն ալ Պետրոս Ա. Զարին, ցնծութեան ա-ղաղակներով կայսր ամենայն Ռուսաց, պատուանու-

նը տուաւ (1721)․ որուն համար նորէն ուրախութիւններ կատարուեցան, Շվետի գերիները ազատ թող տրուեցան ու նոյնպէս Էրէնշիլտ ծովակալը՝ որ 1714ին Ռուսաց ձեռք գերի ինկած էր, ազատեցաւ։ Այս խաղաղութեան մշտնջենաւոր յիշատակ եղաւ գեղեցիկ ոսկիէ յիշատակադրամ մը, զորն որ Պետրոս իր ձեռօքը արժանաւորաց բաժնեց։ Այս միտալին վրայ դրոշմուած է ընդարձակ ծովու վրայ ձգուած ահագին խաղաղութեան կամար մը, որն որ երկու Սթոքհոլմ ու իրեն նախանձաւոր արագածագ Բեթերսպուրկ քաղաքներն իրարու հետ կը միացընէ, եւ ազաւնի մը թռչտելով Նեվայեան քաղքին ձիթենւոյ ճիւղ մը եւ ողջոյն կը բերէ աս խօսքերով․ “Խաղաղութեան միութեամբը կապուեցանք„ ։



# Հ ա տ ո ւ ա ծ   վ ե ց ե ր ո ր դ

*Նիշթատի խաղաղութենէն մինչեւ Պետրոսի մահը:*

***1721 — 1725.***



Զօրք՝ Զինանոցի Գ. Պետրոս Աւգոստոս հայրենի վաճառականին հովանաւոր կըլլայ. Հայ վաճառականաց հետ դաշինք մը կը դնէ: Պարսկաստան գնալու մը կը խորհուի: Կասպից ծովը ու անոր բոլորտիքն եղող երկիրները քննելու համար մարդ կը խրկուի: Պետրոսին յաղթութեան նշանաւոր դրամ օրէնքը: Պետրոսի դէպ ի Պարսկաստան ըրած արշաւանքը: Կասպից ծովուն եզերքն ամրոց մը կը շինուի: Պետրոս նորէն իր երկիրները կը դառնայ: Մենշիկոֆ ու Շաֆիրոֆ իշխաններէ դատապարտուած ազատ կ'ելլան: Մոսկուա զանազան հանդիսութիւններ կ'ըլլան: Յանկի տէրութիւնը Ռուսաստանի պաշտպանութիւն մը կ'ընէ: Պետրոս Պարսից Շահին հետ դաշինք կը դնէ: Շվէտի Թագաւորը խոստ' կու տայ որ Հոլշթայնի դքսին օգնէ: Մոնս՝ Կայսրուհւոյն սենեկապետը մահուան կը դատապարտուի: Պետրոս իր տէրութեանը քանի մը քաղաքներուն այցելութիւն կ'ընէ: Աշխատութեան հանդիպած վնասներուն օգնութեան կը հասնի ու նոյն պատճառաւ կը հիւանդանայ: Իր հիւանդութեանն ատեն ունեցած տխուր մտածմունքներն ու իր մահը:

## 60.

ՌՈՒՍԱԿԱՆ *վաճառականութեան տարածումն ու ապահովութիւնը՝ ան մեծ առարկան զորն որ Պետրոս իր կառավարութիւնը ձեռքն առած օրէն իր աչքին առջին ունէր, միշտ իրեն ներկայ մնաց։ Թէպէտ Պալթիկ ծովուն վրայ իր ակնկալութենէ շատ աւելի յաջողութիւն գտաւ, բայց Սեւ ծովուն վրայ իր յաջող բախտն ալ իրմէ բոլորովին հեռացած կ'երեւար։ Բայց աս անյաջողութիւնը զինքն ամենեւին չյուսահատեցուց եւ մանաւանդ թէ իրեն մեծ գրգիռ մ'եղաւ ուղղելու իր մտադրութիւնը նաեւ ան ծովուն՝ որն որ իր տէրութեանը հարաւային սահմանն էր։ Արդէն Ալեքսիոս Միքայէլովիչ Չարը Քոզաքներու ասպատակութեանց դէմ*

ռուսական վաճառականութիւնը Կասպից ծովուն վրայ ապահովցընելու ետեւէ էր, մինչեւ Հոլանտացւոց (1667—68) ձեռօքը Օքքա գետին քով Ցետեննովա քաղաքը Արծիւ անուամբ նաւ մը շինել տուաւ ու Վոլկայէն վար դէպ ի Աժտերխան՝ Կասպից ծովը խրկեց. բայց աս առջի փորձը յաջողութիւն մը չիգտաւ, Քոզաքները նաւն այրեցին, որով Չարին յոյսը բոլորովին պարապի ելաւ։ Ան ատենէն վեր Կասպից ծովուն վաճառականութիւնը, կամաց կամաց Չուլֆա ու Աժտերխան բնակող Հայոց ձեռքն անցաւ, որոնք իրենց ճարպկութեամբը, պարսկական լեզուին հմտութեամբն ու երկու կողմն ալ ունեցած գրասենեակներովը մեծ յառաջադիմութեան մէջ էին։ Իրենք պալսիկ կերպասը Ռուսաստանէն անցընելով Արխանկելի վրայէն Հոլանտա կը տանէին ու անկից լաթ եւ ուրիշ դիւրածախ վաճառքներ կը բերէին։ Պետրոս յառաջուց ալ Հոլանտա եղած ատեն, նոյն տեղը գտնուող Ապրօյեան Պ. Պետրոս Զմիռնացի երեւելի վաճառականին՝ անոր խնդրելովը (1717) վաճառականութեան նպաստաւոր արտօնութիւններով հրովարտակ մը տուած էր, որուն մէջ ամենայն խստութեամբ կը հրամայէ իր ամէն աստիճանի պաշտօնատէրներուն որ չէ թէ միայն Ապրօյեան Պետրոսին այլ նաեւ անոր Զմիռ բնակող Աբրահամ ու Ստեփան վաճառական եղբարցը, ու իրենց գործակալացը ապրանք տարած եւ վաճառականական նկատմամբ ճամբորդութիւն ըրած ատեննին, ամենեւին արգելք կամ զրկանք մը չըլլայ, եւ ռուսական տէրութեան ո՛ր կողմանէ, ո՛ր քաղքէն որ ուզեն ազատութեամբ անցնին։ Դարձեալ նոյն հրովարտակին մէջ իր տէրութեանը ամէն պաշտօնատէրներուն կը հրամայէ՝ որ նոյն Պետրոս Ապրօյին ու իր եղբարցը ու բոլոր հայկազն վաճառա-

կաններու մասնաւոր օգնութիւն ու պաշտպանութիւն մատուցանէր: Այս հրովարտակով՝ Հայազգի վաճառականները ռուսական պետութեան Մեծափառ Արքային տուած արտօնութիւններէն գրգռուած ու անոր ժողովրդասէր բարքէն քաջալերուած, բոլոր պետութեան մէջ տարածուելու սկսան, որուն շահն ու օգուտը նոյն իսկ մեծապէս Չարն ալ տեսնելով 1711ին Պարսից Շահին հաւանութեամբը Հայ վաճառականաց հետ դաշինք մը դրաւ, որով պարսիկ կերպասը միայն Ռուսաստան կրնար բերուիլ: Այսպէս Հայոց միայն Ռուսաստանի մէջ կերպասի վաճառականութիւն ընելու ընդհանուր ազատութեան թուղթը հրատարակուելէն ետքը, Ռուս հպատակաց ալ հրամայուեցաւ որ իրենք ալ իրենց կերպասները միայն Հայոց ծախեն: Հայք երբեմն երբեմն նաեւ Տաճկաստան ալ մտնելնուն համար իրենց շնորհուած իրաւունքը կորսնցուցին (1719), սակայն իրենց խնդրելովը (1720) նոյն արտօնութիւնը նորէն հաստատուեցաւ: Այս ատեններս Ռուսաց Պարսկաստանի գաւառներու մէջ ունեցած առեւտուրը աղէկ յառաջադիմութեան մէջ էր, սակայն մէյ մ'որ Պարսկաստանի ներքին խռովութիւններն սկիզբ առին, Ռուսաց վաճառականութիւնն ալ մեծ վտանգի մէջ ինկաւ: Չէ թէ միայն կարաւաններն ապստամբական յարձակումներ կը կրէին, այլ նաեւ նոյն իսկ Շամախիի քաղքին մէջ Ռուս վաճառականները բոլոր ինչքերնին կորսնցուցին ու փուճ տեղ Աժտերխանի ռուս քաղաքապետը հատուցում կը խնդրէր: Պետրոս այս ամէն չարեաց դէմ հիմնովին գործողութիւն մը սկսելու համար՝ պէտք էր որ Կասպից ծովուն մինչեւ նոյն ատեն դեռ անծանօթ եղած աշխարհագրական որպիսութիւնը քննէր: Նոյնպէս ճամբորդներու ու կարաւաններու ապահովութեանը հա-

մար, Արթեմի Վոլինսքըի վերին հրամանատարն անմիջապէս Պարսկաստան խաւրեց, որն որ չէ թէ միայն Շահին հետ վաճառականական դաշինք մը հաստատելու պիտի ջանար, այլ նաեւ անի պիտի ստիպէր որ վնասակար ապստամբները պատժէ եւ եթէ հարկ ըլլայ ռուս զօրքն իրեն օգնելու պատրաստ է: Դեսպանը թէպէտ դաշինքն յաջողցուց, բայց աս դաշինքը չէր կրնար ըստ ինքեան վաճառականութեան օգուտ մ'ընել, անոր համար Վոլինսքըին ի դարձին կայսեր առաջարկեց, որ Կասպից ծովուն երկայնքն եղող Պարսից գաւառներն, իր սահմաններուն ապահովութեանը համար իր պաշտպանութեանը տակն առնու ու մէջը ռուս բնակիչ խոթէ: Աս առաջարկութեան գործադրութեանը համար պէտք էր որ դեռ Ռուսաց անծանօթ մնացած Կասպից ծովուն որպիսութիւնը, եզերքն ու նաւահանգիստներն աղէկ մը քննուէին:

## 61.

Նոյն վախճանաւ (1719) քանի մը հմուտ ծովական պաշտօնականներ 89 նաւաստիներով Կասպից ծով խրկուեցան, ծովեզերքը, գետերը, նաւահանգիստներն ու ջրին որպիսութիւնն Աժտերխանէն մինչեւ Դարպանդ, ինչպէս նաեւ Կիլան ու Մազանտարան հեռաւոր երկիրներն ու Աստրապատը քննելու եւ աշխարհագրական թուղթ մը ծրագրելու: Ցանձնարարութիւնը կատարուեցաւ. խրկուողները նոյն տարին Դարպանդ ու Պաքու քաղաքներէն անցնելով Կուրի աղբիւրն հասան: Երկրորդ գործակալները մինչեւ Աստրապատ ճամբանին յառաջ տանելով, բաղձացուած թուղթը բերին Պետրոսին յանձնեցին: Աս տեղեկութիւնները գալէն ետքը Վոլինսքըի Պետրոսէն Աժտերխանի կառավար անուանուեցաւ ու յանձնարարութիւն ալ ընդունե-

ցաւ՝ թէ մինչեւ որ ասդիէն Շվետի խաղաղութիւնը լմննայ ինքը պատրաստութեանց ետեւէ կ՚իյնայ: Հետեւակազօրաց գունդը՝ որ մինչեւ նոյն ատենը Ֆինլանտ կը բանակէր, Վոլկայի քովերը փոխադրուեցաւ ու Նայշթատի խաղաղութեան ստորագրուելուն պէս, զօրաց նաւեր շինելու հրաման գնաց, որպէս զի սառոյցն հալելուն պէս ամենայն ինչ պատրաստ գտնուի: — Կայսրը զօրաց վերին հրամանատարութիւնն իր անձին վերապահելով, աս երկայնժամանակեայ ու վտանգաւոր արշաւանքէն յառաջ քանի մը կարեւոր բաները կարգի դնելն իրեն պարտք սեպեց: Այն հոգն ու երկիւղը որ չըլլայ թէ ատենօք իր տնկած տունկը կամ իր քրտնալից աշխատութիւնը պարապի ելլայ՝ իր սըրտէն ու միտքէն ամենեւին չէին հեռանար: Նոյն հոգն էր որ Բրութի քով ան ճգնաժամի ատենն ստիպեց զինքը ծերակոյտին գրելու թէ "Արժանաւորագոյնն ինծի յաջորդ ընտրեցէք„, Նոյնն էր նաեւ զինքն իր որդին զոհ ընելու ստիպողը. Նոյն հոգով դարձեալ հաստատեց ան օրէնքը (1722) թէ "Ինքնակալը չէ թէ միայն ազատութիւն ունենայ իր յաջորդն ընտրելու, այլ նաեւ եթէ յետ ժամանակաց ընտրուածն ալ անկարող տեսնէ, ընտրութիւնը նորոգէ„: Աս էր Պետրոսին յաջորդութեան նկատմամբ դրած օրէնքը, որուն համար բոլոր իր տէրութեանը ազնուականներն ու մեծամեծները Մոսկուա ժողվելով ու անոնց ինչ եղանակաւ ազնուականութեան աստիճան բարձրանալը խստիւ քննելէն ու ըստ արժանւոյն զիրենք պատժելէն կամ վարձատրելէն ետքը, նոյն օրէնքին վրայ իրենցմէ երդում պահանջեց. մեծ սիրով տրուեցաւ երդումը ու իւրաքանչիւր անհամբերութեամբ կը սպասէր թէ Կայսրը զո՞վ իրեն յաջորդ պիտի ընտրէ: Պայազատութեան նկատմամբ ասանկ օրէնք

մը հաստատելէն ետքը բոլոր ծերակոյտին անդամները փոխեց, ու զինուորականաց մէջ զանազան պատուոյ աստիճաններ դրաւ եւ ուրիշ զանազան ներքին գործքերու զբաղելու ատեն, արտաքուստ ալ պարսկական պատերազմի պատրաստութիւնը աչքէն չէր հեռացըներ, անանկ որ 1722ին Մայիսի սկիզբն արշաւանքն սկսելու ամենեւին արգելք մը չկար։

Պետրոս յառաջ քան զՄոսկուա թողուլը, աս տէրութեան հին մայրաքաղքին զանազան շնորհքներ ըրաւ։ Արդէն ռուսական հին սովորութիւնները բարեխառնած եւ արուեստներն ու ձեռագործները ծաղկած էին։ Քսան տարի, Պետրոսին իբր կիրք եղած սէրը՝ Բեթերսպուրկի շինութիւնը փութացընելու պատճառաւ, Մոսկուայի մէջ շինութիւններն արգելուած էին, ալ նոյն արգելքը վերցուեցաւ ու նոյն իսկ կայսրը Քրեմլը նորոգելու հրաման հանելէն զատ Եաուզա գետին քովը ալ նոր պալատ մը կանգնեց, ու քաղքին Բեթերսպուրկի հետ ունեցած յարաբերութիւնները դիւրացընելու համար, նոր ջրանցք մ'ալ շինելու սկսաւ։ — Պետրոս ասանկ ամենայն ինչ կարգաւորելէն ետքը Մայիսի 15ին (1722) Կատարինային ընկերակցութեամբը Մոսկուա քաղաքը թողլով հեռաւոր տէրութեանց վրայ ընելու արշաւանքն սկսաւ։ Պետրոսին հետ այլեւայլ մեծամեծ մարդիկներ նաեւ նորահաստատ արեւելեան վաճառականութեան ընկերութենէն քանի մ'անձինք, վաճառականական դիտողութիւններ ընելու համար մէկտեղ գացին։ Կայսրը Թիանաւով մը Մոսկուա ու Օքքա գետերէն մինչեւ Նիշնէյի Նովկորոտ գնաց, ուր որ իրենինները Վոլկայի վրայ նաւով մը կը սպասէին ու զինքը Քազան տարին։ Հոս Զարը մեծ ուրախութեամբ Իվան Իվըայնովին հետ տես-

նուեցաւ, զորն որ ինք երեք տարի յառաջ Քամչաթքայի անդիի կողմերը քննելու խուզած ու յանձնած էր մանրամանցն որ Չինացւոց Քուրիլեան կղզիներէ պղինձ հանելուն ստուգութեանը վրայ տեղեկութիւն մ'առնուի: Հոս կատարեց նաեւ Գետրոս իր ծննդեանը 50երորդ տարեդարձին հանդիսութիւնը, եւ բոլոր բանակը մեծ ուրախութեան մէջ էր: Աս հանդիսութենէ ետքը բանակը Վոլկայէն վար դէպ ի Աժտերխան ճամբայ ելաւ: Ջուրը ճամբան մեծ հետաքրքրութեամբ, երբեմն հռչակաւոր եղած Պուլկար քաղաքը տեսնել ուզեց, որուն փլատակները Քազան գետին բերնէն վար քանի մը դրկաչափ դէպ ի ներքեւը կ'իյնան: Այնպիսի մեծութեան մը կործանումը Պետրոսին մեծ ցաւ պատճառեց, ու մնացած յիշատակներն ալ ժամանակի որս չըլլալուն համար, Քազանի քաղաքապետին պատուեց որ փլած աշտարակներն ու շէնքերը տարուէ տարի լաւագունացընէ ու Հայոց ու Թաթարաց արձանագիրներն զգուշութեամբ օրինակել տայ: Անկէ ետքն Աժտերխան հասնելուն պէս Պետրոսի առջի գործքը չորս դին հրովարտակ խաւրել եղաւ, որուն մէջ ամենուն կը ծանուցանէր, որ Շամաքիի մէջ Ռուսաց եղած անարգանաց ու վնասուն վրէժն առնելու համար հոս արշաւած է:

## 62.

Աս հրովարտակը տարածուելէն ետքը նաւերը Կասպից ծովուն վրայէն անցնելու պատրաստուեցան, որոնք մէկանց 442 հատ էին: Բոլոր զօրաց թիւն էր 220,000 ոտանաւոր, 9,000 ձիաւոր: Ցոնի ու փոքր Ռուսաստանի Քօզաքներէն կազմուած նշանաւոր գունդերն արդէն դէպ ի Պարսկաստան ճամբայ ելած էին. Ափրաքսին առաջուան ծովակալը բոլոր նաւատորմիղին վրայ վերին հրամանատար եղաւ.

Զարն ալ կատարինեան Աժտերխան թողլով իր զօրքովը դէպ ի Դարպանդ երթալու ճամբայ ելաւ: Վերին Տաղըստանի մէջ, տեղացի իշխաններուն արդէն իրեն հակուած ունեցած ըլլալով, իր գալուստը շնորհաւորելու համար առջեւն ելան ու իրեն հպատակելու պատրաստականութիւն ցուցընելով, գեղեցիկ ձիեր պարգեւ տալէն զատ, բանակն ալ առատ պաշարեղէնով ու կերակրեղէնով հոգացին: Ռուսի սահմանէն մինչեւ Դարպանդ եղած ճամբուն կէսն արդէն առնուած եւ Ռուսաց աս արշաւանքին լուրը մինչեւ Նոյն քաղաքն հասած էր: Աս երեւելի ծովային քաղաքը ու Պարսկաստանի բանալին՝ զորն որ Տաճիկները Տէմիր գափու կ'անուանեն, Կաւկասի ու Կասպից ծովուն մէջտեղը կ'իյնայ: Բնակիչք կը համարին թէ իրենց քաղաքն ու Նաեւ Սկիւթացւոց դէմ քաշուած հսկայագործ հիւսիսային պատը՝ որ քաղքէն մինչեւ ծով կը տարածի, Աղեքսանդր Մեծէն շինուած ըլլայ: Աս պատը՝ մանաւանդ հարաւային աշտարակներովը, որչափ որ ալ զօրաւոր ըլլար, չէր կրնար Նորակազմ եւրոպական զօրութեան մ'առջեւը դիմանալ: Ասկէ զատ քաղքին մէջ եղած խռովութիւնը մեծապէս օգնեց Ռուսաց, ու քիչ մը դիմադրութենէ ետքը տեղւոյն կառավարը զանազան մեծամեծներով իր դիմացն ելաւ ու քաղքին բանալիներն իրեն ընծայեց ըսելով "Դարպանդ իր կանգնումը Մեծին Աղեքսանդրի պարտական է, իր պահպանութիւնն ալ Մեծին Պետրոսի պարտական ըլլայ: Ռուսք քաղքին բնակչէն աղէկ ընդունելութիւն գտան ու կանոնաւոր զօրքը քաղքին մէջէն անցնելով ծովու քով դաշտի մը վրայ բանակեցաւ. ու Լունինին պաշտօնակալը երկկայմ Նաւով մը Պաքու խաւրուեցաւ՝ որ Շիրվան գաւառին մէջ զօրաւոր քաղաք է, որպէս զի բնակչաց զգածմունքները քննէ եւ կայսեր՝ ապստամբաց դէմ զիրենք

պաշտպանելու համար հանած հրովարտակն հրատարակէ։

Սակայն կայսեր միտքը միայն Պաքուն առնուլ չէր․ հաւանականաբար աս քաղքէն անցնելով մինչեւ Կուր գետ պիտի յառաջանար ու աս գետին վրայէն դէպ ի վեր Թիֆլիզ պիտ'որ երթար ու հոն զանազան տեղեկութիւններ առնլով ճամբան դէպ ի Թերքի պիտի ուղղէր։ Բայց յառաջ քան զայս ամենայն Չարը Կուր գետին բերանը մեծ վաճառականական քաղաք մը կանգնելու միտք ունէր, որպէս զի նոյն նորաշէն քաղքին մէջ Հայաստանի, Վրաստանի ու Պարսկաստանի վաճառականութիւնը կենդրոնացընելով Աժտերխանի վրայ ազդեցութիւն մ'ունենայ։ Թէպէտ աս էր աս մեծ մարդուն զարմանալի յատակագիծը, սակայն զանազան փոքր փոքր արգելքներու բազմութիւն մը Դարպանդն աս արշաւանաց սահման դրին, որով իր մեծագործ յատակագիծն ալ աւրուեցաւ։ Տաճկաց ռուսական յառաջադիմութեան վրայ ունեցած նախանձը, ծովու վրայ նաւերու դժբախտութեամբ ապականիլը ու պաշարին պակսութիւններն էին վերոյիշեալ արգելքները։ Պետրոս այս ամէն անյաջողութիւնը տեսնելով պատերազմական ժողովք մը կոչեց, եւ որոշուեցաւ որ քիչ մ'ատեն արշաւանքը դադրի ու Դարպանդ պահապան զօրք թողլով ետ դարձուի։ Սակայն Պետրոս Կասպից ծովուն եզերքն ամրոց կանգնելու մտացը վրայ հաստատուն կենալով հրամայեց որ Սուլաք գետին բերնէն 20 գրկաչափ հեռու յարմար տեղ մ'ամրոց մը շինուի։ Աս որոշման վրայ Ակրախան գետին յիշեալ գետէն բաժնուած տեղը Ջվիէթոյի—Քրէսթ անուամբ ամրոց մը բարձրանալու սկսաւ։ Պետրոս աս միջոցիս Աժտերխան հասնելով, իր նաւատորմղին գալստեանը կը սպասէր, որն որ վտանգաւոր ալէկոծութիւններէ ետքը

ոչ սակաւ կորստով իր տեղն հասաւ: Զօրաց վրայ ալ մեծ լքում մը կ'երեւար, որովհետեւ այսպիսի հեռաւոր արշաւանքի դժուարութիւններէն, օդի ու կերակրոց փոփոխութենէն, եւ մանաւանդ պտղոց առատութենէ շատերը զանազան հիւանդութեամբ մահուան զոհ եղած էին:

## 63.

Այս ամէն ընդդիմութեանց հակառակ որոշեց Պետրոս որ իր արշաւանքը դէպ ի Կիլան գաւառն յառաջ տանի. Նոյն տեղացի ռուս հիւպատոսին ու քաղքին պարսիկ հրամանատարին ռուս զօրքով ապստամբները զսպելու խնդրանքը աս որոշումն աւելի եւս փութացուցին, որով զօրքն առանց յապաղելու ճամբայ ելաւ: Զարն իր զօրքը խաւրելէն ետքը Մոսկուա ետ դառնալու ատեն հրամայեց որ Քազան ու Նիժնէյի-Նովկորոտ քաղաքներուն մէջ ըստ կարելւոյն շուտ 30 մեծ նաւ շինուին ու սառոյցներն հալելուն պէս Աժտերխան խաւրուին. ասկէ զատ զօրապետաց ալ հրաման գնաց որ 15 նաւ Քազան հասնելուն պէս Պաքու քաղքին վրայ յարձակում մ'ըլլայ: Ասանկ ամէն բան կարգի դնելով ինքն ալ Նոյեմբերի մէջ Աժտերխանէն ճամբայ ելաւ ու Վոլկա գետը սառած ըլլալուն ճամբուն մեծ մասը՝ մինչեւ Զարիցին, ձիով ընելու ստիպուեցաւ. ցաւով տեսաւ հոն Վոլկան Տոնի հետ միացընելու աշխատութեան փուճ ելլալը ու դեռ տարին չլմնցած (1722) իր կնոջը հետ աս աշխատալի արշաւանքէն ետ դարձաւ. ու աս իր արշաւանացն ալ վերջին դարձն եղաւ: Մեծ փառաւորութեամբ քաղաք մտաւ ըստ ամենայնի նոյն օրը, որ օրն որ տարի մ'առաջ Շվետեան փառաւոր դաշնադրութիւնը գլուխ ելլալէն ետքը նոյնպէս մեծ հանդիսութեամբ մայրաքաղաք մտած էր: Ճամբուն վրայ երեք յաղթու-

թեան կամարներ կանգնուած էին, մէկուն վրայ Դորպանդ քաղաքը նկարուած էր, որուն բանալի-ները՝ աս շքեղ հանդիսութեան առեն, Զօրքին առջեւէն կը տարուէին, զորոնք ինքը պալատ հասնե-լով ըստ սովորութեան եւ տալու ու արշաւանքի վրայ տեղեկութիւն տալու առեն չծածկեց որ նոյն բանալիները 7000 Ռուսի կեանքովը գնուած են։

Ինչպէս Պետրոս իր ամէն դարձին նոյնպէս աս անգամ իր Պարսկաստանէն դառնալէն ետքը տէ-րութեան պաշտօնատարաց անհաւատարմութեանը վրայօք խիստ քննութիւններ ըրաւ, որոնց յայտ-նուելուն պատճառը Մենշիքովին ու Շաֆիրոֆ ա-տենադպրին մէջ ծագած գժտութիւնն եղաւ։ Պետրոս իրենց դատաստանը լսելէն յառաջ եր-կուքին վրան ալ 100,000ական ռուպլի տուգանք դրաւ ու վերջէն դատաստանն սկսաւ, որուն մէջ Շաֆիրոֆ չկրնալով արդարանալ մահուան դատա-պարտուեցաւ։ Սակայն նոյն արդիւնաւոր անձին նոյն առեն տէրութեան առջեւն ունեցած արժանիքը, դատաստանին կատարումն արգելեցին։ Շաֆիրոֆն ան մարդ էր, որն որ Բրութի քով իր խոհե-մութեամբը տէրութիւնը մեծ վտանգէ ազատեց, ինքն էր իր յարատեւ գործողութիւններովը Կոստանդնուպոլսոյ մէջ խաղաղութիւն վաստկողը. իր արեւելեան տէրութեանց քաղաքական իրե-րուն վրայ ունեցած տեղեկութեամբը եւ ռուսա-կան վաճառականութեան գիտութեամբ կողմա-նէ տէրութեան մէջ իրեն նմանը չունէր։ Աս դէպքիս մէջ Կատարինան ալ Բրութի վտանգն իր էրկանը յիշեցընելով անոր սիրտը վաստկեցաւ ու Շաֆիրոֆին կեանքն իրմէ խնդրեց։ Շաֆիրոֆ ար-դէն գլխահատութեան բեմին վրան էր, ու դահճին իր գլխուն վրայ կացինը վերցընելու առեն իրեն ե-ղած շնորհքն իմանալով նորէն ծերակոյտ տարուե-

ցաւ ու հոն իր ազատութեանը բարեմաղթութիւններ եղան, ու անմիջապէս կիսամեռուէն արիւն առնուեցաւ ու խելքը վրան գալով բժիշկին ըսաւ. "Նոյն բան էր ինծի եթէ կացնաւոր դահիճն իմ մեծ երակս ճեղքելու ըլլար„. — Մենչիքոֆն ալ անպատիժ չազատեցաւ, Ուքրանիայի մէջ ունեցած երկիրները բոլոր կորսնցուց, Էսթլանտի եւ Ինկերմանլանտի տեղապահութենէն վար առնուեցաւ եւ 200,000 Ռուպլի տուժեց: Ասոնցմէ զատ ուրիշ զանազան անձինք ալ քննութեանց, խիստ բանտարկութեանց ու պատժոց տակ ինկան, որոնց մէջէն Տոլկորուքի ու Կոլիցին իշխանները Կատարինայի աղաչանքովը բանտարկութենէ ազատեցան:

## 64.

Պետրոս իր Մոսկուա բնակելը զանազան հանդիսութիւններ կատարել տալով ու մեծ հրախաղութեամբ մը վերջացուց. աս ամէն հանդիսութեանց կեդրոն եղած էր իր Բրէօպրաշէնսք գեղն ունեցած հին տունը: Արդէն ինքն հոն ուրիշ նոր տուն մը շինած ըլլալով ուզեց որ հին փայտեայ տունը՝ որուն մէջ որ ինքն իր մանկութեան օրերն անցուցած էր, այրի. տան երեսը արուեստական նիւթերով ծեփուելէն ետքը բոլոր տունն հրոյ մէջ աներեւոյթ եղաւ: Աս եղանակաւ Պետրոս Մոսկուա քաղաքը թողուց ու դարձեալ Նեվայի եզերքը գնաց, ուր որ իր քոյրը մահուան անկողնոյ մէջ գտնելով քանի մ'օր ետքը թաղեց: — Չէր մոռցած նաեւ կայսրը իր Հոլշթայնի դքսին տուած խօսքը. եւ որովհետեւ Նայշթատի խաղաղութեամբը միտքը դրածն ընելն անկարելի եղած էր, անոր համար միշտ Շվետիներքին շարժմանցը մտադիր էր ու խոստումը կատարելու յարմար առիթ կը փնտռէր: Երբոր 1723ին Շվետի խորհրդանոցը բացուեցաւ, Պետրոս յոր-

գոր՝ Դուքսը որ իր Պազեւիչ գաղանի խորհրդական՝ Սթոքհոլմ խաւրէ ու Հոլշթայնի վրայ եղած խօսակցութեանց տեղեկութիւն առնու։ Պատգամաւորին Շվետ հասնիլն ոչ թագաւորին եւ ոչ ալ թագուհւոյն հաճոյական բան մը ըլլալուն՝ եւ ոչ ունկնդրութիւն ընծայուեցաւ իրեն, թէպէտ Պազեւիչ միշտ կը յիշեցընէր որ Դուքսը իրենց թագաւորական իրաւունքները կ՚ընդունի ու խռովութիւն մը հանելու միտքէն բոլորովին հեռու ինքզինքն իր հայրենեաց կամացը հպատակ կը կացուցանէ։ Խորհրդանոցին որոշմամբը վերջապէս թագաւորը Պազեւիչին ունկնդրութիւն տալու ստիպուեցաւ։ Աս միջոցիս Սթոքհոլմ եղած գործողութեանց ծանրակշռութիւն կամ ազդեցութիւն մը տալու համար Զարը նորէն Պալթիկ ծով ելլալը պատշաճ սեպեց ու նաւատորմիղն անմիջապէս պատրաստուելով (1722 փետր. 25) Դուքսը հետն առած Յուլիսի սկիզբը ճամբայ ելլաւ ու Սթոքհոլմէն 12 մղ. հեռու կեցաւ։ Պազեւիչ՝ որ Շվետ մեծ գործունէութեան մէջ էր, աս միջոցիս Դքսին թուղթ մը գրեց, որուն մէջ կը ծանուցանէ Դքսին՝ որ իր կողմնակիցներն երթալով կը բազմանան ու եթէ, կ՚ըսէր, անձամբ երեւալու ըլլաս, կրնաս դիւրաւ նախորդացդ աթոռն ելլալ։ Ազնուամիտ Դուքսը աս հրաւէրէն հրաժարեցաւ գրելով թէ “Այսպիսի ապստամբութիւն մը իմ խեղճ ու արդէն պատերազմներով ապականած հայրենեացս բոլորովին կործանում է„։ Պազեւիչ՝ թէպէտ պատուէր առած էր որ աս թուղթն անմիջապէս այրէ, սակայն իր Տիրոջը մեծասիրտ ու հայրենասիրական զգածմունքն երեւան հանելու համար յարմար սեպեց նոյն գիրը բոլոր մեծամեծաց ցուցընել. “Ճանչցէք, կ՚ըսէր, ան իշխանը զորն որ կը մերժէք ու կ՚աքսորէք„։ Բոլոր մեծամեծք այսպիսի

ազնուասպատութենէ մը շարժեալ, բոլորովին [illegible] կողմն անցան, որով իրեն տարին 25 հազար թալեր մուտք կապուեցաւ հանդերձ ապահովութեամբ՝ որ Շվետի ազգը Վազայի տան վրայ մեծ յարգ ունի. ու ընդ թագաւորական աթոռը դատարկանալը զինք գահ չհանելու ամէնեւին պատճառ մը չկայ։

Պետրոս իր աս արշաւանքովը ծովեզերեայ երկիրներու մեծ ահ պատճառելէն ետքը ամառն Օգոստոսի մէջ Գրոնշթատ դարձաւ։ Աս եղաւ իր վերջի ծովական արշաւանքը։ Ռուսական նաւատորմիղն ընդ ամէնը 40 պատերազմական նաւէ բաղկացած էր, որոնց մէջը 2106 թնդանօթ 14,960 նաւաստի կային։ Պետրոսին դարձէն ետքն որոշուեցաւ որ նոյն նաւատորմիղին շինութեանը համար հանդիսական տօն մը կատարուի։

Նաեւ ան պզտի նաւն ալ՝ զորն որ Անգղիայի թագաւորն Իվան Վասիլեւիչին պարգեւած էր, որուն վրայ Ռուսերն առջի անգամ նաւի գաղափար ունեցած էին եւ զորն որ դարձեալ Պետրոս մեծ ուրախութեամբ ամէն անգամ կը տեսնէր ու նոյնն իր նաւաշինական բաղձանքը գրգռած ըլլալուն մեծամեծ թոռանց մեծ հայր կը կոչէր, որոշուեցաւ որ աս հանդիսութեան առթիւ Բեթերսպուրկ բերուի ու առ յապայ ժամանակաց յիշատակի համար զգուշութեամբ պահուի եւ Ռուս ազգը ընդ միշտ աչքին առջեւն ունենայ ու գիտնայ թէ ինչ էր սկզբան ռուսական պետութեան ծովային զօրութիւնն ու քիչ ատենուան մէջ ինչ հսկայական յառաջադիմութիւն ըրաւ։ Նաւն յաջողութեամբ Բեթերսպուրկ հասաւ ու զգուշութեան համար արտաքուստ պղինձով պատեցին ու աս մեծ հօր համար ըլլալու հանդիսութեանց պատրաստութիւններն սկսելով առին Բեթերսպուրկէն ու յաղթանակաւ Գրոնսլոթ տարին, ուր որ նորադարձ նաւատորմղէն յարգու-

թեամբ ողջունեցաւ. բոլոր օտար դեսպաններն ալ հանդիսութեան ներկայ գտնուեցան: Երբոր նաւակին՝ ուրիշ հարիւրաւոր նաւերու ուղեկցութեամբ Գրոնշլոթ առանձին ծով իջնալով կէս բոլորշի ձեւով կեցած նաւատորմղին մերձեցաւ, թնդանօթներու որոտումները գոռալու սկսան. ու ամէն նաւ յարգութեամբ իր դրօշը խոնարհեցուց: Նոյն նաւակին մէջն էր Կայսրը, Ափրաքսին մեծ ծովակալը ղեկը կ'ուղղէր եւ ուրիշ մեծամեծ անձինք կը թիավարէին: Ասանկ հանդիսութիւններով նաւակը նաւահանգիստ մտած ատենը դարձեալ բոլոր թնդանօթները որոտացին, ու քաղքին մէջ ալ պատճառաւ եղած հասարակաց ուրախութիւնները մինչեւ կէս գիշեր տեւեցին ու երկրորդ օրը նաւակը ցամաք հանուելով իբր յիշատակաց արժանի բան մը բերդի մը մէջ պահուեցաւ: — Ինչպէս որ այս նաւակը՝ նոյնպէս մեծ հանդիսութեամբ պատուեց Պետրոս ան պզտի փայտեղէն տունը՝ որով 32 տարի յառաջ այս զարմանալի քաղքին հիմնադրութիւնն սկսելով նոյնը բոլորովին լմնցուցած ու գրեթէ Պալթիկ ծովուն հրամանատար կարգած էր: 1723ին Նեվա գետին կոխելովը տունը փլչելու վրայ ըլլալուն՝ Պետրոս նոյնին բոլորտիքը քարէ պատ մը քաշել տուաւ ու յետագայ ժամանակաց յիշատակ մը թողուց:

## 65.

Այս ամէն բաներէ ետեւ սկսաւ Պետրոս ուրիշ կարգադրութեանց ետեւէ ըլլալ. վաճառականութիւնը դիւրնցունելու համար ջրանցքներ շինեց, օրէնսդիր ժողովք մ'ու ուսումնական ճեմարան մը հաստատեց: Բայց այս ամէնայն հոգերն ու աշխատութիւնները իր առողջութեանը շատ վնաս տուին ու 1723էն վեր տանջիչ հիւանդութենէ մը կը նե-

դուէր, որն որ Թէպէտ 1724ին բժշկաց միացեալ ճարտարութեամբը քիչ մը մեղմացաւ, սակայն ինքն իր առջի կենդանութիւնը կորսնցուց, մխուր երեւակայութիւններն օրուան հանդարտութիւնն ու գիշերուան հանգիստն իրեն կը զլանային: Տունէն քիչ դուրս կ'ելլէր, զանազան ընթերցուածներով եւ ուսման պարապելով կը զբօսնուր: Սակայն աս վիճակին մէջ ալ իր տէրութեանը պաշտօնատարաց վրայ միշտ կը հսկէր, որոնք իրենց անհաւատարմութեանը պատճառաւ դարձեալ զանազան քննութեանց ու պատժոց տակ ինկան: Աս քննութիւններէ ետքը Պետրոս բոլոր իր զօրութիւնը ժողվելով այնպիսի գործք մը կատարելու ձեռք զարկաւ զորն որ շատոնց միտքը դրած էր: Աս գործքն իր ամուսինը կայսրուհի պսակելն էր: Պետրոս համոզուած ըլլալով որ տէրութիւնը կատարինային մեծ պարտականութիւն ունի եւ իրմով իր երկրորդ գոյութիւնն առած է, որոշեց որ զինք պսակել ու օծել տալովը իր ու տէրութեան շնորհակալութիւնն յայտնէ: Այս ամէն հանդիսութեանց տէրութեան հին մայրաքաղաքին մէջ կատարուելին որոշուած ըլլալով, 1723ին հրովարտակով մը տէրութեան եկեղեցական ու աշխարհական պաշտօնատարաց ու ամէն իր հպատակաց իր միտքն ու հաստատուն որոշումը ծանոյց ու քիչ մ'ետքն առողջութեան վիճակը ներելուն պէս դէպ ի Մոսկուա ճամբայ ելաւ (1724) ուր նաեւ բոլոր մեծամեծք ժողվուած էին: Ինքնակալը քաղաք հասնելուն պէս հանդիսութիւններն սկսան ու Զարը բոլոր պաշտօնատարաց ու մեծամեծաց առջին յայտնապէս ըսաւ Թէ պսակելոյն նաեւ կառավարութեան իշխանութիւնն ալ տալու միտք ունի: "Ինքն որ, կ'ըսէր, իմ կենդանութեանս առեն Բրութի քով տէրութիւնն ազատեց, արժանի է որ իմ մահուընէս վերջն ալ նոյն

տէրութեան վրայ իշխէ, ու սոսկ միայն տէրութեանս ամբողջութեանն ու երջանկութեանը յայն ունիմ»:

Բոլոր ազնուականներէ կազմուած անձնապահաց գունդ մ՚որոշուեցաւ կայսրուհւոյն, որն որ երեք օր պահօք եւ աղօթիւք պատրաստութիւն տեսնելէն ետքը մեծ հանդիսութեամբ Քրեմլէն ելլալով՝ Զարին առաջնորդութեամբը փառաւոր զարդարուած եկեղեցի մտաւ, ուր որ Նովկորոդի եպիսկոպոսը զինքն օրհնեց ու Զարն անձամբ պսակն անոր գլուխը դնելէն ետքը բոլոր Ռուսաստանի կայսրուհի օծուեցաւ: Երկրորդ օրը Կատարինէ գահի վրայ բարեմաղթութեան եկողներն ընդունեցաւ, որոնց մէջն էր նաեւ Պետրոս իբր ծովապետ ու զօրապետ: Աս ամէն հանդիսութեանց վերջ տուաւ զարմանալի հրախաղութիւն մը, որ դեռ Մոսկուայի մէջ եղած բան չէր: Ամէն բան լմնալէն ետքը Զարը նորէն դէպ ի Բեթերսպուրկ ճամբայ ելաւ ու չէր գիտեր որ ալ Մոսկուա քաղաքը տեսնելիք չունի: Թէպէտ առջի բերան ուզեց Կատարինա կայսրուհին հին մայրաքաղաքին մէջ թողուլ, բայց վերջէն միտքը փոխելով չէ թէ միայն զինքն այլ նաեւ բոլոր[illegible]քուներաց հետ յարաբերութիւն ունեցող եւ [illegible]նելի անձինքներն իրենց ընտանեօքը Բեթերսպուրկ տարաւ: Հոս իր փառացը մեծ տեսարանին մէջ պէտք էր որ իր փառաւոր կեանքը կնքէր:

Իր մահուընէն յառաջ ունեցած դեռ երեք ամսուան մէջ, արտաքուստ խաղաղութիւնն հաստատուած՝ ու ներքուստ իր շինութեանցն ու հիմնարկութեանցը յառաջադիմութիւնը տեսնելու ուրախութիւնն ունեցաւ: Տաճկի պատերազմը, որով որ ինքն իր լի արդեամբ կառավարութիւնն սկսած էր, աս միջոցիս դարձեալ իրեն կը սպառնար: Պետրոսի Կասպից ծովու մէջ ըրած յառաջադիմութիւնը՝

ինչպէս որ բնական էր, Կոստանդնուպոլսոյ մէջ մեծ մտադրութիւն գրգռեց: Բայց ասկից Խրըմի Խանը Դրան վախն ու երկիւղը սաստկացընելու ետեւէ էր, նոյնպէս ապստամբ Լազերն ալ Ռուսի դէմ միշտ Դռնէն օգնութիւն կը խնդրէին: Անոնցմով Դուռն աւելի եւս գրգռուած Ռուսի արքունեաց ազդու ազդարարութիւն մը տուաւ ու պատերազմի պատրաստութիւններովը նոյնն աւելի եւս ազդեցութիւն մ'առաւ: Բայց մեծ Վեզիրին խաղաղութեան ունեցած միտումը, Գաղղիայի դեսպանին միջամտութիւնն, ու Հռոմէական կայսեր ինքզինք Ռուսի կողմնակից որոշելը, Ռուսաստան աս տաճկական պատերազմէն ալ ազատեց: Դուռն այս ամենայն պարագաները կշռելով՝ Պետրոսի օրինակին պէս, Պարսկաստանի խռովութիւններն իր օգտին գործածելը Ռուսաստանի հետ անյայտ հետեւութիւն ունեցող պատերազմի մը ձեռք զարնելէն աւելի աղեկ սեպեց:

## 66.

Աս միջոցիս Սուլթանն իր մտադրութիւնը դէպ ի Վրաստան ուղղած էր, ու տեղւոյն աքսորուած իշխանը, որ իր տէրութիւնն իբր աւատ Տաճկի արքունեաց կու տար, մեծ հաճութեամբ ընդունեցաւ ու Պետրոսի ազդեց, որ եթէ ինքն իր առած երկիրներովը գոհ եղած յառաջ չ'երթար՝ բաները կրնան խաղաղութեամբ լմննալ: Սակայն աս խօսակցութեանց առեն նոյն թէութիւնը չպահուեցաւ: Ռուսերը Դարպանդ միայն առնլով գոհ չէին եղած: Պետրոսի՝ Աժտերխանէն ելած առեն տուած հրամանները բոլոր կատարուելով կասպից ծովու եզերքը Ռեշէ ու Պաքու քաղաքներն ալ Ռուս զօրքով գրաւուած էին: Պաքու քաղքին առմանը լուրը նոյն առենը Բեթերսպուրկ հասաւ երբոր

Պարսից Հիւսէյին Շահին կամ Թէ իր որդւոյն Թահմասպ Շահին դեսպանը ապստամբութիւնը նուաճելու համար Պետրոսէն օգնութիւն կը խնդրէր։ Պարագաներուն ստիպմամբը պարտաւորեցաւ Պետրոս այնպիսի դաշինք մը դնելու՝ որով Շահին օգնութեան գունդ մը զօրք խաւրեց, որոնք մինչեւ որ խաղաղութիւնն հիմնովին չհաստատուէր երկրէն դուրս պիտի չելլային։ Ասոր փոխարէն Շահը Դարպանդ ու Պաքու քաղաքներն իրենց սահմաններովը ինչպէս նաեւ Կիլան, Մազանտարան, ու Աստրապատ գաւառները Ռուսաստանի կու տար։ Այս պարագաները Դրան նորէն գրգիռ մը տուին։ Բայց Գաղղիայի միջամտութեամբը նորէն հանդարտեցաւ եւ որոշեց որ Ռուսի հետ միաբանայ ու Թամասպ Շահը նորէն գահ հանէ։ Այսպէս Տաճիկները բոլոր Վրաստանի տէր եղած (1724) Ռուսի Պարսից հետ դրած դաշանցը դաշնակից եղան։ Սակայն աս դաշինքն իր զօրութիւնը կորսնցուցած էր։ Աքսորուած Շահին որդին չուզեց աս դաշանց Թէութիւններն ամենեւին յանձն առնուլ եւ ըստ հետեւորդի ռուսական-տաճկական օգնութիւնն ալ մերժեց, որով Պետրոսի ըրած յաղթութիւնները դարձեալ իր ձեռքը մնացին ու իր վախճանին հասաւ։

Տաճկի հետ խաղաղութիւն ըլլալէն յառաջ Շվետի հետ նոր խաղաղութիւն մ'ալ եղած էր (1724) որն որ Նայշթատի խաղաղութիւնը կը հաստատէր։ Կայսրը հրամայեց Թէ քանի որ աս խաղաղութիւնը կը տեւէ (12 տարուան համար էր) Շվետաց՝ Նայշթատի խաղաղութեամբը տրուած անհարկ ցորենէն զատ, 50,000 ռուպլիի բերք ալ դարձեալ առանց հարկի տրուի։ Ասոր դիմաց Շվետի Թագաւորն ալ խօսք տուաւ, որ ամենայն զօրութեամբ Հոլշթայնի դքսին օգնէ. Շվետի մէջ դքսին կողմնակիցները մեծ

օգնութիւն մ'եղած կ'ըլլար եթէ կայսրը իր դուստրը անոր ամուսին տայ: Եւ իրօք ալ Պետրոսին մինչեւ աս ատենս իր խոստմունքը չկատարելուն պատճառներն ալ վերցուած ըլլալով, իր Աննա դուստրը նոյն Դքսին հետ նշանեց (1724): Եւ որովհետեւ կ'ուզէր որ ատենօք իր դուստրը Ռուսսաստանի գահն ելլէ, անոր համար զինք նշանելէն անմիջապէս ետքը սկսաւ աւանդել ու սորվեցնել իրեն այն ամէն կարգն ու կանոնները որոնք Ռուսսաստանի պէս լայնածաւալ տէրութեան վրայ իշխողի մը անտնօրինելի հարկաւոր էին: Աս ատեններս Ալեքսիին որդին դեռ ողջ էր. ու չէր գիտցուէր որ արդեօք Պետրոս աս իր թոռը գահէն բոլորովին պիտի հեռացնէ: Ինքնակալին՝ հասարակաց բարւոյն համար ունեցած սէրը, բոլոր ուրիշ նկատութեանց յաղթեց, ու հրամայեց որ մանկան իշխելու արժանի կրթութիւն մը տրուի եւ առանձինն մտադրութեամբ զինուորական արուեստին մէջ կրթուի:

## 67.

Պետրոսի յաջորդն իր ամուսինն ըլլալուն վրայ ամենեւին մէկը չէր տարակուսեր, սակայն մեծ զարմանք էր զինքը կայսրուհի օծել տալէն ետքը անոր վրայ ունեցած վստահութեան նուազիլը: Կատարինային ամէնէն սիրելիներն ու մտերիմներն էին Մոնս իր սենեկապետն ու անոր քոյրը: Մոնս՝ որ ծննդեամբ գերմանացի էր, այնչափ Կատարինային աչքը մտած էր, որ մէկը կայսրուհիէն շնորհք մը խնդրելու ըլլար, պէտք էր որ պարգեւներով նախ իրեն դիմէր: Ասոր վրայօք Պետրոսին շատ բողոքներ եղան, բայց մանաւանդ աս անձուկ մտերմութիւնը ուրիշ նկատմամբ ալ կասկածաւոր ըլլալով, յանկարծ Պետրոս զՄոնսը բանտարկել տուաւ ու

քանի մ՚օր ետքը նոյնպէս անոր քոյրը բանտարկուեցաւ։ Անմիջապէս անոնց թղթերը գրաւուեցան ու դատաստանն սկսաւ։ Շատ ամբաստանութիւններ եղան վրանին՝ թէ ժողովրդեան պարգեւներովը հարստացած, ու Կայսրուհւոյն՝ որուն ընչիցը տնտես էին, վստահութիւնը չարաչար գործածած են։ Գաղտնի համբաւ մ՚ալ կը պտըտէր թէ Մոնս Կայսրուհւոյն հետ անվայել մտերմութեան մէջ էր. ու փոթորիկը կրնար Կայսրուհւոյն ալ վնասել։ Դատաստանը ութ օր տեւեց. Մոնս մահուան դատապարտուեցաւ ու իր քոյրը զանազան մարմնական պատիժներ կրելէն ետքը Սիպիրիա աքսորուեցաւ։

Պետրոս Բեթերսպուրկ դառնալէն ետքը (1724) նաւատորմղին ու Գրոնշթատի շինութեամբը շատ կը զուարճանար. 54 թնդանօթնոց պատերազմական նաւեր հետզհետէ, նոյնպէս ուրիշ Դարպանդ անուամբ 64 թնդանօթնոց նաւ մ՚իր առջին ջուրն իջան։ Երբոր նոյն տարին աշնան իր առողջութեան վիճակը քիչ մը լաւագունացաւ, ելաւ Շլիւսսելպուրկ գնաց, որպէս զի հոն նոյն բերդին յաղթութեան տարեդարձը կատարէ ու ասդին անդին այցելութեան ելլալէն ու զանազան շինութեանց յառաջադիմութիւնները տեսնելէն ետքը իր նաւովը նորէն Բեթերսպուրկ դարձաւ. բայց ցամաք չելլալով ճամբան դէպ ի Լախթա ուղղեց, որն որ Ֆինեան ծոցին մօտ աւան մըն է։ Միտքը դրած էր որ անկից Սիսթերպէք երթայ ու հոն երկաթի ու զէնուց գործարաններն ալ տեսնէ։ Լախթա հասած իրիկունը տեսաւ որ զինուորներով լեցուն նաւ մը՝ որն որ Գրոնշթատէն կու գար, ալեաց դէմ կը կռուէր ու ցամաք չհասած խրեցաւ։ Կայսրը անմիջապէս նաւ մը զինուոր ասոնց օգնութեան խաւրեց, սակայն գացողները չկրցան օգնութիւն մ՚ընել։ Պետրոս ալ վտանգալից տեղէն իր աչքը չէր հեռացըներ,

ու տեսնելով որ զինուորաց կէսը ջրոյ մէջ ալիքներուն դէմ կը կռուին ու կէսը գրեթէ կիսամեռ են, գիշերը բանի տեղ չդնելով աճապարեց անձամբ իրենց օգնութեան գնալ. բայց որովհետեւ աւազակոյտը զինքն անոնց մերձենալու կ'արգելուր, մէկէն ջուր նետուեցաւ եւ ամենայն զօրութեամբ օգնելով նաւն ազատեցաւ ու հրամայեց որ խեղճերն աղէկ հոգացուին։ Աս ըրած օգնութենէն զգացած ուրախութիւնը իր յառաջուան ունեցած անհանգըստութիւններն իրեն բոլորովին մոռցընել տուաւ։ Բայց միտքը դրած ճամբորդութիւնն յառաջ չտարաւ, այլ շիտակ Բեթերսպուրկ գնաց, որպէս զի հիւանդութեանը քիչ մը դարման տանի։ Բայց նոյն խրիկունը ջրի մէջ անանկ պաղ առած էր, որ իր հին հիւանդութիւնը՝ ուստի որ ինքզինք բոլորովին առողջացած կը կարծէր, կամաց կամաց զօրանալու սկսաւ ու 1724ին վերջերը վտանգաւոր վիճակի մը մէջ էր։ Միշտ անհանգստութեանց ու մտածմանց մէջ կ'երեւար։ Փուճ տեղ զանազան զբօսանքներով ինքզինք զուարթացընելու կը ջանար, իր ցաւերն ամէն մէկ ուրախութիւնը կ'ընկճէին։ Իր հիւանդ ու տկար երեւակայութիւնը միշտ իր աչքին առջին կը բերէր, որ Ռուսաստան իր մահուընէ ետքը, Մակեդոնիայի ու Հռոմայ, Աղեքսանդրի ու Կեսարին մահուընէն ետքն եղածին պիտի դառնայ, բոլոր տէրութիւնը պիտի կործանի ու իր յիշատակը միայն անոր աւերակներուն վրայ պիտի մնայ։ Քովի կեցողները զանազան զուարճութիւններով զինքը զուարթացընելու կը ջանային, բայց վայրապար։

## 68.

Տեղացի բժիշկները յոյսերնին կտրելնուն, Պերլին ու Լայտըն քաղաքներէն երեւելի բժիշկներ կանչելու համար սուրհանդակներ ելան։ Հիւանդն

գութեամբ ընդունեցան ու անոր արտասուալից աչքերը տեսնելով շատ շարժեցան։ Կատարինա քանի մը կարճ խօսքով իր յաջորդութեան նկատմամբ ունեցած իրաւունքը պաշտպանելէն ետքը՝ բոլոր ժողովականք երդում ըրին որ Պետրոս Մեծին ամուսինը գահին վրայ հաստատուն պահեն ու բաժնուեցան։

Պետրոս՝ որ միշտ հոգեվարքի մէջ էր, երկրորդ առտու (1725 Յուն. 25) Կատարինային բազկացը մէջ հոգին աւանդեց։

Ամէն մարդ Պետրոսին յարգն ան ատենը ճանչցաւ երբոր Նեվայէն մինչեւ Ամուր գետ հնչեց, թէ ա՛լ Պետրոս չկայ։ Քաղքին մայր եկեղեցւոյն զանգակները աս տխուր լուրը աշխարհագոյժ ըրած ատեննին բոլոր ժողովուրդը խուռներնթաց բազմութեամբ գունդագունդ եկեղեցի վազեց, ուր որ լացքն ու ողբը այնչափ բարձրացան որ հարկ եղաւ, Կայսեր մահուան հրատարակումը քանի մ'անգամ ընդհատել։ Նաեւ Ռուսաստանի սահմանակից երկիրները, Պարսիկ ու Կովկաս իրենց արտասուքը Ռուսաց արտասուաց հետ խառնեցին։



# ՄԵԾԻՆ ՊԵՏՐՈՍԻ

## ԱՌՏՆԻՆ

## ՆԿԱՐԱԳԻՐԸ



ՄԵԾԻՆ Պետրոսի դիւցազնական գործքերն ու զարմանալի աշխարհակալութիւններն համառօտիւ մ'աչքէ անցընելէն ետեւ, գանք քիչ մ'ալ իր առտնին կեանքն ու անձնական նկարագիրն ալ իմանանք :

Պետրոս նոյն իսկ իր կերպարանքովը ուրիշներու քով առաւելութիւն մ'ունէր : Ան իրեն մարմնոյն երկայնութիւնը, հրացայտ աչքերը, դէմքին վրայի ծանրութիւնը, ու ան բարեսրտութեամբ մեղմացած վայրենի վեհութիւնը զինք տեսնողին անմիջապէս կ'ազդէին որ Պետրոս պարզապէս իշխելու համար ծնած է : — Ինքնակալ էր Պետրոս բառին ամենայն նշանակութեամբը. բայց իր տէրութեանը մէջ չէ թէ միայն ամէն բան ինքնակալի աչօք կը նայէր, այլ՝ որ շատ քիչ կը պատահի, տիրելու արուեստն ամէն բան գլուխ հանելու ու կատարելու արուեստին հետ միացուցած էր : Ինք ամենատեղեակ զօրավար, ամենաքաջ նաւաստի ու իր տէրութեանը ամենախոհեմ պաշտօնեան էր : Լեսնայի, Բոլթավայի պատերազմները, Թո՛ղ ըսածներնուս վկայ ըլլան :

Անըմբռնելի բան կ'երեւայ, թէ ինչպէս Պետրոս՝ ան սոսկալի պատերազմներու, արտաքին ու ներքին ճամբորդութեանց, նաեւ ուրիշ զբաղմանց ու զբօ-

տանացը մէջ, ինչ բանի որ ձեռք զարնէր, նոյնը շուտով մը կը կատարելագործեր ու գլուխ կը հանէր։ Կրնան այս ամենայն դիւրաւ ըմբռնուիլ, եթէ իր գործունէութիւնը աւելի եւս մտադրութեամբ եւ ի մերձուստ տեսնելու ըլլանք։

Պետրոս հանգչելու շատ քիչ կարօտութիւն ունէր ու միայն 4 ժամ քնանալով կը շատանար։ Գրեթէ գիշեր չէր անցներ որ չ'ելլէ ու սենեկապետը չարթնցընէ, որ իրեն լոյս ու պնակը բերէ, որուն վրայ հետեւեալ օրուան ընելիքները կը նշանէր։ Ժամը 3ին արդէն անկողնէն դուրս կը գտնուէր ու մէկ երկու ժամ գիրքեր կարդալով անցընելէն ետքը, այցելութեանց կը սկսէր. շէնքերուն, գործատանց, թնդանօթ ձուլողներուն ու մասնաւորաբար նաւարան կ'երթար, ըլլալու բաները կարգի կը դնէր ու անձամբ գործելու կը սկսէր. "Տես եղբայր, անգամ մը մէկուն ըսաւ, տես, ես ձեր Ցարն եմ ու ձեռքերս փապարած են, ձեզի օրինակ տալու համար անձամբ կ'աշխատիմ,,։ Միշտ յիշատակարան մը ձեռքը պատրաստ էր, որպէս զի կարեւոր բաները միտքէն չելլան։ Հասարակօրէն ժամը մինչեւ 11՝ կերակրոյ ատեն, ճախարակելու կը պատաղէր ու նոյն արուեստին մէջ ունեցած յաջողակութեանը ապացոյցն է ան 50ստեղնեայ ջահը, զորն որ Պետրոս Բեթերսպուրկ ամրոցին մէջ մայր եկեղեցւոյն համար շինեց։ Աս ջահը ճառագայթարձակ աստղի մը ձեւն ունի ու բոլոր փղոսկր է։ Պետրոսի ճարտարութեան աս գործքը Ակադեմիայի արուեստից բաժնոյն մէջ ցայսօր կը ցուցուի։ Գրեթէ միշտ իր կնոջը հետ սեղանի կը նստէր, կերակրոյ ատենը մինակ կէս ժամ էր։ Սեղանէն ետքը, ռուսական սովորութեան համեմատ, քիչ մ'ատեն կը հանգչէր, ու ետքը իր յիշատակարանը ձեռք կ'առնուր ու հոգացուելու բաները աչքէ կ'անցընէր։ Անոր

համար ալ ատենները հասարակօրէն կամ զբօսավայր մը քով կամ արուեստանոցներու կամ երկաթա-նոցներու մէջ կը գտնուէր ։

Իր առօրեայ սովորական աշխատութիւններն ա-սոնք էին ։ Շատ անգամ տէրութեան սարքին պաշ-տօնատարաց խորհրդոյն ներկայ կը գտնուէր, նորա-հաստատ դպրոցներու ու ծովական Ակադեմիային այցելութեան կ'երթար ու տրուած դասերը կը լսէր ։ Բոլոր օրն սաստիկ յոգնելէն ետքը իրիկուանը, ուր որ գտնուէր, գաւաթ մը գինիով կ'անցընէր ․ երբեմն Ճատրակ կը խաղար, որուն մէջ՝ ինչպէս նաեւ Ճախարակելու մէջ, զինք գերազանցող մը չկար ։ Բոլոր ուրիշ խաղերը, մանաւանդ թուղթը, կ'ա-նարգէր ․ “Կամ, կ'ըսէր, նոյնը խաղացողները ու-րիշ օգտակար բաներէ համ չեն առնուր, եւ կամ շահասիրութեան համար կը խաղան, որոնց երկուքն ալ կ'անարգեմ„ ։

‘Նոյնպէս որս ու երաժշտութիւն ալ չէր սիրեր ու եթէ իրեն հաճոյից համաձայն խաղ մը չըլլար, թատրոն ալ չէր երթար ։ Ժամը 9ին անկողին կը մտնէր, ու քունը շատ թեթեւ ըլլալուն իր պառ-կելէն ետքը պալատին առջեւէն կառք կամ ձիով անցնիլն արգելուած էր ։

Արտաքին արքունեաց իրարու մէջ ունեցած յարաբերութիւնը մեծ սրամտութեամբ մը քննե-լով իր տէրութեանը յառաջադիմութիւնն ու օ-գուտը աչքէ չէր հեռացըներ ։ Աս բանիս մէջ գիր-քերն, տեղեակ անձանց հետ յաճախ տեսութիւնն ու մանաւանդ ըրած ճամբորդութիւնները իրեն շատ կ'օգնէին ։ “Եւրոպայի տէրութիւնները, կ'ըսէ Թէոփանէս, իրեն դպրոցներն ու Ինքնակալներն՝ ու Դեսպաններն իրեն ուսուցիչներն էին„ ։

Ուղիղն ու ճշմարտութիւնը կը սիրէր ․ ու ստա-խօսները չէր կրնար տանիլ ։ Շատ անգամ ուղիղ

խոստովանութիւնն ու յանցանաց բուն պատճառն յայտնելը զինքն անմիջապէս կը հանդարտեցընէին ։ Եւ նոյն իսկ ինքն ալ մէկուն բերնէն, թէպէտ իրեն դէմ, ճշմարտութիւն մը լսելու ըլլար, կ՚ուրախանար ու շնորհակալ կ՚ըլլար ։ «Փուճ պարգեւ շատնալու օրէնքներ ու կանոններ կը դնես, պարապ տեղ աս օրէնքը չպահողին պատիժներ կը սպառնաս․ քու օրինակդ օրէնքն ու պատիժը բոլորովին կ՚ոչնչացընէ»։ Ասանկ ըսաւ Պետրոսին անգամ մը Պութուրլին, իր ճամբորդութենէ ետ դարձած ատենը՝ պաշտօնատարաց կաշառ առնլուն վրայ խօսուած ատեն ։ «Երբոր ճամբորդութեանս ատեն Թվէրէն կ՚անցնէի, կ՚ըսէր, ծանօթ վաճառականի մը կնոջ քով կերակրելոյ հրաւիրուեցայ․ հազիւ թէ սեղանի նստած էինք, մէյ մ՚ալ ոստիկանութեան կողմանէ մարդ մը խուց մտաւ ու քաղքին կողմանէ 100 ռուպլի պարգեւ կը պահանջէր ։ Խաթունը քովը պատրաստ ստակ չունենալով, վճարումը ուրիշ ատենուան թողուց, բայց եկողը անոր միտ չդնելով միշտ ստակը պահանջելու ետեւէ էր ու մինչեւ բանտարգելութիւն ալ սպառնալու սկսաւ ։ Սպառնալիքը ստուգիւ կը կատարուէր եթէ ես ստակը վճարելով խաթունը չազատէի ։ Ահաւասիկ քեզի ազատութեանդ տրուած պարգեւներն ասանկ են . . . »։ Պետրոս աս լսելուն պէս Պութուրլինը ողջագուրեց ու ասանկ բան մը յայտնելուն համար շնորհակալ եղաւ ու անմիջապէս հրամայեց որ ասանկ բռնութեամբ առնուած պարգեւները ետ տրուին ։ Բոլոր տէրութեան մէջ Ֆէոտորովիչ Տոլկորուքի իշխանէն զատ մէկը չկար որ Պետրոսի կամացը առանց ակնածութեան դէմ կենար, որն որ իբրեւ ռուսական Կատոն ու Զարին մանկութեան բարեկամը գրեթէ իր վրայ տիրած էր, թէպէտ աս իր ունեցած արտօնութիւնը շատ քիչ ու հարկ եղած ատեն կը գործածէր ։

Պետրոս Լատոկայի Ջրանցքին նկատմամբ ծերակոյտի նստի մը մէջ որոշած էր, որ Նովկորոտեան ու Պեթերսպուրկեան կալուածատէրերը իրենց գեղացիները յիշեալ Ջրանցքին շինութեանը խաւրեն։ Ցոլկորուքի աս նստին մէջ գտնուած չըլլալով երբոր երկրորդ օրն եղած որոշումն իմացաւ՝ սաստիկ դէմ խօսելու սկսաւ, որ աս որոշումն արդէն տկարացած գաւառներուն բոլորովին ապականութիւն է, ու կը պնդէր որ գործավարները հեռաւոր գաւառներէն առնուին եւ մանաւանդ կ'ըսէր գերի ինկած Շվետները պէտք է որ աս բանիս գործածուին։ Ծերակոյտն եղած որոշումը փոխելն անկարելի սեպելով, Պետրոսի ստորագրութիւնն իշխանին ցուցուց։ Ասոր վրայ Ցոլկորուքին աւելի եւս բարկացած մէկէն որոշման թուղթն առաւ պատռեց։ Աս գործքիս վրայ ծերակոյտը մեծ զարմացման մէջ էր երբոր մէկէն Պետրոս ներս մտաւ ու եղածն իմացաւ։ Սակայն Ցոլկորուքի իշխանը նոյն համարձակութեամբ ու աւելի եւս ազդու խօսքերով սկսաւ Զարին ցուցընել, թէ եղած որոշումը յիշեալ գաւառաց մեծ աւեր ու ապականութիւն կը սպառնայ, որուն Պետրոս ալ համոզուելով եղած որոշումը շուտով մը փոխեց։

Օրինաց ու արդարութեան պահանջածները անտնօրինելի պարտք մը սեպած էր իրեն, ու բոլոր կենացը մէջ մինակ մէկ անգամ դատապարտելոյ մը թողութիւն շնորհեց, ան ալ պարզապէս իրեն հաւատարմութեանը համար։ Մահապարտ յանցաւորը հրաման ուզեց, որ Ս. Նիկողայոսի տօնին նախընթաց իրիկունը իր ընտանեացը հետ անցընէ, որն որ Մոսկուայէն քիչ մը հեռու գեղի մը մէջ էր։ Դատաւորը հարցուց դատապարտելոյն որ զո՞վ երաշխաւոր կը դնես։ Ս. Նիկողայոսը պատասխանեց յանցաւորը։ Եղեռնագործը Ս. Նիկողայոսի պատկերին առջին

տարուեցաւ ու հոն երդում ըրաւ, որ մինչեւ 5 օր ետ-քը նորէն իր բանտը կը դառնայ: Պետրոս այս դէպքին վրայ մեծապէս զարմացած պաշտօնատարաց սաստիկ բարկացաւ, որ անանկ մարդասպան յանցաւորի մը խօսքին հաւատք ընծայեր են. բայց յանցաւորը տուած խօսքին համաձայն մինչեւ 5 օր ետքը նորէն ետ դառնալովը Զարն աւելի եւս զարմացուց: "Դառնալուդ պատճառն ինչ է, հարցուց իրեն կայսրը, չէիր գիտեր որ միայն փախչելով կրնաս մահուընէ ազատիլ,,. "Գիտէի, պատասխանեց չարագործը, բայց ան ալ գիտէի որ ան մեծ սուրբին ձեռքէն, որուն երդումն ըրի, երբէք չէի կրնար ազատիլ,,: Պետրոս յանցաւորին հաւատքին վրայ զարմացած իրեն կեանքը շնորհեց ու իբրեւ զինուոր Սիպիրիայի գաւառները խաւրեց:

Կոլիքով վերի դիպուածէն զատ այս ալ կը պատմէ: Անգամ մը կայսրը քաղաքացւոյ մը կալուածը …նչիկոֆին պարգեւելուն համար ամբաստանուեցաւ ու դատաստանի կանչուեցաւ: Պետրոս դատաւորի առջին իր դատին քննութիւնն աղէկ լսելէն ետքը, քաղաքացւոյն յաղթելն իմանալուն պէս, անմիջապէս եղած որոշման հնազանդեցաւ եւ դատաւորներուն եւ քննիչներուն ճակատը պագնելով, անկողմնակալութեամբ դատաստան կտրելնուն համար շնորհակալ եղաւ ըսելով "Ահաւասիկ ես օրինաց կը հպատակիմ, ասկէ ետքը մէկը ձեզի դէմ գնելու ամենեւին չյանդգնի,,:

"Փառք Աստուծոյ, իրաւունքն ու արդարութիւնը նորէն հաստատեցի,, ըսաւ անգամ մը Պետրոս իր պարտիզին մէջ ծառի մը տակ նստած ատեն: Աս ըսաւ մէյ մ'ալ հեռուէն ձայն մը լսեց. "Ամէնքն ուղիղ եւ դուն մինակ սխալ կը դատես,,: Աս ձայնը մօտերն սպասող պահապան ու ազնուական ցեղէ զինուորի մը ձայն էր՝ որն որ Պետրոսի հաստատելո-

վը, իր երկիրը կործանուած էր։ Պետրոս բանն իմանալով դատաստանը նորէն սկսել տուաւ ու տեսնելով որ փաստաբանի մը վարպետութեանը դատն անիրաւ եղանակաւ որոշուեր է, երկիրը նորէն իր տիրոջը դարձուց։

Պետրոս նոյնպէս իր տէրութեանը մէջ ոստիկանութիւն ալ հաստատեց, որ անունն որ Ֆէոտոր Ալեքսիեվիչ Չարէն յառաջ Ռուսաստանի մէջ ծանօթ չէր։ — Ինքն անձամբ ճամբուն վրայ հաց ու խմորեղէն ծախողները կը կեցընէր ու ծախուած բաներուն համը կը նայէր ու պակասութիւն մը գըտնելուն պէս բանը կը խուրէր ու պատիժ կու տար։ Իսկ ճամբուն վրայ հանդիպող ուրիշ փոքր յանցաւորները իր ձեռքի գաւազանովը (Ցուպինա) կը պատժէր։

Կրակը շուտով մարելու նկատմամբ ալ մեծ մտադրութիւն ըրաւ. որուն համար մասնաւոր չէնքեր շինուեցան. Թէ քաղաքացիք եւ Թէ զինուորականք ասանկ դէպքի մ՚ատեն կատարելու մէյ մէկ գործք ունէին ու այսպիսի դէպքի մը մէջ ինքն առջի գործողներէն կ՚ըլլար ու շատ անգամ նաեւ կենաց վտանգով ուրիշներուն սիրտ տալու ու հրդեհը շուտով մարելու համար, կրակն առած տներու վրայ կ՚ելլեր կը կենար։ Եւ որովհետեւ տուներուն շատերը փայտէ էին, հարկաւ ասանկ գործունէութիւն կը պահանջուէր. եւ իրօք ալ հրդեհ մը հանդիպած ատեն չորս կամ հինգ տնէն աւելի չէր այրեր։

Դժբախտութիւնն աս էր, որ Պետրոս ամենեւին ատեն մը ինքզինք ապահով վիճակի մէջ չէր տեսներ, իրեն դէմ միշտ երդմնակցութիւն պակաս չէր. աս դաւակցութեանց վտանգէն բոլորովին ազատելու համար օրէնք մ՚ալ տուաւ, որով ամէն գերի տիրոջն ինքնակալի դէմ ըրած դաւակցութիւնն յայտնելուն

պէս , անոր իշխանութենէն կ՚ելլէր ու ազատ կը համարուէր ։

Գլխաւորաբար գործունեայ մարդիկները Պետրոսի շատ սիրելի էին ։ Շատերը մինակ իրենց գործունէութեամբը փառաց ու պատիւներու հասան . որոնցմէ մէկ քանիին հոս կը յիշատակենք ։ Նիկիտա Տեմիտովիչ Տեմիտով Թուլա քաղաքը հասարակ վաճառական մ՚էր ։ Աս մարդս տէրութեան գործքերուն մէջ ցուցըրած գործունէութեամբն ու աշխատութեամբը , երկաթի ու կապարի եւ մանաւանդ Կոլիվանեան հարուստ արծաթահանքը գտնելովը Զարին շատ սիրելի եղաւ ։ Տեմիտովին միակ փոյթն ան էր որ Պետրոսին ամէն կարելի բաղձանքները կատարէ . Պետրոս ալ ըստ արժանւոյն զինք կը վարձատրէր ու քիչ ատենուան մէջ Տեմիտով երկրին հարուստներէն մէկն եղաւ ։ Սակայն Պետրոս զինքն աւելի եւս վարձատրել ուզելով Բեթերսպուրկի հրապարակներէն մէկուն մէջ իրեն արձանը կանգնել տուաւ ։ — Նոյնպէս Կոլովին իշխանին տէրութեան վրայ ցուցըրած փութոյն ու աշխատութեանը համար յիշատակադրամ մը կոխել տուաւ , որուն վրայ Կոլովինին կիսարձանը կար ։

Զարն իր նկատմամբ եղած խօսքերը շատ սիրով կը լսէր , ու անգամ մ՚իր դեսպաններէն մէկուն՝ որ Եւրոպայէն նոր եկած էր , հարցուց թէ իր վրայ ի՞նչ կը խօսուի . եւ իմանալէն ետքն որ խստութիւնն ամենուն արտաքոյ կարգի բան կ՚երեւայ “գիտեմ, ըսաւ , զիս բռնաւոր կը համարին , ասի արդէն հին խօսք է , բայց աս ըսողները չեն գիտեր , թէ այսչափ տարի ինչ տեսակ պարագաներու մէջ եմ . դեռ չեն գիտեր թէ գտած ահագին արգելքներուս դէմ ինչ հսկայական պատերազմներ կ՚ընեմ . եթէ աս արգելքներուն տակն ընկճիլ չուզէի , պէտք էր որ

չարաչար խստութիւնս ի գործ դնէի. Թէպէտ մի եւնոյն ատեն հայրենեաց քաջ ու հայրենասէր որդւոցը իրենց արժանեացը համաձայն անթիւ անհամար բարերարութիւններ կ'ընէի,, :

Գիտնական տեղեկութիւններ, Պետրոսի մը պէս իշխանի քով՝ որ կարգաւորեալ կրթութիւն մ'առած չէր, չէր կրնար փնտռուիլ: Ի վերայ այսր ամենայնի գիտութիւնը չէր ատեր. մանաւորապէս Պատմութիւնը շատ կը սիրէր ու յաճախ Երկրագրութիւն կը կարդար: 1703էն վեր ժողովրդեան համար ալ լրագիր մը հանեց, որուն սրբագրութիւնն ինքն անձամբ կ'ընէր: Գեղեցիկ արուեստներու մէջէն Պատկերհանութիւնն ու գիտութեանց մէջէն Աստեղագիտութիւնն իրեն սիրական զբաղմունքներն էին: Ասոնցմէ ետքը Նաւաշինական գիտութեան կը զբաղէր, որն որ այնչափ յառաջացուց որ մինչեւ վարպետ եղաւ. պէտք էր որ ամէն օր Նաւարանն երթար ու քանի մը ժամ հոն զբաղէր եւ Մանշթայնին պատմածին համաձայն առանց իրեն գիտութեան նաւու մը վրայ գամ մը չէր կրնար գամուիլ: Իր ճաշակաւոր ճարտարութեան ապացոյց մըն է ան 100 թնդանօթնոց նաւը, որն որ իր մահուան ատենը դեռ կէս եղած էր: Աս նաւին յատակագիծը ինքիրեն հանեց ու Բեթերսպուրկ խաւրեց, որ շինութիւնն սկսի, որն որ թէպէտ շուտով մը սկսաւ ու աղէկ կը յառաջանար, սակայն իր Մեծ Ճարտարապետին մահուընէն ետքը լմննալով (1727) Պետրոս Ա. անուամբ փառաւորապէս ծով իջաւ:

Պետրոս Ա.ին Նաւագործութեան արուեստին վարպետ ու ճարտար ըլլալուն մեծ ապացոյց է հետեւեալ վկայական գիրը, որն որ ինք Ամստերտամ վարպետ ելած ատեն նոյն տեղւոյ Նաւարանի ուսուցչէն առաւ: Աս մինչուկ հիմակ անծանօթ եղած

վկայականը, աս տարի Յունուարի 25ին գտնուելով իբրեւ հետաքրքիր ու զարմանալի բան մը բոլոր եւրոպական երեւելի լրագրերուն նիւթ եղաւ:

"Ես ներքոյգրեալս կէուիթ Փօոլ Թագաւորական հաւանութեամբ հաստատուած արեւելեան Հնդկաստանի ընկերութեան Տր. նաւագործ, նոյն ընկերութեան Ամսթերտամ ունեցած սեննեկին մէջ. իբրեւ ճշմարտութիւն կը վկայեմ ու կը հաստատեմ, որ Պետրոս Միխայելով (որ Մեծ մոսկովիդեան դեսպանութեան անդամ ու իրենց մէջէն ինք միայն Ամսթերտամ Արլ. ընկերութեան նաւարանը 1647 Օգոստոսի 30էն մինչեւ ստորագրութեան մէջ նշանակուած ատեն, մեր հսկողութեանը ներքեւն աշխատեցաւ) բոլոր հոս մնացած ատենը աշխատասէր ու փոյթեռանդ նաւագործի մը պէս աշխատեցաւ, ու ամէն դժուարին աշխատութիւնները, այսինքն՝ փայտեր դիզել, տախտակներն աղէկ կտրելու համար գծել, տախտակները իրարու պատշաճել, տաշել, ողորկել, ձիւթով օծել, քերել, շաղափել, սղոցել, տախտակները կորացընել, աշխատասէր նաւագործի պահանջուած փութով կատարեց. ու Պետրոս Պօղոս անուամբ 100 ոտքէն աւելի երկայն կրկնայարկ նաւու շինութեանը (նաւուն առջի կողման ողնայարկին ու ետին ղեկի կողմը), գրեթէ մինչեւ լմննալը օգնեց. ասկէ զատ Միյնին օգնութեամբը նաւական ճարտարապետութեան ու գծագրութեան կատարելապէս տեղեակ եղաւ, անանկ որ իր Ազնուականութիւնը նոյններուն հիմնովին տեղեակ է եւ մեր կարծեացը համեմատ կրնայ վարպետ սեպուիլ: Աս ճշմարտութեանց վկայելու համար իմ սեփական ձեռքովս ստորագրեցի:

Ասանկ եղաւ Ամսթերտամ մեր բնակարանը

**Արլ. Հնդկաստանի ընկերութեան նաւարանին մէջ 15 Յունուարի յամի Տեառն մերոյ 1698**

**ԿԼՕԻԴ ՔԼԸՑՍ ՓՈՈԼ**

**Տր. Նաւագործ**

*Արեւելեան Հնդկաստանի Թագաւորական Հաւանութեամբ հաստատուած ընկերութեան. յԱմ-սթերտամ:*

*Նաւու ղեկավարութեան արուեստին մէջն ալ շատ յառաջացած էր. շատ անգամ ինքզինք վտան-գի մէջ դնելով սովորական ալէկոծութեանց ատեն թիավարելու կը սկսէր ու երկչոտներուն կը գո-ռար “Մի վախնաք, Պետրոս Ձարը չիկրնար ընկղ-միլ„:*

*Պետրոս լեզուագիտութեան ընդարձակ տեղե-կութիւն մը չունէր, միայն իր մայրենի լեզուն աղէկ գիտէր: Օտար լեզուներէն նախ հոլանտերէնը ու ետքէն գերմաներէնը իրեն սիրելի էին: “Հոլանտե-րէն լեզուին, կ'ըսէր, ծովու՝ գերմաներէն լեզուի, ցամաքի վրայ հարկաւորութիւն ունինք. իսկ Գաղ-ղիացւոց հետ ամենեւին գործք մը չունենալնուս ի-րենց լեզուին ալ ամենեւին հարկաւորութիւն չու-նինք„: Միշտ կը զարմանար ու չէր կրնար ըմբռնել որ ինչու համար Գերմանացիք գաղղիերէն լեզուի մասնաւոր սէր մ'ունին. “Լեզունին այնչափ աղ-քատ է, կը հարցընէր, որ ինքզինքնին չկարենան բացատրել„:*

*Ասոր հակառակ լատիներէն լեզուին վրայ մեծ համարում ունէր ու հռոմայեցի Յոբնաղ մատենա-գրին Թարգմանութիւնը շատ կը կարդար:*

*Վիրաբուժական գործողութեանց արտաքոյ կար-գի բաղձանք մ'ունէր, որուն վրայ Ամսթերտամ շատ բաներ սորվեցաւ: Աս գիտութիւնը իր կենացը*

մէջ ձեռքէ չթողուց ։ Միշտ վիրաբուժական ու մաթեմաթիկական գործիքները քովը կը կրէր, որպէս զի հարկաւոր եղած տեղն անմիջապէս գործածէ ։ Հիւանդանոցի մը մէջ կամ ուրիշ տեղ մը վիրաբուժական գործողութիւն մ՚ըլլալուն պէս, պէտք էր որ իրեն ալ ազդուէր, որն որ իմանալուն պէս կ՚երթար ։

Աւելորդ փառաւորութիւններն ամենեւին չէր ուզեր, ու հանդիսութեան ատեն երեւալու հարկաւորութիւն եղած ատեն իր տեղը կատարինան՝ իր ամենայն փառաւորութեամբն ու Մենշիքովը կը խաւրէր, որն որ Չարի մը պէս կ՚ապրէր եւ ռուսի ազնուականներէն շատ ծառաներ ունէր ։ Պետրոս որչափ որ ալ սանկ փառաւորութիւններ չսիրէր, հարկը պահանջած ատենն իր կայսրական պատիւն ալ պէտք էր որ ցուցընէր, սանկ ասիական դեսպաններու ունկնդրութիւն տուած ատեն ամենայն փառաւորութեամբ գահի վրայ նստած կ՚ըլլար ։ Սակայն եւրոպական դեսպաններէն այնչափ ակնածութիւն մը չունէր ։ Հռոմէական-կայսրական դեսպանին հետ բնագիտական թանգարանի մէջ առջի տեսութիւնն ըրաւ ։ Պրուսիայի դեսպանն անանկ նաւի մը մէջ ընդունեցաւ, որն որ դեռ ջուր իջած չէր ․ Պետրոս՝ որ կայմին վերի ծոթը չուանները կը կարգաւորէր, տեսնելով որ դեսպանն եկեր է վեր կայմին ծոթը հրամցուց ․ երբոր իշխանն աս հրաւէրն ընդունելու անկարողութեանը թողութիւն խնդրեց, Չարը նաւաստիի մը պէս չուանին վրայէն արագութեամբ մը վար սահեցաւ ու կայմէն բոլորովին վար չիջած իրեն հետ խօսելու սկսաւ ։

Հին ռուսական սովորութիւնը, որուն համաձայն ամէն մարդ Չարին հանդիպելուն պէս, երկրպագութիւն պէտք էր ընել, բոլորովին վերցուեցաւ ։ Իր սեղանին վրայի կերակուրները քիչ ու հասա-

բակ կերակուրներ էին։ Կերակրոյ վրայ մեծ ուրա-
խութիւն մը կը տիրեր, որն որ Հանդիսական օրերը
գինիին տաւնելութենէ աւելի եւս կ'աճէր ու ան-
կարգութեանց պատճառ կ'ըլլար։ Այսպիսի Հան-
դիսական ուրախութեանց առեն բոլորովին ազատ
ըլլալու Համար կերակրէն վերջը ծառաները Հիւրե-
րուն քով մէյմէկ շիշ գինի թողլով պէտք էր որ
դուրս ելլային։

Իր ծառան միանակ իր սենեկապետն էր, ուրիշ
ծառայողներու ալ Հարկաւորութիւն եղած առեն
Հինգ վեց ազնուական ցեղէ ծառաներ ունէր, որոնք
բոլորովին ազատ էին իրենց տիրոջն առջին ամէն
միտքերնին եկած զուարճալի ու ծաղրաշարժ բաներն
ըսելու։ Շատ անգամ պաշտօնատէրի մը Հետ Հար-
կաւոր խօսակցութիւնը կ'ընդմիջէր որպէս զի ասոնց
Հետ կատակ ընէ։ Աս տեսակ ծառաները 10 տարի
Հաւատարմութեամբ ծառայելէն ետքն իրենց կարո-
ղութեանը Համեմատ մէյմէկ պաշտօնի կը Հասնէին
եւ կամ տէրութենէ մուտք մը կ'ունենային։

Իր սիրելի Բեթերսպուրկին բնակչացը Հետ իր
ընտանեացը պէս կը վարուէր ու քաղաքացւոց ամէն
մէկ ուրախութեանցը մասնակից կ'ըլլար։ Ասոր Հա-
կառակ ինք ամենեւին Հասարակաց ուրախութիւն-
ներ չէր ըներ։ Իր Հանդիսական օրերն էին Լես-
նայի ու Բոլթավայի յաղթութեանց, ինչպէս նաեւ
Նարվայի ու մանաւանդ Շլիւսսելպուրկի առման օ-
րերը ու Բրէոպրաշէնսքեան գնդին Հաստատութեան
օրը։ Աս գունդը յիշեալ օրերը մասնաւոր պատ-
ւով կը պատուէր. Պետրոս իրենց զօրաՀանդէս
կ'ընէր ու շատերուն անձամբ գինի կը մատռուակէր։

Սակայն աւելի եւս մեծ տօն էր Պետրոսին, երբոր
նաւ մը բոլորովին լմնցած ծով իջնար։ Մեծ ու-
րախութիւն կ'ըլլար նոյն օրը ու Պետրոս ամենեւին
բանի մը չէր խնայեր. ամէն նաւ լմննալուն, նա-

ւարանին հազար ռուպլի պարգեւ կը տրուէր։ Կայ-սրուհին իր տիկիններովը նոյն նաւուն մէջն ու կայսրը նաւուն վրայ վրանի մը տակ կը ճաշէին։ Հասարակօրէն ասանկ սեղաններու առեն Զարին տեղապահը տէրութեան երեւելիններովը սեղանին ամենէն պատուաւոր տեղը կը կենար, իսկ Զարը վարը նաւ շինող գործավարաց մէջ կը նստէր, որոնց արուեստակից համարուիլը ինք իրեն պատիւ մը սեպած էր։ Ասանկ առիթներու մէջ Պետրոս արտաքոյ կարգի զուարթացած կ'ըլլար ու նաւատորմղին յաջողութեանը համար առատ գինի կը խմուէր։

Պետրոսի գլխաւոր պակսութիւնն էր աս տեսակ հանդիսութեանց առեն չէ թէ միայն չափը չպահել այլ նաեւ իր հրաւիրած հիւրերն ալ անկարգութեանց հրապուրելը։ Ասանկ անկարգութիւններով ինքն իր պատուական կենացն օրերը կարճնցուց եւ որոնց տակ իր զօրաւոր ու հժկու մարմինն ընկճեցաւ։

Իրեն վրայ արատ մ'էր նաեւ ան չափազանց բարկութիւնն ալ, որով առեն առեն գրեթէ ինքիրմէ կ'ելլէր եւ որով շատ անգամ մարդասպանութեանց վտանգի մէջ կ'իյնար։ Քիչ կը մնար որ իր հաւատարիմ ծառաներն ու օգնականները աս անզսպելի բարկութեան զոհ կ'ըլլային։

Բայց ինչո՞ւ հիմակ նորէն ան ամէն բաները պատմելու սկսինք որոնց վրայ պատմութեան ընթացքին մէջ արդէն յիշատակութիւն ըրինք։ Շատ են ան սազտանելի գործոց թիւերը, որոնք անաչառ պատմագրի մը աչքին չեն կրնար անդատապարտ մնալ. դատապարտելի է իր քանի մը յանցաւոր սեպուած մարդկանց ցուցըրցած խստութիւնը. դատապարտելի է իրեն Եւդոքսիայի ու Ալեքսիոս իշխանին հետ ունեցած վարմանցը չափազանցութիւնը, դատապարտելի են իրեն անկարգութիւնները, դատապարտելի

էն վերջապէս ան ամէն քայլերը՝ զորոնք ինք իր նորոգութեան հոգւովը ու շուտ փոփոխութեան ջանքովն առաւ։ Սակայն ո՞վ կրնայ ցուցընել մէկն որ իր պակսութիւնը չունենայ։

Այսպէսով ալ Պետրոս տիեզերական պատմութեան մէջ ինքնակալաց առջի կարգին մէջ կը փայլի։ Պետրոս՝ Իվան Վասիլեվիչէն ետքը, իր տէրութեանը երկրորդ նորոգիչն եղաւ. եւ ան աստիճանի զօրացուց ու այնպիսի պատւոյ մէջ թողուց որ իսկզբանէ եղած չէր։ Գեղեցիկ ու պտղաբեր երկիրներով նոյնն ընդարձակեց, ամուր ու անառիկ նաւահանգիստներով, Պալթիկ ծովու մէջ, Եւրոպայի հետ կապեց, վերջապէս անանկ տէրութիւն մը կազմեց, որ իր ընդարձակութեամբն ու լայնածաւալ դիրքովը երկրին վրայ մէկ հատիկ է։ Իր մահուընէն քիչ մը յառաջ քննել տուաւ թէ արդեօք Ասիան իրօք Ամերիկայէն բաժնուա՞ծ է. եւ 1721 Աղեքսանդր Նեվսքիին կարգն հաստատեց։ Եւրոպայի ամէն արքունիքը աս նորակազմ Ռուսաստանի վրայ յարգանաց աչօք նայելու սկսան ու ամէնն ալ բարեկամական կապանքով միանալ կ'ուզէին այնպիսի տէրութեան մը հետ, որն որ 200,000 կանոնաւոր, կրթեալ ու մարզեալ պատրաստ զօրք ու ահագին նաւատորմիղ մ'ունէր։

Ի ներքուստ, չէ թէ միայն տէրութեան աս ցանկալի վիճակը պահպանելու այլ նաեւ աւելի եւս զօրացընելու, ամէն բան պատրաստ էր։ Արեւելեան ծովուն եզերքն ստացուած նաւահանգիստները Եւրոպայի հետ վաճառականական կապակցութիւնը կը հաստատէին, Վիշնէյվոլոչսքի մօտերը շինուած ջրանցքներով ինչպէս նաեւ Լատոկայեան մեծ ջրանցքով, Կասպից ծովէն Վոլկայի ու անոր անթիւ բազկացը միջնորդութեամբ, նաւագնացութիւնն դէպ ի Բեթերսպուրկ ու Պալթիկ ծով մեծ դիւրութիւն

կը գտնէր։ Վոլկա գետը Տօնին հետ կապելու ու ըստ հետեւորդի Սեւ ծովը Կասպից ու Պալթիկ ծովու հետ կապելու յատակագծին արդէն ձեռք զարնուած էր։ Անտառներու, մօրերու ու ճախիճներու վրայ բարձրացած ամրոցներն ու քաղաքները, որոնց մէջ գեղեցիկ պարտէզներ, ուսումնական շէնքեր ու գործատներ լեցուն էին, աշխարհակալին հաստատուն մտացը մէյմէկ ապացոյց են։ Սիպիրիայի մէջ Իշէթ գետին քով Եգաթարինէնպուրկ անուամբ քաղաք մը շինուեցաւ (1723)։ Դարձեալ նոյն տեղը Թուլա ու Սիսթերպէք քաղաքներու մէջ դրուած թնդանօթաց ձուլարանները միշտ յաւաջադիմութեան մէջ էին։ Դարբնոցներն եւ ասուի գործարաններն ամէն տեղ հասարակ կը տեսնուէին, հարիւր գործարանէն աւելի միշտ բանելու վրայ էին, որոնցմէ մէկ քանիին մէջ 3000 հոգիէ աւելի իրենց կերակուր կը գտնէին։ Վաճառականաց դրամատեղաններն ու ապահովութեան շէնքերը վաճառականութեան մեծ դիւրութիւն կու տային։ Մոսկուա նոր նաւարան մ'ալ կանգնուեցաւ, Պեթերսպուրկ, Արխանկել, Վորոնէժ եւ ուրիշ շատ տեղեր նաւահանգիստներ կային. հասարակաց ու զինուորական հիւանդանոցներ շինուեցան, գտնուած տղոց համար կրթարաններ ու աղքատանոցներ պակաս չէին։ Պեթերսպուրկի մէջ նաւական դպրոց մը ու Մոսկուա մաթեմաթիկական դպրոց մը կար։ Երկու քաղաքաց մէջ ալ մէյմէկ փողերանոց կար. հասարակաց գրատուն մ'ալ դնելու բաւական դրամ պատրաստ էր. արուեստական ու բնագիտական ժողովածոյքներն արդէն երկրին նոյն տեսակի մէջ ժողովածոյքներուն ամենէն երեւելիներուն կարգն էին։ Ներքին կառավարութիւնն հաստատուն կերպարանք մ'առած էր ու իբր բարձր աստիճանի աշխարհական առեան մը ի պատուի էր ուղղիչ կամ կառա-

վարիչ ծերակոյտը. ասկէ զատ հոգեւոր ատեան կը համարուէր Ս. Սինհոդոս ըսուած ժողովքն, որոնց երկուքն ալ զանազան կանոններու տակ ինկած էին։ Տէրութեան մուտքն որ Պետրոսի գահ ելած ատենը եւ ոչ 5000 ռուպլի էր, հիմակ նոյնին կրկինն եղաւ. այնչափ դրամասպառ պատերազմներու հակառակ՝ չէ թէ միայն տէրութիւնը պարտքէ ազատ մնաց այլ նաեւ իր գանձին մէջ քանի մը միլիոնէն աւելի պատրաստ ստակ ունէր։ "Տես, ինչպէս գքեզ կը թողում,,. իրաւամբ դրոշմուած են աս խօսքերը յիշատակադրամի մը վրայ, զորոնք Պետրոս լացող Ռուսաստանի կ'աղաղակէ[1]։

"Մ՝եր շնորհակալութիւնը, կ'ըսէ Թէոփանէս իր գովաբանական ճառին մէջ, մեր շնորհակալութիւնը իր աշխատութեանցը վարձքն ըլլայ։ . . . . . Մինակ մենք իր գործքերը կրնանք ճանչնալ,,։ — Շատերը Պետրոսին գործքերը գովեցին շատ պատմագիրներ իր դիւցազնական յարատեւութիւնն ու աշխատութիւնն ապագայ աշխարհքին աւանդեցին։ Ռուսաստանի աս առիւծասիրտ դիւցազնը նիւթ եղաւ նաեւ շատ քաջարուեստ բանաստեղծներու, որոնց մէջէն Թովմաս գաղղիացին իր Բեթրէիտ անուամբ ոտանաւորի գրովը Պետրոսի դիւցազնական գործքերն անմահացուց, որուն մենք ալ մասնակից ըլլալու յօժարութեամբ իր գրոյն մէկ քանի երեւելի տեղերը թարգմանելով հոս կը դնենք։

[1] Աս դրամիս գլխաւոր կողմը, Թէոփանէս արքեպիսկոպոսին խորհրդովը, Պետրոսի զրահաւոր ու պսակազարդ կիսարձանը կայ աս ռուսերէն բոլորագրով "Պետրոս Մեծ, Կայսր եւ Ինքնակալ ամենայն Ռուսաց,,։ Հակառակ կողմը Կայսրը ամպերու մէջ Անմահութեան բազկացը վրայ կը տեսնուի. վարը ծովափանց քով Ռուսաստան նստած իրեն կը նայի ու ոտքին տակն ալ գիտութեանց նշաններ կան։ Փոքր թիւաւոր նաւ մը ու բազմաթիւ պատերազմական նաւեր ծովու վրայ կը պտըտին։ Բոլորագիրն է "Տես, որպէս թողում զքեզ,,։ Ստորնաբաժնոյն մէջն է, "Վախճանեալ ի 28 Յուն. 1725,,։

ԻՇԽԱՆ, ըսաւ, ընդունէ Անգղիացւոյս յարգութիւն,
Մարտիկ, ծառայ իշխանաց, բայց շողոքորթ չեմ մէկուն։
Եթէ իշխան մ'ըլլայիր եւ տիրապետ ռուսական,
Արհամարհեալ մարդկութեան հարստահար ինքնակալ,
Պալատան մը մէջ նստած բռնաւոր մը փափկասէր՝
Դրանց ցոյցով ոսկոտի յոգնեցնելով մեր աչքերն,
Տէրութեանդ մէջ ընդարձակ կարենար քեզ միանալ
Աթոռին հետ Մոսկուայի Բիւզանդիոյի աթոռն ալ,
Քու գաւազանդ, մեծութիւնքդ խաբել չէին զիս կրնար.
Բայց կը թողուս երկիրներդ լաւ վարչութեան մը համար.
Կ'ուզես տիրել հանճարով հպատակացըդ վըրայ.
Բռնութիւնը դուն կ'ատես՝ ամենազօր եւ արքայ։
Տիրապետութիւնն ահա՝ ձեռացըդ մէջ երջանիկ,
Զարմացած է որ կրնայ երջանկացնել ըզմարդիկ՝
Արգելքներով օգտակար դնելով իրեն չափ սահման։
Բարձրացընել գերիներդ մարդու կարգ ու աստիճան՝
Աս է ահա՝ ըստ իս փառքդ, անունդ պատիւըդ քուկին։
Բախտն ըրաւ քեզ թագաւոր, արութիւնքըդ մեծ ըրին։



ԵՐԵՔ հազար տարուան բերքն՝ օրուան մը մէջ ժողվէ դուն.
Վըստան աղէ նորոգէ ան ապերախտ դարերուն։
Տէրութեանըդ մէջ այսպէս կաշկանդելով բընութիւն՝
Կարծրացընէ վեց ամիս ձմեռն ամէն գետն ու ծով,
Անապատներդ կը ծածկէ մէկ մշտատեւ եղեամով,
Եւ ցամաքին ու ծովուն աս քընոյն մէջ բազմօրեայ՝
Լայնածաւալ սգով մը աշխարհք պատած կ'երեւայ։
Բայց յամրաքայլ ամառուան հուրերն մէյ մ'որ կը վառին՝
Զարթնուն ամէնքն ու կ'ապրին, ջուրը՝ ցամաքն ու երկին։
Գետոցդ ափունք կը խնկին ծաղիկներով հոտաշատ.
Կանանչ շըքով կը ժպտի անտառներուդ սեւ ճակատն.
Երկինք վառած բոցբոցի եւ եղանակ մի եւ նոյն
Ցանուիլ, բացուիլ կը տեսնէ եւ դեղիննալ հունձքերուն։
Քու մեծ երկրիդ մէջ մարդկան եղիր աստղըն երջանիկ։
Հազար տարուան ձմեռուան հիւսիսային խիստ երկինք

Պարապ տեղը Թմրեցուց քաղաքացիքըդ գունատ.
Կլիման իրեն իրաւունք՝ մեծ մարդն իրենն ունի զատ.
Արուեստք, օրէնք ու բարքեր մշակութեամբ ծընանին:
Զարեաց դիմաց բընութեան Հանէ Հանճարըդ քուկին.
Եւ խիստ դանդաղ բախտի մը փոխելով կարգն Հասարակ
Թող գան ի մի տասը դարք ու միանան Հոս արագ:

Կատարինա Բ. Պետրոսի ամէն մեծութեանց ժառանգը մեռելոյն յիշատակը ազնիւ յիշատակով մը պատուեց: (94. երեսին երկրորդ ծանօթութեան մէջ յիշուած արձանը:) Սակայն Պետրոսին բուն յիշատակը Նեվայի քով կանգնուած քաղաքն է ու տիեզերական պատմութիւնը դարէ դար պիտի աւետէ անոր մեծութիւններն ու փառքը՝ որ երբեք աղարտելիք չունին:



